# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՀԱՅՈՑ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ

### Ի ԼԻՎՈՌՆՈՅ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅՈՑ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ

## ԵՒ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՆՈՑԱ

## Ի ԼԻՎՈՌՆՈՅ ՔԱՂԱՔԻ

*ՀԱՆԴԵՐՁ ՅԱՒԵԼՈՒԱԾՈՎՔ*


· Գ Ր Ե Ա Ց

**ՄԵՍՐՈՊ ՎԱՐԴԱՊԵՏ ՈՒՂՈՒՐԼԵԱՆ**

ԺՈՂՈՎՐԴԱՊԵՏ Ի ՄԵԾ ԿՂԶԻ





ՎԵՆԵՏԻԿ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1891

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՀԱՅՈՑ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ

### Ի ԼԻՎՈՌՆՈՅ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅՈՑ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ

## ԵՒ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՆՈՑԱ

## Ի ԼԻՎՈՌՆՈՅ ՔԱՂԱՔԻ

*ՀԱՆԴԵՐՁ ՅԱՒԵԼՈՒԱԾՈՎՔ*


· ԳՐԵԱՑ

**ՄԵՍՐՈՊ ՎԱՐԴԱՊԵՏ ՈՒՂՈՒՐԼԵԱՆ**

ԺՈՂՈՎՐԴԱՊԵՏ Ի ՄԵԾ ԿՂԶԻ





ՎԵՆԵՏԻԿ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1891

ՄԱՏԵԱՆԾ ԱՅՍ

ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ

ԼԻՎՈՌՆՈՅ ՔԱՂԱՔԻՆ ԻՏԱԼԻՈՅ

ՏՊԱԳՐԵԱԼ ԵՂԵՒ

ՍԱՏԱՐՈՒԹԵԱՄԲ

ՀՈՅԱԿԱՊ ԵՒ ՎՍԵՄԱՇՈՒՔ

ԱԶՆՈՒԱՓԱՅԼ ՏԵԱՌՆ

ԱՐԻՍՏԱԿԵԱՅ ԷՖ· ԱԶԱՐԵԱՆ

ՈՒՄ ՇՆՈՐՀԱՊԱՐՏ ՍՐՏԻՒ

ԵՒ ՎԱՅԵԼՈՒՉ ՅԱՐԳԱՆՕՔ

ՆՈՒԻՐԵԱԼ ԸՆԾԱՅԻ

Ի ՄԱՏԵՆԱԳՐԷՆ

Ի ՄՇՏՆՋԵՆԱՒՈՐ ՅԻՇԱՏԱԿ

ՓԱՌԱՒՈՐ ԱՆՈՒԱՆ

ՆՈՐԻՆ

# ՈՒՂԵՐՁ

ԱՌ ԲԱՐԵՐԱՐՆ ԱԶՆՈՒԱՓԱՅԼ

# ԱՐԻՍՏԱԿԷՍ ԷՖ. ԱԶԱՐԵԱՆ

՚ՔԵԶ ՈՐԴԻՍ՛ ԱՐԺԱՆԱԳՐԵԼ ՅԻՇԱՏԱԿ
Ի ՀՈՅԱԿԱՊ ԱՅՆՔԱՆ ԱՆՈՒԱՆ ՆՇԱՆԱԿ.
ՅԱՍՏԵՂԱՏԱՆ ԵՒ ՈՉ ՎԻՄԻՆ Ի ՔԱՆԴԱԿ
ՅԱՒԵՐԺԱՍՑԻՆ ԱՐԴԵԱՆՑ ՔՈՅՈՑ ԸՍՏՈՒԱՐ ՇԱՐՔ:

ԱՌԱՏԱՁԵՌՆ ՍԱՏԱՐՈՒԹԵԱՆ ԱՅՆ ՓՈԽԱՆ
ՍՐՓՈՒԵԱԼ ՀԱՆՈՒՐ ՅՈԼՈՐՏ ԳՐՆՏՈՑՆ ԻՄ ՄԱՏԵԱՆ.
ՀԱՄԱԿ ՔԱՐՈԶ ԱՐԺԱՆԱՍՑԻ ԵՒ ԹԱՐԳՄԱՆ
ԾՈԽԱԳՈՐԾԻԴ ՆՌԱՔԻՆԻ ԲԱՐԻՈՒԹԵԱՆ.

ՈՐ ՑՈԼԱՆԱՍ ՀԱՅՐԵՆԱՍԷՐ Ի ՑՈՐԵԱՐ,
ԻԲՐ ԸԶՄԵՂՈՒՍ ԾԱՂԿԱՆՑ ԸԶՀԵՏ ԳԱՍ ԹԱՓԱՌ
ՀԱՆԴԷՊ ԱԶԱՆՑ ՆՐՆԻՍԼՈՎ ՊԵՐՃԱՓԱՌ.

Օ՛Ն ԵՍ ԿԱՐԴԱՄ ԶՕՐՀՆՈՒԹԻՒՆՍ ՏԵԱՌՆ Ի ՎԵՐԱՑ,
ԵՒԸՍ ՔԱՆ ԶԵՒՍ ՀԱՍՑԵՍ ՓԱՌԱՑ ԳԵՐԱԿԱՑ.
ՆՐՁԱՆԿԱՑԵԱԼ Ի ԿԵԱՆՍ ՅԱՅՍՄԻԿ ԵՒ ՅԱՊԱ:

Ս. Վ. Ո.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Մեր իննամեայ ի Լիվոռնոյ վարած առաջնորդութեան պաշտօնը շարժառիթ եղաւ յետ դարձին մերոյ ի Հայրենիս առաջիկայ աշխատութեանս ձեռնամուխ ըլլալու. ջանալով ըստ մեր կարողութեանը որ երկասիրութիւնս բանասիրաց հաճելի և օգտակար իմն եղանակաւ ընծայուի: Այսպիսի հրատարակութեան հարկաւոր նիւթոց հաւաքածոյքն՝ մեզ աւելի վհատութեան քան թէ քաջալերութեան ոչ սակաւ պատճառ տուած են. վասն զի խուզարկութեանց մէջ՝ բախտաւոր չեղանք առատապէս յիշատակութեան արժանի դիպուածներ քաղելու, այլ ընդհակառակն առաւելապէս դատից և խնդրոց վերաբերեալ ձանձրալի արկածներ. Մանաւանդ որ ձեռագիրք ընդհանրապէս իտալական լեզուով գրեալ էին և յատուկ անուանք ըստ մեծագոյն մասին աղաւաղեալք, ուստի դժուարինք առ հայկականն վերաշրջելու:

Հուսկ ուրեմն խրախուսանօք և յորդորմամբ բարեկամաց՝ կրկնապատկեցինք մեր՝ հետազօտութիւնքն, անխոնջ վաստակով և սատարութեամբ պէսպէս գրեանց և տեղեկութեանց՝ գործոյս կատարելութեանն ջանացինք. Դիւաններն որոնք մեծապէս օգնեցին մեր առաջիկայ պատմութեանն են Լիվոռնոյի ազգային Եկեղեցւոյն դիւանն, Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն դիւանն ի Հռոմ, և ինչ ինչ դիւանք. Նմանապէս օգնեցին մեզ ի մասնաւորի Վիվոլի, և Բիոմպանթի իտալացւոց ժամանակագրութիւնքն, և Գիւվեր Ազոնց Արքեպիսկոպոսին աշխարհագրութիւնն, թող այլ և այլ ձեռագրերն և գրեանք տպագրեալք.

Ի կարգի պատմութեանս ազգային վիճից վրայ հարևանցի տեսութիւն ըրինք, և այն յակամայս՝ հաւատարիմ պատմիչ

ըլլալու և գործս ամբողջ արձանացնելու դիտմամբ։ Այսու ամենայնիւ զգուշութեամբ վարեցանք ի մէջ բերելու ինչ ինչ պախարակելի դիպուածներ, որոնք ոչ թէ գործոյս կարևոր՝ այլ անոր արժէքն նուազեցուցիչ համարելով. այսպիսի դիպուածներ ըստ գաղափարի Տիւքան Մաքսիմ Գաղղիացւոյ առաւելապէս անկ է լռել քան թէ առաջի ամենեցուն պատմելու ջանալ։

Իսկ ի վերջոյ պատշաճ դատեցինք առանձին և համառօտ ակնարկութեամբ յիշատակել, Իտալիոյ իւրաքանչիւր քաղաքներն, որոնց մէջ ժամանակաւ աւելի կամ նուազ գըտուած են հայ գաղթականութիւնք: Հարկաւոր դատեցինք ևս առաջին գլխակարգութիւններէն մին նուիրել Լիվոռնոյի քաղաքական անցից աւանդութեանը. իսկ երկրորդն քաղաքին ընդհանուր նկարագրութեանն։ Այլ և պատմութեանս ամբողջութեան վերաբերեալ վաւերական գրութեանց օրինակք՝ որպիսիք են հրովարտակք, դաշնագիրք, կանոնագրութիւնք, վճիռք, կոնդակք և ինչ ինչ նամակք մեր առաջնորդութեանն վերաբերեալք՝ առանձին յաւելուածովք գործոյս վերջն կցեցինք:

Արդարև վայելուչ կը թուէր գրաբառ բարբառով յօրինել մեր պատմութիւնն, այլ սակայն ազգայնոց մեծագոյն մասին դիւրիմաց աւանդելու մտօք ընտրեցինք արդի լեզուն։ Եւ եւրոպական լեզուաց բնիկ քանի մի անուանքն փոխանակեցինք համամիտ նշանակութեամբ հայկական բառեր և անուններ։ Այսու եղանակաւ Լիվոռնոյի հայ գաղթականութեանն և Եկեղեցւոյն անդրանիկ պատմութիւնն՝ իբր երախայրիք կընծայիմք ազնիւ Ազգիս. յօգուտ բանասիրաց և ի փառս Ամենակալին Աստուծոյ։

ՇԱՐԱԳՐՈՂՆ ՄԱՏԵՆԻՍ

**Ի Մեծ Կղզի Կոստանդնուպօլսոյ**
**յ՚ 18 – 30 Մայիսի 1888**

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՀԱՅՈՑ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ

## Ի ԼԻՎՈՌՆՈՅ

---

### ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

Լաբրոնէ սկզբնաւորութիւնն, տէրող իշխանութիւնք, Լոմբարդականն և Բիզեանն, Ճենովացւոց է Լիվոռնոյ տիրելն, պատերազմունք, Անկեալ Բիզեանէ յաջորդէ Փլորենտեանն, ժամանակ Փլորենտեան հաստատութեան, Մեդիչեանց Արքեդքսութիւն, Լորենեան տունը դառնայ, Լիվոռնոյ Գաղղիական յեղափոխութեան ժամանակ, Նորոգեալ Իշխանութիւն, Վերահաստատութիւն Արքեդքսութեան, Ազատութիւն է Լիվոռնոյ. Նաւահանգիստն յԱրևելեան բանակէն, ապստամբական յարձակմունք, Զինւոր Արքեդքսութեան, Նաւահանգիստ Գի բանակն է Լիվոռնոյ յօժարութեան վերջ կանգնելն. Նոր էտալեան միացութեան ժամանակն, Խաղաղական Լիվոռնոյի ազատ նաւահանգիստն:



ԼԻՎՈՌՆՈՅԻ սկզբնաւորութեան վրայ հին պատմիչք իրենց տարբեր կարծեօք այլևայլ աւանդութիւնք յառաջ բերած են: Ըստ ոմից Մակրի Նիկողայոս, Ակկուրսիոս ի Հելլադա ճայրենական թագէն զրկեալ՝ Նաւուքիտ ծովափանցն վրայ յամն աշխարհի 2325՝ փախստեան Լաբրոնին հիմնադիրն է եղեր:

Սանդեղի Օգոստինոս՝ Լիվոռնոյի հիմնադիր կ'անուանէ Տիբեննոս անուամբ մին, որ իւր հետնորդն զաղթեալ ի Պոնտոսէ եկեր է յամն աշխարհի 2656: Իսկ այլ պատմիչք կը հաստատեն թէ Լամբրոնին շինութիւնն Լիբուռնիացիք, Դալմատիոյ արեւմտեան մասին բնակիչքն՝ սկսած ըլլան, որոնց արշաւանք և ասպատակութիւնք ի թերակղզին կը յիշուին ամենուրեք:

Յետ որոյ հնամենայն կը գտուին պատմիչք յաւանդելն, թէ Լիվոռնոյի կամ՝ վաղեմեան Լամբրոնին մէջ առաջին շէնքն եղած է Հերքիւլեան տաճարն, որ Առաքելոց քարոզութեան ժամանակ դեռ եւս կանգուն կեցեր էր: Ասանին բնակիչքն ընդհանրապէս ձկնորսք էին, և առաջին դարէն ի վեր Քրիստոսի սուրբ կրօնն ընդգրկեալ ունէին, և հալածեալք կը պատսպարուէին մերձակայ անտառներն և կղզիներն:

Հռովմէական կայսրութեան կործանելէն յետոյ՝ Լամբրոնն և բովանդակ Ետրուրիա Գոթացւոց և Լոմպարտացւոց հպատակեցաւ: Յամն 776 Լոմպարտաց վերջին թագաւորն՝ Կորկոնա կոչուած կղզիէն Յուլիանէ Կարքեդոնացւոյն սուրբ մասունքն ի Պրեշիա քաղաք փոխադրելու առթիւ անցաւ Լամբրոնէն, ուր ժամանակին բնակիչքն թափօրով հանդիսութեամբ մասնակից եղան, և սուրբ նշխարքէն մասն ընդունելով՝ զսրբուհին իւրեանց աւանին Պաշտպանուհի անուանեցին: Կարոլոս Մեծին՝ որ ջնջեց Լոմպարտաց թագաւորութիւնն, և իւր յաջորդաց կայսրութեան ժամանակ Ետրուրիա կառավարեցաւ ի ձեռն կայսերական կարգեալ իշխանաց, յետ որոց Մեթիլտա մարգիզուհին որ յամին 1103 ի ցոյց բարեպաշտութեան պարգեւեց Լամբրոնն Բիզայու նախագահական իշխանութեան. և անա այսպէս Բիզացիք սկսան տիրել Լամբրոնին, և անոնց ժամանակակից է փոխանակ Լամբրոնի՝ աւանին Լիվոռնոյ կոչուիլն:

Բիզացւոց 1114 ին տուած յաղթութեամբն և Պալէարեան կղզեաց գրաւմամբն՝ չներեցին Ճենուացիք անոնց ի Միջերկրականին յառաջանալը. և արշաւեալ հարիւր քառասուն

և եօթն նաւք Պիզայու և Լիվոռնոյի նաւահանգստերն՝ խոր_տակեցին զայրագին կատաղութեամբ Պիզացւոց զօրութիւնն: Յետ ժամանակաց՝ Պիզայի հասարակապետութիւնն դաշնակից ունելով Փրեդերիկոս Բ. Շվաբօրեան խումբ յարձակեցան ճենուացի նաւատորմղին վրայ յ՚3 Մայիսի 1241, յաղթա_հարելով գերի վարեցին շատերն, ձերբակալուեցան եւ Հարք որք էին ի նաւատորմղին և ուղևորէին դէպ ի Հռոմ առ Լա_տերանեան ժողովն, որոնց շատերուն տարապարտ ապանմանն համար Պիզացիք մինչև տասն և հինգ տարի բանադրեալ մը_նացին:

Կարոլոս Ա. կոմս Անժուի յամին 1266 յետ տիրապետելոյ Նափոլիի թագաւորութեանն՝ դիմեց ի Դոսկանա, և Պիզայի հասարակապետականաց յայտնած թշնամութեան համար սատապատկեց զաւառներն, կործանելով բերդերն և աշտա_րակներն՝ ի սուր մաշեց զօրքերն: Յայնժամ Լիվոռնոյ յանձն դարձած ըլլալովն՝ բնակիչքն փութացին կանգնել վերստին ա_ւանն, օգնական ունելով այն ամէն շրջակայ ժողովուրդքն՝ որոնց կալուածք և գիւղօրէք կործանած էին. որոնք խառն բնակեցան ի Լիվոռնոյ յետ աւարտելոյ շինութեանց:

Պիզացւոց Քորսիքացւոց միջ ձեռընտու ըլլալն՝ ճենուացւոց զրգռութեանն և նոր պատերազմին պատճառ եղաւ, որով ի 6 Օգոստոսի 1284 կրկին հասարակապետականաց հարկադրա_կան նաւեր իրարու դէմ ճակատեցան. պատերազմն ամենայն կատաղութեամբ յառաջ մղուեցաւ, Պիզացւոց քառասուն նաւք ընկղմեցան և քսանևհօթն գրաւեցան ի Ճենուացւոց, թող անհամար մեռեալքն, տասնևմէկ հազար զօրք գերի վա_րեցան, և յառակս եղև առ նոսա ասել՝ « որ զՊիզա կամիցի տեսանել՝ երթիցէ ի Ճենուա » գերեաց բազմութեան համար:

Այսպիսի աղէտալի արկածներով չվերջացան պատերազ_մունք, այլ երկու տարի վերջ Ճենուացիք ամբաստանեցին զՊիզացիս թէ օգնութիւն խնդրած ըլլան ի Փլորենտեայց, որով և արշաւեցին Պիզայու և Լիվոռնոյի նաւահանգստերն և մեծա_

պէս վճարեցին զայն. Ճեռնասցող կառավարութեան չափն անցած էր, վասն զի պարտելոց խնդրած հաշուութիւնն հեր_քեցին և սպառնացան անոնց քաղաքն բնաջինջ ընել: Լիվո_նոյ այսպիսի քաղաքակործան կռուոց մէջ քանիցս հիմնայա_տակ չկործանեցաւ արդեօք, այլ բնակչաց անձանձիր յարա_տեւութիւնն որ միշտ փութացին փլատակներն վերականգնել, այսպէս Լիվոռնոյ աւելի քան զքսան անգամ շինեցաւ. աւե_րածոց և դժբաղդութեանց պատճառ միշտ թշնամիք չէին ե_ղած, այլ և նոյն իսկ Բիզայու Անեէլլօ Յովհաննէս անուն բռ_նաւոր Տոժն:

Հասարակապետական վարչութիւնն ի Բիզա մերձ ի կոր_ծանումն 1392 ին Լիվոռնոյի շուրջն պարսպապատ ամրա_ցոյց, և անկեանց վրայ դղեակներ կանգնեց. իսկ ծովակողմն ամրոց մեծ բաւական էր: Բիզացիք էին ի վաճառականական յա_րաբերութեան, թող զայլ և այլ ազգս՝ այլ և մերոյս Ռուբինեանց հետ, Լիվոռնոյի նաւահանգստէն ոչ սակաւ նաւք երթեւեկած են դէպ ի ծովն Կիլիկիոյ, և յամէն 1274 էն ի վեր յիշեալ եր_կուց ազգութեանց մէջ յարաբերութիւնք եղեր են: Վերջապէս յամն 1399 զոռոզ հասարակապետութեան կենաց յետին ժամն հնչեց. երբ արտաքին ժողովրդոց ոխն և ներքին տկա_րութիւնք կը յուզուէին, Արքիանօ Կերարտոս Տոժն վաճառեց հասարակապետութեան գաւառներն ի գին երկու հարիւր հա_զար ոսկի Ֆլօրինի Միլանու Դքսին Վիսքոնթի Կալիացիոսի *:

Կալիացիոսի որդի Գաբրիէլին իշխանութեան ժամանակն Փօնսէնքան անուն Գաղղիացի Մարաջախտն եկաւ ի պաշտ_պանութիւն Լիվոռնոյի և Բիզայու նաւահանգստերուն ըստ խնդրոյ նոյն իսկ Գաբրիէլ իշխանին. յետոյ յիշեալ Գաբրիէլ իշխանն սարսափեալ Փլորենտեայց յառաջանալէն, վաճառեց

*Նշանաւոր է ի Բիզա Ս. Ստեփաննոս եկեղեցին որ յիշեալ կարգին սպետաց կը վերաբերէր. որոյ որմունքն կը ծածկեն ցայսօր սպետաց անթիւ դրօշներ գերեալ ափրիկեցի Խափշիկ_ներէն այլ և այլ պատերազմաց մէջ.

անոնց ի գլխն երկու հարիւր տասնեւվեց հազար ոսկի ֆիօրինի բովանդակ իր իշխանութիւնն: Հետեւաբար Փլորենտեայց բանակք պաշարելով զքաւեցին յաջողութեամբ զՊիզա, այլ ոչ նոյնպէս Լիվոռնոյն, ուր Գոնսէնրան Մարաչախտն ընդդիմացեալ իրենց՝ ճենուացւոց յանձնեց զԼիվոռնոյ, և վարձատրեցաւ ընդունելով գումար մի քսանեւվեց հազար ոսկի ֆիօրինի: Ի ժամանակս տասնեչորս ամաց՝ ճենուական վարչութիւնն հատարակաց օգտակար չէնքերով լաւացոյց Լիվոռնոյ, երբ յիշեալ վարչութիւնն ի պատերազմ ընդունեալ Վլորենթի Փիլիպպոսի Միլանու Դքսին հետ՝ հարկադրեալ վաճառեց զԼիվոռնոյ փլորենտեան հասարակապետութեան ի գլխն հարիւր հազար ոսկի ֆիօրինի: —

Փլորենտեայք վերջապէս տիրելով այնպիսի հոյակապ նաւահանգստի՝ եսւէ եղան ծովային կարողութեամբ եւ ճոխանալու կազմելով բազմաթիւ նաւեր, և ծովափունքն ամրացնելով. այնպիսի անառիկ ամրոցներու դէմ վայրապար մաքառեցաւ 1484 ին ճենուացի նաւատորմիղն, որչափ բուռն յարձակեցաւ այնչափ յետս ընկրկեցաւ: Այլ Գաղղիոյ թագաւորն Կարոլոս Ը. աւելի բարեբախտ եղաւ, իւր երեսուն հազար զօրականովն յաջողութեամբ մտաւ ի Լիվոռնոյ և բնակեցաւ անդ տարի մի: Իսկ երբ 1496 ին Գերմանիոյ կայսրն Փլորենտեայց դէմ արշաւելով պաշարեց Լիվոռնոյ, ծովու կողմանէ փոթորիկն, իսկ ի ցամաքի զիւղացիք օգնական գտան Փլորենտեայց. ի ծովու նաւատորմիղն ջրասոյզ կորեաւ, իսկ ի ցամաքի կայսրն Մաքսիմիլիանոս ամօթապարտ վանեցաւ. ի յիշա_

* Մինչև ցայսօր սովորութիւն է ի Պիզա եկեղեցական թափօրաց և յուղարկաւորութեանց ժամանակ Քրիստոսի Սուրբ խաչելութիւնն տանել երեսն յետս դէպ ի ժողովուրդն դարձուցեալ ի յիշատակ մէկ հրաշալի յաղթութեան, որ ըստ այսմ կատանդուի. Գնացեալ էր երբեմն Պիզայի նաւատորմիղն ափրիկեցի հէն թափշիկներու դէմ. այն ինչ անոնց բազմութենէն սարսափեալ անապարած էր խոյս տալ, հրամանատարական նաւուն յառաջակողմն կանգնուած Քրիստոսի Ս. խաչն ի յանդիմանութիւն բի_

տակ այնպիսի չքնաղ յաղթութեան և գեղացւոց քաջութեանն ծովափանց կից հրապարակն եղած աղբիւրն կոչեցաւ Աղբիւր գեղացւոյն, ուր զետեղեցաւ և արձան մի ի տարազ գեղացւոյ, (նոյն արձանը յետ ժամանակաց բարձաւ տեղէն): Փլորենտեան հասարակապետութիւնն, յոնթացս այնչափ ամաց անուանի ըլլալէն յետոյ՝ բարձաւ յամն 1530: Կան յիշատակութիւնք ի դիւանս, որ 1335 էն ի վեր Փլորենտեայք յաճախեր են վաճառականութեամբ Կիլիկիոյ ծովափունքն, և մեր արքունեաց հետ յիշեալ հասարակապետութիւնն դաշնակից եղեր է:

Ժամանակին Սրբազան Քահանայապետն Կղեմէս Է. համաձայնելով Սպանիոյ թագաւորին հետ՝ կարգադրեցին որ փոխանակ հասարակապետական վարչութեան՝ Դքսութիւն հաստատուի ի Դոսքանա, և անուանեցաւ Մետիչեանց գերդաստանէն Աղեքսանդր Ա. դուքս: Որուն յաջորդելով Կոզմոս Ա. թէ Փլորենտիոյ և թէ Լիվոռնոյի պաշտպանութիւնն սպանիացի բանակաց յանձնեց. Սպանիացիք յապահովական վիճակ վերածելով Դքսութիւնն յետ տարւոյ միոյ թողեալ մեկնեցան ի Դոսկանայէն: Կոզմոս Ա. անձամբ եռանդեալ աշխատեցաւ Լիվոռնոյի շինութեանցն և բարւոքմանն համար. վայելչացոյց նաւահանգիստն նորանոր պատնէշներու յաւելմամբ՝ հաստատելով նաև Ս. Ստեփանոսի կոչուած ասպետաց կարգն որ երթան նաւատորմիղաւ հէններու և թշնամեաց դէմ մաքառին: Իսկ ափրիկեցի Թափչիկներու յարձակմանց դէմ պատսպարան կանգնել տուաւ յԱնտոնինեանց ի հարաւակողմն բարձր դղեակ մի: Շինեց եւ կրկին պալատներ ի Լիվոռնոյ, մին ընտանեացն՝ իսկ միւսն իւրեն պաշտօնատեղի ըլլալու համար, որովհետև հասարակօրէն ի Լիվոռնոյ կը բնակէր. Իշխանս այս

զացի ասպետաց վատութեան՝ դարձոյց զերես դէպ ի ասպետս, որոնք հիացեալք և քաջալերեալք՝ դարձան առ թշնամիս նաւուք և յաղթեցին անոնց բազմութիւնն։ Նոյն սքանչելագործ սուրբ խաչն դեռ պահեալ կը մնայ Բիզայու Մայր եկեղեցւոյն գանձատունն:

մեծն ի ձեռն Պիոս Ե. Սրբազան Քահանայապետէն Աւագ դուքս անուամբ պատուեցաւ:

Կոզիմոս առաջնոյն յաջորդեց յամին 1574 որդին Ֆրանչիսկոս, որ հօրն օրինակին հետեւելով Լիվոռնոյն առաւել ընդարձակելու, ուր արդէն քանի հազար բնակիչ կային, նորանոր շինութեանց ձեռնամուխ եղաւ: Այլ կարճ կեանքովն և վախճանելովն յամին 1587 թողուց յաջորդութիւնն իւր եղբօրն, որ Մեդիչեանց շարին մէջ գերազոյն կը համարուի Ֆերդինանտոս Ա. անուամբ: Աւագ դքսիս իշխանութեան ժամանակ զխաղաղութիւնը, արհեստք ծաղկեցան, վաճառք և գործք յառեցան, և այսպէս յառաջադէմն ըլլալով Լիվոռնոյ Տոսկանայոյ քաղաքաց մէջն, եղաւ ծովային առաջին շահաստաններէն մին: Շրջակայ տէրութեանց մէջ յուզուած վրդովմանց դէմ Լիվոռնոյ ապաստարան եղած էր ապաւինողներուն: Մանաւանդ թէ յամին 1593 ի լոյս հանած հրովարտակովն Ֆերդինանդոս Ա. Լիվոռնոյն կերպարանափոխեց. ամենայն ազգք և լեզուք իրենց եղած հրաւէրին և շնորհուած արտօնութիւնքն վայելելու համար դիմեցին հոսն ի Լիվոռնոյ, և իրենց բազմութեամբըն լցուցին քաղաքն:

Այսպէս ապաստանարան եղաւ հալածելոց և փախստականաց ի Գաղղիոյ, այլ և Հրեայ գաղթականաց ի Սպանիոյ, և այլն: Յանցաւորաց ազատութիւն էր ի Լիվոռնոյ գալ երբ լաթափեալ վաճառականութեան պարտպէին: Շուրջ այն ժամանակներն հնաշէն դղեկին կից եղող նաւահանգիստն մաքրեալ բարձան, հանդերձեալ նաւահանգստին շինելու դիտմամբ: Ձեռնամուխ եղաւ 1594 ին ճոխաձև արհեստիւք Մայր եկեղեցւոյն շինութեանն, ընտրելով իբր յարմար տեղի զինուորական հրապարակին ճակատն, և առոր և անոր կողմանքն սենեկաւոր տներ, որոնց տակն ներքնոյն վարոցներ:

Այնչափ խառնիխուռն ժողովրդոց բարեկրթութեան համար հարկաւոր դատեցաւ իշխանին վանական կարգեր հաստատել ի Լիվոռնոյ, և ի մասնաւորի զՖրանչիսկեանս, որոնց համար

կառուցաւ ընդարձակ մենաստան և եկեղեցի կից Ս. Կոզմայ և Տամիանոսի մատրանն, որում աշխարհն յետ ժամանակաց շինեցաւ հայոց եկեղեցին: Իսկ քրէական յանցաւորաց և ձերբակալուած ծովու հէնեբուն համար շինեցաւ խրամապատ թիակատուն մի՝ ջրանցիւք պատելով ցամաքէն կզզիաձև:

Լիվոռնոյ որ մինչև այն ժամանակ չէր այլ ինչ եթէ ոչ մեծ աւան մի, ի ցնծութիւն ժողովրդեան ի 19 մարտի 1606 Ֆերտինանտոս Ա. տալով մատուցանել հանդիսաւոր պատարագ յաղթունի մատրանն՝ քաղաք անուանեց զայն: Լիվոռնոյ քաղաքն ունի կնիք այսպէս. վահան մի. ի միջի բերդ կրկին դղեկօք. շուրջն ունելով ծով. աջակողմեան դղեկին վրայ կանգնեալ ծող դրօշակաւ. իսկ դրօշակին վրայ լատին տառիւք գըրեալ Լ———+*:

Աւագ դուքսն իւր փոքրիկ պալատանն փոխանակեց այլ աւելի ընդարձակն՝ կառուցանելով զայն զինուորական հրապարակին վրայ. շնորհեց զինուորաց առանձին հիւանդանոց գեղեցկաշէն. ձեռնտու եղաւ Յունաց իւրեանց եկեղեցւոյն կանգնման համար. ճոխացոյց ևս քաղաքն Արքունւոյն Յովհաննեայ առանձին եկեղեցի շինելով յաջակողմն Մայր եկեղեցւոյն: Յիրաւի մեծի գովասանաց արժանի է մեծաջան վաստակն որ հազարաւոր մշակաց աշխատութեամբ քաղաքն զանազան ջրանցիւք զարդարեց, որպէս նաև շինութեամբք այլ և այլ պատնիշաց և աշ-

* Ըստ Մակրի Նիկողայոս պատմագրի, որ գրած է Լիվոռնոյի սկզբնաւորութեան վրայ, ի ծանօթարանութեանն Ութսներորդ այսպէս կաւանդէ. «Լիվոռնոյի ժողովուրդն խառնուրդ է յամենայն ազգաց. վասն զի ընիկքն սակաւք են, թող շատերուն հաստատ ընակութիւնն. զրեթէ բնաւորութիւնքն իւրեանց կը նմանին. հասարակօրէն Լիվոռնոցիք հիւրասէրք են, մաքուրք և ազատականք, գթողեալք վաճառականութեամբ և ողորմածասէրք, այլ հետաքրքիրք և նորութեան հետևողք, որով մտադիրք գործոց այլոց, և բծախնդիրք.

«Կանայք առաւել քան իւրեանց ամուսինքն առաքինիք են. այլ ունակացեալք մի քան զմիւսն նորաձև զգեստով յառաջ ըլլալ.

տարակաց զԼիվոռնոյ անառիկ քաղաքաց դասն վերածեց: Վերջապէս ի սուգ համակեալ բովանդակ ժողովուրդն՝ յ՚ 7 փետրուարի 1609 կնքեց իւր կեանքն, թողլով յաջորդ Կոզիմոս Բ. իւր անդրանիկն, որ յառաջ տանելով ծնողացն սկսած շինութիւնքն ի կատար հասոյց, և ի մասնաւորի Ներքին Նաւահանգստին շրջապատն. սա ինքն իւր հօրն յիշատակին և անչափ բարերարութեանց համար ի ծովակողմն կանգնեաց անոր մարմարեայ արձանն, և ի պատուանդան արձանին զետեղեաց չորս խափշիկք պղնձեայ կաշկանդեալ շղթայիւք. վասն զի Ֆերտինանտոս Ա. առաքմամբ ասպետացն ազատած էր ի ձեռաց հինելու շատ քրիստոնեայս և խափշիկներն գերի

որպէս նաև աղքատքն, որոնց ամուսինք կապկապէս կը կատարեն անոնց բաղձանքն՝ համաձայնելով ժամանակին նորութեանցը. այսպէս մէկ տարուան միջոց տեսայ վեց անգամ տարազուց փոփոխութիւնքն, այլ և այլ տեսակ փեղոյր և փողազարդք: Ի պատճառս իրենց փոփոխամտութեան՝ Լիվոռնոցիք դիւրահաւատք են ի լսել զքանս, և լսածնին իրենց ըմբռնմանն համեմատ կը հաղորդեն այլոց: Կը նմանին հասարակօրէն Եզոփոսի մկանցըն. ու փոքր ինչ արուեստի և հարեւանցի իմն ուսմամբ կը նկրտին առաջին կարգի քաղաքագիտաց հետ ընակից ըլլալ, որպէս նաև գիտութեամբ յառաջացեալ տիեզերքին իմաստնոց հետ: Ուստի և կը հետևի որ իրենց ընկերութիւնքն և եղբայրութիւնքն կը մրցին եկեղեցականաց հետ, կարծելով որ իրենք քան զանոնք պատուիրանապահք են և հաւատարիմք, և գրաւելով իրենց թեմական ինչ ինչ պաշտօններ՝ անցանեն քան զչափ բարեգործական իրաց մէջ: Ի մանկութեան անդ վարժեալ լինին, այլ ի չափ հասեալք մոռանան, պարծելով միայն թէ գիտունք են,

—Արևելքէն և Դոսկանայու Արշիպեղագոսէն եկած մարդիկն քաղցրաբարոյք են, իսկ արևմտեայքն սակաւ ինչ բրտագոյնք: Ծովագնացն քաջ է և հաւատարիմ իւր իշխանին, իսկ որ ի ցամաքի են՝ քննադատ կըլլան այլոց, իսկ իրենց անծանօթ անտես... Անոնց որդիքն սակաւակեաց են, և սակաւագոյնք անոնցմէ կը հասնին ի տիս քառասնամեայ, այլ եկքն աւելի երկայնակեացք: Հրէայք կոչեն զԼիվոռնոյ իրենց նոր վաճառականութեան համար Նոր աւետեաց երկիր մը. իսկ քրիստոնէից համար Լիվոռնոյ

վարած էր: Կոզիմոս Բ. ևս Լիվոռնոյի բարեկար համարեցաւ իւր երկոտասանամեայ իշխանութեան ժամանակ այլ և այլ կատարած շինութեամբք, և վախճանելովն ի 28 փետրուարի 1621 թողուց իւր երկամեայ որդին ժառանգ Ֆերտինանտոս Բ. անուն, ընդ խնամակալութեամբ իւր կողակցին Մարիա Մատալենա, և մօրն Մարիա Քրիստինա, որպէս նաև Մեդիչի Կարոլոս ծիրանաւորի, իրեն պզտի հօրօրն: Ցիշեալ երեքին պաշտօն վարեցին մինչև ի չափահասութիւն Ֆերտինանտոս Բ.ի: Շինութիւնք ի Լիվոռնոյ որպէս յառաջագոյն շարունակեցան, և յաւելան կրկին ընդարձակ թաղեր. մին ի հիւսիսակողմն որ և կոչեցաւ Նոր Վենետիկ ջրանցքներու յաճախութեամբն, իսկ միւսն Սրբոյն Մարկոսի թաղ յարակից և կապեալ լիներաց հետ եօթն կամրջօք: Նոր Վենետիկ կոչուած թաղին շինութեամբն քաղաքին ճահիճքն իսպառ բարձան և ծովն զինուորական հրապարակէն ի բաց տարաւ:

Ֆերտինանտոս Բ.ի իշխանութեան ժամանակ ժանտախտն սարսափելի ջարդեր ըրաւ ի Լիվոռնոյ, ահ և երկիւղ տիրեց ամենուրեք և բնակիչք լքեալ իւրաքանչիւր զբաղմունքն ցրուեցան այլուր. մեծ էր քաղաքական վարչութեան փոյթն հիւանդքն առանձին զգուշավայրեր փոխադրելու, և այլ և այլ միջոցներու գործածութեամբ ախտն խափանելու, վերջապէս յետ հազարաւոր մարդոց մահուան ախտն կանգ առաւ: Այլ մեծագոյն ևս էր Քափուչեան կրօնաւորաց վաստակն, որոնք մեծապէս խնամելով ախտաւորները, տասն և ութ միաբանութեան անդամներ զոհ եղան: Ժանտախտին դադարելուն համար զանց չըրաւ ժողովուրդն շնորհակալութիւն մատուցանել

տեղի է սքանչելեաց, ուր բաղդն կուրապէս կը հոլովէ զանիւ, և ըստ հաճոյս կանկ կառնէ. և յիրաւի իսկ Իտալիոյ գոհար է... ըստ մեծագոյն մասին է բնակեալ ի զաղղիացի վաճառականաց և կրպակատարց իրենց ընտանեօքն, որոնք իրենց զբաղմանց մէջ արդարապէս կը կենցաղավարին »: Մ—կէ. տպագրեալ ի Նափոլի 1647:

Տիրամօր հրաշագործ պատկերին որ կը պահուի մերձաւոր լերան վրայ: Ըստ որոյ սկիզբն եղաւ շինութեան կրկին եկեղեցեաց, մին յանուն Ս. Աննայի, և միւսն Ս. Սեբաստիանոսի վկայի, նաև առանձին զգուշարանի մը ծովեզերեայ քաղաքին ծախակողմն ուր արգելեալ կը մնային ժամանակ մի հասեալ նաւերն երբ ունէին կասկածելի ախտաւորներ իրենց մէջն:

Կը յիշուին ևս սոսկալի գետնաշարժք որ եղած են ի Լիվոռնոյ. մին յամին 1642, միւսն ի 1646, ոչ սակաւ վնասներ պատճառելով շինուածոց: Դարձեալ ժողովուրդն ահիւ պաշարեալ դիմեց և ապաւինեցաւ Տիրամօր պաշտպանութեանն:

Յիշատակենք սաստանօր Լիվոռնոյի մօտ 1656 ին հանդիպեալ ծովամարտն. քանի մը չափ հոլանտացի պատերազմիկ նաւեր հասած էին նաւահանգստին մօտն, երբ վրանին արշաւեց անգղիացի նաւատորմիղ մի բաղկացեալ տասն և հինգ նաւերէ, ըլլալով կրկին տէրութիւնքն ի թշնամութեան: Պատերազմն չորս ժամ տևեց. ահագին էր տեսանել և լսել թընդանօթներու որոտումն, նաւուց առագաստք պատառեցան, կայմք խորտակեցան և կմախքն քայքայեցան: Մարտիկք զազանաց նման իրերաց բաղխեալք զիրար ըզըքանեցին. նաւերէն ոմանք բոցակէզ եղան, որպէս ոմանք ալ ծակոտեալք խորասոյզ ի ծովն, իսկ անգղիացի նաւերէն մին պայթելովն իբր գետնաշարժ սարսեց Լիվոռնոյ: Ետ պատերազմին միայն 17 նաւք կը նշմարուէին ծովու երեսն, և Անգղիացիք յաղթուած էին. հարիւրաւոր վիրաւորեալք փոխադրեցան Լիվոռնոյի հիւանդանոցքն: Հոլանտական նաւատորմղին հրամանատարն ևս վիրաւորեալ մեռաւ և մարմինն յաղթանակաւ փոխադրեցաւ ի Հոլանտա։

Ֆերտինանտոս Բ. վաթսնամենի վախճանեցաւ ի 1670, թողլով յաջորդ իւր որդին Կոզմոս Գ. որուն իշխանութեան ժամանակ Լիվոռնոյի ոստիկանութիւնն բարեկարգութիւն ի գործ դրաւ, ուտելեաց որոշ գիներ հաստատուեցան, շինեցան

Արքունի կոչեցեալ ջրանցք, որբերուն համար կրթական օթեւան, անկարողաց պատսպարան և այլ այլտանի շինուածք: Ժամանակին հատեալ Աւագ Դքսութեան դրամներուն վրայ կը նշմարուին Լիվոռնոյի կնիքն: Այլ դէպ յամն 1684 քաղաքին խաղաղութիւնն վրդովեցաւ, վասն զի վերստին ժանտախտըն եկած էր հոն. ընդհանուր քաղաքն հիւանդանոց փոխադրած էր. Թուով սասն հազարէն աւելի մարդիկ ժանտէն ըմբռնեցան, անոնց չորս հազարն չարաչար մեռան, միւսք ապաքինեցան. անդ էր տեսանել ժողովրդեան ապաւինիլն առ Տիրամայրն, որուն հրաշագործ պատկերովն օրհնեցաւ Լիվոռնոյ մերձաւոր լեռնէն, եկեղեցիք զանգակաց հնչմամբն՝ իսկ զինուորականք թնդանօթից արձակմամբն ողջունեցին զԹագուհին երկնից: Աւագ Դքսին անդրանիկ որդին Ֆերտինանտոս՝ անուանի ճարտարապետ ըլլալով հսկեց քաղաքին նորանոր շինութեանց վրայ, և անոր առաջնորդութեամբն կառուցան թէ՛ հասարակաց օգտակար մեծամեծ շէնքերն այլ և կամուրջք, ջրանցք, ամբարանոցք, և այլն. ձեռնամուխ եղաւ եւս քաղաքին ամրութեանցն. Կոզմաս Գ. Դոսկանայու ապահովութեան համար դաշնադիր եղաւ մեծամեծ պետութեանց հետ, որպէս զի թէ ի խաղաղութեան և թէ ի պատերազմի ազատութեամբ ամէն ազգաց նաւեր յաճախեն ի Լիվոռնոյ, և յարգին միշտ Դոսկանայու չէզոքութիւնն: Աւագ դուքսն մեծաւ հիւրընկալութեամբ և բազմածախ ընծաներով պատուեց զնորապսակ Թագաւորն Սպանիոյ Փիլիպպոս Ե. որ ի ճանապարհորդելն յամին 1702 հանդիպեցաւ երեսուն նաւուք ի Լիվոռնոյ: Այսպէս երկայն տարիներ վարեց իւր իշխանութիւնն Կոզմաս Գ. միշտ Լիվոռնոյի բարգաւաճութեան աշխատելով, և կատարեց իւր կեանքն յամին 1723. դժբաղդաբար իւր որդին Ֆերտինանտոս մեռած էր արդէն, ուստի Թագաժառանգ եղաւ անոր միւս որդին Յովհաննէս Գաստոն անուն: Մետիչեանց կարգին մէջ վերջինն եղաւ, և անզաւակ ըլլալուն Թագն օտարաց անցաւ. վասն զի սոր Աւագ դքսութեան ութերորդ տարին մեծամեծ

*պետութիւնք միաբանեցան Սպանիոյ թագաւորին Տօն Գարլոս որդւին թագաժառանգ կարգելու Տոսկանական դքսութեան. այն կարգադրութեան գործադրութեան և Լիվոռնոյի պաշտպանութեան համար հասան անմիջապէս Սպանիացի վեց հազար ընտիր զօրականք ընդ հրամանատարութեամբ Տօն Էմմանուէլի Օրլէանեան, մասն ի զօրականաց գնացին ի պահնորդութիւն երկաթեայ դրանն յէլպա կղզւոյ: Յետոյ հասաւ ևս Տօն Գարլոս, և իբր թագաժառանգ վայելուչ եղանակաւ ժողովրդեան ցնծութեամբն, և քաղաքական հանդիսութեամբ պատուեցաւ: Դէպ ի յայս ժամանակներ թշնամութիւնք ծագեցան Սպանիոյ և Աւստրիոյ պետութեանց մէջն. էր 1733 ին վերջերն որ հասան ի Լիվոռնոյ երեսուն հազարէ բաղկացեալ սպանիացի բանակ մի. Տօն Գարլոս առեալ ի միասին բանակը արշաւեց ի Նափոլի, և գրաւելով կրկին Սիկիլեայց կոչուած թագաւորութիւնն, թագ դրաւ և նստաւ նոյն գահն. այնուհետև Տօն Գարլոսի որ Կարոլոս Գ. կոչեցաւ միջնորդ եղան Գաղղիա և Անգղիա, և ի հաշտութիւն ածեալ Աւստրիան ընդ Սպանիոյ, շնորհեցին Աւստրիոյ որ յետ մահուան Յովհաննէս Կաստոնի՝ Տոսկանայի Դքսութեան թագաժառանգ ըլլայ Լորենեան գերդաստանէն դուքս մի: Յետ որոյ հեռացեալ Սպանիացիք ի Լիվոռնոյ՝ յանձնեցին պահնորդութիւնն Աւստրիացւոց: Ի ժամանակին միաւ ի Տոսկանա Լորենայի իշխանութենէն հրաժարեալ Ֆրանչիսկոս Դուքսն, հետն ունելով իւր կողակիցն Մարիա Թերեզա. շքեղ և փառաւոր ընդունելութեամբ պատուեցան ի Լիվոռնոյ նոր Աւագ Դուքսն և Դքսուհին. այս այն Դքսուհին է որոյ հայրն որ էր կայսր Աւստրիոյ վախճանելովն յամին 1741 թողեալ զՏոսկանա՝ մեկնեցաւ ի Վիեննա, իբր ժառանգ կայսրութեան. Աւագ Դուքսն ևս երթալովն ի Տոսկանայէ, յընթացս 28 ամաց փոխանակաւոր յանձնեցաւ իշխանութիւնն մէկ խնամակալ վարչութեան ձեռքն:*

*Ֆրանչիսկոս Աւագ Դքսին Տոսկանայէն մեկնելէն հազիւ տարի մի անցեալ էր, երբ ի Լիվոռնոյ հանդիպեցաւ սոսկալի*

երկրաշարժն: Ժողովրդենէն ամէն դաս մարդիկ, ևս զօրականք ունելով ի գլուխ քաղաքապետն՝ ժողովեցան ի Մայր եկեղեցին և ուխտեցին որ յախտանս ծոմապահութեամբ ժուժկալեն Ցունուարի քառասնեօթներորդ օրն:

Երբ այսպէս դոսկանական Դքսութիւնն խնամակալ վարչութեան յանձնուած էր, լու ի լու ամենեցուն կայսերական յայտարարութիւն մի եղաւ, որով կը ծանուցուէր թէ Դոսկանա երբէք Աւստրիոյ կայսրութեան մաս չէ եղած. և յիրաւի իսկ, վասն զի Ֆրանչիսկոս կայսրն մեռանելովն յամին 1765, անդրանիկն Յովսէփ որդին յաջորդեց ի կայսրութեան, որպէս միւս որդին Պետրոս Լէոբոլտոսն յԱւագ Դքսութեան Դոսկանայոյ, անմիջապէս գալովն ի Դոսկանա ինքն և իւր կողակիցն Մարիա Լուիզա: Աւագ Դուքսս այս խոկոյն փոյթ տարաւ բարի օրէնքներ հաստատել, գիտութիւնն ծաւալել, արուեստքն ծաղկեցընել, որպէս նաև ժողովուրդն բարեկրթել, ժողովրդեան վիճակն երջանկութեան վերածեց. իմաստասէր էր նա ինքն, իւր սահմանեալ դատաստանական օրինաց առջև հաւասար հրատարակեց ամէն դաս մարդիկ, և մահապարտութեան պատիժն խափանեալ ջնջեց: Արքունական ծախուց խնայութեամբքն եկամուտք յաւելան, իսկ պարտքն նուազեցան. այսպիսի բարգաւաճութեամբ բարձրացոյց զԴոսկանա ի կարգս յառաջացեալ պետութեանց:

Իսկ ժողովրդեան համակրութիւնն Աւագ Դքսին վերոյիշեալ առաւելութեանց համար որչափ մեծ էր, այնքան առելութեան փոխեցաւ, երբ եկեղեցական գործոց մէջ ևս միջամտութիւն ըրաւ, և ի մասնաւորի քանի մի եկեղեցեաց փակմամբն. ժողովուրդն ևս բորբոքեալ ի Լիվոռնոյ յ՛31 Մայիսի 1790 խուռն դիմեալ՝ խորտակեց Սրբուհւոյն Ցուլիանեայ եկեղեցւոյն փակեալ դռներն, ուր ի պատիւ Սրբուհւոյն սովորական տօնն կատարեցին թափորով. յետ որոյ դիմեալ կոխեցին Հրէից թաղերն, խուզարկելով ի սինակոկայն եկեղեցւոյն վերաբերեալ արծաթեայ սպասքն, որոնք գնուած էին յանցեալ ի Հրէից

ազգէն: Ժողովրդեան կատարութիւնն դադարեցնելու համար չեղաւ բաւական զօրաց բանակն. վասն զի երկու կողմէն ալ թէ վիրաւորք և թէ մեռնողք եղան. մինչև հասեալ Բիզայու Արքեպիսկոպոսն հանդարտեց զանոնք: Ժողովրդեան մէջէն հարիւր եւթ անձինք դատապարտեցան, որոնց մէջ էին նաև կանայք ոմանք:

Նոյն տարին վախճանելով Յովսէփ Կայսրն Աւստրիոյ, եղբայրն Պետրոս Լէոպոլտոս լքեալ Տոսկանա՝ գնաց յաջորդեց ի կայսրութեան ի Վիեննա քաղաքի. որոյ որդիներէն Երկրորդն Տոսկանայու Աւագ Դուքս նստաւ, և խոհեմ ընթացքովն սիրելի եղաւ ժողովրդեան. վասն զի փոյթ տարաւ դատաւորաց խիստ ընթացքն մեղմացնել, զգուշութեամբ վարելով ժողովրդեան կրօնական համոզմանց դպելէն: Այլ զի՞նչ օգուտ. Լիվոռնոյ նաւահանգիստ ըլլալովն՝ յուզմանց ենթակայ էր, արդէն ի Գաղղիա յեղափոխութեան կայծն արծարծեալ էր. մեծագոյն չարեաց առաջքն առնելու և իւր պետութիւնն չվրդովելու համար փութաց Աւագ Դուքսն, Գաղղիոյ վարչութեան հետ դաշն կռելու: Ի Տոսկանա նստող Անգղիոյ պետութեան դեսպանն, յ' 8 Հոկտեմբերի 1793 ին պաշտօնական գրութեամբ միով ծանոյց Ֆերտինանտոս Գ. Աւագ Դքսին, որ Գաղղիոյ ապօրինաւոր վարչութեան հետ ըրած դաշնադրութիւնն և մտերմական յարաբերութիւնն հակառակ է ընդհանուր եւրոպական տէրութեանց ընթացիցն. ի զգուշութիւն այնպիսի մէկ ազգի միոյ որ իւր թագաւորն սպաննեց, կրօնքն հալածեց, արեան հեղեղներ հոսեցոյց. և ոչ այսչափ միայն, այլ և իրենց անկարգութիւնք ամէն ազգաց մէջ ծաւալելու միջոցք կը գործածեն, սպառնազմելով զրեթէ բովանդակ Եւրոպիոյ հետն: Արդէն եղած էր անցեալ տարւոյ Հոկտեմբերէն ի վեր նման մէկ ազդարարութիւն Աւագ Դքսին, այլ ունկնդրութիւն չեղաւ. ուստի կը յաւելու դեսպանն սպառնալ պաշտօնապէս եթէ դաշնադրութիւն ևս ըլլայ Ֆերտինանտոս Գ. կողմանէ. և եթէ տասն և երկու օրուան պայմանաժամին մէջ Լիվոռնոյէն ի բաց չելլէ

Գաղղիոյ հիւպատոսն, և Դոսկանայն չմիաբանի ընդհանուր Եւրոպիոյ հետ Գաղղիացւոց դէմ, անմիջապէս Ճենուայէն դէպ ի Լիվոռնոյ ուղղի զան Անգղիական միացեալ պետութեանց նաւատորմիղքն, զքաղաքն ռմբակոծելու: Որով յանհնարս մըտեալ Ֆերտինանտոս Գ. Լիվոռնոյի քաղաքապետին ձեռօք ըստիպեց զԳաղղիոյ հիւպատոսն Տըլաֆլօթ անուն՝ որ կարելի եղածին չափ շուտ ի բաց ելլէ Լիվոռնոյէ: Դեռ Լիվոռնոյի նաւահանգիստն չէր վրդովուած և ազատութիւն էր վաճառական յարաբերութեանց:

Մինչև որ յաւուր 27 Յունիսի 1796 Նափոլէոն Պոնաբարդն արշաւեալ ի Լիվոռնոյ գրաւեց զայն, թող Անգղիացւոց վաճառաց գրաւումն, կողոպտեց նաև զքաղաքն, և երկու միլիոն դահեկանական վրայ տուգանք ընդունելով մեկնեցաւ առ ժամանակ մի բանակաւն: Ի վերադառնալ Գաղղիական բանակին ի 1799 ի Լիվոռնոյ, Աւագ Դուքսն արտօսր յաչս մեկնեցաւ ի Վիէննա. իսկ ի Լիվոռնոյ արծանք տապալեցան, և մեծատանց ապարանացն վրայէն ազնուականութեան կնիք բարձեալ քանդեցան. ի ժողովրդոց եղան մասնակցողք ազատութեան կոչուած ծառն տնկելու զինուորական հրապարակին վրայ: Նոյն տարին կողոպտեցին Գաղղիացիք եկեղեցեաց արծաթի սպասքն: Թէ և Ռուսաց և Աւստրիացւոց տէրութիւնք ստիպեցին զԳաղղիացիս որ հեռանան Դոսկանայէն, այլ անոնք երրորդ անգամ արշաւեցին. և հասեալ յաջորդ տարին ի Լիվոռնոյ՝ գրաւեցին թշնամեաց վաճառքն, և քաղաքին տուժել տըւին մեծամեծ գումարներ:

Յետ որոյ Պոնաբարդն ջնջեալ Դոսկանական դքսութիւնն հաստատեց նորոգ Ետրուրիոյ թագաւորութիւնն. այսպէս Սպանիոյ Արքայազարմն Լուդովիկոս թագաւոր կարգեալ 1801 ին մտաւ ի Դոսկանա. Նա ինքն խաղաղ բնաւորութեամբ սիրելի եղաւ հպատակացն: Ի վերջանալ երկուց ամաց իւր կենաց վախճանին հասեալ թողուց թագաժառանգ միամեայ որդին ընդ խնամակալութեամբ Մարիա Լուիզա թագուհւոյն:

Յիշեալ Թագուհւոյն ջանքովն Սրբազան քահանայապետն Պիոս Է. շնորհեց Լիվոռնոյ քաղաքին առանձին եպիսկոպոս, որով յամին 1806 Թեմական վիճակ վերածեալ՝ նստաւ ի Լիվոռնոյ առաջին եպիսկոպոս Մոնս. Փիլիպպոս Կանուչչի. Թագուհին նոյն տարին պատուեց Լիվոռնոյ իր ներկայութեամբ մնալով հոն տասն և հինգ օր: Այնուհետև Նափոլէոն կայսեր մէկ նոր կարգադրութեամբ Թագուհին Մարիա Լուիզա ի Բարիզ փոխադրեցաւ իւր որդւովն: Սոյն միջոց ժամանակի Դոսկանա Գաղղիական օրինօք և սովորութեամբք կառավարեցաւ։ Անգղիացւոց ընդ Գաղղիացիս անհաշտ թշնամութիւնն վնասեց մեծապէս Լիվոռնոյի նաւահանգստին, ուր վաճառականութիւնն դադարեալ և աղքատութիւնն յառաջացեալ էր: Անանկ որ երբ Նափոլէոն կայսեր քոյրն արդէն իշխանուհի ի Լուքքա 1809 ին Դոսկանայու Դքսուհի կարգեալ էր, գտաւ ի Լիվոռնոյ քսան և հինգ հազար աղքատ, որոց ի գութ շարժեալ, կարգեց յանձնաժողով մի, այնչափ բազմութեան աղքատ հոգալու:

Յաջորդեցին ի Լիվոռնոյ Անգղիացւոց յարձակմամբն նաւային կռիւք. այլ նկուն եղեալ ի փախուստ դարձան: Անգղիական նաւատորմիղն յ՚8 մարտի 1814 վերստին եկաւ ի Լիվոռնոյ՝ երբ Գաղղիացիք ոչ ևս էին ի Լիվոռնոյ: Հետևաբար Նափոլէոնի քոյր Լուիզա Դքսուհւոյն թողլովն զԴոսկանա՝ վերստին հասաւ իշխանութեան Ֆերտինանտոս Գ. Աւագ Դուքսն, որ Աւստրիական բանակաւ մտաւ ի Սեպտեմբերի 1814 ի Դոսկանա:

Քաջին Նափոլէոնի ձախորդութեամբ ի Ս. Հեղինէ բանտուելովն, որպէս ընդհանուր Եւրոպա՝ Դոսկանա ևս առժամանակեայ խաղաղութիւն գտաւ:

Ֆերտինանտոս Գ. յաւիտենական յիշատակի արժանի է շինմամբ մեծագոյն ջրմուղին Քոլոնիոլլէն Լիվոռնոյ առատ և առողջարար ջուր բերել տալու համար. նորին խնամքովն հաստատեցաւ ջրհանակիրթ զօրաց գունդն հրդեհաց դէմ, Երկրա-

գործունէութիւնն բարգաւաճեցոյց, գիտութիւնք և արուեստքն ծաղկեցոյց անդրէն, մեծամեծ պողոտաներ բացաւ, և ընտանեբար շրջելովն ի քաղաքի փարելի եղաւ ժողովրդեանն: Աւագ Դուքսն իւր եղբօրն Աւստրիոյ կայսեր հետ ի միասին այցելութեան եկան ի Լիվոռնոյ յամին 1819, ուր ձիարշաւք, նաւընթացութիւնք, և ազգի ազգի ճրագազարդ և փառաւոր հանդիսութեամբք պատուեցան:

Յետ մահուան Ֆերտինանտոս Գ. յամին 1824 յաջորդեց անոր որդին Լէոբոլտոս Բ. ի դքսութեան աթոռ, որ հօրն առաքինութեանց հետևեալ՝ հպատակացն երջանկութեան և Տոսկանայու փառաւորութեան աշխատեցաւ. ուսմունքն, պատկերահանութիւն և քանդակագործութիւնն յառաջադէմ ըրաւ, որով առաւելեալ համբաւն յաճախեցին օտարազգի պատանիք ևս Բիզայու համալսարանն. Մարեմմանա կոչեալ դրան ածող լայնածև պողոտայն յարդարեց մեծամեծ ապարանօք ի Լիվոռնոյ, նաւահանգստի վաճառաշահութեան համար բաժն նուազելով՝ ազատութիւնն առատացոյց, քաղաքին անձուկ սահմանաշրջանն ընդարձակեց և ութ մեղրաչափ բարձրութեամբ նոր շրջապատին ձեռնամուխ եղաւ ի 1835: Սոյն առթիւ Վօլթօնէ կոչուած հրապարակին ջրանցից վրայ ընդարձակ կամուրջն շինելովն՝ յիշեալ հրապարակն ձևացոյց, զարդարելով զայն մարմարեայ նստարանօք, կոթողօք և արձանիւ: Յիշատակելի է ևս կրկին գեղեցկաշէն մեծ և փոքր ջրամբարանոցաց շինութիւնն: Աւագ Դուքսն այսպիսի եղանակաւ Լիվոռնոյ մեծապէս փառաւորեց, ծախուց համար վճարեցան երկու միլիոն երեք հարիւր երեսուն և երեք հազար ֆրանք, ի յիշատակ Լէոբոլտոս Բ.ի կանգնեցաւ կոթող մի յորջորջելով զանի Լիվոռնոյի երկրորդ հիմնադիր: 1835 էն սկսեալ յաջորդարար քանի մի տարիներ մաղձախտն սաստկացուց Լիվոռնոյ մեծամեծ ջարդերով. սոյն ախտէն ազատելու համար՝ ի պա-

տէր Տիրամօր Օգնական անուանեալ ընդարձակագոյն եկեղեցւոյն հիմնարկութիւնն սկսաւ *:

Շինեցաւ ևս կղերանոցն Կավի, մուրացողաց և ծերոց սանկելանոց, նորանոր թատրոններ, հնուագրատուն, կազագործարան, նաև Լիվոռնոյի երկաթուղեայ գիծն որ առաջինն եղաւ ի Դոսկանա երթևեկելովն 1844 ին: Լէոբոլտոս Բ. ստիպեալ յամին 1847 ինչ ինչ ծախողակի կարգադրութեանց ձեռնամուխ եղաւ, սահմանադրական օրէնք և տպագրական ազատութիւն շնորհելով. այլ զի՞նչ օգուտ, խռովարարք և արբանեակք ապստամբութեան՝ բարձեալ խաղաղութիւն տագնապ սերմանեցին. մինչ անհնար է աստէն մանրամասն պատմել եղած արկածքն. զօրք և քաղաքացի պահապանաց գնդերն չէին բաւեր բուռն ժողովուրդն զսպել. յաղթեցին անոր քաղաքական կռիւքն: Յուսահատեալ Աւագ Դուքսն ռամկապետականքն շահելու՝ հեռացաւ գնաց ի Կայեթա. որով նորանոր յուզմունք և սարսափ տիրեց՝ Բռնապետութիւն և Ռամկապետութիւն իրարու յաջորդեցին. ասոնց գլուխ եղած էր Ֆըրանչիսկոս Կուէրացցի, անուանի ռանասէրն: Վերջապէս երբ տասնեկ անկարգութեամբք վրդովեալ էր քաղաքն և ամենայն ինչ խանգարեալ՝ արշաւեց ի Լիվոռնոյ քսան հազար զօրականով և յիսուն թնդանօթով Աւստրիական բանակն և ռմբակոծելով ճեղքեալ քաղաքին պարիսպն՝ մտաւ խաղաղութիւնն վերահաստատելու. այլ և այնպէս Լիվոռնոյի ապստամբասէրքն գաղտագողի հրացանաձգութեամբն դէպ ի բանակատեղն Աւստրիացւոց, բորբոքեցին զանոնք նորանոր սպանութեանց և պատժոց գործադիր ըլլալու: Ժամանակին ի Լիվոռնոյ պատահեալ և յիշեալ խռովութեանց վրայ ծանօթութիւնք աւանդուած են «Եւրոպա» յորջորջեալ հայերէն լրագրին 1848 և 1849 տարիներն, տպագրեալ ի վանս Մխիթարեանց ի Վիէննա:

* Կաւանդուի որ 1839 ին էին ի Լիվոռնոյ հինգ չարագործ կօշկակարք, որք յետ մտիցն արեւու ամէն օր սպանութիւնք կը գործէին, թողլով ճամբու վրան դիակները. առ այս գործ չէր

*Այն ժամանակ դարձաւ Աւագ Դուքսն Նայեթայէն ի Դոսկանա և անդրէն բարեկարգութեանց զբաղեցաւ, ձեռնարկեց նորաշէն հոյակապ նաւահանգստին հնոյն փոխանակելով որ աւարտեցաւ շուրջ յամն 1859. արդարև աքանչելի է շինուածն: Աւստրիական բանակն գնաց ի Դոսկանայէ 1855 ին: Իսկ ի Յունիսի 1857 Ալֆիերի կոչուած թատրոնն ի Լիվոռնոյ յանկարծակի հրդեհով լուցակէզ եղաւ, երբ գիշեր մի շուրջ երեք հազար անձինք հանդիսատես կային. տխուր գիշեր, որուն մէջ աւելի քան հարիւր վաթսուն թուով մարդիկ հարուածեցան, և որոնց մեծագոյն մասն մեռան: Աւագ Դուքսն գթացեալ մեռնողաց ընտանեացն առատ ողորմութիւնք բաշխեց ի Լիվոռնոյ: Յիշեալ տարին նոյն ինքն Աւագ Դուքսն Օգոստոսի մէջ ընկերացեալ Սրբազան Քահանայապետի Պիոս Թ. բերաւ այցելութեան ի Լիվոռնոյ, ուր արժանավայել յարգանօք պատուեցաւ:*

*Որքան Լիվոռնոյի անդորրութեան և բարեկարգութեան հըսկած էր Աւստրիական բանակն, ընդհակառակն այնքան յուզմունք և անկարգութիւնք պատճառեցան յիշեալ բանակին երթալէն վերջ, և հետզհետէ աւելի ևս զգալի եղաւ երբ ապստամբք ոչ ևս ծպտեալք այլ համարձակ քաղաքացիքն կը յորդորէին զինուորականաց դէմ ելլել. այսպէս՝ քանի քանի անգամներ մաքառմունք եղան. կը յիշուի որ օր մի աւելի քան յիսուն ապստամբք մեռան խառնուրդի մէջ, այլ ի զինուորականաց ևս ոմանք սպանուած եղան:*

*մղեր զանոնք գողութեան փափաքն և կամ քաղաքական վրէժխնդրութիւն ինչ. մի միայն վասն զի էին արիւնուշտ ընաւորութեամբ: Ոստիկանութիւնն երկայն ժամանակ անկարող եղաւ անոնց հետքն գտնել և կալանաւորել զանոնք. վերջապէս ձեռք ինկան. չարագործաց գլուխն էր Անտոն Ջիօլլի անուն կօշկակարն. այլ որ զարմանալին է, Ջիօլլիի կինն ևս սպաննէր եւ ընկերքն երբ գիշեր մի ձեռնունայն չէին կրցած այլ սպանութիւն գործել. սոյն չարագործք յայպն և յանէծս ժողովրդեան 1841 ին դատապարտեցան ի թիակավարութիւն:*

Լէոպոլտոս Բ. տեսնելով լինել բարութեանց դէմ իւր պաշտօնէից ապերախտութիւնն, որոնք յանդուգն համարձակութեամբ առաջարկած էին հրաժարել ի Դքսութենէն, թողլով Տոսկանայն ի 27 Ապրիլի 1859 մեկնեցաւ ի Գերմանիա, ուր պանդխտեալ տասնամեայ ժամանակ գնաց ի Հռովմ, և քրիստոնէավայել մահուամբ մեռաւ 1870 ին. Լէոպոլտոս Բ. հրաժարելովն յաջորդ անուանեալ էր իւր որդին Ֆերտինանտոս Դ. բայց իւր պաշտօնեայքն անմիջապէս Աւագ Դքսին երթալովն յանձնած էին իշխանութիւնն Պիէմոնթէի թագաւորութեան դեսպանին: Այսպէս հասան և մտան ի Ֆլորենտոյ Պիէմոնթէի զօրաց բանակն, յետոյ ևս Գաղղիականն ընդ հրամանատարութեամբ իշխան Հերոնիմոս Նափոլէոնի. պատերազմ հրատարակեցին, և յաղթականք ընդդէմ Աւստրիոյ ի Մաճենթա և ի Սոլֆերինօ ջնջեալ հրատարակեցին Տոսկանայու Դքսութիւնն: Վիկտոր Էմմանուէլ 1860 ին մտաւ ի Ֆլորենտոյ, և անտի ուղևորեալ ի Ֆլորենցա, յաջորդ տարին թագաւոր կոչեցաւ Իտալիոյ: Ֆլորենցա մայրաքաղաք անուանեալ 1864 ին հոն փոխադրեցան արքունիք ի Տօրինօ քաղաքէն. Աւստրիոյ դէմ վերջին պատերազմեցան Իտալացիք 1866 ին, երբ միաձայն թերակղզւոյն մէջ մեծամեծ ջարդեր կընէր. Իտալացիք յաղթական չեղան ի Քուսթոցա, և ի Լիսսա ծովուն եղեալ՝ Քավինլինի հրամանատարութեան յանձնուած նաւատորմիղն խորատոյզ եղաւ: Նափոլէոն Գ. * տիրեալ զԱւստրիա յետս առաւ զՎենետիկն, և պարգևեց Վիկտոր Էմմանուէլի: Յիշեալ թագաւորն 1870 ին արքունիքն ի Հռովմ փոխադրեց յափշտակելով բոլորովին եկեղեցւոյ իշխանութիւնն։

(1) Նափոլէոն Գ. Գաղղիոյ կայսրն պատանեկութիւնն ի Ֆլորենոյ անցոյց. մեր բարեկամ Յովսէփ Մէյին վկայութեամբ հետևելով անուանի էր ի սրախաղութեան արուեստին, և մենամարտեալ օր մի յիշեալ Մէյին հետ յաղթական եղաւ։ Հայրն Նափոլէոնի Գ. որ Հոլանտայու թագէն զրկեալ էր՝ ի Ֆլորենոյ քաղաքի պանդխտեալ մեռաւ։

*Լիվոռնոյ անկեալ ընդ իշխանութեամբ Բիէմոնթէի թագաւորութեան, նոր իտալական միապետութեան մէջ իր նախնի համբաւն և արժէքն կորոյս. Լիվոռնոյի անդրէն կենդանութիւն տալու համար-արքունիքն ոչ ի Հռովմ այլ ի Ֆիօրենցա զետեղել հարկ է, ուպէս նաև արդէն առաջարկեալ երկաթուղեայ գծով միացնելու է զայն Մոտենայի և այնպէս վերին Իտալիոյ հետ:*

## ԴԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

**Լէվոռնոյի սահմանն և դիրքն, հին և նոր նաւահանգիստքն, շահավաճառութիւնն, վաճառական ընկերութիւնք, քաղաքական առաքրութիւնն, տարածութիւնն, շինուածոց գեղեցկութիւնն, գործարանք, հրապարակք, ողէք, ջրանցք, պարտէզք, բնակիչք, այլ և այլ քաղաքական ազգքն, բարք. պաշտօնարանքն, նշանաւոր տեղիքն, վարժարանք, եկեղեցիք, թատրոնք, թեմական վիճակ, եղբայրութիւնք, ընկերութիւնք, թանգարանք. շրջակայքն, Սեւ լերին պատմական անցքըն և հրաշագործ պատկերն:**

*Լիվոռնոյ կամ Ալիկուռնա, ի հնումն Լապրոն, զետեղեալ է դաշտի վրայ և ունի սահման ի թիկանց, այս է յարևելից՝ բլլակներ և լեռներ, դէպ ի յաջն և ի հիւսիսակողմն ի հեռուստ ապաշարեալ կան Բիզա և Լուքքա քաղաքաց լեռները: Իսկ յարևմտից կողմանէ տարածեալ կայ Տիրրենեան ծովուն լայնածաւալ դաշտն, Կորկոնա, Քորսիքա և Էլպա կղզիները: Ի վերջ կոյս ութևտասներորդ դարու ճահիճներէն իսպառ մաքրեալ ըլլալովն, այսպէս նաև ստէպ ծովային քամիներու շնչմամբն, կլիմայն բարեխառն և առողջարար եղած է:*

*Լիվոռնոյ Տոսկանական մասին Իտալիոյ մեծ կեդրոնատեղին է առևտրական գործոց համար հեռաւոր աշխարհաց հետ, որոյ նաւահանգիստն նաւուց երթևեկութեամբն շարունակ ի յարաբերութեան է Արևելեայց հետ. ևս Ափրիկէի, Ամերիկայի*

և նոյն իսկ Եւրոպիոյ արևմտեան մասին հետ: Նոյնպէս և հոյակապ պատուար մի նաւահանգստին պատսպարան կանգնած քամիներու դէմ. յիշեալ պատուարն ունի կրկին լապտերազարդ աշտարակներ երկու ծայրերն, երկայնութիւնն է հազար հարիւր երեսուն մեթրօ: Այդ ընդարձակ նաւահանգստէն ութհարիւր մեթրօ դէպ ի ներքս է անցք ի հինն Մետիչեան կոչուած նաւահանգիստն. որ և այժմ ևս կը ծառայէ շատ նաւերու պատսպարման: Մետիչեան նաւահանգստին արևելեան կողմն կառուցեալ կայ պաշտօնատեղի նաւապետութեան որպէս նաև առողջապահութեան: Իսկ հարաւային կողմն է նաւային գործարանն, ուր զետեղեալ կան հսկայաձև մեծամեծ մեքենայք, ևս և ճարտարապետարանն:

Վաճառատար և վաճառաբեր նաւուց երթևեկութիւնքն ի միասին առնլով ի Լիվոռնոյ տարին հարիւր հազար կը հաշուին, որոնց թէ բերած և թէ փոխադրած վաճառաց արժէքն կը հաշուին իւրաքանչիւր տարի աւելի քան յիսուն միլիոն ֆիօրին: Իսկ Լէոբոլտոս Բ+ դքսութեան ժամանակն Լիվոռնոյի վաճառականաց համբարեալ ցորեանն հասած է մինչև մէկ միլիոն ու կէս պարկ, թող այլ տեսակ վաճառաց համբարումն: Ծախւք միլիոնաւոր ֆրանքաց շինեցան ի Լիվոռնոյ յետին ժամանակներս ընդարձակ և մեծամեծ մթերանոցներ, որոնց տեսքն բաւական են Լիվոռնոյն վաճառաշահ քաղաքաց կարգն համադասել և ի նախանձ շարժել օտարականներն: Մթերանոցներու միջավայրն է գեղեցիկ նաւուց կայարան մի, ուր մտեալ շոգենաւերն դիւրաւ մերձենան եզերք և վաճառքներն զետեղեն մթերանոցներն. մինչև հոն ձգեալ և կապեալ են երկաթուղեայ գծեր, որպէս զի վաճառքն դիւրութեամբ փոխադրուին ներքին կողմերն և քաղաքներն: Յիշեալ չէնք քաղաքին պատուարէն դուրս ըլլալովն՝ ազատ կը համարին տուրքէն մթերեալ վաճառքն:

Դուրս առաքուած վաճառներն են այլևայլք, և ի մասնաւորի պատուական ձէթ, գինի, բուստ, մարմար, ալապաստր քար,

կղմինտր, պտուղք շաքարացեալք, և հանեղէնք և այլն: Նա աւելի են ընդունուածքն՝ ասր, դիպակք, մուշտակ, պաղեղ, լեղակ, կոճապղպեղ, կնճիթ, սոխ, խունկ, համեմունք, մորթք, պտուղք, աղած ձուկք, կտաւք, մետաքս, մոմ, ցորեան, մետաղք, անօթք, ըմպելիք, շաքար, սուրճ, և ամեն տեսակ ժամանակիս վաճառքն:

Մետիչեան նաւահանգստէն հասնել ի ցամաք ուղղակի է քաղաքին երևելի և մեծ փողոցին մուտքն․ ուր կոխելու համար հարկ է նախ անցնիլ բարձրացեալ քարաշէն կամուրջն, թողլով ի ձախակողմն հրապարակի մը վրայ կանգնեալ Ֆերտինանտոս Առաջնոյն հոյակապ մարմարիոնեայ արձանն, որուն պատուանդանն հաստատուած օղակներէն շղթայիւք կաշկանդեալ կան չորս վիթխարի պղնձեայ ափրիկեցի խափշիկներու արձաններ զետեղեալք այլ և այլ դրութեամբ, պատանւոյ, երիտասարդի, առն և ծերոյ կերպարանօք:

Մեծ փողոցն՝ որ այժմ կը կոչուի Փողոց Վիկտոր Էմմանուէլի, աստի և անտի զարդարեալ շինուածքով գեղեցիկ վաճառատանց կը յառաջանայ դէպ ի միջավայրն, ուր կայ յաջակողմին Մայր եկեղեցին, իսկ ի ձախակողմն զինուորական հրապարակն որ և կը կոչուի Վիկտոր Էմմանուէլի, ուր ի շինութեան է դեռ յիշեալ թագաւորին արձանն: Մեծ փողոցն ուղղակի շարունակեալ կը հասնի Վօլթօնէ կամ Քարլօ Ալպերթօ կոչուած լայնանձև հրապարակն, որուն ներքևն ընդարձակ կամուրջն երկու հարիւր և քսան մեթրօ երկայն: Հրապարակին վրայ կանգնեալք կան դէմ առ դէմ Ֆերտինանտոս Գ․, և Լէոբոլտոս Բ․ հսկայաձև արձանքն․ ի դիմաց հրապարակին կը հանդիպանայ այլ ընդարձակ պողոտայի շարունակութիւնն, վերջանալով դէպ ի հիւսիս կրկնակարգ մեծ ծառաստանով, ի միջավայր ծառաստանաց է բուսաբանական պարտէզն փոքրիկ․ Կամրջեայ կամ Քարլօ Ալպերթօ կոչուած հրապարակին արևմտեան կողմը, դէպ ի հիւսիս հրապարակին վրայ ի շինութեան է Կարիպալտիի արձանն:

Մեծ փողոցէն յետ դարձեալ, Կուէրացցի գիտնականին նորաշէն արձանն կայ աջակողմեան հրապարակին վրայ, ուր կայ զինուորապետական պաշտօնատեղի ևս: Մեծ փողոցն ունի գրամուղեաց երկաթեղէն գիծ, որ դէպ ի հիւսիս կը տանի սուրբ Մարկոսի դուռն՝ ուր է մեծաշէն կայարան շոգեկառաց. իսկ դէպ ի հարաւ կը տանի ծովային դռնէն դուրս պարտէզներն, և այլ ևս հեռուն գեղեր և զբօսավայրեր Արտենցա և Անտինեանոյ:

Մայր եկեղեցւոյն ետևէն երթեալ՝ է այլ փողոց ընդարձակ երկայնութեամբ, որուն կեդրոնն եղած ջրանցից վրայ կամուրջ հաստատուած և հրապարակ, ունելով Քավուր պաշտօնէին հոյակապ արձանն, երկուստեք ջրանցք ընդգրկեալ են կրկնազարդ ուղիներ, որոնց վայելուչ է տեսքն, երբ լապտերք վառեալք կը լուսաւորեն ի գիշերի զջրանցս:

Ասոնէն որպէս նկարագրեմք մի առ մի, ընդհանրապէս հրապարակք Լիվոռնոյի վայելչաձև են և ընդարձակք, որպէս փողոցներն լայնք և գեղեցկայատակք. ըստ մեծագոյն մասին հրապարակք և փողոցք զարդարեալք են բարձրաբերձ և գեղեցկաշէն քարակերտ տներով և ապարաններով որոնց դըստիկոններն են հինգ կամ վեց և երբեմն նաև եօթն. ի բաց առեալ փոքրիկ մասն քաղաքին՝ մեծագոյն մասամբ քարայատակ է կոփածոյ կարծր մեծամեծ քարերով:

Քաղաքին տարածութիւնն էր ութ քիլօմէթրօ քառակուսի, այլ այս տարի ջանիւք քաղաքական վարչութեան հարաւային կողմանէ առաւել ևս ընդարձակեցաւ. Նմանապէս պատեալ է շուրջանակի պատուարաւ ութ մեթրաչափ բարձրութեամբ. այլ և այլ ուղղութեամբ կան ութ դռներ, հինգն ցամաքային առուարձաններուն, իսկ երեքն ծովային. ծովային կողմանէ ամրոցներ և դղեակներ կը ծառայեն այսօր զօրաց բնակութեան. Լիվոռնոյ ժամանակիս բանակետղ է երկու հազար զօրականաց, թէ և քաղաքն չէ պաշտպանեալ ըստ պիտոյից նորկայից, այլ սակայն խաղաղական միապետութիւնն մտադիր է զայն ըստ կարի ամրացուցանել:

Ընդհանրապէս բնակիչքն վաճառականութեան կը պարապին, բայց ի վերայ այսր ամենայնի իւրաքանչիւր տեսակք արհեստաւորք և զանազան գործարանք կան բուսի, ալապասթրի, քաղցրեղինաց, ապակագործութեան, ձուլարան գըրոց, ձեռագործք և այլն: Այլ ամենէն գերազոյնն է մետաղագործութեան նորաշէն և մեծագործ գործարանն: Կան մեծամեծ պանդոկներ, մանաւանդ Մեծ կոչուածն ծովեզերեայ, որ Եւրոպիոյ առաջին կարգի պանդոկներուն կարգն կը համարուի:

Լիվոռնոյ ունի կրկին դրամուղեայ գծեր, հանրակառքեր, և հինգհարիւրի չափ հասարակ կառքեր, և նաւակք մեծ և կոնտոլք, որոնք ջրանցից մէջ երթևեկութեամբ վաճառք կը փոխադրեն. սոյն իսկ վախճանաւ շինուեցան այնչափ ջրանցք ի հնում այլևայլ ուղղութեամբ քաղաքին, որպէս այլևայլ կէտեր կամ կամուրջք քարաշէնք շուրջ տասնևեց, ջրանցից վերայ հաստատեալք: Հիւսիսային կողմանէ ջրանցքն երկայնեալ կը միանայ Արնոյ կոչուած գետին հետ, ի հաղորդակցութեան ըլլալով սոյն գետով Բիզա և Ֆլորենցա քաղաքաց հետ, և յառաջ քան երկաթուղեաց շինութիւն՝ մեծապէս ի գործածութեան: Ծովային դրան դուրսն ծովափանց երկայնութեամբ շարունակեալ պարտէզներ կը զարդարեն մինչև Արտենցա կոչուած գիւղն, նաև աւելի ևս. Արտենցա գեղին ծովեզերեայ հրապարակն պսակաձև կը բոլորեն ազնուականաց ամարանոցներն և փոքրիկ պալատներ:

Լիվոռնոյ իւր մեծամեծ թատրոններովն ևս չէ յետադասելի, որոնց մէջ առաջին կը համարուի Սրբոյն Մարկոսի կոչուած թատրոնն, որ քաղքին մէկ անկիւնն ըլլալովն փակեալ է այժմ. գեղեցիկ են Տէլլի Ավվալօրաթի թատրոնն, Կոլտոնիի թատրոնն, Ռօսսինիի թատրոնն, թող այլ փոքրիկներն: Ջուրն առատ է, չորս կողմեր աղբիւրներ կանգնուած, և մեծամեծ ջրամբարք, մին ի քաղաքի և միւսն քաղաքէն դուրս ի հիւսիսակողմն: Իսկ Փլորենտեան կոչուած դրան հրապարակին վրայ քսան և երեք մեթրաչափ բարձրութեամբ կանգնեալ կո-

Թողլի մըռյ վրայ գծեալք են յիշատակագրութիւնք քաղաքին:

Դոսկանայու ութ նախկին Աւագ Դքսերն մի քան զմիւսն Լիվոռնոյի շինութեանց և յառաջադիմութեան սպարապեցան, այլ յետին փառաւորութեան հասցնողն իրաւամբ եղաւ Լէոպոլտոս Բ. որ Լիվոռնոյ ազատ քաղաք անուանեց, որուն շընորհած ազատութիւնն վայելեց մինչև յամն 1866: Եւ այնուհետև զգալի խմն եղանակաւ կորոյս նախկին կարևորութիւնն: Արդարև ըստ արժանւոյն կոչեց Մօնթեսքօ զԼիվոռնոյ Մեդիչեանց ցեղին գերագոյն գործն:

Բնակիչքն ընդհանրապէս Իտալացիք են, որոնց մէջ համարելու է իբր մի և նոյն տէրութեան հպատակ ութհազար Հրէայք: Այլ կան եւս բազմաթիւ Գաղղիացիք, Գերմանացիք, Անգղիացիք, Հելուետիացիք և այլն: Հիւպատոսք եւս են Գաղղիոյ, Գերմանիոյ, Անգղիոյ, Հելուետիոյ, Աւստրիոյ, Հոլանտայի, Միացեալ Նահանգաց, և այլն և այլն: Հրէայք ունին առանձին հասարակութեան կառավարութիւն քառասուն անդամէ բաղկացեալ, որոնց գլուխ կը համարուի ազգին Դիւանապետն կամ Ատենադպիրն, որ և ներկայացուցիչ է ազգին տէրութեան առջևն. իրենց ժողովքին կազմութեան համար ընտրեալ քառասուն անդամքն տէրութեան առաջարկելով կը հաստատուին: Ատենադպիրն ունի իւրեն չորս օգնականներ և կանոնական հաշիւներն կարգաւոր եղանակաւ ընելու համար, նմանապէս սինակոկային, վարժարանին, աղքատանոցին և հիւանդանոցին ծախքերն հոգալու համար օրըստօրէ: Հրէից ժողովուրդն ընդհանրապէս մեծատուններէն բաղկացեալ է. Հրէայք ի Լիվոռնոյ մեծամեծ ազատութիւնք վայելած են, որոնց սինակոկայն ի Լիվոռնոյ գեղեցկութեամբն և ճոխութեամբն Եւրոպայու մէջ երևելիներէն մին է: Բողոքական ազգք եւս ըստ զանազան աղանդաց ունին ի Լիվոռնոյ հինգ առանձին եկեղեցիներ կամ աղօթատեղի: Նմանապէս և Յոյնք թէ Միացեալքն և թէ Բաժանեալքն ունին իրենց առանձին առանձին եկեղեցիներ և առանձին երեսփոխանական ժողովք, և զրեթէ նման Հայոց կը կառավարուին ինքնօրէն:

Լիվոռնոյ գաւառատեղի է, ունի իւր յատուկ քաղաքապետն քաղաքավարչութեան նախագահն, զինուորական հրամանատար ոստիկանապետ, Թագաւորական գործակալ, դատաւոր, առեւտրական պաշտօնեայ, և ծովական պաշտօնեայ, և այլն. ունի յատուկ պաշտօնատեղի առողջութեան, բաժտուն, արկղ խնայութեան, գանձատուն, դրամատունք, կեդրոն փոխատուութեանց, ալժեղատուն, կազագործարան, հրդեհապահաց կեդրոն, ժանտախտական զգուշարանք, աղքատանոց, որբանոց, արուեստանոց զինուորաց, հիւանդանոց և հասարակաց անկելանոց, մատենադարան, գրատուն մեծ, բաշխարան ողորմութեանց, ճեմարան օտար լեզուաց, ապահովական ընկերութեանց կեդրոններ, հեռախօսարան, հեռագրատուն: Անուանի է նաւային ակադեմիա, ուր հարիւր յիսունէն աւելի ազնուական պատանիք կը կրթին: Անուանի են եւ մասնաւոր վարժարանքն, կայ առանձինն լիսէ, ժիմնազ, օրիորդաց երեք վարժարանք գիշերօթիկ եւ՝ կուսանաց խնամոցն յանձնուած: Քաղաքական վարչութիւնն ունի բազմաթիւ ձրի վարժանոցք, նաև գիշերաժամ վարժարան մի գործաւորաց համար:

Լիվոռնոյի բարեկարգութեան համար կը հսկեն կրկին տեսակ ոստիկանք զգեստուք զանազանք, որոնք ըստ մասին արքունականք կը կոչուին և ըստ մասին քաղաքականք և կը վերաբերին քաղաքավարչութեան: Սոյն քաղաքական վարչութեան պալատին մէջ յանկեան զինուորական հրապարակին կան հազար պաշտօնեայք և պաշտօնատունք: Ի գագաթ պալատան կը ծածանի դրօշ կարմրագոյն, որպէս աւանդած եմք արդէն նախընթաց գլխոյն, դրօշին վրայ կայ բերդ սպիտակ կրկին դռնօք, բերդին բոլորտիքն կապուտակ երկին. իսկ ստորոտն ծով, աջակողմեան դռնակին վրայ ծողաբարձ դրօշ՝ ունելով գրեալ « Հաւատք » բառն։

Դարուս սկիզբէն ի վեր Լիվոռնոյ ունի իւր յատուկ եպիսկոպոսական աթոռն, ուր նստած են յաջորդաբար եօթն եպիս_

կուսաստանք. այժմու եպիսկոպոսն կը բնակի կղերանոցն. յիշեալ կղերանոցն կը կոչուի Կալլի Եպիսկոպոսին անուամբն, վասն զի նա ինքն եղած է անոր հիմնադիրն. շինեալ է ի հիւսիսակողմ քաղաքին քառակուսի և ընդարձակ, և ատ իր յարակից սրբոյն Անդրէասայ եկեղեցին: Մայր եկեղեցին նուիրեալ է յանուն սրբոյն Ֆրանչիսկոսի, նոր և պատուական նկարուք և քանդակօք, և գաւիթն սիւնակապ կամար: Երևելի են և ճարտարագործ հետևեալ եկեղեցիքն, Տիրամայրն Ֆրանչիսկեանց, Սրբուհի Կատարինէ Դոմինիկեանց, Սուրբ Ֆերտինանտոս Խաչակիր միանձանց, և Սուրբ Սեբաստիանոս Բառնաբեան կրօնաւորաց. իսկ ամենամեծ եկեղեցին է Օգնական քրիստոնէից կոչուածն, որ իննուն մեթր երկայնութիւն ունի. իսկ անուանք մնացեալ եկեղեցեաց են Սրբոց Առաքելոցն Պետրոսի և Պօղոսի, Ս. Բենեդիկտոսի, Ս. Յովհաննու, Ս. Անտոնի, Ս. Յովսեփայ, Ամենասուրբ Երրորդութեան, Ս. Յակոբայ, Ս. Մատթէոսի, և Սրբուհւոյն Յուլիանեայ: Նմանապէս կրկին եղբայրութեանց եկեղեցիներն. եղբայրութեանց մին կը կոչուի Ողորմածասիրաց, և միւս Մարքագործաց, և հաստատուած է մին հիւանդաց և մեռելոց սատար ըլլալու համար, իսկ երկրորդն անհաւատները և հրէաները քրիստոնէութեան դարձնել, և ուղղափառ սուրբ կրօնին մէջ կրթելով մկրտել: Իւրաքանչիւրն ևս յատուկ գեղեցկաշէն քանդակօք գերեզմանատներ ունին, ուր իրենց վերաբերեալ հանգուցեալքըն հանգստապէս կը յուղարկաւորեն:

Այլ կայ առանձին հասարակաց գերեզմանատունն, որպէս նաև Բողոքականացն և Յունաց, Հրէից և Տաճկաց, ևս և մերոցն այլ խափանեալ այժմ: Իսկ հասարակաց գերեզմանատան մէջ կայ այժմ փուռ մի ըստ հեթանոսաց մեռելոց դիակները այրելով յաճին վերածելու համար, եթէ անհատուած մեռնողքն իրենց կտակաւ խնդրեն այրուիլ: Սրբոյն Յակոբայ

եկեղեցին ունի այլ գերեզմանատուն. թող այլ գերեզմանատունքըն որ կը վերաբերին մերձաւոր գեղերուն: *

Են ի Լիվոռնոյ այլևայլ ընկերութիւնք. որպէս ընկերութիւն Սուրբ Վիչենցիոսի Պօղոսեան, ընկերութիւն Կաթողիկեայ երիտասարդաց, ընկերութիւն Նպաստամատոյց Տիկնանց և ընկերութիւն Քրիստոնեայ մարց: Վերոյիշեալ հոգևոր եղբայրութեանց և ընկերութեանց դիմաց, ծնացեալ և կազմեալ են ի Լիվոռնոյ այլ ևս աղանդաւոր անկրօն ընկերութիւնք, որոնք կը կոչուին Ընկերութիւնք Կարիպալտիի, Բետուչի, և այլ ընկերութիւնք, որ միշտ պատրաստ են կաթողիկէ կրօնին դէմ մաքառելու. հոգևոր եղբայրութեանց նման, անոնք ևս գէթ ի ցոյց մարդկան ուրոյն ձեռնտու կըլլան, և աղքատ օրիորդաց ամուսնութեան համար օժիտ կը հոգան. միայն թէ այնպիսի օրիորդքն չյաճախեն եկեղեցին և զանց առնեն ուսանել զքրիստոնէական վարդապետութիւն: Հայհոյիչք և անկրօնք յորդորեալ են այս յիշեալ ընկերութիւններէն որոնցմէ նպաստ ևս կընդունին:

Լիվոռնոյի քաղաքացեաց բնաւորութիւնքն իրերաց տարբերք են, ժողովրդեան բաղկացեալ ըլլալովն խառնուրդ ցեղերէ. հասարակօրէն կռուասէրք են, բծախնդիրք և միտեալք յապըստամբութիւն ընդդէմ օրինաւոր իշխանութեանց: Ընդհանրապէս կրթութիւննին թերի. երիտասարդքն և ուսանողքն կը սընանին յանդուգն, ումանք ևս սրիկայ և արբեցող, անձնասպանութիւնք օրըստօրէ կը յաճախեն:

Մեր պատմագրական յիշեալ ամբաստանութիւնքն չէ անխըտիր ամէն մարդոց համար ի Լիվոռնոյ, այլ կը վկայեմք թէ են ոչ սակաւ ազնիւ բարի և երկիւղած անձինք, որոնք առաւելապէս գովութեան արժանի են, և ոչ թէ՝ քաւ լիցի՝ պախարակութեան, անոնց առաքինութեանց մեր ականատես ըլլալովն

* Լիվոռնոյի շրջակայք կը համարուին Դորրիթթա, Սալվիանոյ, Արտենցա և Անտինեանոյ, Սեաւ լեռն և այլն:

ի մօտաւոր: Ի Լիվոռնոյ հաստատուած են գաղղիացի և իտալացի Քորք Սկոյ, խնամելով օրիորդներն յուսումնս, և հիւանդներն ի հիւանդանոցս: Է վանք մի կուսանաց ըստ կարգի Սրբուհւոյն Մագդաղինեայ, որոյ հիմնադիր եղած է սրբակեաց քահանայ մի կէս դար յառաջ: Է եւ կարգ մի կուսանաց Քերց Արքա_յութեան կոչուած: Իսկ վանքերն որ Դքսութեան ժամանակ ի Լիվոռնոյ կանգնեալ էին կրօնաւորաց համար, ըստ մասին գրաւեալ են արդ ներկայ պետութենէն:

Թիւ բնակչաց Լիվոռնոյի և անոր շրջակայիցն 1887 ին յԱպրիլի հրատարակեալ քաղաքավարչութեան պաշտօնա_կան ազգահամարին մէջ կը հաշուին յիսուն հազար չորս հա_րիւր յիսունևվեց այր, իսկ յիսունմէկ հազար երեք հարիւր իննսունևութ կին. ընդ ամենայն 101, 854 անձինք:

Լիվոռնոյ պակասաւոր էր իրեն վայել թանգարանէ, այլ յետին տարիներն քաղաքական վարչութեան ջանիւք կազմեալ է նոր փոքրիկ թանգարան հնութեանց. ուր ժողովեալ են ա_ռաւելապէս մեր թուականէ Քելլինի անուն ասպետին ընծա_յած առարկայքն, որոնք յիշեալ ասպետն Դոլրեթթա կոչուած տեղէն Լիվոռնոյի մերձակայքն պեղեալ հողոյ ներքևէն գը_տած է. հնութեան վերաբերեալ անօթներ և գործիներ, ո_րոնց ոմանք են յերկաթոյ և ի պղնձէ, իսկ այլք ի կաւոյ: Յիշեալ Քելլինի ասպետն իր գտած հնութեանցն նկարներուն մեծաթերթ տպեալ տետրներէն մեզ ընծայելէն վերջ, ինքնայօ_ժար հաճութեամբ յիշատակ ըրած է նաև քանի մի օրինակ_ներ առաքելով Սրբոյն Ղազարու Մատենադարանին որ ի Վե_նետիկ: Ի Լիվոռնոյ են եւ կրկին փոքրիկ մասնաւորաց թան_գարանքն Քամթեյլի, և Լարտարել ազնուականացն:

Ոչ միայն քաղաքական վարչութեան փափաքն այլև բարձր_աստիճան պաշտօնատարք արքունի խորհրդարանին մէջ մեծապէս խնամք տանելու վրայ են զԼիվոռնոյ յարուցանել ի_րեն անկումէն, յոր սակս մեր ժողովրդապետութեան ժամա_նակ շինեցան մեծամեծ ամբարանոցքն յօգուտ վաճառակա_

նութեան, արքունի նաւային ականեմիային, այլ և ծնունդ կուտեցաւ ընդարձակել նաւագործարանն: Արդի Լիվոռնոյի նաւագործարանն կը վերաբերի Օրլանտոյ եղբարց, որ ըստ պահանջմանց ժամանակին աւելի պատերազմական զրահապատ նաւուց կազմութեան կը պարապի, յորս գերագոյն եղաւ Լեբանթոյ անուն շոգենաւն աւարտեալ յամին 1883:*

Յարեւելակողմն Լիվոռնոյի շուրջ հինգ մղոն հեռու կայ Սեաւ լեռն Մօնթէնեռօ կոչուած, ի հնումն ծածկեալ ըլլալովն խիտ առ խիտ եղևնեօք: Սեաւ լերին ճակատն փայելչազարդ կը հանդիսանայ ճարտարաշէն եկեղեցի մի յանուն Սուրբ Կուսին, ուր կը պահուի Տիրամօր հրաշագործ պատկերն. արդ աւանդութեամբ կը պատմուի որ յիշեալ պատկերն հրաշալեօք փոխադրուեր է Յունաստանի արևելակողմն Նեկրօբօնթէ կոչուած կղզիէն, և յայտնեալ կաղ հովուի մը 1345 ին, երբ հո_

* Լիվոռնոյի նաւագործարանն 1846էն մինչև 1856, շինեցան հարիւր քառասուն և վեց նաւք վաճառականականք, երբ Լիվոռնոյ արտօնութեամբք և վաճառականութեամբք հռչակաւոր աշխարհաց հետ անուանի շահաստան էր։ Այն Լիվոռնոյ որ փլորենտեան հասարակապետութեան ջանիւք և Մետիչեան նոյնպէս Լօրէնեան Դքսերու բարերարութեամբք ճոխացեալ էր իբր մի միայն մուտ Դոսկանայու։ Միթէ հնար է անոր կենսական զօրութիւնն պահել և հանդուրժել, որ թերակղզւոյն այլևայլ նաւահանգիստքն այժմ անոր փառքն և վաստակն կը կողոպտեն։ Տեսեալ զԼիվոռնոյ այսպէս նոխական մեծութիւնէն կողոպտեալ և երկրորդական կարգի վերածիլն, վաճառականքն անուանիք թողած են զայն և մեկնած։ Այսպիսի արժեաց կորուստն թէ և յայտնի է ամենեցուն, այլ չունի ոք յիտալասիրացն բաւական քաջութիւն խոստովանիլ զայն յայտնապէս և լալ։ Տինոյ Քարինոյ առանձին տետրակաւ կը վկայէ թէ Լիվոռնոյի յետընթաց ըլլալն, ոչ միայն ազատ նաւահանգիստ ըլլալու իրաւունքէն մերկացուիլն է, այլ և գաւառականաց արտաքին վաճառատեղեաց հետ ուղղակի յարաբերութիւն սկսելովն եղած է։ Ողբալի է, վասն զի արտօնութեանց ջնջմամբն ամէն կարգի քաղաքացիք վնասուած են, բեռնակիրքն և նաւակավարքն անգործ մնացած են, իսկ կալուածատէրն ըստիպեալ է յակամայս նուազել կալուածոց արժողական վարձն։

վիմ յատորոտ Սեաւ լերին ուր այժմ Մատօննինա կը կոչուի, զբաղեալ էր իւր հօտն արածելու: Հրաշագործ պատկերն ձայն տուեալ կը հրաւիրէ հովիւն որ զինքն բառնալով տանի Սեաւ լերին վրայ. կաղ հովիւն լի հաւատօք մոռացեալ իւր կաղութիւնն, շալակն կառնու ժայռի բեկորն որուն վրայ հրաշագործ պատկերն կցեալ էր, և այնպէս թեթևաբայլ երկնային օգնութեամբ ընթանալով կը հասնի այժմեան տաճարին տեղն. հոն բարեպաշտ հովիւն կը տեսնուի սքանչելի բեռն զետեղել, վասն զի ծանրացեալ էր յանկարծակի այդ բեռն: Ի շնորհս այս ծառայութեան բժշկեալ հովիւն իւր կաղութենէն վազեց և ծանոյց ի Կիվոռնոյ ուրախութեամբ եղած սքանչելիքն: Այսպէս համբաւեալ գիւնց ժողովուրդ բազում ի Կիվոռնոյէ ի Սեաւ լեռն մեծարել զՍուրբ Կոյսն շինելով հոն հանգստարան և աղօթատեղի, որ յետ սակաւ ամաց եկեղեցի վերածեալ, հրաշագործ պատկերն յանձնեցաւ Հարց Ցիսուսեանց, որ պահեն և հսկեն ուխտատեղւոյն: Յետ այնորիկ տրովք բարեպաշտից ձեռն արկին Հարք Ցիսուսեանք կառուցանել զգեղեցիկ տաճարն. կիշեալ Հարց անկիմարն յամին 1668, յաջորդեցին անոնց տեղ Դէաթինեան կարգի կրօնաւորք, և ի կատար հասուցին գեղեցկապէս զտաճարն: Իսկ 1783 ին Դէաթինեանք ևս ստիպեալք ի հրամանէ պետութեան թողին Սեաւ լեռն և գնացին. Դէաթինեանց փոխանակեցան Վալլօմպրօզեան կոչուած կրօնաւորք, որոնք մինչև ցարդ ունին եկեղեցւոյն պահպանութիւնն: Եկեղեցւոյն կամ տաճարին գեղեցկութիւն և ճոխութիւնն անչափ է, գոյնզգոյն պատուական քարք և սիւնք, նմանապէս անթիւ արծաթեայ կանթեղք և շամատանք կը զարդարեն զայն. Վալլօմպրօզեան կրօնաւորաց աշխատութեամբ եկեղեցին ևս առաւել ճոխացեալ է: Իսկ եկեղեցւոյն մէջ կայ հայազիր տապանագրութիւնն գաղատացւոյ միոյ այսպէս.

Է

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՐՍՏԵԱՆ
ԱՆԿԻՒՐԱՑԻ ԹՈՐՈՍԻ ՈՐԴԻ
ՊԱՐՈՆ ԽԸՏԸՐՇԱՀԻՆ.
ՈՐ ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ
ՅՈՒՆՈՒԱՐԻ Ժ.
ԹՎՆ ՓՐԿՉԻՆ ՌՒԺԽ.

Աւանդատան որմերն խիտ առ խիտ կը ծածկեն շատերուն վը-տանգներէ փրկուելուն նկարներ օգնութեամբ յիշեալ պատ-կերին, նշանակեալ ևս թուականն և անձանց անուանքն: Այս-պէս խալուբեայ միոյ ասղնեգործ զգեստն որ ազատեալ ի գերութենէն ուխտիւ բերեր է զայն: Դէպ ի մկրտարանն ստորև են որմոց վրայ զետեղուած նաւուց բեկորք, կաղերուն նեցուկք, և այլ ինչ ինչ, ի նշան եղեալ հրաշալեաց: Կը յիշատակուի որ խափշիկք 1575 ին աւազակաբար յարձակեցան կողոպտե-լու տաճարին սուրբ սպասքն, այլ յանկարծ կուրացեալք ձեռքակալուեցան և բանտարկուեցան ի թիակավարութիւն: Կալէթթի անուն Դէաթինեանն ի մուտս և ի զաւիթ հոյակապ եկեղեցւոյն խորհրդաւոր նկարուք զարդարեց զորմունս. անդ է տեսանել հրաշագործ պատկերն, որ յայտնեալ կ'երևի ծե-րունի և կաղ հովուին, հովուին զայն փոխադրելն Սեաւ լերին վրայ, Լիվոռնոյի կղերին և ժողովրդեան այցելութեան երթալն և մեծարելն զայն, խափշիկներուն՝ որ եկած էին Սեաւ լեռն կողոպտելու՝ կուրանալն և մոլորիլն, քաղաքացւոց ազատու-թիւնն յերկրաշարժէ և ժանտախտէ, նաւակոծելոց հրաշա-լեօք փրկութիւնն ի մրրկաց: Այսպէս նոյն է ուխտատեղին, ուր բարեպաշտք շարունակաբար կը դիմեն իւրեանց ընծայիւք հայցել զՏիրամօրն պաշտպանութիւն: Քանիցս և մենք մխի-թարուած ենք այցելելով սրբազան Սեաւ լեռն: Հնգետասա-ներորդ դարէն ի վեր հետզհետէ հանդիպած երկրաշարժից և ժանտախտից տարիներն որչափ Լիվոռնոյի բնակչացն համար աղետալի և դժբաղդ եղած էին, այնքան հրաշալի և մեծ եղաւ

*պաշտպանութիւն Տիրամօրն ի Սեաւ լեռն, որպէս յիշատակած եմք այլուր: Իսկ յամին 1690, Լիվոռնոյ բերելով հրաշագործ պատկերն, ոսկի թագով պսակեցին զայն մայր եկեղեցւոյն մէջ, մեծամեծ տօնախմբութիւնք կատարեցան, մինչև ի դարձ պատկերին ի Սեաւ լեռն: Ժողովրդեան ամէն կարգի մարդիկ մեծարեցին զսուրբ պատկերն. էին ևս Հրեայք, և զինուորք որք ի գունդս բաժանեալ և ըստ զինուորութեան օրինի պատուեցին զայն: Մեր առաջնորդութեան ժամանակ 1885 ին երբ մաղձախտն ի թերակղզին մտեալ էր, բարեպաշտք ի Լիվոռնոյ շինեալ կանթեղ մի արծաթեայ ըստ արժողութեան երեք հազար (3000) ֆրանքաց ընծայեցին զայն Տիրամօրն ի Սեաւ լեռն, Լիվոռնոյ մաղձախտէն ազատելուն համար: Յիշատակենք աստէն նշանաւոր անձանց ոմանց անուանքն որոնք այցելութիւն ըրեր են ի Սեաւ լեռն.*

*Գուլիէլմոս Վիւրդեմպերկի թագաւորն*
*Ֆրետերիկոս Տանիմարքայի թագաւորն*
*Մարիա Լուիզա Ետրուրիոյ թագուհի*
*Մարիա Ամալիա Նէապօլսոյ թագուհի*
*Ֆրանչիսկոս Աւստրիոյ կայսրն*
*Գարլօ Ալպերթոս Սարտենիոյ թագաւորն*
*Մուստաֆա Եգիպտոսի զօրագլուխն*
*Լոյս Պայրն, Կորտոն, և այլն:*

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

Ժամանակ Հայկական գաղթականութեան, վաճառականաց արտօնութիւնք, դատաստան. Ազգային Խորհուրդն, դատաւորքն, հոգաբարձու տանուտէր. Ազգային դատաւորութիւն, մեծամեծաց ատեանն, Ազգ Ջէլեպին, առանձնաշնորհութիւնք Հայոց Եկեղեցւոյն կառուցմանն. Ցուցական դատարքն գործածութիւնն. Սահման Գրաւորքն է Հռովմ Բողոքող Նորոգումն է շնորհս հոգաբարձու տանց Նայեց Հայոց է Լէհաստանոյ։

Հետազօտելով այլ և այլ հին գրչագրեր կը քաղենք թէ յամի Տեառն 1582 Լիվոռնոյ քաղաքին մէջ հաստատուած Հայազգի վաճառականներէն մին Խօճա Կիրակոս Միրման անուն Պարսից Շահին կողմանէ ի Տոսկանա հիւպատոսական պաշտօն կը վարէ եղեր: Որով կը հետևի թէ վեշտասաներորդ դարուն կէսէն վերջն ստուգապէս կայր ի Լիվոռնոյ Հայկական գաղթականութիւնն: Ի նոյն միջոց ժամանակի Ջուղայեցի Հայ վաճառականք, որ ի Վենետիկ արդէն հաստատուած էին, սկսան յաճախելու և երթևեկելու Լիվոռնոյի նաւահանգիստն: Այսպիսի վաճառականաց թիւն կարծեմք նուազագոյն էր ի Լիվոռնոյ ընդ իշխանութեամբ Կոզմասայ Առաջնոյ, իսկ առաւելեալ բազմացած միայն Ֆերտինանտոս Առաջնոյն իշխանութեան ժամանակն *: Յիշեալ Աւագ Դուքսն Ֆերտինանտոս փափաքելով Տոսկանայու նաւահանգիստն ևս քան զևս վաճա_

* Բիզացի և ապա յետ նոցա Ֆլորենտացի հասարակապետութեանց նաւք յաճախելով ի Կիլիկիական ծով՝ յաճախած են ևս վաճառականաց երթևեկութիւնք, ուստի կարի հաւանական է որ մինչև այն ժամանակէն ի վեր հայք գտնուած են ի Լիվոռնոյ։

Ֆերտինանտոսի Առաջնոյ հրովարտակէն առաջ հայոց ի Լիվոռնոյ ըլլալն յայտնի կըլլայ նաև յիշեալ հրովարտակէն, որուն մէջ յականէ յանուանէ կը յիշատակուին հայք. Աւագ Դուքսն այն ճանչնալով հայոց վաճառականական յարաբերութիւնն՝ հաճեցաւ որ գան բազմանան ի Լիվոռնոյ։

ռաշան գործել, ծնունդովս եղաւ յամին 1591, հրատարակելու նշանաւոր հրովարտակն՝ որով հրաւիրեց նա Հայերն միւս ազգաց հետ գալու և բնակելու ի Լիվոռնոյ, և այնպէս վայելելու շնորհած առանձնաշնորհութիւնքն և մեծամեծ արտօնութիւնքն։ Այսու յորդորմամբ դիմեցին ի Լիվոռնոյ խուռն անուանի վաճառականք, ընդ որս և Հայեր, ըստ մեծագոյն մասին ի Նոր Ջուղայէ, և ըստ մասին ի Վանայ, ի Կեսարիոյ և ի Զմիւռնիոյ, և այլն։ Ըստ վկայութեան Գիւվեր Ագոնց Արքահօր Հայերն առաջին եղան արևելեան վաճառներ մուծանելու ի Թոսկանա։ Նմանապէս յիշատակութեան արժանի է որ բուսա գործելու արուեստն նախ Հայերն մուծին ի Լիվոռնոյ, և ի Հայոց սկսեալ և ուսեալ Հրեայք՝ այսօր անոնց յաջորդքն եղած են հոն։ Հայոց ընդունած վաճառաց տեսակներն էին կտաւիք և մետաքսեղէնք ի Պարսից և ի Հնդկաց, այլ և ըստ յիշատակելոյ ուրեք, որդան կարմիր, համեմունք, մարգարիտք, ակունք, և այլն։

Արդ այսպէս հաստատեալ և բնակեալ Հայք ի Լիվոռնոյ ըստ մասին ունէին զգեստ ըստ արևելեան տարազու, խոյր կամ փաթոյթ ի գլուխ, կապայ բաճկոն վերարկու անդրավարտիք, և մուճակս յոտին, իսկ ըստ մասին փոխանակեալ ունէին եւրոպական տարազն։ Ըստ մեծագոյն մասին էին ի վաճառականաց դասէն, որոնց մէջ կային ոչ սակաւ ազնուատոհմ մարդիկ. յընթացս պատմութեան այսպիսիներէն ոմանց վրայ ուրոյն յիշատակութիւն ընելու եմք։ Հայք իրենց զգաստ վարուք և կենցաղավարութեամբն կը զանազանուէին այնքան խառն ազգաց մէջ, իրենց ազգային սովորութիւնքն պահելու նախանձախնդիրք էին։ Հայոց ճոխ և առատաձեռն բնաւորութիւնն առիթ տուած էր Լիվոռնոյի բնակիչներուն, զՀայերն ճոխ անուամբ յորջորջել։ Նմ մանաւանդ երկիւղած մարդիկ ըլլալով Հայք կը յաճախէին Լատինաց եկեղեցիներն, թողլով հոն իրենց առատ ողորմութիւնքն։

Իսկ գալով հայ գաղթականութեան բազմութեանն և թուոյն,

կասանդէ մեզ Տարածման Հաւատոյ դիւանն թէ հասած է այն մինչև երկումարիւր այր, հաշուելով ի միասին նաև առժամանակեայ բնակողները և պանդուխտները: Շուրջ յամն 1600, Հայազգեաց վաճառատեղիքն և սենեակքն կը հաշուին եղեր մինչև հարիւր և քսան:

Քահանայք հայազգիք որ էին ի Լիվոռնոյ՝ դեռ ևս եկեղեցի չունելով առանձինն, ստիպուած էին Լատինաց եկեղեցիներուն մէջ հոգևոր պաշտօնները և ազգային արարողութիւնքն կատարել, ունելով իրենց օգնական նաև տիրացուներ:

Հայ ննջեցեալքն կը թաղուէին Լատինաց եկեղեցիները, ուր կային ոչ սակաւ հայագիր արձանագրութիւնք. այլ այսպիսի տապանագիրք, յետ ժամանակաց բարձուած են, և միայն Ֆրանչիսկեան կրօնաւորաց Տիրամայր անուն եկեղեցւոյն և վանաց գաւթին մէջ դեռ ևս կը պահուին մինչև այսօր եօթն հայերէն տապանագիրք, որոնց ոմանց օրինակները կը դնենք աստէն:

Ա. «Այս է հանգիստ Ջուղայեցի Ղազար Սաֆարի որդի Սէթին որ հանգեաւ ի Տէր Յիսուս ի թուին ՌՃԿ. Օգոստոս Թ. և ընտրեաց զաղքատս իւրն ժառանգք»:

Բ. «Այս է տապան Ջուղայեցի Մալուֆի որդին Յակոբին որ հանգեաւ ի թուին Հայոց ՌՃԺԸ. Օգոստոս ԺԱ»:

Գ. «Այս է հանգիստ Ագուլեցի Աղաչենց Խաչոյի որդի Փանոսի, որ հանգեաւ ի Քրիստոս ի թուին ՌՃԺԷ. Հոկտեմբեր ԺԱ» :

Վերոյիշեալ Ֆրանչիսկեանց եկեղեցին, որպէս նաև երբեմն Ս. Յուլիանեայ, և երբեմն Ողորմածասէր Եղբայրութեան Եկեղեցիները կատարուած են հայկական արարողութիւնքն, մինչև ի շինութիւն և ի կատարումն Հայոց Եկեղեցւոյն յետ ժամանակաց՝ այս է յամն 1714:

Հարկ է աստէն յայտնել ևս Լիվոռնոյ գաղթող Հայոց որպիսի դաւանութեամբ վարիլն: Տարածման Հաւատոյ Դիւանն ունի և յայսմ մասին վաւերական յիշատակութիւն, թէ յամին

1627 ի Լիվոռնոյ կաթողիկեայ դաւանութեամբ և հաստատուն բնակութեամբ կը հաշուէին յիսուն այրք: Որոնց հոգևոր առաջնորդութեան համար առաքուած էր ի Հռովմայ հայազգի վարդապետ մն, զոր և կը կոչէին հասարակօրէն Փախճուր: Ի վերայ այսր ամենայնի են նամակք որք կը յիշատակեն թէ ի Լիվոռնոյ հետզհետէ յաճախող և երթևեկող պանդխտաց հետ եկած են եւ երբեմն երբեմն երեցք և վարդապետք չկաթողիկեայք: Որոնց միոյն անխտրաբար հոգևոր պաշտօն կատարելուն համար ի Լիվոռնոյ, Տարածման Հաւատոյ ծիրանաւոր Նախագահն հրաւիրեց զայն որ հաւատոյ դաւանութիւն տայ. այլ ամենևին չյօժարեցաւ երեցն պահանջուած դաւանութիւնն տալու, հետևաբար արգիլուեցաւ ի հոգևորս: Մի և նոյն ժամանակներ առաքուեցաւ ի Հռովմայ հայազգի Նիկողայոս ոմն, որ երկայն տարիներ ի Լիվոռնոյ բնակեցաւ, հովուելով միշտ Հայոց ուղիղ վարդապետութեամբ առաջնորդուելուն: Այլ երբ յիշեալ Նիկողայոսն մեկնեցաւ նոյն քաղաքէն, փոխանակեցին անոր տեղ կրկին հայազգի վարդապետք, որոնց անուանքն թէ և կը պակսին ի յիշատակագրին, բայց ըստ մեզ և հաւանականաբար են Բարսեղ և Յովհաննէս անուն Կոստանդնուպոլսեցի վարդապետներն, որոնց ի Լիվոռնոյ ըլլալն շուրջ այն ժամանակներն յայտ է ևս յայլուստ: Իւրաքանչիւրն յիշեալ վարդապետներէն իրենց պէտոյիցն և ապրուստին համար կընդունէին ի Հռովմայ տարեկան թոշակ հարիւրական արծաթեայ սկուտ: Թէ և էին նուաղունք և զովելի պաշտօնեայք Սեղանոյն, բայց ազգայիններէն ոմանց ամենևին չէին եղած հաճոյ:

Ըստ յիշատակագրի միոյ՝ Կոստանդնուպոլսոյ Պատրիարքարանն փութացեր է առաքել ի Լիվոռնոյ յսկիզբն 1667 տարւոյն վարդապետ մի, որուն գալուստն ոչ սակաւ յուզմանց և վրդովմանց պատճառ է եղեր: Ուր ազգայնոց մեծագոյն մասըն թէ և չէին հանդուրժել նորեկ վարդապետին հետ, այլ անոր ճարպիկ հնարիւքն որսացեալք, միաբանեցան Ֆերտի֊

նանտոս Բ. Աւագ Դքսին աղերսագիր մատուցանել, որպէս զի բառնայ և արտաքսէ իւրենց հոգաբարձու կրկին կաթողիկեայ վարդապետները: Ֆերտինանտոս Բ. զիջաւ անոնց աղերսին, և ի ձեռն քաղաքապետին աքսորել տուաւ անմիջապէս ի Լի-վոռնոյէ կրկին վարդապետքն: Այլ կարճ եղաւ անոնց աքսո-րըն. վասն զի Սրբազան Քահանայապետն Կղեմէս Թ. միջա-նորդ այսպիսի եղած անարգանաց համար, փութաց ուժգո-նութիւն յայտնելու ի Հռովմ Տոսկանական տէրութեան Դես-պանին. որով կաթողիկեայ կրկին վարդապետք վերադարձան հոգևորապէս առաջնորդելու հայազգի ժողովրդեանն ի Լիվոռ-նոյ: Եւ մնացին հոն մինչև ի 1669, երբ եկին անոնց տեղն փոխանակելու ի Հռովմայ կրկին Դոմինիկեան կարգի քահա-նայք, և հայազգիքն դարձան յարևելս:

Այսպիսի Դոմինիկեան յաջորդք վարժ էին և գիտակ հայե-րէնի, բայց և այնպէս ունէին իրենց հետ ի հոգաբարձութիւն ժողովրդեան հայազգի քահանայ մի, որ և ունէր ուղղակի յա-րաբերութիւն Տարածման Հաւատոյ ծիրանաւորին հետ, և կընդունէր ծիրանաւորէն թոշակ տարին վաթսուն սկուտ:

Հայազգի գաղթական ժողովրդեան ի Լիվոռնոյ քաղաքն հոգաբարձու քահանայքն ի պակասութեան մերազնեայ պատ-շաճեալ քահանայից, ոչ միայն եղեր են ի Դոմինիկեանց, այլ և ի Կարմեղեան կրօնաւորաց և ի Ֆրանչիսկեանց վարժեալք հայ-կական լեզուին մէջ Հայաստան առաքելութիւն ըրած ժամա-նակնին: Այլ և եղած են հայազգի լատինածէս քահա-նայք, և նոյն իսկ Լիվոռնոյի գաղթականաց որդիներէն ո-մանք որ ուսեալք ի Լիվոռնոյ առ լատինս քահանայացան: Այսպիսեաց վրայ ունինք առանձին յիշատակութիւն ընել ի կարգին:

Հետևաբար ապացուցեալ է որ Տարածման Հաւատոյ Ս. Ժողովն գրեթէ հարիւր յիսուն տարուան միջոց մեծապէս հոգացեր է Լիվոռնոյի հայ ժողովուրդն, և ուղղակի իւրենին անուանելովն և կարգելովն անոնց հոգաբարձու քահանայքն

թէ Հայազգի և թէ լատին վճարած է շարունակաբար անոնց ապրուստի համար տարեկան թոշակ:

Մինչև ցարդ գրեցինք փոքր ի շատէ մեր քաղած ծանօ_թութեանց համեմատ մերային եկեղեցականաց, և ինչ ինչ գիտելեաց վրայօք. իսկ արդ ունինք գրելու ազգային երևե_լեաց ոմանց վրայ, որոնք ազգային եկեղեցւոյն կանգնման փափաքելով սկսան Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն հետ երկայն բանակցութիւնք. կարևորագոյն ըլլալով բանակցու_թիւնքն՝ արժանի են յիշատակութեան: Անդստին ի սկզբանէ հետէ՝ մանաւորապէս եօթնետասներորդ դարուն մէջ Հայ_ազգի գաղթականքն ի Լիվոռնոյ ջանացին և հարկաւոր մի_ջոցներն ի գործ դրին որ սեպհական և յատուկ եկեղեցի կանգնեն, ունելով իրենց մէջ մեծատուն և յօժարակամ բա_րերար մարդիկ՝ որոնք պատրաստ էին խոստանալով իրեն սեպհական ստացուածովն ծախքն հոգալու: Ամենայն ազգք գաղթականք ի Լիվոռնոյ առանց ինչ դժուարութեանց կանգ_նած էին իրենց աղօթատեղիքն. և միայն Հայոց եկեղեցւոյն շինութիւնն դիւրութեամբ չկատարեցաւ: Ընդդիմադիրներէն մին էր Պիզայու Արքեպիսկոպոս Տէրօնթի Տէլչի անուն, որ գրելո_վըն ի Հռոմ երկար ժամանակ հակառակեցաւ Հայոց*: Նե_րուի մեզ Հալաճեան Հայր Կարապետին գրով թողած մէկ խորհրդածութիւնն յառաջ բերել: Արդ կը գրէ նա ինքն թէ Լիվոռնոյի Հայք ի միասին առնելով՝ համանգամայն չունէին ինչ մոլորական դաւանութիւն, սակայն թէ ո՞չ շնորհուած ար_տօնութեանց զօրութեամբն կարող էին Բողոքականաց նման դիւրութեամբ ձեռնամուխ ըլլալ եկեղեցւոյն շինութեանն: Ե_թէ ունէին մոլորական աղանդ, ընդէ՞ր չթողին կանգնել եկե_ղեցի. իսկ եթէ չունէին ինչ մոլորական՝ դարձեալ կրկնեմ ըն_դէ՞ր չթողին կանգնել: Որով կը հետևցնէ որ կային հակառա_

* Որպէս կը վկայէ Ագոնց Գիւղեր ի խօսելն Լիվոռնոյի Հայոց վրայ.

կորւք, որոնց նպատակն այլ ինչ էր, և ոչ Հայոց կասկածելի դաւանութիւնն:

Սակայն ինչ զարտուղեալ մեր բնաբանէն՝ աւանդենք մեր ազնեայ տասնուերկու երևելեաց անուանքն որ էին ի Լիվոռնոյ յամին 1646: Եւ են հետևեալքն ըստ կարգի.

Սանցի Խօճա Սաֆար որդի Խօճա Սինանի
Կեսարացի Պայրամ Չէլէպի որդի Խօճա Հալապլի
Կեսարացի Խօճա Պուտակ Գաթըրճեանց
Գաղատացի Յակոբ Չէլէպի որդի Խօճա Պայրամշահի
Կեսարացի Սիմոն Չէլէպի որդի Խօճա Թովմայի
Եւդոկիացի Խօճա Ալեքսան որդի Խօճա Ղազարի
Կեսարացի Խօճա Պօղոս որդի Խ. Ուզունեարմասի
Կեսարացի Խօճա Փանոս Աբելեանց
Զմիւռնիացի Խօճա Սարգիս որդի Խօճա Պօղոսի
Զմիւռնիացի Խօճա Յովհաննէս որդի Խօճա Մուրասի
Կեսարացի Խօճա Պայրամ որդի Էմիր Պալուն
Զմիւռնիացի Խօճա Մարտիրոս որդի Խօճա Սարգսի:

Յիշեալքն 1646ին հրաւիրեցան ի Լուքքա քաղաք մերոյս Հայկազն Սրբոյն Դաւթի նշխարաց փոխադրութեան առթիւ, ուր Սրբոյն դագաղն իրենց ուսոցն վրայ տանելով հանդիսական շքեղ թափորի մէջ առաւելապէս պատուեցան: Մերոյս Սրբոյն Դաւթի յիշատակութեամբն՝ յարմար կը դատիմք նշանակել ևս այլ քանի մի ազգայնոց անուանքն որ առաջնորդութեամբ Եւդոկիացի Խօճա Ալեքսանի ուխտագնաց եղեր են 1656ին ի Լիվոռնոյէ ի Լուքքա քաղաք. որոց անուանք են Վանեցի Խօճա Սարգիս որդի Ասլանի, Կեսարացի Խօճա Ասլան որդի Պօղոսի, Վանցի Խօճա Մարկոս որդի Թորոսի, Նախջուանցի Խօճա Եսայի որդի Մովսէսի:

Գիտելով Հայոց իրենց եկեղեցւոյ շինութիւնն հակառակողաց զօրութիւնն չվհատեցան, այլ շարունակեցին իրենց աղերսագիրներն առաքել ի Հռովմ սկսեալ 1660էն, որոնք դժբաղդաբար անպտուղք մնացին Ս. Ժողովոյն դանդաղելովն հաւա-

նութիւն տալու: Մերազնեայց մէջ մեծատուն մի Աղրօ Չէլէպի անուն ազգային եկեղեցւոյն անհրաժեշտ հարկաւորութեանըն զգածեալ դնեց 1663ին Քահանայապետական Նուիրակին որ ի Փլորենտիա, որուն միջնորդութեանըն աղերս մատոյց ի Հռոմ երաշխաւորելով որ Հայոց կանգնելի եկեղեցին կաթողիկէ կրօնին վարդապետութեան միշտ հպատակ ըլլայ և անով վարուի: Իսկ Տ. Հ. Ս. Ժողովոյն Քարտուղարն Մոնսինեօր Ալպերիչի փութաց պատասխանելու Փլորենտիոյ Առաքելական Նուիրակին այսու եղանակաւ. «Չէ պիտոյ դիւրաւ վստահիլ Հայ ժողովրդեան, որ իրեն յատուկ ազգային ծէսերն և արարողութիւնքն կատարելու պատրուակաւ կարող է Ս. Գահին հանդէպ, և ակն յանդիման ամենուն հերձեալ եկեղեցի մի կանգնել: Մանաւանդ որ Դոսկանեան Տէրութեան շնորհած արտօնութեանց պատճառաւ, և վաճառականաց հետզհետէ յաճախելովն ի Լիվոռնոյ, հնարաւոր չէր ըլլար ըստ կարելւոյն հարկաւոր դատուած միջոցներն ի գործ դնել, և զգուշութեամբ հսկել անոնց վրայ»:

Այլ Փլորենտիոյ Առաքելական Նուիրակն ընդունելովն այնպիսի պատասխան, ուղեց այլ գրութիւն Տ. Հ. Ս. Ժ. Ծիրանաւորին. յիշեալ պատասխանւոյ մէջ յառաջ բերուած պատճառաբանութեանց փոխարէն, կապահովէր զայն այսպէս. Աղրօ Չէլէպին փափաքելովն իւր ծախուք շինել եկեղեցին, կը խոստանայ որ ուղղափառականէն զատ այլ արարողութիւնք չկատարուին նոյնին մէջ. և հսկող ըլլան եկեղեցւոյն մէջ կաթողիկէ կրօնին ուղղափառութեանն թէ միճակատր Արքեպիսկոպոսն և թէ Սրբազնութեան դատաւորք: Տ. Հ. Ս. Ժ. բաւական չհամարեցաւ խոստացուած ապահովութիւնքն Աղրօ Չէլէպւոյն կողմանէ. ուստի հրամայեց զԱղրօ Չէլէպի որ հաճի ինքնին նախ հաւատոյ դաւանութիւն տալ, որպէս զի յետոյ խորհրդածութեան առնուի եկեղեցւոյն շինման առաջարկութիւնն: Աղրօ Չէլէպին վշտացաւ խնդրոյն անյաջող ելիցն համար, ուստի բնաւ յանձն չառաւ հաւատոյ

*դաւանութիւնն տալ: Յետ որոյ յամին 1667ին Կ. Պօլսոյ Պատրիարքէն առաքուած վարդապետին առաջարկն ի գործ դըրին խնդրելով Աւագ Դպրէն իրենց հոգաբարձու երկու քահանայից աքսորն. որպէս յիշատակած եմք արդէն վերագոյն:*

*Երևանցի Առաքել Եպիսկոպոս 1668ին եկաւ ի Լիվոռնոյ, և բազում սիրով հիւրընկալեցաւ մեծամեծներէն, ուր մնալով սակաւ ժամանակ մի անդրէն դարձ արար յարևելս:*

*Գիտելի որ 1674ին արգիլեցաւ Հայոց ի Լիվոռնոյ Յուլիական Տումարին կիրառութիւնն. այսպիսի արգելումն տեղի տուաւ գանգատանաց և տժգոհութեան, վասն զի հակառակ էին նոյնութեանց: Վերջապէս Ս. Գահն ստիպեալ Հայոց անվերջանալի տրտունջէն, որպէս նաև բարեգործ Պարոն Աստուածատրոյ աղերսէն՝ թոյլ տուաւ յամին 1699 վերստին Յուլիականն գործածել, այս է հինն: Սակայն յետոյ եկեղեցւոյն շինութենէն վերջ ինչ ինչ անպատեհութեանց պատճառաւ Հայք ինքնին յօժարեցան, հնոյն փոխարէն նորն՝ Գրիգորեան տոմարն գործածելու:*

*Հայոց շինելի եկեղեցւոյն համար, վիճակաւոր Արքեպիսկոպոսին կողմանէ եղած հակառակութիւնն, որպէս նաև Հռովմայու կողմանէ պատշաճ հրամանին շնորհուելուն դանդաղումըն ընդհատեցին առ ժամանակ մի առաջաւորաց բանակցութիւնք, որոց ոմանք տժգոհութեամբ լցեալ թողին Լիվոռնոյ, և ի Վենետիկ փոխադրեցան: Ժամանակին կորուստներն ամբաւ ըլլալով՝ մեզ անհնարին կըլլայ այսպիսի երևելեաց իւրաքանչիւրին համար թէ՛ ազգաբանական և թէ անձնական կացութեանց վրայօք առանձնակի և լիովին տեղեկութիւններ տալ: Այսպիսի առաջաւորաց կարգին մէջ արժանի է համադասել և յիշատակել զՊասպար Սահրատ, կամ Սերաթին Զէլէպին՝ որ փափագելով Լիվոռնոյի մերազնեայ գաղթականութեան միշտ ծաղկեալ և բարեկրօն վիճակին մէջ տևողականութիւնն, այսպէս նա Հայազգի Առաջնորդաց ներկայութեամբն կաթողիկէ հասարակութեան կերպարանքն պահուի,*

*թոյուց ի Հռոմ բարեպաշտական և ազգասիրական յիշատակ. պարգևելով Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն դրամական գումար մի, որպէս զի գումարին հասոյթովն, Ս. Ժողովն պարտաւորի Անկոնայ հայազգի Առաջնորդ կարգել ժողովրդեան հոգևորապէս առաջնորդելու համար: Գումարն էր հինգհարիւր Բեցցա, որ է Տոսկանական դրամ ինչ: Սերաֆին Ջէլէպիին բարերարութիւնն անշուշտ ի դպրութեան կենաց գրեալ է*:*

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

**Աշխարհ առաքելութեան. Յովհաննէս Վ. Ջախջախեան, առաքելութեան աշխատութիւնք, Ոսկան Վ. ի Լեհաստան, Երեք Ջախջախեան եղբարք, Թադէոս Երէց Համշաղեան, ինչէր երեք Ջախջախեանց հետ, բանադրելութեան և Պատրիարքին Համշաղեանի, Պետրոս Վ. Մուրատեան: Այլ և այլ հայկական հաստատութիւնք ի Լեհաստան, առաքելական քրեանց յիշատակութեան, առաքելոց քերթն:**

*Ի շարս հայազգի գաղթականութեանց, Անկոնայինն նշանաւոր եղած է ոչ միայն հին վաճառականօրն, այլ և տպագրական արդեանցը դատուելովն յետ Վենետիկեան և Ամստերտամեան տպագրութեանց: Մենք առաջին ունինք աւանդել յառաջիկայս որ ինչ գիտնալու արժանի է ի Անկոնոյ հաստատուած քանի մի տպարանաց, զանոնք հաստատողացն, որպէս նաև հրատարակեալ գրեանց անուանքն մի ըստ միոջէ յիշատակել, նուերով Հայկական Մատենագիտու_*

** Իտալական նոր կազմեալ Միապետութիւնն դէպ ի յետին ժամանակս գրաւելով ի Հռոմ Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն ամբաւ կալուածքն. Իւրաքանչիւր քրիստոնեայ ազգք և պետութիւնք բողոքեցին այնպիսի կեղեքման դէմ. Արդ թէ և սակաւ, սակայն և հայք ունին իրենց մասն, յիշեալ կալուածոց մէջ:*

թիւն կոչեցեալ գրոց Պատուական Հաւաքչին: Այսպիսի տըպագրութիւնք ընդհանրապէս եղած են եօթնևտասներորդ դարուն մէջ, և են Սաղմոս փոքրադիր, Պարտէզ հոգևոր, Քրիստոնէական Բեղարմինոսի, Քերականութիւն, Շարակնոց, Պատմութիւն Փոնցիանոս Կայսեր, Պատմութիւն դարձի Հրէին, Պարզատումար Հռովմէական, Բառգիրք Հայոց, Աշխարհագրութիւն Վարդանայ, և այլն:

Լիվոռնոյի տպագրութեանց առաջինն եղաւ 1642ին փոքրադիր Սաղմոսն Ջուղայեցի Յովհաննէս անուն Վարդապետին արդեամբ որ էր միաբան Ամենափրկիչ վանաց, և հմտագոյն ի տպագրական արուեստ: Յիշեալ Ջուղայեցի Վարդապետն ի Հռովմ նորակազմ հայկական գրեր ձուլել տուաւ, և Դոսկանայու վարչութեան թոյլտուութեամբն ի Լիվոռնոյ տպարան մի հաստատեց, կատարելով իւր փոքրադիր սաղմոսաց տպագրութիւնն ութսուն օրուան մէջ: Փոքրադիր սաղմոսաց յիշատակարանին մէջ այս ամենայն նշանակեալ է հետևեալ եղանակաւ. «Յիսուսի Քրիստոսի ծառայ Յովհաննէս Ջուղայեցի, շնորհօքն Աստուծոյ վարդապետ և սպասաւոր սուրբ Էջմիածնի, որ ի թուին ՌՁԲ». Եւ ի հանդիպոյ հետևեալ ընծայագրութիւնն կամ ողջունագիր առ Խաչատուր Վարդապետ Կեսարացի, առաջնորդ վանիցն Ջուղայու. — «Արդ ըստ հրամանի և ըստ կամաց սուրբ Հօրդ իմոյ... ի. թվն. ՌՁԲ բաժանեալ ի սուրբ ուխտէ դիմեցի յարևմուտս առկս լրութեան տպագրութեանս. և ի սպառուածս ամի միոյ՝ որ ընդ ծով և ընդ ցամաք՝ հասի յԻտալիայ ի գեղազարդ քաղաքն ի Վենետիկ. և վերահասու եղեալ գործառնութեանց, ընթացայ ի Հռովմ. և անդ սկիզբն արարի նորագոյն գրոց և տպոց. և աւարտեալ մասն ինչ ի գործոցս՝ առի զարհեստաւորս և դիմեցի ի Լիվոռնոյ. անդ զտեղի կալեալ մեծաւ ջանիւ և բարի դիտաւորութեամբ, տիւ և գիշեր անդադար աշխատելով լրումն տուաք տպագրութեանս. յերկարելով յաշխատութիւնս բաց 'ի ճանապարհէն երեք ամ և վեց ամիս, անմխիթար յամենայն կողմանց:

«Եւ շնորհօք Ամենազօրն Աստուծոյ, և աղօթիւք Տեառն իմոյ աւարտեցաք զտպագրութիւնս անթերի և անպակաս կատարելութեամբ. որք են տիպք զանազանք՝ ըստ զանազան քանակութեան և որակութեան, մեծ և փոքր՝ ութիւք որոշեալք. ընդ որոց է և նիւթ երգոց և շարականաց, և այլ գործիք բազում, զարդարիչք տպագրութեանս, որով ամենայն ինչ կարելի է տպել, յորոց իբր միջին կերպ է այս... իբրև զփորձ տպեցաք զաս յոյժ շտապմամբ. զի յաւուրս ութսուն աւարտեցաք զաս հազար և յիսուն հատ թուով ի միասին. միայն և առանց ուրուք ձեռնտուի...... ի Լիվոռնոյ ի Թվ. ՌՂԴ. Մայիս Ժ»: Ի ճակատ սաղմոսարանին գրեալ է. «Գիրք և Սաղմոսք Դաւթի, որ և սաղմոսարան կոչի. տպագրեալ եղև ի Հայրապետութեան Հայոց Տէր Փիլիպպոս Սրբազան կաթողիկոսի, հրամանաւ և կամօք երջանիկ Խաչատուր Վարդապետին Կեսարացւոյ. ձեռամբ և հոգացողութեամբ նուաստ Յովհաննէս Վարդապետի Ջուղայեցւոյ յիւրում տպարանի զոր կայացոյց յԻտալիա. ի վայելուչ քաղաքն և ի նաւահանգստին Լիվոռնոյ ի Թվ. ՌՂԴ: Յօժարութեամբ վերակացուաց»:

Աւարտեալ ի Լիվոռնոյ տպագրական առջինեկ գործն յիշեալ Ջուղայեցի Յովհաննէս Վարդապետ եւս գնաց ի Լիվոռնոյէ, փոխադրելով իւր հայրենի քաղաքն տպարանն և վերաբերեալքն. ուր պարապեցաւ այլ և այլ կարևոր տպագրութիւններ ընելու: Գուցէ ի Լիվոռնոյէ աճապարանօք երթն ի բաց եղած ըլլայ գաղթականաց մէջ յուսացած սատարութիւնն չգտնելուն համար, որպէս ինքնին կը ծանուցանէ զայն իւր հրատարակած սաղմոսարանին յիշատակարանաւն:

Յետ բարձման առաջին տպարանին ի Լիվոռնոյէ, եկած է անդ հռչակաւորն և մեծն ի տպագրապետս Ոսկան Վարդապետ Երևանցի և Արքեպիսկոպոս միաբան Ս. Էջմիածնի յայցելութիւն մերազնեայց, որպէս զի անոնց սատարութեամբն կարող ըլլայ Աստուածաշունչ Ս. Գրոց տպագրութիւնն ընել, և չյաջողելովն առաջին անգամն, քանիցս երթևեկեր է ի Լիվոռնոյ,

ուր այնչափ հակառակ մարդոց մէջ գտնը է միայն երեք Ջուղայեցի Պայազատներ Ստեփաննոս, Թէոդորոս և Պետրոս անուամբք: Որոնք ոչ միայն յօժարեր են, այլ և դաշնադրութեամբ ձեռընտու եղեր են Ոսկանայ Վարդապետին, որպէս նա ինքն Ոսկան Վարդապետ գրով աւանդած է ըստ հետեւեալ եղանակին. «Գոհութիւն, պատիւ, և փառք Աստուծոյ զի ետ զկարողութիւն անարժանութեան իմում ձեռընտութեամբ և օժանդակութեամբ ընկերակցութեան մարմնականօք զոյիւք Պայազատափառաց Ստեփաննոսի, Թէոդորոսի և Պետրոսի Ջուղայեցւոց. քանզի աստուածասէրք և կորովիքս այսոքիկ հայելով ի նուազութիւն աստուածայնոց կտակարանաց որ ի մէջ ազգիս Հայոց, մանաւանդ վարդապետաց և վանականաց և գրոց աշակերտաց, վասն որոյ ջերմեռանդն սիրով յօժարեալք յորդորեցին զմիմեանս քաջալերելով և զիմս նուաստութիւն, որ սակս զոյից փարանէի. ձեռնտուք եղեն ինձ գործառնութեանս այսմիկ, տալով առատապէս զծախս դրամոյն ըստ որում և յորժամ պիտոյանայր:

«Քանզի ես իշխանութեամբ և հրամանաւ վեհափառի Կաթողիկոսի Տեառն Յակոբու Ներթուոյ Փրկչին հազարերորդի վեցհարիւրորդի վաթսներորդի երկրորդի. իսկ ըստ Հայոց թուոյ հազարերորդի հարիւրորդի մետասաներորդի, Սեպտեմբերի Ին. ելեալ յերկրէ և յազգէ իմմէ, դիմեցի ի կողմանս Եւրոպիոյ, յաղագս տպման մատենից այսոցիկ աստուածայնոյ, և բազմաւ վշտիւ և տառապակրութեամբ եկեալ հասի ի սահմանս Իտալիոյ յերկիրն Դոսկանու, ի քաղաքն Լիվոռնոյ. Եւ նախնում նուագում զոչ ոք գտի ինձ զօժանդակ, սակս որոյ թողեալ գնացի ի Հռովմ, գոնեա անդ գտցի յաջողութիւն գործառնութեանս, և անդ ևս ոչ եղև ինչ մխիթարութիւն օգնականութեան գործոյս, վասն յոգունց պատճառաց ներհակականաց, թէ ի մերայնոց ազանց, և թէ ինքեանց կանոնաց և սահմանաց: Իսկ ի դառնալն իմում անդրէն ի Լիվոռնոյ յետ բազմաց հակառակութեանց ուստակասպանից ա_

բանց, և փառքուաց մեծայնոց ազանց, որք ոչ զօգուտ ազգի և զՍրբոյ Աթոռոյն, այլ զանձանց զցանկութիւն, և կամաց զհաճութիւն կամէին լնուլ, որոց ընդդիմակայեալ, զոչ ինչ ետու հաւանութեան բանս. այլ ընդ երից հաւատարմագունից, վերագրելոց արանց և քրիստոսասիրաց՝ յետ բազմաց քննութեանց և հարցփորձութեանց միաբանեցայ սիրով, և դաշնադրականաւ գրով, զի սոքա երեքեանս ընդ իս հոգացեն զամենայն զծախս վերագրեցելոյ մատենին մինչև ցաւարտ, առ յօգուտ ազգիս և ի շահ Սրբոյ Աթոռոյն:

« Բայց այսպիսի եղև պայմանն. քանզի ի թուին ՌՃԺԴ, Փետրուարի Ի. վերոյգրեցեալ Պարոն Ստեփաննոսն և Պարոն Պետրոսն խոստացան զաւելեալ շահսն որ ի վաճառմանէ Աստուածաշնչոյն լինիցի տալ Ս. Էջմիածնի. նոյնպէս և Պարոն Թէոդորոսն զիւր բաժնի շահոյ զկէսն խոստացաւ Ս. Երուսաղէմի, և զկէսն Յուշոյվանից Սրբոյն Սարգսի զօրավարի: Այսու պայմանաւ ես ևս չու արարեալ հասի ի կողմանս հիւսիսայնոյ... ի քաղաքս յԱմսթելտամի ի տպարան Սրբոյ Էջմիածնի և Սրբոյն Սարգսի զօրավարի, ուրանօր սկիզբն արարի տպել զգործքն զորս Աւետիքն էր արարեալ» և այլն:

Ոսկան Վարդապետ կաւանդէ այլուր որ իւր Աստուածաշունչ Ս. Գրոց համար գրեր ծուլել տուեր է ի Լիվոռնոյ, ըսելովն. « Իսկ ի հասանելն իմ աստ (ի Լիվոռնոյ) ձեռնարկեալ ետու քանդակել զնօտր գիրս սակս խորագրութեան Աստուածաշնչին, որ մեծաւ ջանիւ հազիւ մինչև ի չորս ամիսն աւարտեցաւ »: Յիշեալ Ոսկան Վարդապետ շրջելով երթևեկած է այս երեք քաղաքներն Լիվոռնոյ, Ամստերտամ, և Մարսիլիա. և մերթ աստ և մերթ անդ բազմամթիւ տպագրութիւններ ըրեր է ունելով իւր օգնական Աւետիս Եղբայրն և քանի մի Վարդապետներ և այլն: Ամստերտամի մէջ տպեալ շարակնոցաց մէջ տեղ Լիվոռնոյի յիշատակութիւնքն եղած են: Մերս Ոսկանայ Վարդապետի ի Լիվոռնոյ հաստատեալ տպարանն յանուն Սրբոյն Սարգսի զօրավարի 1669 ին հրատարակեր է

Բելլարմինոսի Քրիստոնէականին հայկական թարգմանութիւնն, որպէս նաև յաջորդ տարին Պարտէզ հոգևոր կոչեցեալ գրոց տպագրութիւնն: Որոց յիշատակարանքն են ըստ այսմ. « Տպագրեցաւ տառս Աստուածային յամին որ ի ծննդենէ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի հազար և վեց հարիւր և եօթանասուն, ի թուականութեանս Հայոց հազար հարիւրի և տասներորդի յԱլիկուռնայ. ի փառս մեծազօրին Աստուծոյ ներտպարանում Սրբոյ Էջմիածնի, հաճութեամբ Տեառն Ոսկանի Արքեպիսկոպոսի Հայոց: Սրբագրութեամբ Կարապետի Վարդապետի Ադրիանացւոյ »:

Իսկ Պարտէզ հոգևորին է. « Աւարտեցաւ գրքոյկս որ կոչի Պարտէզ հոգևոր ի թուին Հայոց ՌՃԻ. հաւանութեամբ Տեառն Ոսկանի Երևանցւոյ, և սրբագրութեամբ Կարապետ Վարդապետի Ադրիանացւոյ, Լիպուռնի որ է Լիվոռնոյ »:

Վերագոյն յիշատակեալ Պայազատքն Սանփաննոս, Թէոդորոս և Պետրոս երեքն ևս Լիվոռնոյի գաղթական վաճառականաց և առաջատրաց դասէն, որոնք ըստ վկայութեան Ոսկանայ Վարդապետի այնքան ազգասիրութեամբ և բարեպաշտութեամբ ձեռընտու եղած էին իրենց դրամական օգնութեամբն Աստուածաշունչ Ս. Գրոց տպագրութեան. մի և նոյն ժամանակէն մնացեալ այլ գրուածով՝ չարաչար և անխնայ եղանակաւ պարսաւուած են: Գրուածն է ութհարիւր տողերէ բաղկացեալ և չափեալ ոտանաւոր վիպասանութիւն մի, որ տպագրեալ է ի Վիէննա ի վանս Մխիթարեանց յամին 1887, « Հանդէս Ամսօրեայ » կոչուած ամսաթերթից մէջ, էջ 170: Գրիչ վիպասանութեանն է Երևանցի Թադէոս Երէց Համազասպեան որ մեծահատոր ճաշոցաց տպագրութեամբն ի Վենետիկ նշանաւոր և անուանի եղած է:

Այսպիսի Պարսաւագրին կամ վիպասանութեան մէջ Համազասպեանն վոփին կենսագրութիւն և ազգարանութիւն ըրած է վերագոյն յիշատակեալ Լիվոռնոյի երեք վաճառա-

կանանցն, տալով իւր գրուածոյն անուն լոկ այսմ. «Պատմութիւն Պետրոսի Աւագ Գոնտոյին Հայոց,և Երկու ընկերացն Քթուշենց Դեղորոսին (Թէոդորոսին) և Խանենց Ստեփանին»: Որով Թադէոս Երէց կ'աւանդէ Օսկան Վարդապետին ի Լիվոռնոյ յիշեալ երեք Ջուղայեցւոց հետ ըրած դաշնադրութիւնն Աստուածաշունչ Ս. Գրոց տպագրութեան համար, յետոյ անոնց դանդաղումն ըստ ամենայնի հարկաւոր ծախքն մատակարարելու, որով Օսկան Վարդապետ ստիպեալ ըրած է այլուստ փոխառութիւն տպագրութեան գործն աւարտելու: Աստուածաշունչ գրեանքն յանձներ է Թադէոս Երէց Համազասպեանի, որ տանի վաճառէ այլուր. Համազասպեան իւրն ի Լիվոռնոյ ուղևորեալ հիւընկալուեր է մեր երեք Ջուղայեցի վաճառականներէն, սպայմանադրութեամբ և համոզմամբ ըստորագրեր է փոխանակագիր մի և տուեր է անոնց ձեռք. Համազասպեանն կը խոստովանի որ միամտութեամբն խաբուեր է անոնց նենգութենէն, վասն զի գաղտագողի գրեանքն Կ. Պոլիս տարեր են վաճառման համար, ուստի թողը բառնալով դատաստանի գլխեր է և վկայից հաստատեր է իւր իրաւունք և երեք Ջուղայեցւոց անիրաւութիւնն. այլ փոխանակ արդարութիւն գտնելու, ի բանտ մատնուեր է, ուր վշտալից մնացեր է երկայն ամիսներ, ապա միջնորդութեամբ Առաքելական Նուիրակին ի Փլորենտիա, դատաստանն վերստին տեսանելով և վճռով արդարութեան արձակուեր է վերջապէս: Վիպասանին ամբաստանութիւնքն խիստ կը թուին մեզ, որպէս անոր պարտաքն չափազանցք, կը թողունք որ բանասէրք դատեն զայնս: Այլ եթէ ունկնդրութիւն ընենք Օսկանայ կոչեցեալ կոտակագրոյն, որչափ ծանր զանգատներ նշանակուած են Համազասպեանին դէմ: Մենք զանց կընենք զանոնք յառաջ բերելէն: Նշանաւոր է Համազասպեանին ոտանաւոր վիպասանութեան վերջաբանութեան այս մասն.

« Տըւող բարեաց ամենայնի
« Խնամեա ազգիս տառապելի

« Ողորմելի հայկեան սեռի
« Պահեա անփոյթ քոյդ հանելի
« Վէմս հաւատոյ անշարժելի
« Աթոռն ի Հռովմ սուրբ Պետրոսի
« Յաջորդ տասներորդ Տէր Կլեմէնթի
« Գոլ սրբազան Տեառն Պապի:
« Եւ ընդ սրբոյ Հայրապետի
« Հայոց Տեառն Տէր Յակոբի
« Յաջորդ սրբոյն Լուսաւորչի
« Աթոռ. սրբոյ Էջմիածնի
« Աղօթիւք սոցին է հայցելի
« Բառնալ զչար հանուրց սեռի
« Հեղուլ հոգւոյ իմանալի
« Քրիստոնէից միանալի » և այլն:

Ոտանաւոր վկայաբանութեանս յիշատակարանն է «Շնորհօք Ամենազօրին Աստուծոյ աւարտեցաւ բանս շարադրանաց յումեմնէ Թադէոսէ Երիցուէ Համազասպեան Երևանցւոյ ի թւոյ Փրկչին 1671. Ֆիօրենցա քաղաքի: Իսկ ի թուոյ Հայոց ՌՃԻ. Մարտի ամսոյն 1. և զիս զմեղաւորս յիշեցէք հայցելով ազատութիւն ի Տեառնէ. քանզի գրեցի ի բանտի, և դուք յիշեալ լիջիք ի Յիսուսէ Նազովրեցւոյ»: Յիշատակարանին կից կայ օրինակողին* յաւելուածն այսպէս. «Պատմութիւնս այս չափաբանեալ ի Համազասպեան Երիցուէ Թադէոսէ զոմանց մերազնեայց նազելեաց և զ'ի յընդհանուր ոլորտս աշխարհի և զ'ի ծաւալ ի ծագս տիեզերաց բազմազան զովասանաց արժանեաց՝ ի նախատիպ պատճենէ որքան անկն էր իսկութեամբ օրինակեցաւ ի տրուպ բանասիրէ ումեմնէ, որ և կոչի Պ. Վ. Մ. զնախկինն ընթերց որպէս վէմ, զմիւս խմ

* Օրինակիչն Պ. Վ. Մ. է Կ. Պօլսեցի Պետրոս վարդապետ Մուրատեան, որ Լիվոռնոյի Եկեղեցւոյն առաջնորդաց շարին մէջ երրորդն է, որոյ հրաժարեալ ի պաշտօնէ, յԱնքոնա փոխադրեալ անդ վախճանած է յամին 1775ին:

զերթ բարուն, իսկ զերրորդն ծանիր որպէս իսկ է որ մականուն, զոր բարբառ Հագարաց արտասանէ ըղձական, կամ որ ըստ ըղձի, և դուք օրհնեալք եղիջիք՝ յորմէ լնու զերկինս և զերկիր: Ի թուոյ Փրկչին 1774 Փետրուար ամսոյն ութն»:

Վկայութեան յանուն սրբոյն Սարգսի զօրավարի նուիրեալ տպարանն 1691ին տպագրեց Առաքելեան Խաչատուր Վարդապետի Կարնեցւոյ Քերականութիւնն, որոյ խորագիրն է. «Յօրինեալ ի ներտպարանում Ս. Էջմիածնի և Ս. Սարգսի զօրավարի յԱմիկուռնա քաղաքի, ներթուում Փրկչին 1691. Իսկ Հայոց ՌՃԽԷ. Մարտի Դ — Հեռևի առաջին և նուաստագոյն մասն որ յինքեան ներփակէ զամենայն ազատական արհեստս, այսինքն զքերականութիւն, զճռետորութիւն և զբանաստեղծութիւն: Ուստի անջատի մասս այս յերկս հատորս. յառաջնումն ընծեռեսցի զքերականութենէ, և յերկրորդում զճռետորութենէ և յերրորդում զբանաստեղծութենէ. Հատոր Ա, Յաղագս քերականութեան»:

Յամին 1696 հրատարակած է Փոնցիանոս Կայսեր պատմութեան գիրքն, որ ունի խորագիր այսպէս. «Գիրք պատմութեան Կայսերն Փոնցիանոսի և կնոջն և որդւոյն Դիոկղետիանոսի, և յեօթանց իմաստասիրաց. տպագրեալ ի ներտպարանում Սրբոյն Էջմիածնի և Սրբոյն Սարգսի զօրավարի, յԱմկուռնա քաղաքի թվոյ Փրկչին 1696. և Հայոց ՌՃԽԵ. Մայիս ԻԵ». իսկ յիշատակարանն. «Հրամանաւ Տեառն Եփրեմի Արքեպիսկոպոսի և Պատրիարգի Կ. Պօլսոյ, հոգաբարձութեամբ, ծախիւք և սրբագրութեամբ նուաստի ումեմն Մ. Ս. Դ». որ թուի Մանասեի Սահփեան Թադալեան: Յաջորդ տարին հրատակուեցաւ Պատմութիւնն դարձի և մկրտութեան Յովսեփայ Քահանկեան հրէի որ հինգ ընտանեօք ի միասին դառանցաւ ուղղափառ հաւատքն, իսկ խորագիրն է ըստ այսմ. «Պատմութիւն դարձի և մկրտութեան Յովհաննու Յովսեփայ Քահանիքեան մեծանուն հրէի բարունոյ Եբրայեցւոյ ի գաւառէն Ալամանաց արարեալ ի նմանէ ի լեզու գերմանացւոց, թարգ_

մանեալ ի հայ, յիտալական թարգմանութենէն Տէր Յակոբ Վարդապետի Ջուղայեցւոյ ելեւացոյ ի Լիվոռնոյ 1697»:

Յամին 1698 տպագրեցաւ Բառգիրքն Հայոց յօրինեալ Երեմիա Վարդապետէն, որուն խորագիրն է այսպէս. «Բառգիրք Հայոց արարեալ ի Սուրբ Էջմիածին յԵրեմիայ Վարդապետէ, և ես Սարգիս Եպիսկոպոս աշխատասիրեալ և գրաւ Աստուածաշունչ Ս. Գրոցն ընդ սմա միաւորեալ, որ և ընթերցողացն Աստուածաշունչ գրոց բաւական է լինել: Տպագրեցաւ յԱլիկուռնայ քաղաքի, և թուականութեանս Հայոց ՌՃԽԷ. և ի թուին Փրկչին 1698. Յունիս»: Եղած է ի Լիվոռնոյ այլ ևս տպագրութիւն Բառգրոց Հայոց ի թուականութեան Փրկչին 1727 և Հայոցն ՌՃՀԶ. որուն յաւելլից է Վարդանայ Վարդապետի աշխարհագրութիւնն, այլ մեզ ծանուցական չթուիր տպագրութեանն առուգիւ Լիվոռնոյ եղած ըլլալն վասն ինչ ինչ պատճառաց: Որոյ խորագիր է. «Արարեալ է աշխարհացոյց նորոգ թարգմանչին, և երկրորդ Լուսաւորչին Վարդանայ Վարդապետի պարզ և համառօտ տեսութեամբ»:

Վերջապէս յամին 1701 տպագրեալ հրատարակեցաւ Թէոփիլոս իմաստասիրին խօսակցութեան գիրքն, որոյ յառաջաբանին մէջ է հետևեալն. «Որովհետև շրջեցայ ի մէջ Հայոց, իմացեալ ճանաչեցի զնոսա ունողս զկատարեալ փափագ առ ի յիմանալ զճշմարտութիւնն հաւատոյ, և ծառայել Աստուծոյ ջերմեռանդապէս. ուստի յայտ է զի են որդիք Բարձրելոյն ըստ անէրունական բանին, վասն որոյ յոյժ տրտմեցայ, զի թէպէտ խնդրէին զհացն կենաց, բայց ոչ ոք գոյր զի բեկանիցէր նոցա պարզապէս մեկնութեամբ, որոյ աղագաւ յօժարեցայ և ես կարկառել զբանս ինչ խրատու պարզ և յստակ բանիւ»: Իսկ խորագիրն է ըստ այսմ. «Թէոփիլոս այսինքն խօսակցութիւն Թէոփիլոսի ընդ վարդապետին յաղագս ճշմարտութեան և ջերմեռանդութեան: Ի Հայրապետութեան Տեառն Նահապետի Կաթողիկոսի ամենից Հայոց ի յԱլիկուռնայ քաղաքի, յամի Տեառն 1701. Յունուարի»: Ի Լիվոռնոյ տեսած

եմք երբեմն Աւետարան մի հնագոյն տպով անթուական և առանց յիշատակարանի. զորոց ձևէն մակաբերած եմք որ թերևս և այն տպագրուած ըլլայ ի Լիվոռնոյ: Կարծիք են ոմանց որ նաև Տարականոց մի, Աղուեսագիրքն, Խորենացւոյ աշխարհագրութիւնն, Վարդանայ Առակքն, Հռովմէական Օրացոյցն և Մրգանոց հոգևոր կոչուած գրեանք տպագրուած ըլլան ի Լիվոռնոյ*:

Հայկական հրատարակութեանց ծանօթաբանութիւնն աւարտելէն առաջ, արժանի է որ զայս խորհրդածութիւնն ընենք: Ազգային տպարանին յիշատակութիւնն շարունակեալ տևած է ի Լիվոռնոյ մինչև ութևտասներորդ դարուն սկիզբն և զուգընթաց մեր եկեղեցւոյն շինութեան ժամանակին, և այնուհետև խափան դադրած է, գուցէ տպարանին և անոր գործաւորացն Էջմիածնի Աթոռոյն վերաբերած ըլլալովն Հայք կասկածելի եղած էին: Որուն ապացոյց կը համարուի 1701ին Հայոց՝ իրենց կատարելապէս կաթողիկէ ըլլալուն համար գըրած յայտարարութիւնն:

* Մենք ոչ սակաւ հետազօտութիւն ըրած ենք ի Լիվոռնոյ, որպէս նաև Էմիլ Դիզա անուն հայագէտ Իտալացին հայկական տպարանին հետքն և անոր վերաբերեալ յիշատակութիւնքն գտնել, ձեռնտու ունելով մեզ Լապրօնեան գրատան վերակացուն, այլ ի զուր եղաւ մեր աշխատութիւնն և չգտաւ ինչ ժամանակին հեռաւորութեան համար։

մանեալ ի հայ, յիտալականն թարգմանութենէն Տէր Յակոբ Վարդապետի Ջուղեսեան Եպիսկոպոսի ի Լիվոռնոյ 1697 »:

Յամին 1698 տպագրեցաւ Բառգիրքն Հայոց յօրինեալ Երեմիա Վարդապետէն, որում խորագիրն է այսպէս. « Բառգիրք Հայոց արարեալ ի Սուրբ Էջմիածին յԵրեմիայ Վարդապետէ, և ես Սարգիս Եպիսկոպոս աշխատասիրեալ և գրատս Աստուածաշունչ Ս. Գրոցն ընդ սմա միաւորեալ, որ և ընթերցողացն Աստուածաշունչ գրոց բաւական է լինել: Տպագրեցաւ յՄլիկուռնայ քաղաքի, և թուականութեանս Հայոց ՌՃԽԷ. և ի թուին Փրկչին 1698. Յունիս »: Եղած է ի Լիվոռնոյ այլ ևս տպագրութիւն Բառգրոց Հայոց ի թուականութեան Փրկչին 1727 և Հայոցն ՌՃՀԷ. որում յարակից է Վարդանայ Վարդապետի աշխարհագրութիւնն, այլ մեզ հաւանական չթուիր տպագրութեանն առուգիւ Լիվոռնոյ եղած ըլլալն վասն ինչ ինչ պատճառաց: Որոյ խորագիր է. « Արարեալ է աշխարհացոյց նորոգ թարգմանչին, և երկրորդ Լուսաւորչին Վարդանայ Վարդապետի պարզ և համառօտ տեսութեամբ »:

Վերջապէս յամին 1701 տպագրեալ հրատարակեցաւ Թէոփիլոս իմաստասիրին խօսակցութեան գիրքն, որոյ յառաջաբանին մէջ է հետևեալն. « Որովհետև շրջեցայ ի մէջ Հայոց, իմացեալ ճանաչեցի զնոսա ունողս զկատարեալ փափաք առ ի յիմանալ զճշմարտութիւնն հաւատոյ, և ծառայել Աստուծոյ ջերմեռանդապէս. ուստի յայտ է զի են որդիք Բարձրելոյն ըստ տէրունական բանին, վասն որոյ յոյժ տրտմեցայ, զի թէպէտ խնդրէին զհացն կենաց, բայց ոչ ոք գոյր զի բեկանիցէր նոցա պարզապէս մեկնութեամբ, որոյ աղագաւ յօժարեցայ և ես կարկառել զձեռն ինչ խրատու պարզ և յստակ բանիւ »: Իսկ խորագիրն է ըստ այսմ. « Թէոփիլոս այսինքն խօսակցութիւն Թէոփիլոսի ընդ վարդապետին յաղագս ճշմարտութեան և ջերմեռանդութեան: Ի Հայրապետութեան Տեառն Նահապետի Կաթողիկոսի ամենից Հայոց ի յՄլիկուռնայ քաղաքի, յամի Տեառն 1701. Յունուարի »: Ի Լիվոռնոյ տեսած

*նմք երբեմն Աւետարան մի հնագոյն տպով անթուական և առանց յիշատակարանի. զորոց ձևէն մակաբերած եմք որ թերևս և այն տպագրուած ըլլայ ի Լիվոռնոյ: Կարծիք են ոմանց որ նաև Շարակնոց մի, Աղուեսագիրքն, Խորենացւոյ աշխարհագրութիւնն, Վարդանայ Առակքն, Հռովմէական Օրացոյցն և Մրգանոց հոգևոր կոչուած գրեանք տպագրուած ըլլան ի Լիվոռնոյ*:*

*Հայկական հրատարակութեանց ծանօթաբանութիւնն աւարտելէն առաջ, արժանի է որ զայս խորհրդածութիւնն ընենք: Ազգային տպարանին յիշատակութիւնն շարունակեալ տևած է ի Լիվոռնոյ մինչև ութևտասներորդ դարուն սկիզբն և զուգընթաց մեր եկեղեցւոյն շինութեան ժամանակին, և այնուհետև իսպառ դադրած է, զուցէ տպարանին և անոր գործաւորացն Էջմիածնի Աթոռոյն վերաբերած ըլլալովն Հայք կասկածելի եղած էին: Որուն ապացոյց կը համարուի 1701ին Հայոց՝ իրենց կատարելապէս կաթողիկէ ըլլալուն համար գըրած յայտարարութիւնն:*

* *Մենք ոչ սակաւ հետազօտութիւն ըրած ենք ի Լիվոռնոյ, որպէս նաև Էմիլ Դեզա անուն հայագէտ Իտալացին հայկական տպարանին հետքն և անոր վերաբերեալ յիշատակութիւնքն գըտնել, ձեռնտու ունելով մեզ Լաբրօնեան գրատան վերակացուն, այլ ի զուր եղաւ մեր աշխատութիւնն և չգտաւ ինչ ժամանակին հեռաւորութեան համար:*

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

**Հայաստանեայց ժողովը, առաջին Ա. Դաշնագիրը, [illegible] եկեղեցւոյն [illegible] [illegible], [illegible] Բ. Դաշնագիրը, Պետութեան [illegible] [illegible], առաջին [illegible] [illegible], Պարոն Աստուածատուրը, [illegible] [illegible] է [illegible], [illegible] [illegible], [illegible] [illegible] [illegible], [illegible] եկեղեցւոյն [illegible] համար, Հայոց [illegible] — Ս. Ժողովը, [illegible] [illegible]։**

*Ապաքէն մեծամեծ ձեռնարկութիւնք և գործք խորհրդով և միաբանութեամբ յաջողեալ են կենցաղոյս մէջ: Ըստ այսմ վարուեր են և մերքն ազգային ոխտոյից և եկեղեցւոյն շինութեան համար, երբեմն երբեմն ժողովներ գումարելու իրերաց հաճութեամբ սահմանադրութիւններ հաստատելու, ևս այլ և այլ գործողութեանց ձեռնամուխ ըլլալու:*

*Արդ նշանաւոր համխմբուած է 1689ին մերայնոց նիստն. ուր ի մի վայր ժողովեալ երեսուն և չորս Հայք պարապեր են յօրինել գրութիւն մի կոչելով զայն Առաջին Դաշնագիր Հայոց ի Լիվոռնոյ՝ և ամենքինստորագրեալ վաւերացուցեր են զայն, որպէս զի իրենց առաջարկն զօրաւոր ըլլայ և ի կատար հասնի ի ժամանակին:*

*Այսպիսի Դաշնագրոյ իմաստն յայսմ կը բովանդակի.*

*Հաստատ կամեցողութեամբ ժողովականքն հոգացող ըլլան եկեղեցին շինելու ի պէտս ազգին, առաջնորդ քահանայից հայազգի ըլլալուն, եկեղեցւոյն արարողութիւնքն ըստ Հայաստանեայց ծիսի կատարուելուն, և վերջապէս թէ քահանայից և թէ աղքատաց համար՝ կանգնելի եկեղեցւոյն կից բնակարաններ շինուելուն: — Ցիշեալ նստին մէջ ընտրեցաւ ազգին կողմանէ իբր պատգամաւոր Աղբօ Գէորգ Ջէլէպին, տալով անոր լիովին կարողութիւն, բարեբարպաց շնորհած որոր

մութիւնքն հաւաքելու, Ֆրանչիսկեանց վանուց վերաբերեալ պարտէզն գնելու յանուն ազգին, և ի յարմար ժամանակի սկսելու եկեղեցւոյն հիմնարկութիւնն:*

Այլ Գէորգ Չէլէպին 1692ին հաւաքած ունելով բաւական դրամ, իբր պատգամաւոր Ազգին գնեց Ֆրանչիսկեանց պարտէզն, վճարելով հինգհազար չորսհարիւր ութսուն և ինն բէցցա Դուկանայու դրամով, որ կը համապատասխանէ 26, 512 ֆրանգաց Գաղղիոյ: Անաւասիկ այս է մուրհակին համառօտութիւնն որ գրեալ և ստորագրեալ եղաւ արքունի նօտար Պարսօթթինի միջնորդութեամբն. « Յանուն Աստուծոյ ի 19 Փետրուարի 1692.. — Քաղաքիս Հայազգի բնակչաց պատգամաւորն Գէորգ Չէլէպին աղերսագրով և խոնարհ յարգանօք յայտնած ըլլալով նորին Պերճապայծ Բարձրութեան Աւագ Դքսոյն Հայազգեաց փափաքն, եկեղեցի շինելու և անոր յարակից քահանայից բնակարաններ հաստատելու, իբր պատշաճ տեղի այդպիսի շինուածոց որոշեալ էին գնել Ֆրանչիսկեանց պարտէզն, որոյ սովորական արժեաց վրայ յօժարաբար հարկերին քան յաւելին Հայազգիք, որպէս զի Ն. Պ. Բ. հաւանութիւն շնորհելով սոյնպիսի գործողութեան, հաճի կարգելու արքունի երեսփոխան մի, որուն ներկայութիւնն վաւերացնէ տեղւոյն գնումն: Արդ այսպիսի աղերսագիրն սիրով ընկալեալ Ն. Պ. Բ. հրաման կը շնորհէ որ Քաղաքապետն յանուն իւր վաճառէ Հայոց այդ պարտէզն, և Հայք վճարելով սահմանեալ գինն կանգնեն իւրեանց եկեղեցին, և վայելեն Ն. Պ. Բ. հզօր պաշտպանութիւնն ընդդէմ իրենց հակառակորդաց: Որովհետև Գէորգ Չէլէպին առաջի վկայից, վճարեց 5489 բէցցա, և դրամն ընկալեալ և յանձնեալ մաքսատան պաշտօնատեան » և այլն:

Գէորգ Չէլէպիին Հայոց եկեղեցւոյն շինութեան նպատակաւ

* Կարևոր համարուած վաւերականաց օրինակքն ըստ մեծի մասին հաւաքեալ գտեալ ենք ուրոյն բառ առ բառ, որպէս է տեսանել ի վերջն ի յաւելուած պատմութեանս:

« Ողորմելի հայկեան սեռի
« Պահեա անփորձ քոյդ հաճելի
« Վէմս հաւատոյ անշարժելի
« Աթոռն ի Հռովմ սուրբ Պետրոսի
« Յաջորդ տասներորդ Տէր Կլեմէնթի
« Գոլ սրբազան Տեառն Պապի:
« Եւ ընդ սրբոյ Հայրապետի
« Հայոց Տեառն Տէր Յակոբի
« Յաջորդ սրբոյն Լուսաւորչի
« Աթոռ. սրբոյ Էջմիածնի
« Աղօթիւք սոցին է հայցելի
« Բառնալ զչար հանուրց սեռի
« Հեղուլ հոգւոյ իմանալի
« Քրիստոնէից միանալի» և այլն:

Ոտանաւոր վկայասանութեանս յիշատակարանն. է «Շնորհօք Ամենազօրին Աստուծոյ աւարտեցաւ բանս շարադրանաց յումեմնէ Թադէոսէ Երիցուէ Համազասպեան Երևանցւոյ ի թուոյ Փրկչին 1671. Ֆիօրենցա քաղաքի: Իսկ ի թուոյ Հայոց ՌՃԻ. Մարտի ամսոյն 1. և զիս զմեղաւորս յիշեցէք հայցելով ազատութիւն ի Տեառնէ. քանզի գրեցի ի բանտի, և դուք յիշեալ լիջիք ի Յիսուսէ Նազովրեցւոյ»: Յիշատակարանին կից կայ օրինակողին * յաւելուածն այսպէս. «Պատմութիւնս այս չափաբանեալ ի Համազասպեան Երիցուէ Թադէոսէ զոմանց մերազնեայց նազելեաց և զ'ի յընդհանուր ոլորտս աշխարհի և զ'ի ծագաց ի ծագս տիեզերաց բազմազան գովասանաց արժանեաց՝ ի նախատիպ պատճենէ որքան անկն էր խնկութեամբ օրինակեցաւ ի տրուպ բանասիրէ ումեմնէ, որ և կոչի Պ. Վ. Մ. զնախկինն ընթե՛րց որպէս վէմ, զմիս իմն

* Օրինակիչն Պ. Վ. Մ. է Կ. Պօլսեցի Պետրոս Վարդապետ Մուրատեա, որ Լիվոռնոյի Եկեղեցւոյն առաջնորդաց շարին մէջ երրորդն է, որոյ հրաժարիալ ի պաշտօնէ, յԱնքոնա փոխադրեալ անդ վախճանած է յամին 1775ին։

գերթ բարուն, իսկ զերրորդն ծանիր որպէս խակ է որ մոխանուն, զոր բարբառ հազարաց արտասանէ ընծական, կամ որ ըստ ըղձի, և դուք օրհնեալք եղիջիք՝ յորմէ լնու զերկինս և զերկիր: Ի թուոյ Փրկչին 1774 Փետրուար ամսոյն ութն»:

Լիվոռնոյի յանուն սրբոյն Սարգսի զօրավարի նուիրեալ տպարանն 1691ին տպագրեց Առաքելեան Խաչատուր Վարդապետի Կարնեցւոյ Քերականութիւնն, որոյ խորագիրն է. «Յօրինեալ ի ներտպարանում Ս. Էջմիածնի և Ս. Սարգսի զօրավարի յԱլիկուռնա քաղաքի, ներթուում Փրկչին 1691. Իսկ Հայոց ՌճԽէ. Մարտի Դ — Հետևի առաջին և նուաստագոյն մասն որ յինքեան ներփակէ զամենայն ազատական արհեստս, այսինքն զքերականութիւն, զհռետորութիւն և զտրամաբանութիւն: Ուստի անջատի մասս այս յերիս հատորս. յառաջնումն ընծեռեսցի զքերականութենէ, և յերկրորդում զհռետորութենէ և յերրորդում զտրամաբանութենէ. Հատոր Ա, Յաղագս քերականութեան»:

Յամին 1696 հրատարակած է Փոնցիանոս Կայսեր պատմութեան գիրքն, որ ունի խորագիր այսպէս. «Գիրք պատմութեան Կայսերն Փոնցիանոսի և կնոջն և որդւոյն Դիոկղետիանոսի, և յեօթանց իմաստասիրաց. տպագրեալ ի ներտպարանում Սրբոյն Էջմիածնի և Սրբոյն Սարգսի զօրավարի, յԱլիկուռնա քաղաքի թվոյ Փրկչին 1696. և Հայոց ՌճԽե. Մայիս ԻԵ». իսկ յիշատակարանն. «Հաճութեամբ Տեառն Եփրեմի Արհեպիսկոպոսի և Պատրիարգի Կ. Պօլսոյ, հոգաբարձութեամբ, ծախիւք և սրբագրութեամբ Նուաստի ումեմն Մ. Ս. Դ». որ թուի Մանուկի Սանփիան Թաղալեան: Յաջորդ տարին հրատարակուեցաւ Պատմութիւնն դարձի և մկրտութեան Յովսեփայ Քալտիքեան հրէի որ հինգ ընտանեօք ի միասին դաւանեցաւ ուղղափառ հաւատքն, իսկ խորագիրն է ըստ այսմ. «Պատմութիւն դարձի և մկրտութեան Յովհաննու Յովսեփայ Քալտիքեան մեծանուն հրէի բարունոյ Երբայեցւոյ ի գաւառէն Ալամանաց արարեալ ի նմանէ ի լեզու գերմանացւոց, թարգ-

մնեալ ի հայ, յիտալական թարգմանութենէն Տէր Յակոբ Վարդապետի Ջուղեսեան Եդեսացւոյ ի Լիվոռնոյ 1697»:

Յամին 1698 տպագրեցաւ Բառգիրքն Հայոց յօրինեալ Երեմիա Վարդապետէն, որուն խորագիրն է այսպէս. «Բառգիրք Հայոց արարեալ ի Սուրբ Էջմիածին յԵրեմիայ Վարդապետէ, և ես Սարգիս Եպիսկոպոս աշխատասիրեալ և զբառս Աստուածաշունչ Ս. Գրոցն ընդ սմա միաւորեալ, որ և ընթերցողացն Աստուածաշունչ գրոց բաւական է լինել: Տպագրեցաւ յՄլլիկուռնայ քաղաքի, և թուականութեանս Հայոց ՌՃԽԷ. և ի թուին Փրկչին 1698. Յունիս»: Եդած է ի Լիվոռնոյ այլ ևս տպագրութիւն Բառգրոց Հայոց ի թուականութեան Փրկչին 1727 և Հայոցն ՌՃՀԷ. որուն յառաջ է Վարդանայ Վարդապետի աշխարհագրութիւնն, այլ մեզ հաւանական չթուիր տպագրութեանն ստուգիւ Լիվոռնոյ եդած ըլլալն վասն ինչ ինչ պատճառաց: Որոյ խորագիր է. «Արարեալ է աշխարհացոյց նորոգ թարգմանչին, և երկրորդ Լուսաւորչին Վարդանայ Վարդապետի պարզ և համառօտ տեսութեամբ»:

Վերջապէս յամին 1701 տպագրեալ հրատարակեցաւ Թէոփիլոս իմաստասիրին խօսակցութեան գիրքն, որոյ յառաջաբանին մէջ է հետևեալն. «Որովհետև շրջեցայ ի մէջ Հայոց, իմացեալ ճանաչեցի զնոսա ունողս զկատարեալ փափաք առ ի յիմանալ զճշմարտութիւնն հաւատոյ, և ծառայել Աստուծոյ ջերմեռանդապէս. ուստի յայտ է զի են որդիք Բարձրելոյն ըստ աւետարանական բանին, վասն որոյ յոյժ տրտմեցայ, զի թէպէտ խնդրէին զհացն կենաց, բայց ոչ ոք գոյր զի բեկանիցէր նոցա պարզապէս մեկնութեամբ, որոյ աղագաւ յօժարեցայ և ես կարկառել զբանս ինչ խրատու պարզ և յստակ բանիւ»: Իսկ խորագիրն է ըստ այսմ. «Թէոփիլոս այսինքն խօսակցութիւն Թէոփիլոսի ընդ վարդապետին յաղագս ճշմարտութեան և ջերմեռանդութեան: Ի Հայրապետութեան Տեառն Նահապետի Կաթողիկոսի ամենից Հայոց ի յՄլլիկուռնայ քաղաքի, յամի Տեառն 1701. Յունուարի»: Ի Լիվոռնոյ տեսած

եմք իրբեմն Աւետարան մի հնագոյն տպով անթուական և առանց յիշատակարանի. զոր ձևէն մակաբերած եմք որ թերևս և այն տպագրուած ըլլայ ի Լիվոռնոյ: Կարծիք են ոմանց որ նաև Շարակնոց մի, Աղուեսագիրքն, Խորենացւոյ աշխարհագրութիւնն, Վարդանայ Առակքն, Հռովմէական Օրացոյցն և Մրգանոց հոգևոր կոչուած գրեանք տպագրուած ըլլան ի Լիվոռնոյ*:

Հայկական հրատարակութեանց ծանօթարանութիւնն աւարտելէն առաջ, արժանի է որ զայս խորհրդածութիւնն ընենք: Ազգային տպարանին յիշատակութիւնն շարունակեալ տեսած է ի Լիվոռնոյ մինչև ութևտասներորդ դարուն սկիզբն և զուգընթաց մեր եկեղեցւոյն շփոթութեան ժամանակին, և այնուհետև իսպառ դադրած է, զուցէ տպարանին և անոր գործաւորացն Էջմիածնի Աթոռոյն վերաբերած ըլլալովն Հայք կասկածելի եղած էին: Որուն ապացոյց կը համարուի 1701ին Հայոց՝ իրենց կատարելապէս կաթողիկէ ըլլալուն համար գըրած յայտարարութիւնն:

* Մենք ոչ սակաւ հետազօտութիւն ըրած ենք ի Լիվոռնոյ, որպէս նաև Էմիլ Դեզա անուն հայագէտ Իտալացին հայկական տպարանին հետքն և անոր վերաբերեալ յիշատակութիւնքն գըտնել, ձեռընտու ունելով մեզ Լապրոնեան գրատան վերակացուն, այլ ի զուր եղաւ մեր աշխատութիւնն և չգտաւ ինչ ժամանակին հնաւորութեան համար:

մանեալ ի հայ, յիտալական թարգմանութենէն Տէր Յակոբ Վարդապետի Ջուղայեցւոյն եկեղեցւոյ ի Լիվոռնոյ 1697»:

Յամին 1698 տպագրեցաւ Բառգիրքն Հայոց յօրինեալ Երեմիա Վարդապետէն, որուն խորագիրն է այսպէս. «Բառգիրք Հայոց արարեալ ի Սուրբ Էջմիածին յԵրեմիայ Վարդապետէ, և ես Սարգիս Եպիսկոպոս աշխատասիրեալ և զբառս Աստուածաշունչ Ս. Գրոցն ընդ սմա միաւորեալ, որ և ընթերցողացն Աստուածաշունչ գրոց բաւական է լինել: Տպագրեցաւ յԱլլիկուռնայ քաղաքի, և թուականութեանս Հայոց ՌՃԽԷ. և ի թուին Փրկչին 1698. Յունիս»: Եղած է ի Լիվոռնոյ այլ ևս տպագրութիւն Բառգրոց Հայոց ի թուականութեան Փրկչին 1727 և Հայոցն ՌՃՀԷ. որուն յարակից է Վարդանայ Վարդապետի աշխարհագրութիւնն, այլ մեզ հաւանական չթուիր տպագրութեանն առաջին Լիվոռնոյ եղած ըլլալն վասն ինչ ինչ պատճառաց: Որոյ խորագիր է. «Արարեալ է աշխարհացոյց նորոգ թարգմանչին, և երկրորդ Լուսաւորչին Վարդանայ Վարդապետի պարզ և համառօտ մեկնութեամբ»:

Վերջապէս յամին 1701 տպագրեալ հրատարակեցաւ Թէոփիլոս իմաստասիրին խոստովանութեան գիրքն, որոյ յառաջաբանին մէջ է հետևեալն. «Որովհետև շրջեցայ ի մէջ Հայոց, խնդրեալ ճանաչելի զնոսա ունողս զկատարեալ փափաք առ ի յիմանալ զճշմարտութիւնն հաւատոյ, և ծառայել Աստուծոյ ջերմեռանդապէս. ուստի յայտ է զի են որդիք Բարձրելոյն ըստ ուղղական բանին, վասն որոյ յոյժ տրտմեցայ, զի թէպէտ խնդրէին զհացն կենաց, բայց ոչ որ գոյր զի բեկանիցէր նոցա պարզապէս մեկնութեամբ, որոյ աղագաւ յօժարեցայ և ես կարկառել զբանս ինչ խրատու պարզ և յստակ բանիւ»: Իսկ խորագիրն է ըստ այսմ. «Թէոփիլոս այսինքն խոստովանութիւն Թէոփիլոսի ընդ վարդապետին յաղագս ճշմարտութեան և ջերմեռանդութեան: Ի հայրապետութեան Տեառն Նահապետի Կաթողիկոսի ամենից Հայոց ի յԱլլիկուռնայ քաղաքի, յամի Տեառն 1701. Յունուարի»: Ի Լիվոռնոյ տեսած

նմք իբրեւ Աւետարան մի հնագոյն տպով անթուական և առանց յիշատակարանի. գրոց ձևէն մակաբերած եմք որ թերևս և այն տպագրուած ըլլայ ի Լիվոռնոյ: Կարծիք են ոմանց որ նաև Շարակնոց մի, Աղուեսագիրքն, Խորենացւոյ աշխարհագրութիւնն, Վարդանայ Առակքն, Հռովմէական Օրացոյցն և Մրգանոց հոգևոր կոչուած գրեանք տպագրուած ըլլան ի Լիվոռնոյ*:

Հայկական հրատարակութեանց ծանօթաբանութիւնն աւարտելէն առաջ, արժանի է որ զայս խորհրդածութիւնն ընենք: Ազգային տպարանին յիշատակութիւնն շարունակեալ տեւած է ի Լիվոռնոյ մինչև ութևտասներորդ դարուն սկիզբն և զուգընթաց մեր եկեղեցւոյն շինութեան ժամանակին, և այնուհետև իսպառ դադրած է, գուցէ տպարանին և անոր գործաւորացն Էջմիածնի Աթոռոյն վերաբերած ըլլալովն Հայք կասկածելի եղած էին: Որուն ապացոյց կը համարուի 1701ին Հայոց՝ իրենց կատարելապէս կաթողիկէ ըլլալուն համար գրուած յայտարարութիւնն:

* Մենք ոչ սակաւ հետազօտութիւն ըրած ենք ի Լիվոռնոյ, որպէս նաև Էմիլ Դեգա անուն հայագէտ Իտալացին հայկական տպարանին հետքն և անոր վերաբերեալ յիշատակութիւնքն գտնել, ծեռընտու ունելով մեզ Լապրօնեան գրատան վերակացուն, այլ ի զուր եղաւ մեր աշխատութիւնն և չգտաւ ինչ ժամանակին հռաւորութեան համար:

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

Հայաստանեայց ժողովը, առաջին Ա. Դաշնագիրը, նախընթաց եկեղեցւոյն տեղւոյն քննած, Աշէին Բ. Դաշնագիրը, Պետրոսեան մատուցուած առաջարկները, առաջին բաժին հաստատութեանն, Պարոն Աստուածատուրն, պատգամաւոր Եւրոպա է Հռովմ, անոր բանակցութեանք, Ասոր Դուին միաբանութեանն, Բնաբանութեանք եկեղեցւոյն նախնեաց համար, Հայոց առաջնորդին — Ս. Ժողովը, հրամանին շնորհած ։

*Ասպարէզ մեծամեծ ձեռնարկութիւնք և գործք խորհրդով և միաբանութեամբ յաջողեալ են կենցաղոյս մէջ: Ըստ այսմ վարուեր են և մերքն ազգային ալիտոյից և եկեղեցւոյն շինու_ թեան համար, երբեմն երբեմն ժողովներ գումարելու կրեկոց համութեամբ սահմանադրութիւններ հաստատելու, եւ այլ և այլ գործողութեանց ձեռնամուխ ըլլալու:*

*Արդ նշանաւոր համդիսացած է 1689ին մերայնոց նիստն. ուր ի մի վայր ժողովեալ երեսուն և չորս Հայք պարապեր են յօրինել գրութիւն մի կոչելով զայն Առաջին Դաշնագիր Հայոց ի Սիւնիս՝ և ամեներին ստորագրեալ վաւերացուցեր են զայն, որպէս զի իրենց առաջարկն զօրաւոր ըլլայ և ի կատար հասնի ի ժամանակին:*

*Այդպիսի Դաշնագրոյ իմաստն յայսմ կը բովանդակի.*

*Հաստատ կամեցողութեամբ ժողովականքն հոգացող ըլլան եկեղեցին շինելու ի պէտս ազգին, առաջնորդ քահանայից հայազգի ըլլալուն, եկեղեցւոյն արարողութիւնքն ըստ Հայաստանեայց ծիսի կատարուելուն, և վերջապէս թէ քահանայից և թէ աղքատաց համար՝ կանգնելի եկեղեցւոյն կից բնակարաններ շինուելուն: — Յիշեալ նստին մէջ ընտրեցաւ ազգին կողմանէ իբր պատգամաւոր Սայրօ Գէորգ Չէլէպին, տալով անոր լիովին կարողութիւն, բարեբարաց շնորհած ողոր_*

մութիւնքն հաւաքելու, Ֆրանչիսկեանց վանուց վերաբերեալ պարտէզն գնելու յանուն ազգին, և ի յարմար ժամանակի սկսելու եկեղեցւոյն հիմնարկութիւնն: *

Այլ Գէորգ Չէլէպին 1692ին հաւաքած ունելով բաւական դրամ, երբ պատգամաւոր Ազգին գնեց Ֆրանչիսկեանց պարտէզն, վճարելով հինգհազար չորսհարիւր ութսուն և ինն բէցցա Դուկատայու դրամով, որ կը համապատասխանէ 26,512 ֆրանգաց Գաղղիոյ: Ահաւասիկ այս է մուրհակին համառօտութիւնն որ գրեալ և առորագրեալ եղաւ արքունի նոտար Պարսօթթինի միջնորդութեամբն. « Ցանուն Աստուծոյ ի 19 Փետրուարի 1692.. — Քաղաքիս Հայազգի բնակչաց պատգամաւորն Գէորգ Չէլէպին առերեսագրով և խոնարհ յարգանօք յայտնած ըլլալովն Տորին Պերճապատիւ Բարձրութեան Աւագ Դքսոյն Հայազգեաց փափաքն, եկեղեցի շինելու և անոր յարակից քահանայից բնակարաններ հաստատելու, երբ պատշաճ տեղի այդպիսի շինուածոց որոշեալ էին գնել Ֆրանչիսկեանց պարտէզն, որոյ առօրական արժեաց վրայ յօժարարար հաւանին քանի յաւելին Հայազգիք, որպէս զի Ն. Գ. Բ. հաւանութիւն շնորհելով սոյնպիսի գործողութեան, հանի կարգելու արքունի երեսփոխան մի, որուն ներկայութիւնն վաւերացնէ սեղւոյն գնումն: Արդ այսպիսի առերեսագիրն սիրով ընկալեալ Ն. Գ. Բ. հրաման կը շնորհէ որ Քաղաքապետն յանուն իւր վաճառէ Հայոց այդ պարտէզն, և Հայք վճարելով սահմանեալ գինն կանգնեն իւրեանց եկեղեցին, և վայելեն Ն. Գ. Բ. հզօր պաշտպանութիւնն ընդդէմ իրենց հակառակորդացն: Որովհետև Գէորգ Չէլէպին առաջի վկայից, վճարեց 5489 բէցցա, և դրամն ընկալեալ և յանձնեալ մաքսատան պաշտօնատեանն » և այլն:

Գէորգ Չէլէպիին Հայոց եկեղեցւոյն շինութեան նպաստակա

* Կարևոր համարուած վաւերականաց օրինակքն ըստ մեծի մասին հաւաքեալ գետեղած ենք ուրոյն բառ առ բառ, որպէս է տեսանել ի վերջն ի յաւելուած պատմութեանս.

յաջորդութեան տեղ գնելուն, որպէս նաև Աւագ Դպիրն հաւանութեամբ հրաման շնորհելուն համբաւ հանելով յանկանչս Բիւզայու Արքեպիսկոպոսին՝ փութաց և ծանօթութիւն տուաւ Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն Գահերեցին, այսու ազդարարութեամբ որ դիւրաւ չզիջանի հարկաւոր հրամանն տալու, այլ միայն հաստատուն պայմաններու գրութեամբ, թոյլտուութիւն ըլլայ Հայոց եկեղեցւոյն հիմնարկութիւնն սկըսելու, ինքն պատշաճաւոր կը դատէր այսպիսի տպաւորութիւն, Հայոց անհաստատ բնաւորութեամբ մարդիկ ըլլալուն պատճառաւ:

Ի այն միջոց ժամանակի Հայազգի ժողովրդեան հոգաբարձութիւնն ունէր ի Լիվոռնոյ հայազգէտ Դոմինիկեանին մէկն, որ թերևս հաճոյական աչօք չէր տեսներ ազգին առաջարկուած այսպիսի առաջարկութիւնքն. Դոմինիկեանին յաջորդեց 1695ին հայազգէտ Կարմեղեան կրօնաւոր մի:

Իսկ մերայինք գուշակելով կանգնելի եկեղեցւոյն համար ըլլալիք ծախուց, կամաւոր ողորմութեանց հասարակութիւն չյատականանալն, փութացին վերստին ժողով գումարել, յ18 Մարտի 1697. ուր միախորհուրդ երկրորդ դաշնագիր մի յօրինելու ձեռնամուխ եղան, վաւերացուցանելով զայն, ժողովոյն ներկայ քսան և եօթն անձանց ստորագրութեամբն: Երկրորդ կոչուած դաշնագրոյ իմաստն յայս կը բովանդակի համառօտիւ. Հայ վաճառականք Աստուծոյ օգնականութեամբն ի Լիվոռնոյ ազգային եկեղեցին կանգնելու համար, իբր վերակացու ընտրած են Խօճա Ճիկարեան Մարգարեանն, յիշեալին յանձնելու համար թէ ի Լիվոռնոյ բնակող և կամ հոն երթևեկող ամէն հայ վաճառականաց ողորմութիւնքն: Կը սահմանեն որ իւրաքանչիւր ապրանքի տէր մարդիկ թէ՛ արևելքէն և թէ արևմուտքէն իրենց ընդունած կամ ստացած վաճառաց տեղական համեմատ, ազգային բաժ վճարեն. այսպիսի բաժը կամ տուրք հաւաքեալք ծառայեն եկեղեցւոյն շինութեան համար: Ուստի աղերս մատուցանեն Աւագ Դպրին, որպէս զի ժո-

ղոկոյն կարգադրութիւնն հաստատէ, նաև պարտաւորէ ոչ միայն ի Եգիպտոսի բնակող Հայքն, այլ եւ այն ամէնքն որ հետզհետէ ի Եգիպտոս յաճախեն. այնպէս որ կարող չըլլան հակառակիլ ազգային սահմանադրութեան դէմ: Ապա ժողովականք գրեցին աղերսագիրն և ուղղեալ մատուցին զայն Կոզմաս Գ. Աւագ Դքսին, որոյ համառօտութիւնն կը դնենք յառաջիկայս այսպէս. Նորին Գերագոյն Բարձրութեանն խոնարհ ծառայքն Հայազգիք, իրենց ազգային եկեղեցւոյն շինութեանն համար ի Եգիպտոս, ժողովական գրով միով սահմանած են որ թէ ի Եգիպտոս բնակեալ Հայք և թէ արտաքուստ հոն եկողք, կամաւոր ողորմութիւն ընելէն զատ՝ պարտաւորին իրենց ընդունած կամ առաքած վաճառաց համեմատ ազգային բաժ հատուցանել ի Եգիպտոս ըստ տեսակին: Եթէ վաճառաց տեսակքն են շերամ, սաւեղէն, կտաւեղէն, կերպաս, մուշկ, որդան կարմիր, բուստ, սաթ, լեղակ, հատուցանեն մէկ բէցցա իւրաքանչիւր բեռին համար. իսկ եթէ են մեղրամոմ և տեսակք որ կը վերաբերին Խաղալական վաճառաց՝ իւրաքանչիւր բեռին համար հատուցանեն միայն կէս բէցցա: Ուստի կարգած են զԽօճա Ճիւաքեան Մարգարեանն որ այսպիսի ազգային բաժն կամ վաճառաց տուրքն ժողովէ: Եւ խոնարհեալ առաջի Գ. Բ. Ն. խնդրեն, որ հաճի և շնորհէ բարձր հրամանն Դաշնագրոյն և սահմանադրութեանց անթերի պահպանութեանն:

Ըստ այսմ ընդունելի եղաւ մերայնոց հայցուածն՝ վասն զի Աւագ Դուքսն յօժարութեամբ մեծաւ վաւերացոյց անոնց դաշնագիրն: Եւ նոյն Խօճա Ճիւաքեան Մարգարեանն յարգունեաց կարգեցաւ առանձին պաշտօնեայ, որպէս զի հայ վաճառականաց իւրաքանչիւրին ընդունած կամ առաքած վաճառաց տեսակին համեմատ, որպէս արդէն վերագոյն գրած եմք, ազգային բաժերն կամ հարկերն ընդունի և հաւաքէ զետեղելով ազգին վերաբերեալ առանձին արկեղ մէջ. նմանապէս առանձին հաշուեգրոյ մէջ նշանակէ վաճառաց տեսակ-

ներն, իւրաքանչիւր տեսակին համար ընդունած դրամն, և վաճառատեսաց անուանքն:

Հայոց գործառնութիւնք յաջողած էին յամենայնի և միայն կը հարկաւորէր Հռովմայ հրամանն. այս պատճառաւ ընտրեցաւ Պարոն Աստուածատուր Օղլանբէշլեան, որ և համարձակօրէն Աղա տէ Մաթուս կը կոչուէր, որպէս զի ուղևորի ի Հռովմ Ազգին կողմանէ, և եկեղեցւոյն կանգնման համար պատշաճ հրամանն ընդունի: Այս Աղա տէ Մաթուսն էր այն մեծատուն և մեծանձն, որ ժամանակակից թէ մեծամեծ եկեղեցականաց և թէ Աւագ իշխանաց հետ ի յարաբերութեան էր որպէս յայտնի մնացեալ նամակներէն: Ցիշեալ Աղա տէ Մաթուս ընտրեալ Ազգէն առ այս բարձր պաշտօն գեղապանութեան խնդրեց և ընկալաւ թէ Աւագ Դքսէն և թէ անոր ծիրանաւոր Եղբօրէն յանձնարարական նամակներ, և այսպէս ուղևորեցաւ ի Հռովմ, ուր հասեալ մնաց երկու տարի պարապելով շարունակաբար ծիրանաւորաց հետ բանակցելու, քարտուղարաց և ատենադպրաց վարձքեր բաշխելով, և իրեն աստիճանին վայել վարուելովն մեծամեծ ծախքեր ընելու ստիպուեցաւ: Մատոյց Ազգայնոց աղերսագիրն Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն, համոզմամբ թէ կանգնելի եկեղեցին ի Լիվոռնոյ ըստ ամենայնի ընթանայ և նմանի Բոլոնիոյ Կաթոլիկեայ Հայոց եկեղեցւոյն: Ցաւել աղերսագրոյն վրայ՝ Աւագ Դքսին և անոր ծիրանաւոր Եղբօրն գրեալ կրկին յանձնարարականներն. որոնց օրինակներն աստէն յառաջ կը բերենք մի զկնի միոյ:

« Կոզմաս Գ. շնորհիւ Աստուծոյ Աւագ Դուքս Տոսկանայու, առ Մօնս. Ֆապպրոնի Ատենադպիր Տարածման Հաւատոյ Ս. Ժ. ի Հռովմ. Հայազարմն Աղա տէ Մաթուս դիմեց առ Մեզ և մեծաւ միջնորդութեամբ ակն ունի Ձեր Տէրութենէն լաւ ընդունելութիւն գտնելու, որպէս նաև աղերսին կատարումն. և որովհետև Աղայն Մեզ սիրելի է, կը փութամք յանձն առնել զանիկա Ձեր Տէրութեանն, որպէս զի բարեհաճիք հայցուածն

կատարելու, և այնու յայտնելու Ձեր Մեծ հանոյք պատճառելու յօժարականութիւնն: Կը ծանուցանեմք ևս թէ բաց ի մեր շնորհակալ ըլլալն, արդարև Մեզ ցանկալի խնդիր է տեսանել խնդրոյն կատարածն, որ ոչ միայն աստուածային պաշտամանց կը ծառայէ, այլ և նոյն եկեղեցւոյն շինութեամբն Լիվոռնոյ նոր գեղեցկութիւն մի կը ստանայ. մաղթեմք » և այլն:

Օրինակ միւս յանձնարարականին.

«Մեծաշնորհ Գերմանական ծիրանաւորն առ Մօնս. Ֆապպրօնի Առեննալլի Տարածման Հաւատոյ Ս. Ժ. ի Հռովմ: Ազգն Հայոց ի Լիվոռնոյ հնաւանդ ըլլալովն առանձինն եկեղեցի շինելու, կառաքէ ի Հռովմ Աղա տէ Մաթուսն որպէս զի ներկայ ըլլալովն անդ փոյթ տանի պատշաճաւոր հրամանն ստանալու: Ես ինքնին համոզուած եմ որ մատուցեալ աղաչանաց փոխարէն Ձեր Տէրութիւնն Աղային գործոցն ձեռնտու կըլլայ, քանի որ խնդրոյն կատարումն Ձեզմէ մեծապէս ունի կախումն: Իմ առ Աղայն կապած սէրս և բարեկամութիւնս կը ստիպէ զիս որ այսքան հոգով դիմեմ Ձեր Տէրութեանն խնդրելով Ձեր օգնութիւնն. և արդ կապահովեմ Ձեր Տէրութիւնն, այսպիսի շնորհաց յիշատակն անջնջելի եղանակաւ պահելու սրտիս մէջ. մաղթեմ», և այլն:

Յետ այնչափ աղաչանաց, և զօրաւոր յանձնարարականաց առաջարկուեցան Հայոց ի կողմանէ Ս. Ժ. Տարածման Հաւատոյ ութ յօդուածէ բաղկացեալ թէութիւններ, որպէս զի անոնց ընդունելութենէն վերջ կարենի ըլլայ հայցուած հրամանին շնորհումն: Եւ երբ Հայք համաձայնեցան և յօժարեցան ընդունել յիշեալ թէութիւններն, ծանուցանելով ի Հռովմ իրենց պատրաստականութիւնն, Սուրբ Ժողովն յաւել դարձեալ ազդարարութիւն ընել Հայոց ի Լիվոռնոյ ըստ այսմ եղանակի. « Ժողովեալ Հայք ի Լիվոռնոյ գրեն նոր աղերսագիր, մատուցանելու համար զնոյն Ս. Ժ. ի Հռովմ. Նոր աղերսագրոյն մէջ մասնաւոր և որոշ եղանակաւ յայտնեն ութ թէութիւնքն ընդունելնին, յանձնեն զայն աղերսագիր Պերճափայլ

Աւագ Դրանն, որպէս զի և նա ինքն բարեհաճի պաշտօնապէս ի Հռոմ տարել աղերսագիրն իւր մասնաւոր յանձնարարական նամականաւ, տալով այնու նամակաւ Ս. Ժողովոյն ամէն տեսակ ապահովութիւն, թէ ինքն Պերճափայլ Աւագ Դուռն, և թէ իւր Պերճափայլ յաջորդքն պարտական ըլլան հսկելու միշտ թէութեանց ամբողջապէս կատարմանն և կաթողիկէ կրօնին մշտնջենաւոր շահուն և պահպանութեանն»:

Հայոց նոր աղերսագրոյն օրինակն, որով հաստատապէս ընդունեցան կատարել պահանջուած ութ թէութիւնքն՝ է այսպէս. «Գերապայծառ և Գեղապարգելի Տեարք Տարածման Հաւատոյ Ս. Ժ. ի Հռոմ. Աղա տէ Մաթուս և իւր հետն ամէն Հայեր ի Լիվոռնոյ խոնարհաբար առաջի դնեն Ձեր Վսեմափայլ Տէրութեանցն, որպէս արդէն 1698 տարւոյն Մարտին 13 էն ի վեր առաջի եղեալ էին առ այդ Ս. Ժ. իրենց աղերսագիրն, որպէս զի իրենց ազգին շինուելիք եկեղեցւոյն ի Լիվոռնոյ հրաման շնորհուի, և ընկալան նպաստաւոր հրամանագիր մի յստակ թէութեամբքն, այսպէս․

« Առաջին. Հարկ է որ եկեղեցին մնայ հպատակեալ միշտ « վիճակաւոր Եպիսկոպոսին. և ըլլայ ընդ խնամատութեամբ « Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն Հռովմայ:

« Երկրորդ. Եկեղեցւոյն քահանայն կամ առաջնորդող քա« հանայքն միշտ կարգեալ ըլլան նոյն Ս. Ժողովէն և անոր « ընդունելին իրենց առաքելական կոնդակն:

« Երրորդ. Զըլլայ թոյլտուութիւն եկեղեցւոյն մէջ պատա« րագելու այն քահանայից, որոնք Ս. Ժողովքէն տրուած հա« ստատ դաւանութիւնն ըրած չըլլան, նոյնպէս վիճակաւոր « Եպիսկոպոսին հաւանութիւնն առացած չըլլան:

« Չորրորդ. Եկեղեցւոյն մէջ ի գործ ածուի, Ս. Ժողովքէն « սրբագրեալ և վաւերացեալ հայկական ծէսն, և Ս. Ժողովոյն « տպագրեալ խորհրդատետրէն զատ այլ խորհրդատետրի գործ« ածութեան թոյլտուութիւն չըլլայ, որուն անփոփոխելի և ան« այլայլելի մնալուն համար եկեղեցւոյն մխիթարն հսկելու է, « պատժապարտ ըլլալով ի զանցառութեան:

« Հինգերորդ. Յաստուածային պաշտամունս կարելի է յի_
« շել Հայոց Պատրիարքին անունն, երբ Պատրիարքն հաւա_
« տոյ դաւանութիւնն ըրած և հպատակած ըլլայ Սրբազան
« Քահանայապետին, և ի ձեռն Ս. Ժողովոյն ծանօթութիւն
« տրուած ըլլայ ի Լիվոռնոյ, և ոչ կանխապէս կամ այլ եղա_
« նակաւ:

« Վեցերորդ. Զըլլայ հաղորդութիւն Ս. խորհրդոց մէջ այն
« Հայոց հետ որոնք կանխապէս ըրած չըլլան Ս. Ժողովքէն
« տրուած հաւատոյ դաւանութիւնն:

« Եօթներորդ. Հաւատոյ դաւանութիւն չընողներէն ոչ որ
« կարող ըլլայ եկեղեցւոյ ընչից կառավարութեան մէջ իշխա_
« նութիւն վարել, թէ և եկեղեցւոյն օգտին համար որ և իցէ
« եղանակաւ սատարած ըլլան:

« Ութերորդ. Թէութեանցս-զանցառութեան ժամանակ մի_
« ճակար Եպիսկոպոսն կարող ըլլայ Ս. կանոնաց համեմատ
« պատժել զանցառուքն. կարող ըլլայ նաև Ս. Ժողովն այլ
« պատժոց ենթարկել եկեղեցին փակելով, եւ այլոց յանձ_
« նելով, եթէ Հայք մեծագոյն ինչ յանցանք գործեն:

« Պատրաստական մնալով նոյն թէութիւնքն կատարել և
խոստանալով անոնց միշտ պահպանութիւնն, ամենայն յար_
գանօք կը հայցեն Ձեր Վսեմափայլ Տէրութիւններէն թոյլտ_
ւութիւն իրենց եկեղեցին կանգնելու », և այլն: Ի Լիվոռնոյ 18
Փետրուարի 1700:

Նոր աղերսագիրն ստորագրեցաւ ժամանակին ի Լիվոռնոյ
ներկայ եղող քսան և չորս ազգայիններէն, որոնց անուան_
քըն են.

| | |
|---|---|
| Աղա տէ Մաթոս | Յարութիւն Մարտիրոսեան |
| Ճիւարխան Մարգարեան | Ոսկան Մարգարեան |
| Դաւիթ Միրման | Սողոմոն Մելգոնեան |
| Ռուսթամ Դաւիթեան | Մովսէս Անտոնեան |
| Նազարէթ Գասպարեան | Գաբրիէլ Գրիգորեան |
| Գրիգոր Սրակելեան | Յովսէփ Կարապետեան |

| | |
|---|---|
| Զաքարիա Ամիրխան | Կարապետ Միրզայէլեան |
| Ստեփան Յովհաննէսեան | Գէորգ Սարգսեան |
| Մարտիրոս Սարգսեան | Մուրատխան Նազարեան |
| Նազար Այվազեան | Վարդան Եազութեան |
| Զաքարիա Սրակելոսեան | Կիրակոս Պօղոսեան |
| Պեճան Բերատեան | Անտոն Մինասեան |

Հայոց այսպիսի նոր աղերսագիրն Աւագ Դքսին միջնորդութեամբն և յանձնարարականաւ ի Հռովմ առաքեցաւ պաշտօնապէս. Աւագ Դքսին նոր յանձնարարականին օրինակն է ըստ այսմ. « Կոզիմոս Գ. շնորհօքն Աստուծոյ Աւագ Դուքս Դոսկանայու առ Գերապայծառ և Գերյարգելի Սանեանդալիր Տ. Հ. Ս. Ժ. ի Հռովմ: Կաթոլիկեայ Հայերն ի Լիվոռնոյ կը կրկնեն իրենց աղերսագրերն առ Ս. Ժողովն Տարածման Հաւատոյ, որպէս զի կարող ըլլան ընդունել անոր հարկաւոր հրամանն իրենց ազգին համար եկեղեցի մի շինելու նոյն քաղաքին մէջն. որ արդէն շնորհուած էր յ13 Մարտի 1698 էն ի վեր, պարտաւորութեամբ պահելու ինչ ինչ պայմաններ կամ թէութիւններ: Մենք մեր կողմանէ չկարենալով չօգնել յօժարութեամբ անոնց գովելի բաղձանացն, չէ հնար Մեզի յետս կալ Ձեր Տէրութեանն դիմելէն, որ բարեհաճիք մեր հայցուածն եւ նկատելով պատրաստութեամբ շնորհել անոնց Ձեր պաշտպանութիւնն որով կարող ըլլան փութով իրենց նպատակին հասնելու: Կը մատուցանենք Ս. Ժողովոյն Ձեր Տէրութեան միջոցով երաշխաւորութիւն թէ Մեր և թէ Մեր Յաջորդացն կողմանէ, յանթերի կատարման նշանակեալ պայմանաց, յօգուտ և յապահովութիւն մշտնջենական Ուղղափառ սուրբ Հաւատոյ: Կը յուսամ որ այսպիսի պարագայի մէջ Ձեր Տէրութիւն նոր փորձով կը յայտնէ՝ Մեր միջնորդութեան դիմաց Ձեր ակնածութիւնն: Յայտնելով մեր շնորհակալու երախտագիտութիւնն և պատրաստելով զանդրադարձն ընել ի բարեպատեհ առթի, զի և մասնաւոր յարգանօք », և այլն:

Ի Պալատան Մերում ի Բիզա ի Փետրուարի 1700:

Վերջապէս Տարածման Հաւատոյ Ս. Ժ. նկատելով ի մտանաւորի Աւագ Դպրին բարձր միջնորդութիւնը, յ8 մարտի 1701 շնորհեաց հրաման, աղերսագրոյն մէջ նշանակեալ թէութեանց վրայ յենլով այսպէս.

«Վսեմափայլ Հարք զխնդիրն հայցողաց աղերսն ընդունին, համաձայն գոլով յամենայնի այլոց վճռոց, և վասն առանձին յանձնարարութեանն Աւագ Դպրին Ծոտուրիոյ շնորհեն զխնդրեալն հրաման առ ի շինել զեկեղեցի կաթողիկէ Հայոց Ազգին ի Լիվոռնոյ քաղաքի անդ, ըստ պայմանացն որք յայտնեալք են յաղերսագիրն, և ոչ այլ ինչ եղանակաւ»:

Տուեալ ի Հռոմ յ8 Մարտի 1701.

Կարտինալ Կարոլոս Պարպերինոս՝
Գահերէց Տ. Հ.·Ս. Ժ.
Ա. Ֆապպրոնի Ատենադպիր.

Դիտեմք և զայս կարծիս թէ Մելքիսեդեկ Պատրիարք Կ. Պոլսոյ Լիվոռնոյի Հայ առաջնորդաց և համօրէն ժողովրդեան օրհնութեան կոնդակ առաքեց, գովելով անոնց փոյթ և կրօնասիրութիւնը որ համաձայնելով Ս. Ժողովոյն վճռոցն՝ եկեղեցւոյն հիմնարկութեան հրամանն յաջողած էին ընդունել: Թէ Մելքիսեդեկն և թէ Մխիթար իրերաց յաջորդք Պատրիարգունքն Կ. Պոլսոյ զատն կաթողիկէաւանք:

## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

Տէր Ազարիա կաթողիկոս Սսոյ ի Լեհաստան. Հայոց եկեղեցւոյն միաբանութեան հանդէսն և ջատագով. Առաջ Գրքին նըւ-քահայրութեանն. Տէր Յովհաննէս քահանայ Ծամչեան. պաշտպան եկեղեցւոյն միաբանութեան կաթողիկեայ ըլլալուն. Յ. Հովհանեանցի սէր ու ենթարկութեանն. Պարոն Աստուածատուր Ազգային և ջերմ ընտրողին, եկեղեցւոյն շինութեան համար ձեռնտուութիւնն և վաստակն. Պետական մարդոց քաղաքական վկայութիւնն։

*Մեծ է յարատեւութիւնն և յարատեողքն ի կենցաղոյս կարող են եղած խորաքանչիւրն գրաւել գործոց յաջողութիւնն և պսակումն տեսնել ի ժամուն: Այս այսպէս և մերքն յաջողեցան և ի յարեւատեան ժամանակի Աստուծոյ տնանկին հիմնարկութեան սկիզբն առնել, և այն վայելուչ և արժանի խմն եղջանակաւ, որպէս տեսանելի է յառաջիկայս: Երբ Սսոյ Աթոռոյն հրաժարեալ Կաթողիկոսն Տէր Ազարիա Կարկառեցի, Պարոն Աստուածատուրէն և ազգային առաջնորդներէն հրաւիրեալ, համութեամբ Սրբազան Գահին ճանապարհ ուղարկեալ հասաւ ի Լիվոռնոյ, Հայոց նորաշէն եկեղեցւոյն հիմնարկութեան պատշաճաւոր հանդիսութիւնքն կատարելու, հանդիսատեսքն բազմութեամբ կուտեցան ամենուստեք եկեղեցւոյն շինութեան համար սահմանեալ տեղն, որ էր յառաջագոյն պարտէզ Ֆրանչիսկեանց մենաստանին: Անդ Հայատաննեայց եկեղեցւոյն հայրապետն մեծաւ հանդերձանօք և փառաւոր եղանակաւ երեւեալ ի մէջի հայազգար ժողովրդեան օրհնեց և օծեց հիմանց եկեղեցւոյն երկտասան քարինքն: Այսպիսի հանդիսաւորութիւնն ոչ միայն եկեղեցական այլ եւ քաղաքական համարեցաւ. վասն զի Նորին Գ. Բարձրութեան Կոզմաս Գ. կողմանէ փոխանորդաբար կարգեցաւ Ֆրանչիսկոս Թերրիէրի անուն պաշտօնեայն հիմանն առաջին*

քաղնին կնքահայր ըլլալու համար, որ ի պատիւ գլխաւորին Առաքելոց Պետրոս կոչեցաւ. նոյն քաղնին վրայ դրոշմեցան Կոզմոս Գ* անուն և արքունական կնիքն: Իսկ արքունի նօտարն Բարթողիմէոս Կոնելլի յանմոռաց յիշատակ նոյն հանդիսին, հրապարակապէս ի գիր արձանացուցեալ զայն, շնորհեց Հայոց օրինակն, իսկ Պատճէնն զետեղեց յարքունական դիւանի:

Համեմատ է այսմ և Հալաճեան Հ. Կարապետի աւանդածն, զոր արժան է աստէն յառաջ բերել, զի կը գրէ այսպէս. «Խնդրեն Հայք ի Ս. Ժողովէն, որ յղեսցէ ի Լիվոռնոյ զԱզարիա Կաթողիկոսն Սսոյ որ էր ի Հռոմ, զի նա եկեսցէ և ըստ Հայոց արարողութեան օծցէ զքաղնիս հիմնարկութեան անեղայն հանդիսութեամբ. և եկեալ նոյն Կաթողիկոսն յամի Տեառն 1701 ի 23 Ապրիլի. յոյժ փառաշուք հանդիսիւ առաջի մեծաւորաց քաղաքիս և իշխանաց, և թագաւորական նօտարաց, ստորագրեալ միայն ի նոյ վարդապետաց և քահանայից և տիրացուաց, օծանէ զերկոտասան քաղնիս հիմանն յանուն երկոտասան Սրբոց Առաքելոցն: Եւ առաջին քաղնին կնքահայրն լինի ինքն Կրան Տուքայն (Ասազ Դուքս), և մնացելոցն այլ առաջաւոր Հայք, և զամենայն քաղնիս մի առ մի յետ դնել տալոյն կնքահարց, նոյն ինքն Կաթողիկոսն ձեռամբ իւրով զետեղէ, և ծեփելով հաստատէ, և զայս ամենայն հանդէսն և գործս, ի նոյն ժամանակի թագաւորական նօտարն մատենագրէ, և վկայիւք հաստատէ և դնէ ի պահարանն թագաւորական դիւանի, և զհարազատ զաղափարն յանձնէ Հայոց»: Կը յաւելու Հալաճեանն այսպէս. «Եւ արդ տեսի ես յոյժ յայտնի երևի, որ մերայինքն այնքան նախանձայք են եղեալք, վասն անարատ պահպանելոյ միայն զՀա_

* Կարկառեցի Տէր Ազարիա Ջանըպեանց Սսոյ Աթոռոյն կաթողիկէագաւառն կաթողիկոսն հեռացեալ Կիլիկիայէն ի Հռոմ պանդխտեցաւ և ի խոր ծերութեան իննսուն և երկու ամաց վախճանեցաւ.

յոց ապարրոտութիւնն ըստ սահմանին, մինչ զի եւ ի ճշմա-րտութեան եկեղեցւոյս, ոչ տուեալ են թոյլ մնանել այլոց ազ-գաց եկեղեցականաց ի պաշտպանութեան հանդիսի անդ ճշմա-րտութեան»: Մենք եւ կը յաւելումք այսպիսի եզրակացու-թեան եռանէն ըսելով, որ Ազգայնոց այնքան նախանձոտու-թիւնն անգործադրելի եւ անպտուղ եղաւ, երբ յետ աւարտման եկեղեցւոյն՝ օծման հանդէսն կատարեց Բիզայու Արքեպիս-կոպոսն, որպէս հանդերձեալ եմք պատմել ի կարգին: Նոյն տարին, այս է 1701, քանի նպաստաւոր եղաւ Հայ ժողովր-դեան ի Լիվոռնոյ, մակաբերելի է այն ոչ միայն եկեղեցւոյն շինուածոյն սկսմամբն, այլ եւ գալստեամբ եւ կարգմամբ բնիկ Հայազգի ժողովրդապետին, Ծալեան Տէր Յովհաննէս անուն, որ արեւելքէն եկեալ ի Հռովմ՝ ապաւինած էր եւ անտի ի Լի-վոռնոյ, խնդրանօք մերայնոց:

Քաղմամբ ի յիշատակութենէ մը, զոր դէպ եղեւ մեզ տես-անել ի Լիվոռնոյ, յայտնի կըլլայ թէ Ծալեան Տէր Յովհան-նէս ընկերակից է եղեր Դաւզպազեան Մելքոն Արքեպիսկոպո-սի, որ զրպարտեալ ի Մարսիլիա վասն կաթոլիկէ հաւատո-ցըն, բանտարկեցաւ յիշեալ քաղաքին մէջ ի Մարսիլիա, եւ ի հոտ սրբութեան հանգեաւ ի բանտին ի ժամանակս շինու-թեան եկեղեցւոյն Լիվոռնոյի:

Դէպ ի նոյն ժամանակներ Լիվոռնոյ պատսպարան եղած է քանի մի հալածեալ ընտանեաց, երբ ի Կ. Պոլիս ատելութիւնն բորբոքեալ էր եւ սաստիկ տիրած էր կաթոլիկեայց դէմ: Ա-սանկով Լիվոռնոյ քաղաքն Կաթոլիկեայ Հայոց կեդրոններէն մին եղած էր, եւ ըստ վկայութեան վաւերականաց որ ի դի-ւանատան Տարածման Հաւատոյ Սուրբ Ժողովոյն, ի սկզբանէ հետէ ի Լիվոռնոյ յատուկ կաթոլիկեայ հայք հաստատեալ կան եղեր: Որով անտեղի խնն է ոմանց տալ հակառակն ենթա-դրելն եւ կարծելն:

Ո՞ւր թողունք պաշտօնական այլ եւ այլ գրութիւնքն, նմանա-պէս կրական եւ ճշմարիտ աւանդութիւնքն: Ո՞վ սովրած էր

ազգային բարերարքն որ Լատինաց եկեղեցւոյն պարգևեն գումարներ. ընդէ՞ր Պարոն Աստուածատուրն Լիվոռնոյի Հայոց գլխաւորն և եկեղեցւոյն հիմնադիրն իւր միակ որդին յանձներ Ուրբանեան վարժարանին ի Հռոմ:

Հետազօտաց յայտնի է թէ ո՞րչափ աշխատութեամբ, և քանի միջոցներու գործածութեամբ ձեռնամուտ եղած են Լիվոռնոյի Հայերն իրենց յատուկ եկեղեցին շինել. միթէ կարե՞լի էր անոնց հրամանն խնդրելու Ս. Ժողովոյն աղերսագիր մատուցանել, և ապա տատանիլ և դանդաղելով մնալ մինչև երկու տարի դժուարանալով Ս. Ժողովոյն առաջարկած թէութիւնքն կամ պայմանքն ընդունելու:*

Մեծապատիւ Յ. Հովուեանց զարտուղեալ կը համարի գրելով իւր յօդուածն ըստ այսմ. «Նշանակութեան գլխաւոր մէկ կէտն ալ աս է, որ Բրոբականտան Հայոց այս առաջին աղերսագրին ականջ չկախելով եկեղեցւոյն շինութեան հրամանն չէ տուեր, մինչև որ իր առաջարկած պայմանները Հայերն ստորագրելով երկրորդ աղերսագրով մը չեն առաքած ի Հռոմ: Առաջին աղերսագիրը գրած են 1698 Մարտ 3ին, իսկ երկրորդը 1700 Փետրուարի 8ին, ըսել է երկու տարի յետոյ. այս երկարատև միջոցը մեզի այն կարծեաց տեղիք կու տայ որ Լիվոռնոյի Հայք մեծ դժուարութիւն և հակառակութիւն ցոյց տուած են առջի բերան Բրոբականտայի պայմանները ընդունելու, և վերջը անճար տեսնելով այլաբար իրենց փափաքին հասնիլ՝ զիջեր են ստորագրելու: Արդ եթէ նորա առաջուց կաթոլիկ ծնած և մեծցած ըլլային՝ ալ ինչի հակառակէին ան պայմանները ընդունելու, և տեսնենք թէ Բրոբականտան ալ ինչի առաջարկե՞ր զայնս. չեմք կարծեր: Աչքի զարնող մէկ մեծ կէտն ալ յիշեալ պայմանաց հինգե_

* Ֆրօզինի հռչակաւոր Արքեպիսկոպոսն 1718ին Լիվոռնոյի Հայոց եկեղեցւոյն համար գրած կանոնագրութեան մէջ Լիվոռնոյի հայազգի գաղթականքն հայ-կաթողիկեայ անուամբ յորջորջած է (տես ի յաւելուածս ի վերջ մատենիս).

բորդն է, առել Բրոքսիլանտան պայման դրած է Հայոց որ իրենց Լիվոռնոյի եկեղեցւոյն մէջ չյիշեն Պատարագի և աս_տուածային պաշտամանց ատեն Անուն․ Հայոց Պատրիարքին և ոչ Էջմիածնայ Կաթողիկոսի անունը: Ի՞նչ ճարկ կար այս_պիսի պայման մը դնելու, եթէ այն եկեղեցին շինողները կա_թոլիկ էին առաջուց »:

Մեր բազմադիմի հետազօտութեանց մէջ կարող չեղանք ե_գած գտնել ուրեք արձանագրութիւն ինչ հայազնի կամ ի_տալագնի որ ստուգէր յառաջ բերեալ ենթադրութիւնն: Մինչ_դեռ հաստատապէս ապացոյց ունինք միւս կողմանէ Պիզայու Արքեպիսկոպոսին մեծամեծ հակառակութիւնն Հայոց եկե_ղեցւոյն շինութեան համար: Արդ Լիվոռնոյի Հայերն որոնք 1698ին իրենց աղերսն կը մատուցանէին ի Հռոմ, թէ և ու_նէին առանձին պաշտօնա՛յան և արքունի յանձնարարական նամակներ, ի վերայ այսր ամենայնի չէր կարելի ի կողմանէ Հռոմայ այնքան փութով փախարուած հրամանին շնորհ_ւիլն, առանց կանխաւոր քննակից ըլլալու վիճակաւոր Արք_եպիսկոպոսին հետ․ ուստի յիշեալին հաւանութեամբն և պայ_մանաւն որ կանգնելի եկեղեցին մնայ միշտ հպատակ նոյն վի_ճակաւոր Արքեպիսկոպոսին, երկամեայ դանդաղմանց վերջ եղաւ: Թո՛ղ որ Հայոց կողմանէ պարզաբար թէութեանց ընդու_նումին բաւական չթուեցաւ, այլ պահանջեցաւ որ թէութեանց ընդունումին ըլլայ պաշտօնապէս Տոսկանայոյ տիրող իշխա_նաց երաշխաւորութեամբ:

Այսու եղանակաւ ջրելով մեր այլոց ոմանց կարծիքն չենք մերժեր բնաւ թէ ի Լիվոռնոյ չեն եղած մասնաւոր ոմանք կամ փոքրագոյն մասն մի ի հակակաթոլիկեայ Հայոց, որպէս են անոնց վարդապետներ որ եկած են ի Լիվոռնոյ, բայց մեզ աւելի Էջմիածնայ Աթոռոյն տպարանին գործակալութեան համար:

Մեծապատիւ Ց. Հովսէփեանց ի մէջ այլոց բանից կը յաւե_լու եւ գրել այսպէս. « Այս բանս նման յայտնի է որ Հռոմէա_

կան Հայք ասկէց երկու հարիւր տարի առաջ, չէին կարող ոչ Հայոց ազգ յիշել զինքեանս, և առաւել ևս ոչ յանուն Հայոց ազգին գործել խօսել և գրել, որովհետև այն ատեն, Հայոց ազգ լսելով ամէն տեղ և ամէն երկրի մէջ կիմացուէր Հայոց այն մեծ մասն որ Էջմիածնայ Կաթողիկոսին և Գահուն կը հը_նազանդի.... Ահա այսպէս Լիվոռնոյի Հայք ըլլալով Էջմիած_նական, չեն կրցած իրենց եկեղեցին բանալ և իրենց ազգա_յին լեզուաւ ժամերգութիւններ ընել մինչև որ Հռոմկայ եկե_ղեցւոյն չեն հնազանդած, ըսել է որ հարկադրուեր են Էջմիա_ծինը թողուլ, և Հռոմկայ յարկէ իրենց փափաքը լեցնելու համար»:

Աղէ ուրեմն բարեհաճի պատասխանել մեզ Մեծապատիւ Յ. Հովուեանց, նախ Ս. Մարկոսու Եգիպտացւոյ եկեղեցւոյն համար ի Հռոմ, որոյ վրայ կը գրէ թէ Պապերն շնորհած են Հայոց ազգին: Եւ յիրաւի գիտենք որ Ս. Քահանայապետն Պիոս Դ. 1563ին շնորհած է յիշեալ եկեղեցին: Այլ այն ժամանա_կէն ի վեր երկու հարիւր տարին դեռ չէ՞ մի անցած: Երկրորդ. Ս. Եգիպտացւոյ եկեղեցին Հայոց ազգին շնորհած են առելով Ազգին ո՞ր մասին խնամելու է, միթէ Էջմիածնականաց համար: Տեղս չի ներեր մեզ աւելի երկայնաբար այլոց հակառակ ենթադրութեանց վրայ գրադիլ և հեռանալ բնաբանէն, ուս_տի դառնանք եկեղեցւոյն հիմնարկութեան ժամանակին անց_քին պատմել:*

* Այսպէս միւս ումն հարևանցի տեսութեամբ քննեալ Լիվոռ_նոյի Եկեղեցւոյն վաւերական քարտէսքն, և չգտնել անդ Հայ անուան հետ կաթողիկեայ բառն, կը հետևցնէ թէ Լիվոռնոյի Հայք կաթողիկեայ եղած չըլլան: Անտեղի ենթադրութիւն, ո՛չ ապաքէն սովորութիւն է յԵւրոպա տալու ազգութեան անուամբ քան թէ կրօնականաւ կոչուիլ, որպէս կոչուած են քանի մի դար կան_խաւ լոկ ազգութեան անուամբ ի Հռոմ ի Վենետիկ ի Բոլոնիա բնակեալ Հայքն: Արևելեան Մամուլ յԱմսաթերթն Սեպտեմբերի 1874. — Մեր ընթերցողն չշեղելու համար զանց կառնենք նոյն յօդուածոյն այլ և այլ անճշդութեանցն մի առ մի պատասխանել և ուղղել զայնս:

Տէր Ազարիա Կաթողիկոսն բարեմաղթելով Հայոց ամե_նայն յաջողութիւններ յերկնից՝ դարձաւ մեծաւ պատուով ի Հռովմ. իսկ Հայերն ժողով գումարեցին ի միասին խորհրդա_ծելու, և եկեղեցւոյն շինութեան համար որ ինչ հարկաւոր էր ի կարգի դնելու: Ուր նկատելով Աղա տէ Մաթուս Աստուածա_տուր ազնուականութիւնն, հոխ և բարերար ըլլալն, ազգին մատուցած մեծամեծ ծառայութիւնքն, և ի մանաւորի ա_նոր ի Հռովմ ազգասիրութեամբն ըրած անհամար ծախքն. հա_մաձայնեցան իրենց մէջ և ընտրեցին յիշեալ Աղայն մշտատև Ազգապետ, և վերակացու եկեղեցւոյն շինութեան: Այսու ե_ղանակաւ յանձնեցին անոր ամենայն կարողութիւն ազգին վերաբերեալ գործոց մէջ ազատութեամբ վարելու, մինչև իսկ եկեղեցւոյն շուրջն բնակարաններ շինել տալ, և վարձու տալ զայնս: Պարոն Աստուածատուրն իւր բարեպաշտութեամբն և վարթամութեամբն ազգին մէջ պատշաճաւորագոյնն էր առ այս գործ. երբ ազգային արկեղ մէջ հաւաքեալ գումարն էր փոքրագոյն ինչ, և այսպիսի նուազ դրամով չէր կարելի շինուա_ծըն սկսիլ, նա ինքն Աղայն յօժարաբար պատրաստ գտաւ իւր ընչիւք եկեղեցւոյն շինութիւնն յառաջ տանել:

Ազգային բաժն հաւաքող Խօճա Ճիլաբխան Մարգարեանն վախճանեալ ըլլալովն ի 12 Սեպտեմբերի 1701, յանձնեցաւ անոր բաժպետութեան պաշտօնն եւ Աղա տէ Մաթուսին որ_պէս զի աւելի դիւրութեամբ վճարուին ըրած և ընելիք ծախքն, նեռզնեաէ ընդունելով բաժերն: Սակայն յետ այսչափ պար_տաւորութեանց առ Աղա տէ Մաթուսն՝ զարմանալի կերևնայ 1705ին Ասլրօ Չէլէպւոյն կողմանէ յիշեալ Աղային դէմ դա_տըն, իրր թէ ազգէն ընդունած բաժն հաւատարմաբար չէ ծախած ի պէտս շինուածոյն: Այսպիսի զրպարտութենէն ար_դարացաւ նա ինքն դատաւորաց տուած վճռովն ի 21 Օգոս_տոսի 1706, և Ասլրօ Չէլէպին պարտաւորեցաւ դատաստանին ծախքն տուժել:

Դժբաղդաբար եթէ նախանձոտք և բծախնդիրք ոմանք

ամբաստանուած են Աղա տէ Մաթուսն անհաւատարիմ կոչելով զանի իւր վերակացութեան մէջ, այնպիսեաց փոխարէն քանիներ արդեօք չեն եղած որ յիշեալ Աղային պահեստի համար գումարներ, նմանապէս բարեգործական և կտակաց վերաբերեալ յանձնարարութիւններ չվստահին: Կը վկայեն զայն այլ և այլ յիշատակագրութիւնք: Այսպիսի գրութեանց մին է մեր ձեռքն գտեալ և յիշեալ Աղա տէ Մաթուսէն գրեալ մէկ ընկալագիրն, որոյ իտալական օրինակն թարգմանաբար կը դնենք յառաջիկայս. որ ուղղեալ է առ Տիրուհի Աննա Ճամալեանն.

« Զօրութեամբ սոյն թղթոյս որ հայկական գրով և իմով ձեռամբ ստորագրեալ է, յայտ առնեմ Ձեզ, յանուն և ի շնորհս Ձեզ հազար երկու հարիւր բէցցա ընդունած ըլլալս Ձեր եղբայր Խօճա Մկրտիչ Ճամալեանէն, զորս առաքած են ինձ գործակալութեամբ Աղա Դաւթի Շամխի՝ հօրեղբօրորդիքն Ձեր Խօճա Գրիգորն և Խօճա Յովաննէսն ի Սպահան: Այս գումարն իբր Ձեր օժիտ պահեստի համար ինձ յանձնուած է, որպէս զի մինչև Ձեր ամուսնութեան, կամ միանձնուհիութեան ժամանակն պահեմ զայն, և երբ պատահի երկուքէն մին, այսինքն ամուսնութիւնն կամ միանձնուհիութիւնն, կը խոստանամ անպատճառ Ձեզ վճարելու յիշեալ 1200 բէցցաներն: Իսկ այն ամէն ժամանակին համար որ ի պահեստի մնայ արկղիս մէջ յիշեալ 1200 բէցցաներն՝ պարտաւորիմ հատուցանելու Ձեզ հարիւրին վեց տարեկան շահ: Կը ծանուցանեմ ևս որ ներկայ ընկալագրոյս նման այլ ընկալագիր ևս գրած եմ, առանց յայտնելու նոյնին մէջ տրուելի շահն: Թէ այն և թէ այս ընկալագրերուն երկուքն ևս ծառայելի են մի և նոյն վախճանին, մի և նոյն գումարին համար: (Ստորագրեալ)

Ի Լիվոռնոյ ի 11 Յուլիս 1704 — Աղա տէ Մաթուս

Ամենուրեք վաւերականներէն յայտնի կըլլայ թէ որպիսի եռանդեամբ Աղա տէ Մաթուս Աստուածատուրն պարապած է Աստուծոյ տանն շինութեան: Իւր հաշուետետրաց մէջ, մեր

այսօր տեսած ենք ճետևեալ յիշատակագրութիւնն. «Սկսար շինել զեկեղեցիս, անուամբն Աստուծոյ, և ողորմութեամբն Աստուծոյ, և կամօքն Յիսուսի Քրիստոսի, Տեառն մերոյ ի 23 Ապրիլի 1701. եւ յ12 Նորին 1150, ըստ մերոյ թուականին»: Հաշուետետրերց մէջ կայ այլուր և այս գրութիւնն. «Տէր Աստուած տացէ սէր և միութիւն մերայնոց, և անուամբ Աստուծոյ, և ուրախութեամբ ի կատար ճասուցէ զշինուած եկեղեցւոյս»: Որպիսի զարմանալի գուշակութեամբ դրոշմած էր բարեացակամ Աղայն այդպիսի տողերն, նախատես ըլլալով իր կեանքն զոհելուն և ազգին տարաձայնութեանն. աւա՜ղ ճակատագրին, որ այնքան մեծագործ և աստուածասէր անձին չժամանեց, Աստուծոյ տաճարին և իւր անմահական գործոյն աւարտումն և կատարածն տեսնել:

Այնքան ճոյակապ շինուածոյ համար՝ որ նուիրեալն էր յանուն և ի պատիւ Հայաստանեայց Հօր սրբոյն Գրիգորի Լուսաւորչին՝ գործածուեցան անուանի ճարտարապետներ և արհեստաւորներ, որոց առատ վարձ բաշխելով անխոնջ աշխատեցաւ Աղայն լինել տարի ամենայն ինչ վայելչութեամբ յարմարելու, կամարակապ և գմբեթաձեւ ծածկոյթով գործն աւարտելու:

Յիշատակաց ընկերութենէն Հայր Անտոն Պօնուչչի իր յօրինած Ս. Գրիգորի Լուսաւորչին վարուց մասնին մէջ Աղա Աստուածատուրոյ յիշատակն գովասանօք մեծաւ կաւանդէ, զոր մեք թարգմանեալ յիտալականէն կը դնենք աստէն, թէ և նոյն մատենիս թարգմանութիւնն ծանօթ է Ազգին, տպագրեալ ըլլալով ի Վենետիկ քաղաքի յամին 1737, արդեամբ Երեմիա Սարուաստուրենց Կ. Պօլսեցւոյ: Ահաւասիկ Պօնուչչիի գրածն. «Լիվոռնոյ քաղաքին մէջ աչօքս տեսայ փառաւոր տաճար մի կառուցեալ և ճոխապէս զարդարեալ առատաձեռն և պատուաւոր մէկ Հայէն ի պատիւ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, որուն մասնաւոր ջերմեռանդութիւն ունէր, և օրինակովն ոչ միայն իր ազգայիններն, այլ նաև լատին անդացի ժողովուրդն

կը կոչէր որ դիմեն առ Սուրբն, պաշտպանութիւնն հայցելու և նորին պաշտօնասիրութիւնն արծարծելու համար: Սոյն հիմնադիր Հայն էր Պարոն Մաթոս Աղա Տէրտերենց, հարազատ սերունդ Օղլանքեշիշեանց Թէոդորոսի Աղուանից իշխանին: Բարեկիշատակ Ինոկենտիոս ԺԲ. իր առաքելական կոնդակօքն յ17 և յ18 Հոկտեմբերի 1698, շնորհեց Աղային մեծամեծ արտօնութիւններ, և մասնաւոր առանձնաշնորհութիւններ, անուանելով զնա Քաղաքացի Հռովմայ, Լատերանեան կոմս, և Ասպետ զինուորութեան Ոսկի Խաչի: Եկեղեցւոյն շինութեան համար ըրած ծախքն, մինչև այն ժամանակ վաթսուն հազար րէ․ցցա անցած էր. և եթէ յ13 Սեպտեմբերի 1709, մահն պատահած չըլլար, իր մեծամեծ գաղափարներովն, իրեն թողած գծագրութեան համեմատ կամք ունէր բովանդակ ոսկեզօծել տաճարին մարմարեայ շրջանակաց ծեփեալ միջավայրքն, և զետեղել նկարներ և արձաններ, որոնք ներկայացնեն Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին վարքն, չարչարանքն, և սքանչելիքն: Նմանապէս բարձրաւանդակն և գմբէթն գեղեցկապէս մոզայիքի զարդարանքով ծածկել: Կարգելով երկոտասան հայազգի արեղաներ և անոնց մեծաւոր Եպիսկոպոս մի, որոնք միշտ տաճարին մէջ սաղմոսերգեն և ժամասացութիւն ընեն: Կապելով անոնց ապրուստին համար պատշաճաւոր ռոճիկ և եկամուտ: Եւ ջանալով որ այնպիսի արեղաներն միշտ հնազանդ ըլլան, և հպատակ մնան ընդ իշխանութեամբ Առաքելական Ս. Գահուն Հռովմայ»:

## ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՐՈՐԴ

**Պարոն Աստուածատուր Աղայի դժբաղդ մահն, յուղարկաւորութիւնն և թաղումն. ընտանիքն և փեսայն Պարոն Աղան. Եկեղեցւոյն ծախուց գումարք. Աղային դստեր ի Լեհաստանոյ ժամանելն և պատասխանքն. աշխարհեանց անիրաւ վարմանքն, պարտուց առաւելութիւնն և փախստեանք, Աղային ընտանեաց չքաւորութիւնն. Ընեմական Արքեպիսկոպոսին դատաստանական ատեանն և դատաստան վճիռը. մարմարեայ տապանակ և արձանագրութիւնք Աղային յիշատակին համար։**

*Լվովոյ Եկեղեցւոյն սկզբնաւորութիւնն և շինուածն, որպիսի տխրալից յիշատակներ թողած է յետնոց մինչև ապագայ դարեր, այն յայտ յանդիման տեսանելի է յառաջիկայիս. այն լինչ Աղա սէ Մաթուսն կեանքովն և ընչիւքն համայն զոհ եղած էր իր ազգին համար, ի Լվովոյ ժամանակին Հայազգիքն մեծապէս անիրաւեցան յիշեալին որդւոյն, և այնչափ բարեաց և ծառայութեանցն փոխարէն չարիս հատուցին:*

*Գիշերուան խաւարն դեռ չէր փարատած յ*13 *Սեպտեմբերի* 1709, *երբ բարեպաշտ Աղայն ըստ սովորութեանն ներկայացած էր Ս. Պատարագին. և յետ աւարտման՝ գործերուն երթալու ժամանակին, ծախորդաբար իւր անհաւատարիմ ծառային արիւնաշաղախ աջն դաշունով զրկեց զնա իւրքն Աղայն իր պատուական կեանքէն: Մեր նախորդն Ցարգով Հալածեանն Աղային տարապարտ մահն այսպէս կաւանդէ. « Արդ Աստուածատուր Աղայս ձեռնամուխ լինի յայս մեծահեծան գործ, և սկսեալ յամէ ամի* 1701, *յԱպրիլի* 23, *մինչև յամն* 1709 *ի Սեպտեմբեր* 13, *յառաջ տանի քրտնաջան աշխատանօք զայս զարմանահրաշ շինուած եկեղեցւոյս և ի կատար հասուցանէ զարտաքին կազմուածսն. ի նմին ամի* 13 *Սեպտեմբերի զրագում վէրս ընկալեալ ի Վրացի Բեճան անուն*

ծառայէն լսել չարաչար սպանեալ լինի վասն նախանձու. վասն զի զսա քանի մի ամիս կացուցեալ էր Աղայն վերակացու մշակացն, մատակարար վարձուց նոցին, զկնի խրատելոյ և չաղդելոյն՝ հանեալ զնա ի վերակացութենէ, ինքն անձամբ ըստ առաջին սովորութեան իւրոյ եղեալ վերակացու և մատակարար, և միշտ կանխեալ յառաւօտու առ առաջին Պատարագ ի մերձաւոր մատուռ եղբայրութեան Կոզմայի և Տամիանոսի, յառաջ քան զգալն մշակաց և բանագործաց վասն շինման եկեղեցւոյն: Իսկ չար ծառայն Բենեան ոխացեալ նմա ապաւէ ի գիշերայնն խաւարի առ դրան մատրանն, յորմէ սովոր էր ելանել. և յելանելն անտի խոկոյն դանակաւ չարաչար խոցոտէ զնա ութևտասան խոցովք, և որպէս մեռեալ թողու և փախչի ի վերայ Պէյլիք նաւուց: Իսկ ողորմելի Աղայն անկեալ կիսամեռ առանց կարելոյ խօսել մնայ ի վերայ ճանապարհի, և ի ժամու ինչ լուսանալն գիշերոյն անցաւորք տեսանեն զնա, և բառնան տանին ի տունն, և հազիւ թէ երկու կամ երեք խօսք ասելով, խոստովանելով, և առնելով զարձակումն, և անկար լինելով հաղորդիլ վասն բղխման արեանն ի բերանոյ, ընկալեալ զվերջին օծումն խոկոյն մեռանի ի նմին ատուր »: Այսպէս վախճանեցաւ Աղա տէ Մաթուան վաթսուն և հինգ տարեկան, երբ կը խորհրդածէր ի գիշերին Աստուծոյ՝ որպիսի տաճար շինիցէ իւր նուիրական խօսքն, երբ իւր բավանդակ կարողութիւնն ընծայած էր Աստուծոյ, և գրաւած նորին փառացն առաւելութեան, ըստ իւր սովորութեան կենաց վերջին օրն կանխեց Ս. Պատարագին Զոհին, և առաջի Աստուծոյ աղօթեց. Աստուած իմ՛ առ քեզ առաւօտ առնեմ: Զոհն աւարտեցաւ, և ինքն Աստուծոյ փառացն հաղորդ գնաց: Յիշատակ արդարոց օրհնութեամբ եղիցի. ամէն:

Աղա տէ Մաթուս Աստուածատրոյ մարմինն յուղարկաւորեալ տարին Սրբոցն Կոզմայ և Տամիանոսի մատուռն, ուր մնաց աւանդ քանի մի տարիներ, մինչ որ փոխադրեցաւ Հայոց նորակերտ եկեղեցին ի 11 Նոյեմբերի 1716, և թաղեցաւ դասին առաջքն ի միջնակայր եկեղեցւոյն:

*Աղային այսպիսի դժբաղդ մեռած ժամանակն՝ իր ընտանեաց կամ ազգականաց ոչ ոք էր ի Լիվոռնոյ: Ուստի Հանգուցելոյն ճշմարիտ բարեկամքն և քաղաքացոց մեծամեծքն հոգացին անոր մարմնոյն վայելուչ պատիւն և յուղարկաւորութիւնն ընել, լալով այդպիսի անձին կորուստն:*

*Մենք չունինք ինչ յիշատակութիւն Աղային կողակցին վրայ, և կենթադրենք որ վախճանած ըլլայ նա ինքն ի Պարսկաստան յիշեալ Աղային ի Լիվոռնոյ գալստենէն առաջ: Կրկին էին անոր զաւակքն, և անուանքն Յովհաննէս և Լուչիա. Լուչիա Խաթունն ամուսնացեալ ի Դավրէժ Պարոն Ասլան Յակոբեանի հետ, իսկ որդին մտեալ ուսման համար Ուրբանեան Դպրոցն, նա ինքն Աղա տէր Մաթուսին 1698ին ի Հռովմ ազգային պատգամաւորութեանը առաքուած ժամանակն: Մինչդեռ այդպէս ամենայն ընտանիքն բացակայ և հեռաւոր էին Լիվոռնոյէն՝ բօթաբեր լուրն ծանուցուեցաւ անոնց որպէս զի փութան գալու ի Լիվոռնոյ: Ոչ յետ բազում ինչ աւուրց հասաւ ի Լիվոռնոյ Պարոն Ասլան Յակոբեան, որ ի ժամանակին Բալերմօ կոչեալ քաղաքն առևտրական գործերով զբաղեալ էր: Սգաւոր փեսայն թէ և չգտաւ ի Լիվոռնոյ ապաշնորհ Հայոց մէջ իրեն վայել ընդունելութիւն, այլ հանգուցեալ Աներոյն հաշիւները կանոնաւորելու համար հարկադրեցաւ եկեղեցւոյն շէնքն ըստ ամենայնի աւարտել, ծախելով իր սեպհական քըսակէն 18, 000 բէցցա, որ ի միասին հաշուեալ հանգուցեալ Աղային՝ յընթացս իննն տարուան 53, 032 բէցցայէն աւելի ըրած ծախուցն հետ՝ համագումար կը հաշուէին 71, 032 բէցցա: Այդ գումարէն զեղչելով և ի բաց հանելով 3, 245 բէցցա, որ ինն տարուան մէջ ազգային բաժէն հաւաքուած և ընդունուած գումարն էր, կը մնային միշտ 67, 787 բէցցա: Գումար զոր ծախեալ էին թէ Աղայն և թէ իւր փեսայն ի պէտս շինուածոյ եկեղեցւոյն, զոր իրաւամբ կը պարտաւորէին Լիվոռնոյի Հայք փոխարէնն հատուցանելու:*

*Խօճա Դաւիթ Ռուսթամին նամակովն հասաւ մինչև ի Դա֊*

վրէժ քաղաք Աղային մահուան զոյժն դառնին ականջն, որ ի տուգ համակեալ, լքեալ թողուց բովանդակ ամենայն ինչ, և իւր կրտսեր և մինակ որդւոյն հետ ուղևորեցաւ ի Դոսկանա. այդպիսի երկայն ճանապարհորդութեամբ ընդ ծով և ընդ ցամաք ամիսներ անցան, առանց թուելու եղած ծախքն: Վերջապէս բերաւ զանոնք նաւն ոնրագործութեան տեղն ի Լիվուռնոյ. հոն կրկնապատկեցան Լուչիա խաթունին կսկիծքն, երբ տեսաւ իւր ամուսին Պարոն Աղանին լի տրտմութեամբ և պաշարեալ փոխատուներէն, լի պարտիւք, եկեղեցին փակեալ միշտ, եկեղեցւոյն յարակից բնակարանք զրաւեալ պարտատիրանէ փոխատուներէն: Որովհետև ազգին մեծամեծք մեծաւ մասամբ հակառակորդ էին և կը մերժէին ընդունել յանուն ազգին եղած այնքան ծախքն, դժբաղդ դուստրն իւր հօրն տարաժամ մահն ողբալու ժամանակ, մինչև տագնապներու չհանդիպեցաւ արդեօք: Թէ և արտասուախառն հրաւիրեց ազգին առաջաւորքն, որ գէթ լոկ մասին յանձն առնեն վճարել իւր բարերար հօրն ըրած ծախքն, որպէս զի կարող ըլլայ ընտանիքն ազատել ի փոխատուաց, այլ մերժուեցաւ առաջարկն, և թողաւ որ իշխանազուն խաթունն ի յետին աստիճան սնանկացեալ մաշի և հիւծի. պախարակելի ընելով ազգին անունն մինչև յետագայ դարեր: Իսկ փոխատուաց պահանջմունք ստիպեցին վերջապէս դատաւորքն վաճառել տուժանօք եկեղեցւոյն թիկունքն կանգնեալ, և հանգուցեալ Աղային սեպհական ինչք վանածև ապարանն՝ որ շինուած էր տասուերկու արեղայից և անոնց արքահայր եպիսկոպոսին բնակութեան համար:

Յար. Հալաճեանն մեր վերագոյն գրածներն ըստ այսմ կաւանդէ. « Իսկ ողորմելի ժառանգքն վասն վճարելոյ զշահն պարտուց ծախսեն զոր ինչ ունէին, ոսկի, արծաթ, պատուական ակնեղէն, զկարասին. մանաւանդ իշխան տիրուհի Լուցիա դուստրն Աստուածատուր Աղային և կողակից Խօճա Ալանին Յակոբեան, որքան մեծագին զարդս և զագանելիս ունէր, զաննայն ծախէ, և ի վախճանի վասն վճարելոյ զամենայն պար_

տըս և գշանն, և վասն ճարկարրեալ վիմից ծախէ զամենայն տունս և զապարանս, և ճարկարրի բնակել ի փոքրագոյն երկու սենեկս ներքոյ տան միում, և ընդ Ասլան առն և որդւոյ Յակոբի, և եղբօր իւրոյ զերկմասն և մեծ Աստուածային Ապպայթէ Յովհաննու, որորմելի և խղճալի կացութեամբ, և մերկ և կարօտ էր ըստ օրական ապրուստին այնպէս՝ մինչ զի օտար ազգք գթացեալք ի վերայ նոցա ողորմութեամբ օգնէին: Իսկ անուանի Խօճա Ասլանն իբր ոչ կարացեալ տանել զայս ամենայն՝ և ցաւագար եղեալ երթայ ի Հռոմ, և անդ մեռանի, և թաղի ի մեծ եկեղեցին Bocca della verità: Զորս տարի երկարեալ տևեց Աղա ալէ Մաթոսին ընտանեաց եղեռնի վիճակն, որոնք յանձնարս մնեալ թէ հոգևոր և թէ քաղաքական իշխանութեանց օգնութեանն ապաւինեցան, իրենց իրաւունքն պահանջելով:*

Այսքան երկար յուզմանց մէջ Տարածման Հաւատոյ Ս. Ժողովն վճռացեալ Աղա ալէ Մաթոսին սպանմանն և անոր ժառանգացն եղած մեծ անիրաւութեան համար, հրամայեց ժամանականակից Բիզայու Արքեպիսկոպոսին, որ դատաստան կոչելով, թէ ազգայինք և թէ ժառանգքն, քննէ և արդարացի հատուցումն ընէ զրկելոց: Այսպէս հրաման եղած էր նա Դոսկանայու Պետութեան կողմանէ յիշեալ Արքեպիսկոպոսին, որով Հայոց առաջնորդքն և Պարոն Ասլանն հրաւիրեցան Արքեպիսկոպոսական ատեանն, հոն հարցեալ և քննեալ ամենայն ինչ տուաւ վճիռ այսու հետևեալ եղանակաւ.

«Մեք Ֆրանչիսկոս Ֆրօզինի հոմս Սրբազան ինքնակալութեան Հռովմայ, շնորհիւ Ամենակալին Աստուծոյ և Առաքելական Ս. Գահին Արքեպիսկոպոս Բիզայու և այլն:

«Վկայունք բնակող կաթողիկէ Հայ Ազգին, նոյնպէս Հայազ֊

* Լուչիա խաթունին որդին տէր Յակոբ, իտալացւոց կղերանոցն կրթեալ լատին ծիսիւ քահանայացաւ և ապրեցաւ մինչև յամ Տեառն 1761։ Որպէս նաև յիշեալ խաթունին եղբայրն Ապպայթէ Յովհաննէս կոչեցեալ, իւր կեանքն եկեղեցականաբար անցոյց, վախճանելով յամին 1765։

զի Պարոն Աղա աղ. Մաթուսին ժամանակաց մէջ լինելոց դէմ խնդիր և տարաձայնութիւն յուզուելովն՝ Լիվոռնոյ քաղաքին մէջ շինուած եկեղեցւոյն և անոր վրայ եղած ծախուց պատճառաւ. եկեղեցւոյն պաշտամունքն խափանուած և Ազգն ի հոգևոր մխիթարութենէն զրկուած էր:

« Ուստի քննելով Հայոց այլ և այլ աղերսագիրներն որ մատուցուած էին Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն, որոց մէջ յօժարակամ ընդունուած էին նոյն Ս. Ժ. կողմանէ դրուած պայմանքն և պարտաւորութիւնքն՝ որպէս զի հրաման շնորհուի եկեղեցւոյն շինութեանն ի Լիվոռնոյ ի պէտս Կաթողիկէ Ազգին Հայոց:

« Քննելով Տարածման Հաւատոյ. Ս Ժողովոյն հրամանագիրն որ կցորդեալ իւր միւս հրամանագրացն հետ, շնորհեց Կաթողիկէ Ազգին Հայոց հարկաւոր հրաման եկեղեցին կանգնելու ի Լիվոռնոյ պայմանօք որք ծանուցուած էին յաղերսագիրն որ յ8 մարտի 1701:

« Քննելով այն պարտաւորութիւնն որ ամենայն ազգայինք յանձն առած էին եկեղեցւոյ շինուածոյն հարկաւոր ծախուցըն համար, բաժ տալու՝ ազգայնոց վերաբերեալ վաճառաց տեսակին համեմատ, ըստ պաշտօնագրին որ յ18 Մարտի 1697:

« Քննելով յայտարարութեան և տուչութեան թուղթն յառաջին Ապրիլի 1701, որով Ազգն յանձնած էր Պարոն Աղա աղ. Մաթուսին ամենայն իշխանութիւն եկեղեցին շինելու:

« Քննելով Ս. Ժողովոյն նամակն տուեալ ի 24 Օգոստոսի 1712, որով յանձնեալ եղաւ Մեզ, աճապարելու, ի կատար հասցնելու եկեղեցւոյն շինուածն և օծանելու զայն:

« Քննելով նոյն Ս. Ժողովոյն միւս թուղթն որ ի 24 Յուլիսի 1713, որով Մեզ իշխանութիւն տուաւ Ս. Ժողովոյն կողմանէ և այն հաճութեամբ Ծայրագոյն Քահանայապետին փութով դատաստան ընելու, և ճշմարտութեամբ առաջնորդեալ՝ խընդիրն աւարտելու, և բանալու եկեղեցին:

« Քննելով թէ՛ Ազգայիններէն և թէ Պարոն Աղա աղ. Մաթու_

սին ժառանգացն կողմանէ, առ Գ. Աւագ Դուքսին մատուցուած աղերսագիրն, որով շէնքին եղած ծախուց համար երկաքանչիւր կողմն լինեն իրաւունքն յայտնած էին, զորոնք նոյն ինքն Գ. Աւագ Դուքսն հանդերձ իշխանութեամբ յանձնած էր Մեզ, որպէս զի պատուել դիւան խնդիրն աւարտի և եկեղեցին բացուի:

«Քննելով նաև վերջին ժամանակ երկու կողմերէն առանձին առ Մեզ ուղղուած աղերսագրերն, այսպիսի խնդիրն վճռով վերջացնելու համար:

«Լսելով յաճախ յիշեալ Հայոց Ազգին գլխաւորքն, նոյնպէս Պարոն Աղա սէ Մաթուսին ժառանգքն և անոնց իւրաքանչիւրին փաստաբանքն, և այլն:

«Քննելով վերջապէս այն ամենայն որ քննութեան նիւթ էր, և խորհրդածելով որ ինչ արժանի էր խորհրդածութեան, և այլն:

«Վարելով ոչ միայն թեմական Մեր իրաւասութեամբն այլ և Ս. Ժողովէն Մեզ շնորհուած իշխանութեան համեմատ դատելու, ճշմարտութիւնն առաջնորդ ունելով Մեզ կը վճռենք և կը յայտնենք, թէ յիշեալ եկեղեցին որ կանգնեալ է յանուն Ս. Գրիգորի Եպիսկոպոսի և վկայի ի Լիվոռնոյ, պատկանի կաթողիկէ Ազգին Հայոց: Նոյնպէս եկեղեցւոյն կից վեց սենեկով բնակարանն ի բնակութիւն մխիթար քահանայից, գետինն Ազգին ստացուած, նոյնպէս Ս. Ժողովոյն եկեղեցին շինելու թոյլտուութիւնն ի պէտս Ազգին Հայոց ըլլալուն համար:

Զոր և Մեք Ազգին յատկացուցեալ կը պարտաւորենք Ազգին, որ շէնքին համար եղած ծախուց փոխարէնն հատուցանէ Պարոն Աղա սէ Մաթուսին ժառանգացն ըստ չափու և քանակութեան զոր յայտնելոց ենք: Կը հաւանինք Ազգին ըրած կարգադրութեանցն, եկեղեցւոյն մատակարարութեան և եկամտիցն համար, ուստի և կը հրամայենք որ եկեղեցին բացուի և օծուի, այն պայմանաւ որ մնայ միշտ հպատակ Մեր թեմական իրաւասութեան որպէս նաև Ս. Ժողովոյն իշխա_

նութեան, պահպանութեանը այն թէութեանց որ ի մատենաւորի նշանակուած են աղերսագրաց մէջ, և առանձինն Ս. Ժողովոյն հրամանագրոյն մէջ որ յ8 Մարտի 1701:

« Երկրորդաբար կը վճռենք և կը յայտնեմք՝ որ Պարոն Աղա տէ Մաթուսին ժառանգացն եկեղեցւոյն շէնքին համար քսան հազար բէցցա վճարուի. և հոգացուի այդչափ գումարին վաճառուց հատուցած բաժէն, ըստ դաշնագրին Հայոց որ ի 18 Մարտի 1697. որով պարտաւորած են Լիվոռնոյի ամէն Հայերն, վաւերացեալ իսկ ըլլալովն այդ դաշնագիր նոյն իսկ Պ. Աւագ Դքսէն: Արդ ի բաց հանեալ հաւաքուած բաժերէն՝ թէ եկեղեցւոյն և թէ մխիթար քահանայից տարեկան ծախքը՝ մնացեալ մասն վճարուի ժառանգաց մինչև յանթերի վճարումն 20,000 բէցցայից:

« Պարտուց վճարմամբ ազատ կը կացուցանեմք Ազգն, ժառանգաց որ և լիցէ պահանջմունքէն եղած ծախուց պատճառաւ: Այսպէս ևս ժառանգքն՝ եթէ Ազգն պահանջէ անոնցմէ եկեղեցւոյն յարակից բնակարանաց համար Աղային շնորհած գետինն:

« Երրորդաբար թէ եկեղեցւոյն, և թէ իւր մխիթարներու՝ ապահովական պահպանութեան համար, նմանապէս այլ ամէն տեսակ պիտոյից, կը պարտաւորեմք Ազգն որ դիմէ աղերսագրով առ խնամս Պ. Աւագ Դքսին, խնդրելով անոր հաճութիւնն ազգային բաժին վերահաստատութեան համար վաճառուաց տրովք զոր կը պարտին իւրաքանչիւր Հայազգիքն որոնք որ և լիցէ ժամանակ բնակին ի Լիվոռնոյ: Ի վախճանի կամիմք որ մեր վերագոյն յիշեալ բովանդակ հրամանաց հաստատութեան համար մեր սոյն վճիռն օրինաւորապէս ընդունուի Ազգէն, վերապահելով Մեզ ամենայն իշխանութիւն, եթէ հարկաւոր դատենք բացատրութիւններ ընելու նոյն Մեր յիշեալ հրամաններուն վրայ: Զայս այսպէս յայտնելով կը հրամայեմք, և այլն.

Ֆրանչիսկոս Արքեպիսկոպոս Բիզայու.

«Առաջիկայ վճիռս ընթերցեալ, տուեալ և հրատարակեալ եղաւ ի Ռիզա Արքեպիսկոպոսական Պալատան մէջ. ստորագրեալ Գերապայծառ Արհիապիսկոպոսին Ֆրանչիսկոս Ֆրօզինի Արքեպիսկոպոսէն:

«Գրեալ խմով ձեռամբ նորին Ատենադպիր Աղէքսանդր տէ Սալուչչիս: Յամի մարդեղութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի 1713, ըստ Փլորենտեայց յ30 Դեկտեմբերի: — Ի Քահանայապետութեան Կղեմեսի ԺԱ. և ի պետութեան Պերճապատիւ Աւագ Դքսին Դոսկանայոյ Կոզմաս Գ»: (Ստորագրութիւնք երկու վկայից):

Աւարտեալ այսպէս դատաստանն առաջնորդութեամբն Խօճա Դաւիթ Ռուսթամին, ստորագրեցին Արքեպիսկոպոսական վճիռն յետուն և մի թուով ազգայինք. ընդունելով յանուն Ազգին Հայոց վճռոյն տուեալ ամենայն պարտաւորութիւնքն:

Այս տէ Մաթթէոսին բարեկամքն որք չէին ընդ հաղորդակից Ազգին գլխաւորացն ըրած անիրաւութեան, երախտագէտ մտօք և ի յիշատակ Աղային գործեալ մեծամեծ բարերարութեանցն փութացին պատրաստել կրկին մարմարեայ կոփածոյ մեծամեծ տախտակներ, քանդակելով անոնց վրայ լատին և հայ արձանագրութիւններ, որպէս զի մին ասոր և միւսն անոր գերեզմանին նորակերտ եկեղեցւոյն ճակատն. այլ Ազգին գլխաւորքն նախանձով և առաւելապէս թշնամութեամբ վարեալ, հայ արձանագրութեան մարմարեայ տախտակն խորտակեցին, և լատինականն իսկ չթողին որ եկեղեցւոյն ճակատն զետեղուի, այլ զանգակատան որմին վրայ, ուր մինչև ցայսօր պահեալ կը մնայ, որուն հայերէն օրինակն թարգմանելով ի բնագրէն կը դնենք աստէն:

«Այս տէ Մաթթէոս Աստուածատուր Պարոն Հայազգայն
ՅԱղուանից Իշխանաց Օղլանքիշիշեանց առ Կապից ծոլու

Որ անուանեցաւ յԻննովկենտիոսէ ԺԲ Ծայրագոյն Քահանայապետէ

*Ասպետ զինուորութեան Ոսկի Խաչի և Կոմս Լազարեանն .*
*Այր մեծազօր արդեամբ և սիրելի յաչս վեհազունից ,*
*Ճոխալից և սեպհական իւր ծախիւք*
*Կանգնեաց ի հիմանց շքեղափառ — Զայս Տաճար —*
*Ամենաբարւոյ և Ամենամեծին Աստուծոյ*
*Եւ երանելւոյն Գրիգորի Եպիսկոպոսի և վկայի Հայաստանեայց Լուսաւորչի*
*Որպէս զի ի սպաս Տեառն և ի Կաթողիկէ՝ հաստատ*
*Ժամանեսցեն հեշտին յերկնային նաւահանգիստն*
*Ոգիք Լիվոռնացի բարեպաշտօն քաղաքացեաց ,*
*Եւ առաւելապէս Հայազգի Ժողովրդեան*
*Որ օր քան զօր յաւելոյր — Այլ և աճեսցեն —*
*Որ յամենայն սահմանաց գաղթեցեն յայս քաղաք :*
*Ազգն Արամեան երախտագէտ այնքան բարերարութեան*
*Ի մշտնջենաւոր յիշատակ*
*Առատաձիր Հիմնադրողին*
*Զայս վիմագրեաց արձանագիր*
*Յամի Թուականին Քրիստոսի* 1709,
*Եւ ի Նուիրական սուրբ Մարգարէութեան Ազգին » :* *

** Բարեացապարտ Աղային ազնուականութեան յատուկ կնքոյն նկարագրութիւնն է ըստ այսմ. վահանին վրայ իշխանական թագ, զարդարեալ թագն պատուական ակամբք, թագն ունի երկու հրեշտակներ, այլ և կը նշմարուին վահանին մէջ կրկին բուկինք, արև և մկրատ, որոնց առորեն զետեղեալ հինգ աստղներ ։*

*Կը պահուին մինչև ցայսօր ի Լիվոռնոյ Աղային կրկին խաղաներկ պատկերքն , մին ի դիւանատան եկեղեցւոյ նկարեալ ի զգեստ Ջուղայեցի , իսկ միւսն է յԱռաջնորդարանին եւրոպական տարազով նկարեալ ։*

## ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

Հայոց եկեղեցւոյն բացումն. օծման հանդէսն ներկայութեամբ աւագանւոյն և մեծամեծաց քաղաքին. Տէրացու Գասպար Յովհանճան. Ա. Պաշտամանք. եկեղեցւոյն. ճարտարապետք, արտաքին և ներքին նկարագրութիւնն, երևելի արձանագրութիւն, պատկերք, արձանք, մարմար քարանց ճոխութիւնն, մատուռն, աւանդատուն, շանթակալարան, գմբէթ. եկեղեցւոյն մէջ մեծամեծաց տապանաքարեր:

*Բայց, որպիսի՛ բերկրական առաւօտ էր որ յակիզբն* 1714 *թուականին՝ Յիսուսի Տեառն մերոյ սուրբ Անուանն և Տնօրէնութեան տօնին ծագեցաւ Հայոց ի Լիվոռնոյ. երջանիկ ամանոր, սահմանեալ ի նախախնամութենէն, որպէս զի դարէ ի վեր փափաքեալ տաճարին դրունքն սքանչելապէս և աննայն շքեղութեամբ բացուին ի հիացումն ամենայն ազգաց և բնակչաց ի Լիվոռնոյ, որոնք խուռն ընթանալով խնդակից եղան Հայոց անպատմելի ուրախութեան: Եւ յիրաւի որչափ արկածք և դժուարութիւնք պատահած էին, այնչափ չէնքին կանգնման և աւարտմանն համար. անդ էր տեսանել մերազնեայ ժողովուրդն որ մտեալ ի նորակերտ տաճարն՝ խնդութեան արտասուաց հեղմամբն՝ գոհութիւն և փառաբանութիւն կը մատուցանէին Արարչին՝ որ արժանի եղած էին վերջապէս հասանել վախճանին, մինչդեռ ի զուր իրենց նախնիքն այնչափ փափաքած և աշխատած էին մինչև իրենց մահըն առանց երբեք կարող ըլլալու և տեսնելու զայդպիսի գեղեցկաշէն տաճարն:*

*Այդէն եղած էին պատրաստութիւնքն, և հրաւէրք առաքեալք ամենեցուն՝ որոնք ի յարաբերութեան էին մերազնեայց հետ:*

*Ուստի այսպիսի կրկնապատիկ տօնախմբութեան՝ տէրունականին տաւն և հայկականին՝ ներկայ գտան քաղաքին մե_*

ծամեծք, ևս և ի դխմաց Ասագ Դքսին Պալատականքն և ապազանին: Այնքան ընտիր բազմութեան մէջ երևեցաւ Ֆիօզինի Արքեպիսկոպոսն, և շուրջն ունելով իւր կանոնիկոսաց դասն օծեց Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին եկեղեցին: Իսկ այլ արարողութիւնք, որպէս ժամասացութիւն և այլն, կատարեցան ըստ մերումս ի ձեռն Կ. Պօլսեցի Յարութիւն Եպիսկոպոսի: Այլ են ոմանք որք աւանդեն թէ նայածէս Եպիսկոպոսն յետոյ նստած ըլլայ ի Լիվոռնոյ, և ոչ Յունուարի առաջին օրն: Յայնմ ժամանակի չէին պակսեր Հայ ժողովրդեան մէջ ի Լիվոռնոյ քաջ սիրտացուներ, որոնք հրաւիրելոց մեծամեծաց ընտիր ընծայեցին մեր հայրենի պաշտամունքն և արարողութիւնն, վայելուչ եղանակաւ երգելով, որոնց մէջ անուանի և յիշատակութեան արժանին էր Տիրացու Գասպար Յովաննան: Նորակերտ եկեղեցւոյն հանդիսութիւնքն շարունակեալ տևեցին մինչև ի տօն Աստուածայայտնութեան և Մկրտութեան Տեառն. Նոյն աւուր Զայնաւոր Պատարագին մատուցմամբն մկրտութեան արարողութիւնն կատարեալ, երգեցաւ տաղն «Այսօր ձայնն հայրական» ախորժելի հնչմամբ: Այնուհետև Հայերն նախանձաւոր հանդիսացան բարեպաշտութեամբն, Գիշերային, Առաւօտեան և Երեկոյեան ժամերգութիւնքն անթերի կատարել. բանալով եկեղեցւոյն դրունքն զանազան ծխից ժողովրդոց, որպէս զի անխտիր յաճախեն հոն և փառաբանեն զԱստուած:

Պատշաճ կը համարիմք աստէն փոքր ի շատէ եկեղեցւոյն շինուածն նկարագրել: — Կոզիմոս Գ. որդին Թագաժառանգ Իշխանն ոչ միայն Հայոց եկեղեցւոյն յատակագիծըն և ճարտարապետական ձևն գծագրած էր ինքնայօժար՝ անուանի ճարտարագէտ ըլլալովն, այլ և ծնած ունէր գաղափար մի, Հայոց եկեղեցին իբր արքունի մատուռ կապակցելու արքունի պալատան հետ, որոյ մերձաւորութիւն այնչափ էր որ միայն չորս բնակարանք զանոնք յիրերաց կը բաժնէին: Արդ տապալմամբ չորս բնակարանաց կարելի էր հաստատել պա֊

*լսուէն մինչև եկեղեցւոյն գաւթին վրայ կամարաձև ուղի, որպէս զի այնու հաղորդակցութեամբ իշխանազունքն ի Լիվոռնոյ եղած ժամանակնին կիրակի և տօն օրեր դիւրաւ Ս. Պատարագին կարող ըլլան ներկայանալու, և այն պատճառաւ որով ճակատ եկեղեցւոյն ցածագոյն եղաւ մինչև ի բարձրութիւն գաւթին. թէ և յետոյ ի գործ չդրաւ այդ առաջարկութիւնն:**

*Ըստ գծագրութեան թագաժառանգ իշխանին յառաջ տարաւ եկեղեցւոյն շինուածն Տէլֆանթազիա անուն ճարտարապետն: Հայոց եկեղեցին արտաքուստ ծածկեալ է ճոյակապ մարմարօք և գեղեցկագոյն քանդակօք: Եկեղեցւոյն առաջքն է սիւնազարդ գաւիթ Դորիկեան կարգով բարձրաշէն կամարօք, սիւներն իրերաց կապակցեալ երկաթեայ ցանցով, որոյ նմանն ունէին նախնիք ապաշխարողաց համար: Գաւթի յատակն բաժանեալ է փողոցէն երեք լայնածև մարմարեայ երկայն աստիճանօք, որոց վերջք զարդարեալ չորս կոթողիք**. ի ճակատ եկեղեցւոյն մերոյս Ս. Գրիգորի Լուսաւորչին արձանն կիսաձև կամարին վրայ զետեղեալ կայ կլորակ շրջանակի մէջ, որոյ աջն բարձրացեալ ի ձև օրհնութեան. նոյն ճակտին վրայ են Սիրոյ*** և Հաւատոյ խորհրդաւոր արձաններն: Բովանդակն միակտուր ճերմակ մարմարիոնէ Քարրարացի Վաքքա արձանագործին աշխատութեան արդիւնք:*

* *Գուցէ նոյն թագաժառանգ Ֆերտինանտ իշխանին առանց գահ նստելու վաղագոյն վախճանելուն համար։*

** *Սոյն կոթողքն էին զորոնք բառնալու համար ի մէջոյ ձեռնամուտ եղաւ յամին* 1887 *քաղաքական վարչութիւնն ի Լիվոռնոյ։*

*** *Սիրոյ* Carità *արձանն է մայր որ ունի կրկին մանուկներ, որոնց մին նստեալ ծնգացն վրայ և միւսն յոտս. սոյն մարմարեայ մայրն կը կոչուի ռամիկներէն Այրին Հայոց, զորմէ կաւանդեն թէ շատ գեղեցիկ ըլլալովն խնդրեցաւ ի կնութիւն ի նաւապետէ ումեմնէ. այրին Հայոց չյօժարեցաւ առաջարկին. այլ եկաց մաքրակենցաղ սնուցանելով զմանկունս իւր, և ի վախճանելն պատկերն արձանաբար զետեղեցաւ եկեղեցւոյն ճակատն։*

Գաւթէն է եկեղեցւոյն մուտքն որ ունի բարձրաշէն և ծաղկանկար ընկզենի դռներ գեղեցկաձև արուեստիւք. ի ներքուստ դրան վրայ կայ այլ կիսաձև արձան Սրբոյ Լուսաւորչին, իսկ յաջ և յահեակ մարմարեայ մեծ աւազանք օրհնեալ ջրոյ գեղեցիկ քանդակօք *: Կրկին կողման որմունքն կը ծածկեն մեծամեծ իւղաներկ պատկերներ. աջակողմեանն ի մտանելն եկեղեցին կը ներկայացնէ Հայաստանեայց եկեղեցւոյ սուրբ Հայրապետքն, որպիսիք են Ս. Սահակ Պարթև, Ս. Ներսէս Շնորհալի, Ս. Մեսրոպ Վ. և Ս. Գրիգոր Նարեկացին. ձախակողմեանն կը ներկայացնէ Ս. Թադէոս առաքեալն որ Սանատրուկոյ և իւր քրմացն զՔրիստոս քարոզելովն կը տապալէ զկուռս. Հայոց թագաւորն ափիբերան կեցեալ հրաշքէն՝ ունելով զդուստրն Սրբուհին Սանդուխտ առ իւր ի գահոյս: Կրկին սքանչելի այդ պատկերներն նկարուած են ի Հռովմ Յովսէփ Պօթթանի կոչուած անուանի նկարչէն, անցեալ դարու մէջ:

Եկեղեցին խաչաձև է, ունի իւր վրայ բարձրաշէն գմբէթ չորս կամարներու վրայ յեցեալ. այդպիսի գմբեթին վրայ է այլ փոքրիկ գմբէթ, իւր գեղեցիկ լուսամուտօք, զոր պատշաճ է անուանել մանր օրինակ գագաթան Եկեղեցւոյն սրբոյն Պետրոսի ի Հռովմ, որոյ ճարտարապետք եղան Ֆապպիանի կոչուած եղբարքն: Գմբէթն իւր արձագանգովն և ներդաշնակական համաձայնութեամբն արդարև եզական է, և կարող են դատել զայն ձայնաւոր պաշտամանց ժամանակ եկեղեցին ներկայ եղողքն:

Յորմանները ի սկզբան պարզաձև շինեցան, և հետզհետէ փոխանակեցին նորագոյններ լաւագոյն գեղեցկութեամբ: Արդ խաչաձև եկեղեցւոյն աջաթևեան խորանն (ի մտանելն եկեղեցին) շինեցաւ յամին 1718, Յօհան Պաղտասար Յովակիմեանէն, և նուիրեցաւ յանուն Սրբոյ Հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին. առ ոտս խորանին թաղեցաւ յետոյ բարերարին մար_

* Պատուանդանաց վրայ յեցեալք։

մինն: Իսկ ձախաթևեանն շինեցաւ մի և նոյն ճարտարութեամբ յամին 1756, արդեամբ Խօճա Բարթողիմէոսի Պետրոսեան. և նուիրեցաւ ի պատիւ Փոխման Ս. Կուսին, առ որով կայ թաղեալ և բարերարն. Վերափոխման մեծ պատկերն նկարեալ է Աղեքսանդր Կերարտինի պատկերահանէն. իսկ Ս. Լուսաւորչինն է գործ Գաղղիացի Ֆրանչիսկոս Ըվիլիէրային: Կրկին խորանքն յիշեալ՝ կորնթական ճարտարապետութեամբ ոճով և ազնիւ երակաւոր թխագոյն սիւներով շինուած են: Խորաններէն իւրաքանչիւրն ևս ունի առանձին հոկայ մարմարագործ արձաններ որոնք կը ներկայացնեն գլխաւոր առաքինութիւնքն, և են քանդակեալք Քոնթէ Պարաթթայէն:

Գալով Աւագ սեղանոյն ձևոյն, աղաւաղեալ շինուած մի է այն, և է գործ 1844ին, զքանչելի եղածն անկէ յառաջագոյն և կանգնեալ 1778ին, տաճարաձև, անկիւնքն չորս սիւնք, և անոնց վրայ զետեղեալ մարմարեայ ոսկեզօծեալ ճառագայթարձակ վայելչաձև ճակատ, նման Հռովմայեցի մեծամեծ եկեղեցեաց խորանացն: Աւագ սեղանոյն առջև մարմարեայ վանդակ, և ընդ Հայաստանեայց վաղեմի ձևովն, կողմնակի առ որմով շքեղաձև աստիճանք դասն իջնալու համար, դասին առաջքն այլ մարմարեայ վանդակք, որոյ միջավայրն պղնձակազմ դուռն, դրան վրայ Աղա տէ Մաթէոս Աստուածատուրոյ կնիքն դրոշմուած առանձին առանձին կրկին փեղկերուն վրայ. դուռն թանկագին գործ կը համարուի ճնագէտներէն: Նոյն դրան առջևն է տապան վերոյիշեալ Աղային հայ և լատին արձանագրութեամբ, իրեն ասպետական սաղաւարտովն, գոյնզգոյն քարերով իբր մուզայիք զարդարեալ: Բեմին վրայ դէպ ի ձախակողմն Աւագ սեղանոյն կայ տապան Կ. Պօլսեցի Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաֆեան. իսկ դասին մէջ տապանք Առաջնորդաց: Եկեղեցւոյն մէջ այլևայլ տեղուանքն այլևայլ տապանք, որոնց արձանագրութիւնքն մի առ մի հանդերձեալ եմք դնել ստորև: Աւագ խորանին պատկերն է Խաչելութիւն Տեառն: Մենք երեքտասաներորդ գլխո_

կարգութեան մէջ Աւագ սեղանոյն նորոգութեան վրայօք ծանօթական տեղեկութիւններ տալու ստիպեալ ըլլալով, պատշաճ կը դատիմք հոն աւանդել նոյն սեղանոյն հրաշագործ Ս. Խաչելութեան պատկերին վրայ կարևոր տեղեկութիւններ տալ: *

Եկեղեցւոյս յատակն որպէս նաև Աւանդատանն և Գաւթին առ հասարակ մարմարապատ են: Աջակողմն կայ դուռն և մուտ փոքրիկ մատռան, ուր առանձին խորանի վրայ զետեղեալ է Ս. Աստուածածնի հրաշագործ պատկերն, և կը կոչուի «Տիրամայր Շնորհաց». մատռան մէջէն է դուռն մի որ տանի արտաքս ի փողոցն «Վիա տելլա բոսթա»: Ձախակողմն եկեղեցւոյն կայ դուռն Աւանդատան: Աւանդատան մէջ են կրկին սենեակք. մին է զանգակատունն առ որմովն բարերար Աղա տէր Մաթուսին յիշատակական լատինագիր արձանագրութիւնն. իսկ միւս սենեակն է դիւանատուն՝ ուր կը պահուին ձեռագիրք, և եկեղեցւոյն վաւերական գրոց պատճէնք: Գեղեցկաշէն զանգակատունն ունի չորս այլևայլ մեծութեամբ զանգակներ, որոնց հնչմունքն կարի ախորժելի են ներդաշնակութեամբ. թէ՛ զանգակատունն և թէ եկեղեցւոյս գմբէթն Լիվոռնոյի զարդ են, չկայ Հայոց գմբեթին նման գեղեցկութեամբն այլ գմբէթ ըստ վկայելոյ անոնց ամենուն որ այց եկած են ի Լիվոռնոյ:

Չմոռանանք յիշելու ես կրկին օրհնեալ ջրոյ աւազանքն զորս բարձեալ ձեռօք ունին կրկին քանդակեալ հրեշտակներ, մին աւանդատան դրան առջևն, և միւսն մատռան դրանն: Աւարտելով մեր նկարագրութիւնն յաւելունք ծանուցանել որ

* Թէ՛ սուրբ Խաչելութեան և թէ Ս. Աստուածածնի պատկերքն քողով ծածկեալ կը մնան միշտ, և սովորութիւն է վերացուցանել քողերն երբ հաւատացեալք կը դիմեն ուխտիւք մերձելով մոմեղէնս առ ի լուցանել առաջի Ս. Խաչին վեց մոմս, իսկ Տիրամօր առջևն չորս՝ և մնան այնպէս պատկերքն բացեալք մինչև երեկոյ օր մի ողջոյն:

*եկեղեցւոյն շուրջ կը պատեն բարձրաշէն տունք, յառաջակողմ եկեղեցւոյս կը կոչուի «Վիա տելլա Մատոննա», յաջակողմն «Վիա տելլա բօսթա» իսկ ձախակողմն «Վիա տելլի Ավվալօրաթի»:*

*Եւ ահաւասիկ եկեղեցւոյն տապանագրաց օրինակքն կը դնեմք աստէն*

*Տապանագիր Սարաֆեան Սարգսի Արքեպիսկոպոսին Կեսարիոյ.*

ՍՈՓԵՍՏ ԱՐՇԻ ՄԱՐԶԻՑ ԿԱՃԱՌ*
ՇՆՈՐՀԻՒ ՐԱԿԵՐՏ ԵԶԱԿ ԱՆՃԱՌ
ԱՐԹՈՒՆ ՔԱՐՈԶ ԾԱԳԱՑ ՊԱՐԶ ՃԱՌ
ՆԵՐՀՈՒՆ ԵԶԵՐՑ ԻՄԱՍՏՍ ՊԱՏՐԱՍՏ.
ՐԱՐՈՒՆ ՊԱՐԹԵՒ ԿԱՑՏԱՌ ԱՄՕՔ
ՈՐՊԷՍ ԻՆՔԵԱՆ ԵՐԿՆԷՐ ԴԱՍՈՒՔ
ԳԹԱԾ ՍԱՏԱՐ ՍԸՐՏԻՒ ՈՂՈՔ
ՐԵՏՈՐ ԿՐԹԵԱԼ ԱԶՆԻՒ ՎԱՐՈՒՔ
Ի ԾԱԳ ՈՒՂՂԵԱԼ ՐՈՊԷՆ ԿԱՍԵԱԼ
ՀԱՒԱՏ ՊԱՑԾԱՌ ԻՒՐՈՑ ԵՐԳԵԱԼ
ՍԱՐԱՍ ՈՐԴԻՈՑՆ ՈՂԿՈՅԶ ԱՐԲԵԱԼ
ԱԼԻՔՆ ՍՊԱՌԵԱԼ ՅԱՑՍ ՅԱՐԿ
ՆԸՆՋԵԱՑ ՅԱՄԻ ՏԵԱՌՆ ՌԶՀԳ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ Բ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ՆԱՐՏԻՆ ՊԱՇՏՕՆԵԱՑ ԲԱՆԻՆ
ՅՕՐԻՆԵԱՑ ՎԵՐԻՆ, ՅԱՐԳԱՆՍ ԻՒՐ ՊԵՏԻՆ:

*Տապանագիր Յովհաննէս քահանայի Ծալեան.*

Է

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ
ԹԻՖԼԻԶԵՑԻՈՑ ՊԱՂՏԱՍԱՐԻ ՈՐԴԻՈՑ
ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅԻՆ.

* Տապանագիրս կազմող բառից իւրաքանչիւրին սկզբնատառերն իրերաց յետ կցելով վերէն սկսեալ դէպ ի վայր կը կազմեն հետեւեալն այսպէս. «Սարգիս Շնորհալի Արքեպիսկոպոս Մեծի Կեսարիոյ Կապպադովկիայ»

ԷՐ ՁԱՐԴԱՐԵԱԼ ԱՄԵՆԱՅՆ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՄԲ.
ԵՂԵՒ ԱՌԱՋԻՆ ԱՌԱՋՆՈՐԴ
ԵՒ ԽՈՍՏՈՎԱՆԱՀԱՅՐ ՏԱՃԱՐԻՍ ԱՅՍ
ՈՐ ՓՈԽԵՑԱՒ Ի ՄԱՀՈՒԱՆԷ Ի ԿԵԱՆՍ
Ի ԹՈՒԱԿԱՆԻՍ ՀԱՅՈՑ ՌՃՀԵ. ՅՈՒՆԻՍ Է.
ԻՍԿ ԱՄԻ ՀԱՍԱԿԻ ԻՒՐՈՑ ԵՕԹԱՆԱՍՈՒՆ:

*Տապանագիր Ստեփան Վարդապետի Խաչատուրեան.*

Է

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ
ԲԱՐԵԲՐԹՑԻ ՍՏԵՓԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ
ՈՐ ԵՂԵՒ ԵՐԿՐՈՐԴ ԱՌԱՋՆՈՐԴ
ԳԵՂԵՑԿԱՇԷՆ ՏԱՃԱՐԻՍ ԱՅՍ ԱԶԳԻՆ ՀԱՅՈՑ
ԱՄՍ ՔԱՌԱՍՈՒՆ ԵՒ ԵՐԿՈՒ
ՅԱՄԻ ՏԵԱՌՆ ՌՉԿԹ Ի ՄԱՐՏԻ ԻԷ.
ԷՐ ԱՄԱՑ ՀԱՐԻՒՐ ԵՒ ԵՐԿՈՒ:

*Տապանագիր Իգնատիոս քահանայի Զաղաթեանց.*

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ
ՋՈՒՂԱՅԵՑԻ ՏԷՐ ԻԳՆԱՏԻՈՍԻՆ
(ՄԱՀՏԵՍԻ) ՋԱՂԱԹԵՆՑ
ՍՊԱՍԱՒՈՐ ՍՈՒՐԲ ՏԱՆՍ Ի ԳՈՐԾ ՏԵԱՌՆ
ՅԱՄԻ ՏԵԱՌՆ ՌՉԿ. Ի ՀԱՍԱԿԻ Կ:

*Տապանագիր Տեառն Անտոնի Քահանայի.*

ԱՅՍ Է ՇԻՐԻՄ
ՏԷՐ ԱՆՏՈՆԻ ՋՈՒՂԱԴԱՇՏԵՑԻ
ՈՐԴԻ ՄՈՎՍԷՍԻՆ
ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ
ՌՃԿԴ. ՆՈՅԵՄԲԵՐ ԺԹ:

*Տապանագիր Տիրացու Գասպարայ.*

Ա ՅՍԷ ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏԵԱՆ
ԴԱՇՏԵՑԻ ԳԱՍՊԱՐԻ՝ ՈՐԴԻՈՑ
ՅՈՎԱՆՃԱՆ ՈՐ ՀԱՆԳԵԱՒ Ի ՔՐԻՍՏՈՍ
ԱՄԱՑ ՈՒԹՍՆԱՄԵՆԻ ԵՒ ԱՒԵԼԻ.
ՔԱՆԶԻ ՍԱ ԵՐԳԵԱՑ ՔԱՂՑՐԱՆՈՒԱԳ
ՁԱՅՆԻՒ ԺԱՄԵՐԳՈՒԹԵԱՆ
ԵՒ ԴՊՐՈՒԹԵԱՆ ՍՈՒՐԲ ՊԱՏԱՐԱԳԻՆ.
ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1746
ՅԱՄՍԵԱՆՆ ՄԱՐՏԻ 31, Ի ԼԻՎՈՌՆՈՑ:

*Տապանագիր Աղա սէ Մաթուս Աստուածատրոյ.*

Է

ԱՅՍ Է ԴԱՄԲԱՐԱՆ
ԹԱՓՎԵՑԻՈՑ ՊԱՐՈՆ ԱՂԱՅԻՆ
Ի ԶԱՐՄԷ ԻՇԽԱՆԱՑ ԱՂՈՒԱՆԻՑ ՕՂԼԱՆՔԵՇԻՇԵԱՆՑ
ԳԵՂԵՑԿԱՇԷՆ ՏԱՃԱՐԻՍ ԿԱՌՈՒՑՈՂԻ
ՈՐ ՓՈԽԵՑԱՒ Ի ՄԱՀՈՒԱՆԷ Ի ԿԵԱՆՍ
Ի ԹՈՒԱԿԱՆԻՍ ՀԱՅՈՑ ՌՃԾԸ. Ի ՍԵՊՏԵՄԲԵՐԻ Գ.
ՅԱՄԻ ՀԱՍԱԿԻ ԻՒՐՈՑ ՀԴ:

*Տապանագիր Խօճայ Ալեքսանի Եւդոկիացւոյ.*

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԲԱՐԵՊԱՇՏԻ
ԵՒԴՈԿԻԱՑԻ ԱԼԵՔՍԱՆԻ
ՈՐ ՄԻՆՉ ԵՀԱՍ Ի ՅԱՅՍ ՏԵՂԻ
ԵԿՆ ՎԱԽՃԱՆ ԻՒՐՈՑ ԿԵՆԻ.
ՍԱ ԿՏԱԿԵԱՑ ՊԱՏԱՐԱԳԻ
ՕՐ ԸՍՏ ՕՐԷ ՀՌՋԱԿԵԼԻ
ՈՐ ԵՒ ԵՂԵՒ ԸՍՏ ԿՏԱԿԻ
ԵՒ ՀԱՆԱՊԱԶ ԱՍՏ ՀՌՋԱԿԻ.
ԹՈՒԻՆ ՀԱԶԱՐ ԵՕԹՆ ՀԱՐԻՒՐԻ
ԵՒ ԵՐԵՍՈՒՆ Ի ՄԻ ԱՄԻ
ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՏԱՍՆ ԵՒ ԻՆՆԻ
ՀԱՆԳԵԱՒ ԾԱՌԱՅ ՏԵԱՌՆ ՅԻ-
ՍՈՒՍԻ
ՈՐ ԷՐ ԱՄԱՑ ԹՈՒՈՑ ՅԻՍՆԻ.

Մնացեալ Տապանագիրք են հետևեալքն.

Անեցի Նազար որդի Մուրատխանի. Նոյեմբ. ԻԷ. ՌՃՀԳ. ունի քանդակեալ կնիք (գառն դրօշակաւ).

Դատտակեցի Խօջա Պէք որդի Պաղտուրի. Նոյեմբ. ԺԹ. ՌՃԿԳ. կնիքն (կրկին առիւծք. B. O.)

Համադանցի Եղիա որդի Մանուկին. Ապրիլ Գ. ՌՃԾԵ. կնիքն (Ասպետական. խաչ մի և երեք աստեղք ստնմաւորք).

Սիւնեցի Յովհաննէս Նազարեան որդի Ղազարայ. Մայիս 22, 1760. կնիքն (Ասպետական, որ է սաղաւարտ և երեք աստեղք).

Ջուղայեցի Մակար որդի Ճիլաբխանի. Ապրիլի Ա. ՌՃՀ. (կնիքն Ասպետական, երկգլխեան արծիւք, երեք աստեղք և երեք կորակք).

Անեցի Մարգար որդի Սաֆարին. Ժ. Յունուարի ՌՃԽՁ.

Տ— Կերտցի Աստուածատուր որդի մահտեսի կիրակոսի. ԻԷ Յունուար. ՌՃԽԲ.

Բաղտատեցի Ամիրայ որդի Միհանսարին. ԻԲ Դեկտեմբ. ՌՃԿԴ.

Զմիւռնացի Աւետիք Աւագեան 1770.

Սիւնեցի Գաբրիէլ Յարութիւնեան ՌՃԽԹ.

Բիժումպալցի Հայրապետ Մելիքենեան. 3 Մարտ 1771.

Ագուլեցի Միրտից որդի Սիմոնի. Ժ. Սեպտեմբեր ՌՃԿԲ.

Ջուղայեցի Մանուէլ հոգևոր որդի Հայրապետին. Ձ Ապրիլ ՌՃՀ.

Ջուղայեցի Աղեքսանդր որդի Կարապետին. Գ Յունուար ՌՃԼԴ.

Ջուղայեցի Գասպար որդի Նազարէթին. ԻԹ Յուլիս ՌՃՀՁ.

Ղափանցի մահտեսի Պօղոս որդի անաչողակ Ծատուրին. Ժ Յունիս ՌՃԾԲ.

Ղափանցի Մխիթար որդի Տէր Աստուածատրոյ. ԻԻ Մարտ ՌԲԺ.

Ջուղայեցի Ղազար Սաֆար որդի Սէթին. Է Օգոստոս ՌՃԿ.

Վանեցի Յովհաննէս Նազարեան 8 Դեկտեմբեր 1726.

Դաստակեցի Պաղտասար Յովակիմեան 30 Նոյեմբ. 1714.

Ջուղայեցի Խօճա Մարգար Ճիլաբխեան 12 Սեպտեմբ. 1701.

Ջուղայեցի Խօճա Յովսէփ որդի Անտոնի 30 Նոյեմբ. 1715.

Աւրօ Չէլէպի որդի Մախսուտի. Դ Ապրիլ ՌՃԿԹ.

Սիմոն Մկրեան 23 Սեպտեմբեր 1715.

Պետրոս Պօղոսեան 1 Յուլիս 1749

Անտոն Պօղոսեան 16 Ապրիլ 1749.

Ծատուր որդի Մահտեսի Պօղոսի 21 Յունիս 1703.

Մանուէլ Տէլլիա 16 Ապրիլ 1706.

Գաբրիէլ որդի Սալվաթորի 1760.

Յովհաննէս Նազարեան 11 Ապրիլ 1760.

Մարիամ Կատարինէ Սանթինի դուստր Մարկոսի Յակորեան 1770:*

* Ըստ վկայելոյ յիշատակագրութեան միոյ են և այլ տապանք յեկեղեցւոջ որոց նիշք չկան այսօր, և են յառաջ բերեալքն այսոքիկ.

Բաղտատցի Մօսօն որդի Ամար Աղայի 18 Հոկտեմբ. 1715.

Ջուղայեցի Բիքաղան որդի Գրիգորի Միրման 18 Ապրիլ 1717.

Յովհաննէս որդի Ղարանի 3 Սեպտեմբ. 1717.

Կոստանդնուպօլսեցի Աստուածատուր Սաֆար 1 Դեկտեմբ. 1719

Զմիւռնացի Ստեփան Նազարէթ 24 Փետրուար 1720

Անտրիկ որդի Կարոլոսի Աստուածատրոյ 28 Յունուար 1720.

Աղեքսանդր որդի Աստուածատրոյ 26 Յունիս 1720.

Ստեփան Բանիէրի որդի Պետրոսի Պօղոսեան 9 Ապրիլ 1721.

Ասլան Մարգար Ջուղայեցի 3. Փետրուար 1722.

Վանեցի Յովհաննէս որդի Նազարայ 8 Դեկտեմբեր 1724։

## ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

**Մոնսինեօր Ֆրօզինի. Ժամանակին հայոցին տնհանայոն. Մխի-թար Աբբահայրն ի Լիվոռնոյ. Հայ եկեղեցականք, երեք հայազ-գի եղբարք Աղէքսանդրեան. Աղերաքէր Աղքայինոյ — Աւագ Դաւիթ. Վերահաստատութիւն Աղքային ծախին, Բաժ տառոց տնօրէնք. Հայոցին հիմնարկ, հիմնադրական յանձնարարու-թեանն, ծախսն յանձնառուք. Հայ Աղանդարոց եկեղեցին դէմ ընկերքն. Տէր Մելքիսեդեկ քահանայ. Խօսք Դաւիթ Բաթբայ Աղքայինն։**

*Բիզայի Արքեպիսկոպոսաց ոմանց Լիվոռնոյի Հայոց՝ եկե-ղեցւոյն վրայ վարած չափազանց իշխանութեանն դժպհի խնդիր էր, մինչև բռնաւորական կոչեցին զայն մեր նախորդաց ոմանք: Արդ այդպիսի Արքեպիսկոպոսաց շարին մէջ անուանիններէն մին եղած էր Մօնսինեօր Ֆրանչիսկոս Ֆրօզինի՝ որ նորակերտ եկեղեցին հանդիսաւորապէս օծելէն յետոյ, պաշտօնական եղա-նակաւ ծանոյց զայն Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն. ա-նաւասիկ օրինակն.*

*« Վսեմափայլ և Գերյարգելի Տեարք,*

*« Հայոց նորակերտ եկեղեցին ի Լիվոռնոյ բացաւ և օրհնե-ցաւ, յառաջին աւուր ամսեանս և տարւոյս այսորիկ: Ձեր Վսեմափայլ Տէրութիւնքն ներկայացնելու համար աստանօր՝ ինձ պատիւ համարիմ: Ծանր և երկար խնդիրն որ կը յու-զուէր Հայազգեաց, և Պարոն Աղա տէ Մաթուսին ժառան-գացն մէջ, եկեղեցւոյն ում պատկանելուն պատճառաւ, վեր-ջացուցի տալով դատաստանական վճիռն, որուն մէջ աստան-ձին յայտարարութիւն ըրի որ պարտական ըլլան պահելու այն ամէն պայմանները, որոնք յ8 Մարտի 1701 եղեալ էին ի Ս. Ժողովոյ անտի: Յիշեալ վճիռն Ազգայնոց կողմանէ ընդու-նեցաւ, վասն զի յիտուն և մի թուով Հայք թէ յանուն իւ-*

րեանց և թէ յանուն Ազգին պարտաւորեցին զինքեանս վճռոյն պահպանութեան և այլն ».

Ի Բրգա ի 29 Յունուարի 1714 – (Ստորագրեալ) Ֆրանչիսկոս Արքեպիսկոպոս Բրգայու:

Արդ եկեղեցւոյս բացման և օծման տարին բաց ի բնիկ Առաջնորդէն որ ըստ մեր յիշատակութեան այլուր էր Ծալեան Տէր Յովհաննէս քահանայն, կային եւ այլ հայազգի քահանայք, որոց անուանք նշանակեալ են Պատարագաց վերաբերեալ տետրց մէջ այսպէս. Տէր Խաչատուր քահանայ, Տէր Սահիան քահանայ, Տէր Թովմաս քահանայ, Տէր Դաւիթ քահանայ, Տէր Ղուկաս քահանայ: Այսպէս եւ 1718ին տետրց մէջ նշանակեալ են այլ քահանայից անուանք, որպիսիք են Տէր Մելքիսեդեկ քահանայ, Տէր Բարթողիմէոս քահանայ, Մանուէլ Վարդապետ, Գէորգ Վարդապետ, Յովհաննէս Վարդապետ: Ի Մայիս ամսեան 1718ին եկաւ Լիվոռնոյի Հայոց եկեղեցւոյն այցելութեան բարեյիշատակ Աբբահայրն Մխիթար ի Հռովմայ դառնալու ժամանակ ի վանս Ս. Ղազարու, որ և նստաւ ի Լիվոռնոյ տասն օր. ամսոյն 16էն մինչև 25:

Յաճախեր են եւ ազգային եպիսկոպոսունք ի Լիվոռնոյ թէ եկեղեցւոյն շինութենէն առաջ և թէ վերջն, որոց անուանքն են մի ըստ միոջէ. Յովհաննէս եպիսկոպոս ոմն եղև ի Լիվոռնոյ յամին 1596. Պողոսանու հայ Եպիսկոպոսն յամին 1630. Երևանցի Առաքել Եպիսկոպոս յամին 1668. Աստուածատուր Եպիսկոպոսն յամին 1698. Յոպպէի Յովհաննէս Եպիսկոպոսն յամին 1704. Կ. Պօլսեցի Յարութիւն և Դաւիթ Եպիսկոպոսունք յամին 1714: Թող այլ Արքեպիսկոպոսունքն և քանի մի Կաթողիկոսունքն, որոց անուանքն հետզհետէ կը յիշատակենք:

Իսկ յամին 1776 կը յիշուի ի Լիվոռնոյ Աղեքսանդրեան ընտանիքն, որոյ մէջ էին երեք եղբարք Աղեքսանդրեանք, միոյն անունն Գրիգորիս՝ Լատինածէս եպիսկոպոս Քօրթօնա քաղաքին

Դոմ'յանայու, երկրորդին անուն Հուկոյ՝ Մեծատր Կարմեղեան կրօնաւորաց ի Փլորենտիա . իսկ երրորդին անուն Ստեփաննոս Ցառաջատր կանոնիկոս յեկեղեցւոջ Ս. Պետրոս Առաքելոյ Վատիկանու ի Հռոմ. երեքին իսկ Լատինածէս եղած:

Ըստ դատաստանական վճռոյ Բիզայու Արքեպիսկոպոսին պարտաւորեալ ըլլալով Ազգայինք դիմել առ Աւագ Դուքսն, ազգային բաժին վերահաստատութիւնն խնդրելու համար, որպէս զի կարող ըլլան Աղային ընտանեացն՝ քսան հազար ղէգգա վճարել: Այն ազգային բաժն առնմ որ 1697ին Հայոց Դաշնագրաւն հաստատուած էր, բայց յետոյ Աղա տէր Մաթուսին մահուամբ խափանեալ: Ուստի համաձայնեալ յօրինեցին աղերսագիր մի և ուղղեցին զայն առ Կոզմաս Գ. Աւագ Դուքս Դոսկանայու: Որուն մէջ յետ յառաջ բերելոյ Աւագ Դքսին Ազգային դաշնադրութիւնն՝ որ եղած էր յ18 Մարտի 1697 պարտաւորելով թէ ներկայ և թէ ապագայ ժամանակի Հայերն ի Լիվոռնոյ որ խոստացինքն իր ընդունած կամ առաքած վաճառաց տեսակին համեմատ, մէկ կամ կէս ղէգգա իբր ազգային բաժ կամ՝ հարկ վճարէ եկեղեցւոյն կանգմանն համար. Հայոց յիշեալ դաշնադրութիւնն Աւագ Դքսին կողմանէ հաճութեամբ ընդունուիլն, և ի 25 Նոյեմբերի 1697 ին հաստատական վաւերութիւն շնորհելն, կը յարէ այսպէս.

«Որովհետև եկեղեցւոյն աւարտումէն վերջ, մէկ կողմանէ հանգուցեալ Պարոն Աղա տէր Մաթուսին ժառանգքն, իսկ միւս կողմանէ Ազգն, կրերաց հետ եկեղեցւոյն ում պատկանելուն պատճառաւ տարաձայնութեան մէջ էին, Արհիապատիւ և Գերապայծառ Բիզայու Արքեպիսկոպոսն ոչ միայն իւր յատուկ թեմական իրաւասութեամբն, այլ և Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն կողմանէ շնորհուած կարողութեամբ, որպէս և Ձեր Արքայական Բարձրութեան իշխանական յանձնարարութեամբ, գժտութիւնն վերջացոյց տուած վճռովն՝ որ յ30 Դեկտեմբերի 1713: Վճռոյն այլ մասանց մէջ պատուիրեցաւ՝ որ յիշեալ եկեղեցին և անոր յարակից միաբանաւորաց

ընտրական պատկանին Ազգին․ Ազգին պատկանելոյն, պարտատորի Ազգն Պարոն Աղա տէ Մաթուսին ժառանգացն հատուցանել քսան հազար բէցցա, նոյն Պարոնին շէնքին համար ըրած ծախուց փոխարէն, հաւաքելով այդպիսի գումարն ազգային բաժէն, որպէս սահմանեալ էր արգէն և դրեալ իւրաքանչիւր Հայոց վաճառացն վրայ : Ըստ յիշատակելոյ ի վեր անդր, հաւաքուած գումարէն միայն ի բաց առեալ այն մասն որ հարկաւոր ըլլայ, թէ եկեղեցւոյն և թէ քահանայից պիտոյիցն համար, որոյ քանակութիւնն հանդերձեալ է յետոյ ծանուցանել ուրոյն յայտարարութեամբ։ Նըմանապէս այնու վճռով պարտաւոր եղաւ ազգն աղերսագիր մատուցանելու առ Բարեխնամ Ձեր Արքայական Բարձրութիւնն որպէս զի վաւերացնէ զայն և իշխանապետական հաստատութիւն շնորհէ, նոյնպիսի հարկապահանջութիւնն և բաժըն առնելու ազգայնոց իւրաքանչիւր վաճառքէն: Հուսկ ուրեմն հրամայեալ ըլլալով, որ յիշեալ վճիռն օրինաւորապէս ընդունուի Հայոց Ազգէն, Ազգն զայն լիովին կատարեց, որպէս յայտնի տեսանի յասորև բնագիր պատճենի վճռոյն որ հաստատեալ Հայազգեաց ստորագրութեամբն կը պահուի ի Բիզա յԱրքեպիսկոպոսական պալատան :

«Արդ աղերսամատոյց Ազգն յիշեալ վճռոյն կատարման համար կը դիմէ առ եզական գութ Ձեր Արքայական Բարձրութեան, որպէս զի զիջանի, և իշխանապետական հրամանաւն հաստատէ բաժն և հարկապահանջութիւնն իւրաքանչիւր բեռէն մէկ կամ կէս բէցցա առնելու վերագոյն յայտնեալ վաճառաց տեսակին համեմատ, և այլն »:

Կոզիմոս Գ. որ բարեխնամութեամբն տասն և ութ տարի յառաջ հաստատած էր Հայոց բաժանութեան դաշնագիրն, և այս անգամ ունկնդիր լինելով Ազգայնոց հայցուածոցն, շընորհեց վերահաստատութեան հրամանագիր՝ յիշեալ դաշնագրին համար ի 16 Հոկտեմբերի 1715: Իսկ բաժահաւաք և Ազգապետ ընտրեցաւ ի վաճառականաց Խօճա Դաւիթ Բռաթանն:

Բաժատուաց անուանք յաջորդ 1716 տարին յիշատակուած են հետեւեալքն. Դաւիթ Կոմս Շեհրիմեան, Մուրատխան Նազարեան, Աղազար Խաչիկեան, Դաւիթ Բուսթամ, Պապա Ճանկին Պիշտիկեան, Մանուկի Առաքել Աբրահամեան, Տիրացու Առաքել Ցակոբեան, Գասպար Տիրացու Գէորգեան, Պետրոս Պահրամ, Յովհաննէս Փանոսեան, Սարգիս Քուլեյեան, Ստեփան Եօզկատացի, և այլն:

Մինչդեռ այսպէս ի Լիվոռնոյ Հայ գաղթականաց մէջ խաղաղութիւնն տիրած կը տեսնուէր, ի Նոյեմբեր ամսեան 1715 ին, պատահելով եպերելի արկած մի վրդովեց բովանդակ թէ Հայ Առաջնորդին և թէ իւր ժողովրդեան անդորրութիւնն: Սրճարանի միոյ տէրն հիւանդագին և մերձ ի մահ, կոչեց Հայոց Առաջնորդ Տէր Յովհաննէս Ծալեանն և խոստովանեցաւ իւր մեղքերն. Հայ Առաջնորդն իւր եկեղեցիէն Ս. Թոշակն տանելու ժամանակն՝ դեռ չի հասած հիւանդին բնակարանն, կաճապարէ լատին քահանայ մի Մայր եկեղեցիէն ինքն եւ Ս. Թոշակ տանիլ հիւանդին. այլ հիւանդապահքն մերժեցին լատին քահանային մուտքն, և թողին միայն հայ Առաջնորդին որ նա ինքն մտանելով մատակարարէ հիւանդին վերջին Ս. Թոշակն:

Ցարգ. Հալածեանն ըստ այսմ կաւանդէ դիպուածն.

« Ցայնժամ պատահի յոյժ հիւանդանալ մէկ քահվէճի հային, որոյ բնակութիւնն էր ի վերայ քահվէ խանութին իւրոյ, և երկուս ողորմելի և յիմար հայս կարգէ ազգն վասն ծառայելոյ և պահպանելոյ զայն քահվէճի հիւանդ հայն. և տէր Յովհաննէս Ծալին երթայ, և լսէ զխոստովանութիւն նորին հիւանդին, և ըստ պատուիրելոյ բժշկին գայ յեկեղեցին հարկանել տայ զմեծ զանգակն ըստ կանոնի Հաղորդութեան թափօրին, և ժողովէ զժողովուրդն, և ելանէ ի ճանապարհ հանդիսիւ ընդ Սրբութեան ի ձեռին: Իսկ ի նոյն ժամուն մինն ի չորից վիչէքուրսաթիցն Փրօբօսթօյին, այր յոյժ հետաքրքիր և անհանգիստ, Տօն Նիքօլա Կօրի անուամբ, մտանէ ի տունն նորին հիւան_

դին, և տեսանէ անդ զբժիշկն, հարցանէ որպիսութիւնն հիւանդին՝ և նա ասէ հրամայեցի հաղորդել զնա. սա լուեալ զայս ելանէ անտի և վազէ ի յաւագ եկեղեցին, և խոկոյն ժողովէ զեղբայրութիւն Հաղորդութեանն, և Թափօրիւ վազէ ի տունն նոյն հիւանդին. և զի այն տունն մօտ էր յաւագ եկեղեցին քանի մի քայլ յառաջագոյն քան զԹափօրն Հայոց հասանի առ դուռն հիւանդին: Իսկ երկու անխոհեմ պահապանք հիւանդին՝ տեսանելով զերկուս Թափօրս ի միում ճանապարհին, ապուշ մնան, և փակեն զդուռն յառաջագոյն հասեալ Թափօրին առնելով, անձն մեր եկեղեցւոյն հաղորդութիւնն հասաւ, մեք զնա կոչեցաք, ձեզ չկոչեցաք: Յայնժամ այն կուսայրոյզ վիճաբանութեան՝ Հաղորդութիւն ի ձեռին ոչ կարելով բռնութեամբ մըտանել ի տունն յետս դառնայ ի յիւր եկեղեցին, և Տէր Յովհաննէսն մտանէ և հաղորդէ զհիւանդն »: Հիւանդն աւանդեց հոգին. և հիւանդապահք անդէն խոյս տուեալ ի նոսա ապաւինեցան յերեսաց լատին ժողովրդեան՝ որ զգուեալ եռեալ էր յիշեալ հիւանդապահքն ձերբակալել, իսկ մնացեալ Հայերն սարսափեալ խւրաքանչիւրն իւրեանց տներն զնացեալ փակուեցան: Յայնմ ժամանակի Մայր եկեղեցւոյն Աւագերէցն որ Արքեպիսկոպոսական փոխանորդութեան պաշտօն կը վարէր ի Լիվոռնոյ՝ փոխանակ յանցաւոր համարելու լատին քահանայն որ պատճառ եղած էր այդ ձախորդութեան, ուղղեց զանգատագիր Հայոց դէմ առ Արքեպիսկոպոս Պիզայու մեծամեծ ամբաստանութիւններ ընելով, իբր թէ Հայք չեն հաւատար և չեն ընդունիր Ս. Հաղորդութիւն ի Լատինաց և այլն: Ուղղեցան այլ զանգատագրեր ևս առ Աւագ Դուքսն և առ Ս. Ժողովն Տարածման Հաւատոյ: Ի զուր արքունի ոստիկանք ջանացին փախուստ տուող հիւանդապահաց հետքն գտանել:*

* Լիվոռնոյի վիճակն կամ թեմն չունէր առանձին եպիսկոպոս 1806էն առաջ, այլ էր ընդ իրաւասութեամբ Պիզայու Արքեպիսկոպոսացն, որոնց փոխանորդն ի Լիվոռնոյ ոչ միայն Արքեպիսկոպոսական փոխանորդութիւն ունէր, այլ և էր Աւագերէց ի

Համեալ ի Հռովմ առ Ս. Ժողովն յիշեալ ամբաստանութեան գիրն, վճռացոյց զայն, և առիթ տուաւ որ Մօնսինեօր Ֆրօզինի, վերստին դատաւոր կարգուի և քննէ արկածն, և պատշաճական կանոնադրութեամբ բարեկարգութեան ջանայ, որպէս զի ապահովլի ապագայն, և նորանոր յուզմունք չծագին:

Այլ աւա՜ղ, այսպիսի իշխանութիւն որ շնորհեցաւ ի Հռովմայ առ Մօնսինեօր Ֆրօզինի որ ոչ թէ ծառայեց բարեկարգութեան այլ պատճառ եղաւ մշտատև տժգոհութեան. վասն զի այնու առթիւ Արքեպիսկոպոսին հրատարակեալ սահմանադրութիւնն զրկեց զՀայ Առաջնորդն ի Լիվոռնոյ իւր վայել իրաւաբանական կարողութենէն, զոր առ հասարակ ամենուրեք կը վայելէին հայազգի Առաջնորդք: Սահմանադրութիւնն այն ի հինգ յօդուածս կը բովանդակի, և է ըստ առաջիկայիս.

« Օրինակ սահմանադրութեան վասն եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ հաստատեալ յԱրքեպիսկոպոսէն Բիզայու ի 29 Նոյեմբերի 1715. « Մեք Ֆրանչիսկոս..... կամելով միանգամայն թէ՛ հնազանդ մնալ հրահանգաց Ս. Ժողովոյն և թէ խնամ տանիլ երկուց կողմանց համաձայն վարելու համար առաւել դիւրին իմն եղանակաւ ի ծառայութեան Աստուծոյ, որ այն միայն մեզ համար առիթողական է, ուստի

« Յօդուած Ա. Կը սահմանենք որ Հայոց եկեղեցին ի Լիվոռնոյ, անջատեալ չհամարուի քաղաքին միակ ժողովրդապետութենէն, այլ իբր անոր օգնական ծառայէ միայն

Մայր եկեղեցւոջ, և կը համարուէր բացարձակ և միայնակ ժողովրդապետ Լիվոռնոյ քաղաքին. իսկ միւս եկեղեցեաց մեծաւոր քահանայքն իբր հոգաբարձուք և օգնիչք Աւագերիցին. հետևաբար պարտաւոր էին ամենայն հոգաբարձուք եկեղեցեաց, իրենց եկեղեցին մտած իրաւունքն և հասոյթքն յանձնել Աւագերիցին. ի կարգս այսպիսի հոգաբարձուաց դասուած էր ի ժամանակին նաև Հայոց Եկեղեցւոյն Առաջնորդն:

Հայոց հոգաբարձութեանն, որուն հոգաբարձու քահանայլին հոգևորական պաշտօնն չէ կարելի արգիլել եթէ ոչ Ս. Ժողովոյն Տարածման Հաւատոյ. բայց նոյն հայ Քահանայն համարուի միշտ և հանապազ մին ի հոգաբարձուաց ժողովրդապետի Մայր եկեղեցւոյն:

« Յօդուած Բ. Կամիմք զի յարգանօք պահուի Հայոց եկեղեցին Ս. Հաղորդութեան խորհուրդն, որպէս զի կարող ըլլայ Հայոց հոգաբարձու քահանայն հաղորդել իր ազգայիններն, նաև ի Զատկի, բայց միշտ պէտք է որ ծանուցանէ հաղորդելոց թիւն մայր եկեղեցւոյն ժողովրդապետին: Կարող ըլլայ նա համարձակապէս մատակարարել Ս. Թօշակն իր ազգայնոց. այլ ազգայինք ազատ ըլլան նաև լատին ժողովրդապետէն Սուրբ խորհուրդքն ընդունելու ըստ իրենց հաճոյից երբ կամին:

« Յօդուած Գ. Կամիմք զի Հայոց եկեղեցւոյն մէջ պահուի նաև հիւանդաց համար սահմանեալ Սուրբ իւղն, և ընդունուի այն իւրաքանչիւր տարի Մայր եկեղեցիէն, որպէս զի կարող ըլլայ Հայ հոգաբարձու քահանայն մատակարարել իւր ազգին հոգեվարացն վերջին օծման խորհուրդն:

« Յօդուած Դ. Կամիմք զի Հայազգի հոգաբարձուն կարող ըլլայ պաշտել Պսակի Սուրբ խորհուրդն, երբ պսակեալքն՝ Հայազգի ըլլան, և պահեն իրենց ծէսն, եթէ ոչ երկուքն՝ գոնէ փեսայն, որոց պսակման համար պէտք է որ նախընթաց հրատարակութիւնք ըլլան, թէ Հայոց եկեղեցւոյն մէջ և թէ Լատինաց մայր եկեղեցին, և պսակելոցն անուանք նշանակուին թէ Հայոց և թէ Լատին եկեղեցեաց իւրաքանչիւր տետրց մէջ:

« Յօդուած Ե. Կամիմք զի Հայոց եկեղեցին կարող ըլլան թաղուիլ ննջեցեալք, և հայազգի հոգաբարձուն կարող ըլլայ յուղարկաւորել զանոնք, այնու պայմանաւ որ իրաւունքն և յուղարկաւորութենէն ստացուած հասոյթքն Լատին ժողովրդապետին վերաբերին, և անոր յանձնուին ըստ կրաւանց ժողո-

վարդապետութեան, որպէս թէ ննջեցեալք ուղղակի Լաւանաց մայր եկեղեցին յուղարկաւորեալ ըլլային »:*

Խօճա Դաւիթ Բուսթամն որ Ազգապետ էր ժամանակին՝ տասն և ութ թուով Հայոց հետ, որ հազիւ երրորդ մասն էր Հայ ժողովրդեան մէջ, ստորագրեցին յիշեալ սահմանադրութեան գրուածոյն ստորև. նաև Հայ Առաջնորդն Տէր Յովհաննէս ստորագրեց իւր անունն, առանց նշանակելու իրեն առաջնորդութեան տիտղոսն, որպէս զի պատասխանատու չըլլայ ապագայից: Այլ Տէր Յովհաննէսին դէմն իսկ եղած ամբաստանութիւնք առիթ տուին զալստեան ի Հռովմայ Տէր Մելքիսեդեկ անուն քահանային, որոյ Գ-խ-ծ-ո-ւ առաքելական ըլլալուն կոնդակին օրինակն տուեալ յ9 Մայիսի 1716, կը պահուի ի դիւանի եկեղեցւոյս: Սակայն Տէր Մելքիսեդեկ քահանային առաջնորդութիւնն առժամանակեայ եղաւ, և չհամարեցաւ Ազգէն ի կարգս առաջնորդաց եկեղեցւոյն, որպէս յայտնի է այն ի տապանագրաց, որով երկրորդ առաջնորդ համարուած է Բաբերդցի Խաչատուրեան Ստեփան Վարդապետն. Տէր Մելքիսեդեկին զալէն վերջ եւս Տէր Յովհաննէս Ծալեանն վայելած է առաջնորդի անունն: Այդպիսի անցից ոչ սակաւ պատճառ եղած էր Ազգապետն Խօճա Դաւիթ Բուսթամ որ կեղծաւորութեամբ սիրելի եղած էր յաչս Արքեպիսկոպոսին Բիզայու և Ս. Ժողովոյն Հռովմայ, որոց վստահելով Ազգն կը բռնաբարէր. այլ ոչ յետ բազմաց իր պաշտպան

* Լիվոռնոյ քաղաքին միայնակ ժողովրդապետութիւն համարուած ըլլալով Մայր եկեղեցւոյն միայն, հոն էր մկրտութեան աւազանն, և անդ քաղաքին ամէն երախայքն կը մկրտուէին. այս պատճառաւ թոյլտուութիւն չէր եղած Հայոց եկեղեցւոյն մէջ աւազանին մկրտարան շինել, ստիպելով որ Հայոց մանկունք եւս հոն ի Մայր եկեղեցին մկրտուին: Այսպիսի զրկիչ սովորութիւնն շարունակեալ տևեց մինչև յամն 1774, ի ժամանակս առաջնորդութեան Յարգ. Հալաճեան Հօր Կարապետի: Այսպէս Հայոց մանկունք մկրտեալք ի Լիվոռնոյ չունէին զրոշմ, մինչև որ հասնէին ի հասակ հինգամեայ կամ եօթնամեայ:

Արքեպիսկոպոսն Բիզայու պաշտօնազուրկ ըրաւ զանի մատուկապարութեան մէջ հաւատարիմ չըլլալուն համար, որպէս՝ կասանդէ Յարգ. Հալաճեանն:

Ապաքէն Տէր Յովհաննէս Ծալեանն որ իբր առաջնորդ պատասխանատուութեան պարտքն ունէր, տեսնալ այն զրկանքըն որ կըլլար Հայոց Ազգին դէմ ի Լիվոռնոյ, բողոքելու էր իրաւամբ Մօնսինեօր Ֆրօզինիի սահմանադրութեան դէմ և ոչ թէ ստորագրելով ընդունէր զայն ութևտասանից հետ: Սահմանադրութիւն, որ զրկելովն Հայոց Առաջնորդին ժողովրդապետական և իրաւարանական յատկութիւնն և կարողութիւնն անիրաւեցաւ մինչև նոյն իսկ Տարածման հաւատոյ Ս. Ժողովոյն գերագոյն իշխանութեանն. վասն զի Հայ Առաջնորդն տանելով ողղակի կախում նոյն իսկ ի Ս. Ժողովոյն և վայելելովն Առաքելական միսիօնարի անուն, նախապատիւ էր և վերադասելի քան զպարզ Լատին ժողովրդապետն, որ անուանեալ էր միայն վիճակաւոր Արքեպիսկոպոսն Բիզայու:*

Չըսեմք թէ Ս. Ժողովն անտեղեակ մնաց Մօնսինեօր Ֆրօզինիի Սահմանադրութեանն. վասն զի Արքեպիսկոպոսն պաշտօնապէս ծանուցած էր զայն, այլ անտարբեր մնաց ի սկըզ_

* Ըստ մեզ չէր կարող հանդուրժել եթէ կենդանի ըլլար մայր եկեղեցւոյն ժողովրդապետն այն Տէր Անձելօ Ֆրանչէսքի ի ժամանակս առաջնորդութեան Տօքսեբրա անուն քահանային միացեալ Յունաց, որուն վրայ կը պատմուի թէ օր մի միացեալ Յունաց առաջնորդն հրաւիրած էին Բեթրի անուն ծիրանաւորն երբ նա ինքն ի Լիվոռնոյ այցելութեան եկած էր, որպէս զի գայ յիշեալ Յունաց եկեղեցին պատարագ մատուցանէ հանդիսիւ։ Երբ այսպէս ի պատրաստութեան էին, Տօքսեբրա Առաջնորդն մտեալ եկեղեցին և տեսեալ խորանին վրայ ծիրանաւորին զգեստն, առեալ զայն ի բաց ընկէց անտի ասելով թէ այլազգ ծիսիւ չէ հնար պատարագս մատուցանել ի վերայ խորանի իմոյ։ Արդ գիտելի է թէ Յոյնք ըստ արարողութեան իւրեանց մէկ խորան ունին իրենց եկեղեցին, ուր յոյն ծիսիւ միայն օրէն է պատարագել։ Տօքսեբրան անզգոյշ անձ մի էր, և փախճանեալ թաղեցաւ միացեալ Յունաց եկեղեցին յամին 1836։

բանն՝ տեսնելով Հայոց անփութութիւնն և լռութեամբ զայն ընդունելն: Իսկ երբ Հայոց գանգատք յետ քանի ինչ ամաց սկսան յաճախել Լատին ժողովրդապետին ընթացից դէմ ի Հռովմ, Ս. Ժողովոյն Գահերէց Բավլուչչի Ծիրանաւորն հրամայեց Մոնսինեօր Ֆրօզինիի հսկելու, որպէս զի Լատին ժողովրդապետն չնեղէ զՀայերն, չվրդովէ բարեկարգութիւնն, պաշտօնական գրութեամբն որ յ18 Յուլիսի 1718:

Կը կնքեմք առաջիկայ պարբերութիւնն յառաջ բերելով մեր նախորդ Յարգոյապատիւ Հալաճեանին գրածն այսպէս. «Նախանձն յղացաւ և ծնաւ այդպիսի սահմանադրութիւն, վասն զի Հայոց առանձին ժողովրդապետութիւնն ի նախանձ շարժեալ էր զԼատին ժողովրդապետն: Որպիսի՛ սահմանադրութիւն (գոչէ) որ ազատս կարգէ զամենայն Հայս ըստ հաճոյս ընդունել ի Լատին եկեղեցւոջ զՍ. Խորհուրդս, որով պատճառս տայ այնոցիկ որք միանգամ ի Հայոց ի գժտութեան իցեն ընդ Առաջնորդին իւրեանց՝ չերթիցեն իսպառ առ նա, այլ յեկեղեցին Լատինաց, և ուրանալ զազգն»: Ֆրօզինի Արքեպիսկոպոսի արդէն հռչակեալ էր վասն նորին գաւառական սինոդոսացն որ գումարեցան ի ժամանակի իւրում ի Բիզա քաղաքի:

Արքեպիսկոպոսն Բիզայու պաշտօնագրով ըրաւ զանի մատա_ կարարութեան մէջ հաստատուելու չըլլալուն համար, որպէս կա_ ւանդէ Յարգ. Հալաճեանն:

Ասպարէզ Տէր Յովհաննէս Ծալեանն որ իբր առաջնորդ պա_ տասխանատուութեան պարտքն ունէր, տեսնալ այն զրկան_ քըն որ կըլլար Հայոց Ազգին դէմ ի Լիվոռնոյ, բողոքելու էր ի_ րաւամբ Մօնսինեօր Ֆրօզինիի սահմանադրութեան դէմ և ոչ թէ ստորագրելով ընդունէր զայն ութևտասանից հետ: Սահ_ մանադրութիւն, որ զրկելով Հայոց Առաջնորդին ժողովրդա_ պետական և իրաւաբանական յատկութիւնն և կարողութիւնն անիրաւեցաւ մինչև նոյն իսկ Տարածման Հաւատոյ Ս. Ժողո_ վոյն գերագոյն իշխանութեանն. վասն զի Հայ Առաջնորդն ու_ նելով ուղղակի կախում նոյն իսկ ի Ս. Ժողովոյն և վայելելոն Առաքելական միսիօնարի անուն, նախապատիւ էր և վերա_ դասելի քան զպարզ Լատին ժողովրդապետն, որ անուանեալ էր միայն վիճակաւոր Արքեպիսկոպոսէն Բիզայու:*

Չըսեմք թէ Ս. Ժողովն անտեղեակ մնաց Մօնսինեօր Ֆրօ_ զինիի Սահմանադրութեանն. վասն զի Արքեպիսկոպոսն պաշ_ տօնապէս ծանուցած էր զայն, այլ անտարբեր մնաց ի սկըզ_

* Ըստ մեզ չէր կարող հանդուրժել եթէ կենդանի ըլլար մայր եկեղեցւոյն ժողովրդապետն այն Տօն Անճելօ Ֆրանչէսքի ի ժամա_ նակս առաջնորդութեան Տօքսերա անուն քահանային միացեալ Յունաց, որուն վրայ կը պատմուի թէ օր մի միացեալ Յունաց առաջաւորքն հրաւիրած էին Բեթրի անուն ծիրանաւորն երբ նա ինքն ի Լիվոռնոյ այցելութեան եկած էր, որպէս զի գայ յի_ շեալ Յունաց եկեղեցին պատարագ մատուցանէ հանդիսիւ: Երբ այսպէս ի պատրաստութեան էին. Տօքսերա Առաջնորդն մտեալ եկեղեցին և տեսեալ խորանին վրայ ծիրանաւորին զգեստն, ա_ ռեալ զայն ի բաց ընկէց անտի ասելով թէ այլազգ ծէսի չէ հնար պատարագս մատուցանել ի վերայ խորանի իմոյ: Արդ գիտելի է թէ Յոյնք ըստ արարողութեան իւրեանց մէկ խորան ունին իրենց եկեղեցին, ուր յոյն ծէսի միայն օրէն է պատարա_ գել: Տօքսերան անզգոյշ անձ մի էր, և վախճանեալ թաղեցաւ միացեալ Յունաց եկեղեցին յամին 1836:

*բանն՝ տեսանելով Հայոց անփութութիւնն և լռութեամբ զայն ընդունելն: Իսկ երբ Հայոց գանգատք յետ քանի ինչ ամաց սկսան յաճախել Լատին ժողովրդապետին ընթացից դէմ ի Հռովմ, Ս. Ժողովոյն Գահերէց Բավլուչչի Ծիրանաւորն հրամայեց Մոնսինեօր Ֆրօզինիի հսկելու, որպէս զի Լատին ժողովրդապետն չնեղէ զՀայերն, չվրդովէ բարեկարգութիւնն, պաշտօնական գրութեամբն որ յ*18 *Յուլիսի* 1718:

*Կը կնքեմք առաջիկայ պարբերութիւնն յառաջ բերելով մեր նախորդ Յարգոյապատիւ Հալաճեանին գրածն այսպէս. «Նախանձն յղացաւ և ծնաւ այդպիսի սահմանադրութիւն, վասն զի Հայոց առանձին ժողովրդապետութիւնն ի նախանձ շարժեալ էր զԼատին ժողովրդապետն: Որպիսի՜ սահմանադրութիւն (գոչէ) որ ազատս կարգէ զամենայն Հայս ըստ հաճոյս ընդունել ի Լատին եկեղեցւոջ զՍ. Խորհուրդս, որով պատճառս տայ այնոցիկ որք միանգամ ի Հայոց ի գժտութեան լինին ընդ Առաջնորդին իւրեանց՝ չերթիցեն իսպառ առ նա, այլ յեկեղեցին Լատինաց, և ուրանալ զազգն»: Ֆրօզինի Արքեպիսկոպոս արդէն հռչակեալ էր վասն երից գաւառական սինոդոսացն որ գումարեցան ի ժամանակի իւրում ի Բիզա քաղաքի:*

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

Առաջին կանոնադրութիւն Եկեղեցւոյն․ Երերոյ յաջորդ Աշխադեր․ Յարութիւն Մերձան․ Յովհան Նազարեան․ Թորոնչեան Վրթանեսեան․ Պետրոս Աբեկեան․ Աւետիս Աղաբեան․ ընդհանուր ժողով Աշխարհոց․ Յաջորդ Աշխադեր․ Կնիքներ կաթողիկոս Աբրահամ Պետրոս Ա․ Երկերը է Լիվոռնոյ․ Խնդիր դատաստանութեան Աշխարհոց դարձն չփարելու․ Ձեռնարկութիւն Աղայեանց․ Հիմադիր Աղայեն որդւոյն Աշխադեր ընդունելին, Թաղերարութեան և ծախս։

Եթէ Բոլոնիոյ Հայ գաղթականացն սահմանեալ ազգային լուսագոյն վարչութեան օրէնք՝ ըստ իմիք տուեալ ըլլային նաև Լիվոռնոյի մերազնեայց, ո՛րքան արդեօք բարեբախտ կըլլային նմանապէս նախանձելի անոնց կեանքն և կենցաղավարութիւնն: Տեսեալ Մօնսինեօր Ֆրօզինիին Եկեղեցւոյս մատակարարութեան անկանոն ըլլալն, յօժարեցաւ և յայնմ մասին առանձին կանոնադրութիւն մի ընել, հաստատելով զայն ի 6 Յուլիսի 1718ին, թէ և այն ևս չծառայեց ըստ ամենայնի Ազգին պիտոյիցն և բարւոք վարչութեանն: Աստէն համառօտաբար դնենք յիշեալ կանոնադրութեան բովանդակածները, որ կոչուեցաւ Առաջին կանոնադրութիւն Եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ:

« Իւրաքանչիւր երկու տարին ըլլայ Ազգային ընդհանուր ժողով․ ուր Ազգային անհատներէն ընդունակ և յարմար մին ընտրուի և կարգուի նախագահ Ազգապետ, որուն պաշտօնն տևէ միայն երկու տարի: Ազգապետն այն՝ ընդունի որ և իցէ ողորմութիւնք որ եկեղեցւոյն համար տուեալ ըլլան, հաստատմարար նշանակելով զայնս ի գիր: Ի վերջանալ երկուց ամաց՝ քննուի գիրն կրկին քննիչներէ, որոնց մին անուանէ Բիզայու Արքեպիսկոպոսն, և միւսն Ազգն: Ազգապետն գոր-

ծածէ կրկին հաշուետումարներ, մին սովորական իսկ միւսն անսովոր ծախուց համար: Անսովոր ծախուց համար պար_տաւոր ըլլայ կանխապէս ազգին հաւանութիւնն ստանալու, որպէս նաև Մխիթար քահանայն իւր ընելիք ծախուց համար: Ազգայնոյն եկեղեցւոյն վերաբերեալ ամենայն ապասուց ցու_ցակը գրէ, և համաձայնութեամբ ընթանայ միսիոնար քահա_նային հետ, որուն կը հայի թէ եկեղեցւոյն և թէ Ազգին հո_գևոր վարչութիւնն: Մխիթար քահանայն հակելու է Տա_րածման Հաւատոյ Ս. Ժողովոյն կողմանէ սահմանեալ ութ պայմանաց պահպանութեանն որ յ8 մարտի 1701: Եկա_մտից մէկ քառորդ մասն միայն գործածուի եկեղեցւոյն և քա_հանայից պիտոյից համար, իսկ միւս երեք քառորդն եկեղե_ցւոյն պարտուց փոխարէն հատուցեալ վճարուին հանգուցեալ Աղա տէ Մաթուսին ընտանեացն»:

Գործադրութեամբ նոր կանոնագրութեանն ժողով գումա_րեցաւ և ընտրեալ հաստատեցաւ նոր Ազգայնոյ Խօճա Յա_րութիւն Կիրակ Մկրմանն յաջորդ Խօճա Դաւիթ Ռուսթա_մին: Ռուսթամն այս Դավրիժեցի ծնողներէն ինքնիշխանա_բար վարեց իւր մատակարարութեան պաշտօնն և ըստ հա_ճոյս վատնեց եկամուտ հասոյթքն, չյօժարեցաւ բնաւ հա_շիւքն ցոյց տալով ներկայանալ Ազգին. ուստի Մոնսինեօր Ֆրօզինին առաքեց առ նա փաստաբան մի Ռիչչի անուն որ քննէ անոր հաշուեգրերն, որմէ չեղաւ արդարացեալ Դաւիթն, որպէս աւանդեցինք այլուր: Ազգայնոյն Խօճա Յարութիւն Կիրակ Մկրման ամենայն գովութեամբ վարեց իւր պաշտօնն, և շարունակեալ մնաց ի նմին մինչ յամն 1724, յորում յա_ջորդեց նմա յԱզգայնութեան Խօճա Յովհաննէս Նազա_րեան: Հանգուցեալ Աղա տէ Մաթուս Աստուածատուր որդին անուանեցաւ Մատակարար եկեղեցւոյն, իսկ Տէր Յակոբն թոռն Աղային և որդի Տիրունի Լուչիա Խաթունի, եղև լուսա_րար եկեղեցւոյն ըստ դոմկանական սովորութեան, ուր ի մկրտ_րանէ հետէ ի քահանայից կըլլան սանդղապահ լուսարարք:

Յիշեալ նորընտիր երեք պաշտօնէից ընտրութեանն յօժարե-լով Արքեպիսկոպոսն Բիզայու հաստատեց զայնս, որոնք բար-ւոքապէս մատակարարեցին զամենայն մինչև յամն 1730: Հասեալ նոյն տարին՝ Խօճա Յովհաննէս Նազարեանն հրա-ժարեցաւ իւր Ազգապետութենէն, խնդրելով վիճակաւոր Արք-եպիսկոպոսէն որ այլ ումն անուանէ իւր տեղն: Որոյ յաջորդ և իբր առժամանակեայ Ազգապետ ընտրեցաւ Խօճա Բար-թողիմէոս Պրթանէսեան անուն վաճառականն. որուն Խօճա Յովհաննէս Նազարեանն կրկին քննիչներու ներկայութեամբն յանձնեց անթերի եղանակաւ ըստ կանոնաց իւր բովանդակ հաշիւներն:

Դէպ ի այս ժամանակներն անփոյթ երևեցան ազգայինք ընդհանուր ժողովք գումարելու նոր ընտրութիւններ ընելու համար. վասն զի զբաղեալ էին առաւելապէս վաճառակա-նութեամբ, և կային քանի մի պատճառներ որ իրերաց հետ խաղաղ չէին. մին այսպիսի պատճառաց Շեհրիմանեան Դա-վիթ Կոմսին համառակութիւնն էր որ վաճառական ըլլալով, և պարտաւոր ըստ դաշնագրոյն և ըստ վճռոյն ազգային տուր-քըն և բաժն վճարելու ըստ տեսակի վաճառացն, բնաւ չէր յօժարեր կատարել զայն: Իսկ այլ ազգայինք ոմանք, որպէս զի ազատ ըլլան և չվճարեն այդ ազգային տուրքն, լինեն օտարազգի բարեկամաց անուամբն բերել տային վա-ճառքն:

Այսպէս անցաւ տարին և առիթ տուաւ այն Բիզայի Արք-եպիսկոպոսին, որ ազգայնոց անփութութիւնն պախարակե-լով հրամայէ անոնց անմիջապէս ժողովի նստիլ նոր ընտրու-թիւնքն ընելու համար: Ուստի ժողովեցան Հայերն 1731ին և միաբանութեամբ ընտրեցին Ազգապետ Խօճա Պետրոս Աբե-լեանն, որ բարւոք վարեց իւր պաշտօնն մինչև յամն 1733. և չև կատարեալ երկու տարին հրաժարեցաւ Ազգապետու-թենէն: Խօճա Պետրոս Աբելեանն վաճառականութեան զբաղ-մամբն գնաց ի Լիվոռնոյէ ի Վենետիկ, ուր և հաստատ բնա-

կեցաւ ամուսնանալով անդ վենետկուհւոյ միոյ հետ: Արեւլեանին հրաժարմանբն ազգային ընդհանուր ժողովն ընտրեց անոր յաջորդ Խօճա Աւետիս Աւագեանն: Նոյն ժամանակներն կը պակսէին կանոնաւոր հաշուետումար գործածել գիտցող գրագիրներ և համարակալներ. այս պատճառաւ չէին նշանակուեր առանձին առանձին ծախուց փոքրիկ մասերն տումարաց մէջ: Նմանապէս ժողովոց արձանագրութիւնք չէին արձանանար ի գիրս, ուստի հարկ կըլլար Բիզայու Արքեպիսկոպոսական քարտուղարաց միջամտութեան: Ազգայինքն 1736ին ընդհանուր ժողով գումարեցին յեկեղեցւոջ, ուր հրաւիրեցին նաև Բիզայի անուան փաստաբան քարտուղարն. հոն ժողովեալ Հայերն էին քսան և եօթն անձինք, որք տարին քարտուղարն նստեցուցին Աւագ Խորանին ետևն, որպէս զի կրենք ազատ ըլլան և համարձակ քուէ տալու եկեղեցւոյն միջավայրն: Այսպէս յետ գրելոյ իւրաքանչիւրն առանձին թղթոց վրայ իրենց յարմար դատածն և յանձնելոյ ի ձեռս քարտուղարին, բացան առաջի ամենեցուն տոմսակքն, ուր և առաւելութեամբ ձայնից ընտրեցաւ Ազգապետ Խօճա Զաքարիա Դաւիթեան: Այսու եղանակաւ և քուէից առաւելութեամբ ընտրեցան նաև մատակարարն, գանձապետն և քարտուղարն. յիշեալ ժողովոյ մէջ Ազգայինք որոշեալ սահմանեցին որ Ազգապետն կարող ըլլայ ընտրել երկու տեսուչներ որոնք քննիչ ըլլան մատակարարին հաշիւներն տեսնելու երկու տարւոյ վերջանալու ժամանակն: 1738ին Դաւիթեանին փոխանակ յաջորդեց յԱզգապետութեան Առաքել Աբելեանն. իսկ 1742ին Յովհաննէս Մարտիրոսեան: Յիշեալ 1742ին մէջ դէպ ի 20 Յուլիսի Կիլիկիոյ նորընտիր Պատրիարքն Արծիւեան Աբրահամ կաթողիկոս՝ հասաւ ի Լիվոռնոյ ծովու ճանապարհաւն, Մարսիլիա քաղաքէն գալով: Գերերջանիկ Կաթողիկոսին գալստեան լուրն տարածեալ ի Լիվոռնոյ, մերազնեայ գաղթական ժողովուրդն սուրբ ցնծութեամբ դիմեցին ի նաւահանգիստն, և առեալ Աստուածարեալ Հայրապետն համ_

դիտական թափօրով բերին մինչև իրենց եկեղեցին: Իսկ յա_ջորդ օր՝ կատարելով Հայոց փափաքն մատոյց հայրապե_տական պատարագն և մխիթարեալ օրհնեց ժողովուրդն: Ի ժամ պատարագին յերգարանելն դպրաց «Ընտրեալդ յԱս_տուծոյ, ով երջանիկ սուրբ Հայրապետ» բանք, որպէս հիացեալ մնացին համղխականքն Հայաստանեայց եկեղեցւոյն գերազոյն և գեղեցկաշար արարողութեանցն համար: Այս Կաթողիկոսն մտեալ վերստին ի Նաւ Անքոնա գնաց:

Յիշեալ Աբրահամ Պետրոսի Առաջնոյ վարուց մէջ որ գրեալ է նորին Յաջորդ արժանաւոր Գրիգոր Պետրոս Ըէ, կը յիշատա_կուի որ «Ընդ Սահակ եպիսկոպոսի և ընդ Հայր Նիկողայոսի Միրօ, և ընդ Տիրացու Սիմոնի Գուշակճեան ի գնալն ի Հռովմ (յիշեալ Աբր. Կաթողիկոս) անցեալ է ի Լիվոռնոյէ»․ այլ չյիշի թէ քանի՛ աւուրս կացեալ իցէ անդ: Նոյնպէս ի դառնալն ի Հռովմայ յ18 Յուլիսի 1743, «հասանէ ի Լիվուռնա, և իջե_ւանի անդ ի պալատի միում վասն իւր պատրաստելոյ. գան յողջոյն նորա եպիսկոպոսունք Բիզայու և Ֆլօրէնցայու, և հրաւիրեն զնա ի թեմս իւրեանց. և առ ի չգոյէ պատրաս_տական նաւակաց մնայ ի Լիվոռնոյ մինչև ց22 Օգոստոսի 1743»:

Իսկ Գեր. Դաւթեանն իւր յօրինեալ յիտալական լեզու բա_րեյիշատակ Աբրահամ Կաթողիկոսի վարուց մէջ կաւանդէ ըստ այսմ. «Մեր Գերերջանիկ Պատրիարքն (Աբրահամ Գ. Արծիւեան) ... գնացեալ ի Հռովմայ ի 11 Յուլիսի՝ եհաս ի Լիվոռնոյ յ18 նորին. ուպանօր ընկալեալ եղև արժանավայել յարգանօք ի Տօրոզի անուն Տարածման Հաւատոյ Ս. Ժողո_վոյն Գաբրիէլ Ծիրանաւորին թոռանէն, ուր և եկին նմա յայց_ելութիւն ընդ վիճակաւոր Արքեպիսկոպոսին և մեծամեծքն ի քաղաքին: Հասին ի Լիվոռնոյ առ նա իւրքն երկու նամա_կանի ի Կ. Պօլսոյ, որոյ մին էր մխիթարական, իսկ միւսն առաւելապէս տրտմական: Մխիթարականն ուղղեալ էին նմա Հայազգի [illegible] մայրաքաղաքին, շնորհաւորելով նմա

զհաստատութիւնն ի պատրիարքութեան ի Ս. Գահէն, զուշակ համարեալ զայն մեծագոյն բարեաց: Իսկ երկրորդ նամակն գրեալ էր ի Հայր Գրիգորէ Ներսէսեան, ծանուցանելով զանողորմ հալածանս որ յարուցեալ էին հակառակորդք ընդդէմ կաթոլիկեայ Հայոց. այլ չարագոյնն այն էր զի Պատրիարքն Կ. Պօլսոյ բորբոքեալ էր նորանոր ոխակալութեամբ ընդդէմ մերոյս Գերերջանիկ Պատրիարքին, և զուն գործելովն հանեալ էր բարձրագոյն Դրանէ հրովարտակ առ ի առաքել յաքսոր և ի բանտարկութիւն ի բերդ Ատանա քաղաքի զնա ինքն Գերերջանիկ Պատրիարքն մեր, և զերկոտասան ազնուական առաջնորդս Ազգիս: Յայն սակս դարան գործեալ զետեղեալ էին խնդրակք և ոստիկանք յիւրաքանչիւր նաւահանգիստս, որպէս զի ի հասանելն նորին խոյսն ձերբակալ արասցեն: Ընկալեալ զայսոսիկ լուրս, չունէր պատրաստական ինչ նաւ, որով երթայր յարեւելս. և տեսեալ զի ծանրագոյն էին ի Լիվոռնոյ ծախք հայթհայթանացն վասն իւր և վասն իւրայոցն, խորհեցաւ գնալ ի Մարսիլիա. և զայս խորհուրդ իւր նամակաւ ծանոյց ծայրագոյն Քահանայապետին, յառաջ բերելով նմա զվերոյիշեալ պարագայսն հայցէր ի նմանէ թուղթս յանձնարարականս առ Եպիսկոպոսն և առ քաղաքապետն Մարսիլիայու, հաստատեալ զամենայն վստահութիւն իւր յԱստուած անման միջնորդութեամբ առաքելական օրհնութեան նորին .... Չէ յայտ ապա եթէ գնացեալ իցէ Գերերջանիկ Պատրիարքն ի Մարսիլիա. այլ գիտեմք զի ի 16 Օգոստոսի 1743 ծովագնաց եղեալ ի Լիվոռնոյէ եհաս յԱղեքսանդրիա ի 15 Սեպտեմբերի »:

Բերիացի Հայր Նիկողայոս Մկրօ, չյօժարեցաւ հոգևոր Տիրոջ հետ Արևելք դառնալ հալածանաց երկիւղէն, և մնալով ի Լիվոռնոյ վշտացոյց զբարեյիշատակ Կաթողիկոսն. վասն զի իւր հաւատարիմներէն մին համարած էր զայն կրօնաւոր, զոր ունիմք վերստին յիշատակել ի յաջորդ գլխակարգութեան:

Ֆրօզինեան վճռոյն դէմ՝ Ազգայնոց դժգոհութիւնն և յա-

ճախանքի տրտունջք՝ սկսեալքն յամին 1719, շարունակեալ տևեալ էր մինչև 1743, և հետզհետէ առաւելեալ իսկ: Թէ և կը վճարէին ազգային բաժն, այլ յակամայս և մեծաւ ընդդիմութեամբ: Հասեալ յամն 1744, Հայոց տժգոհութեան չափն անցեալ, դադարեցուցին՝ պարտուց փոխարէն հատութից երրորդ մասն վճարել, միաբանեցան կրելոց հետ դատաստան երթալ, և յայտնի առնել դատաւորաց իրենց փաստաբանութիւնն, որպէս զի քննեալ վճռեն անոնք թէ Ազգն պարտական է այլ ևս պարտք վճարել հանգուցեալ Աղա տէ Մաթուս Աստուածատրոյ ժառանգացն: Արդէն էին ոմանք որ այլ և այլ միջոցներ գործածելով չէին վճարեր ազգային բաժն. իսկ Շեհրիմանեան կոչուած ազնուականներն, որոնք նոյն վաճառականք էին, բացասապէս կը հակառակէին այդ դաշնադրութեանն ազգային տուրքն վճարելու:

Ազգայնոց պատճառաբանութիւնքն զորս յառաջ կը բերէին, կը նշանակենք աստէն ահաւասիկ: — Մօնսինեօր Ֆրօզինի տուեալ վճիռն դատաստանական՝ անիրաւ էր. վասն զի առանց քննելու Աղա տէ Մաթուսին արդարացուցիչ հաշիւներն, նմանապէս առանց գիտնալու ճիշդ գումարն և ծախուց քանակութիւնն, բացարձակապէս հրամայեց, որ եկեղեցին պարտական ըլլայ քսան հազար բէգցայից չափազանց գումարն վճարելու Աղային ընտանեացն: Նա մանաւանդ որ Աղային ըստ ինքեան չէր մեծատուն ոմն, նա ինքն Ջուղայու Մինասեան անուն վաճառատան կողմանէ իբր գործակատար առաքուած էր ի Դոսկանա, որոյ դրամագլուխն չէր աւելի քան զերեք հազար բէգցաներ, որով չէր կարելի որ նա ինքն Աղային իր սեպհական ինչքէն եկեղեցւոյն շինութեան համար ծախած ըլլար քառասուն և հինգ հազար եօթն հարիւր յիսուն և եօթն բէգցաներ: Ապացոյցք չեն պակսիր յայտնելու որ Աղային շէնքին հարկաւոր իւրաքանչիւր նիւթքն չէր գներ, այլ առանց գնոյ ծրիաբար կընդունէր Հայազգիներէն: Ընդունած էր նաև Անիոյ և Եւրոպիոյ այլ և այլ կողմերն ընա_

կող Հայազգիներէն դրամական օգնութիւններ, առանց ի գլուխ արծանացնելու: Գմբէթն ծածկելու հարկաւոր կապարն Ամստերտամից Հայ վաճառականք պարգևած են: (Իսկ ըստ այլոց, գմբէթն ծածկող կապարն ոչ ի Հոլանտից այլ ի Հընդկաստանէ առաքուած է):

Հայերն մատնեալք այսպիսի դատապարտութեան այնքան տարիներէ ի վեր, իրենց անտանելի ըլլալով այդ վիճակն՝ շատերն ի վաճառականաց թողին զԼիվոռնոյ և Դոսկանայու այլ քաղաքներն գաղթեցին, իսկ մնացեալք այլ չեն հանդուրժեր անիրաւ պարտքն վճարելու: Մինչև պարտուց տևողականութեամբ ստիպուած են իւրաքանչիւր երեսփոխանք իրենց քսակէն հոգալ եկեղեցւոյն պիտոյքն: Ազգայինք մինչև ցայսօր վճարած են Աղա տէ Մաթուսին ժառանգացն վեց հազար բէցցայից գումար. յաւել հազար ութ բէցցա՝ նոյն գումարին վրայ, իբր վարձ այնքան տարիներ եկեղեցւոյն տունն ձրիաբար բնակելոյն համար, համագումարն կը հաշուի եօթն հազար և ութ բէցցաներ, բաւական Ազգն պարտքէն ազատելու: Թող այն վնասներն որ պարտուց պատճառաւ Ազգին եղած է, ուստի դատարին ժառանգք իրենց պահանջումէն, եթէ մանրամասն քննութիւն ըլլայ՝ ժառանգք պարտաւորք կըլլեն Ազգին: Որքան վարկպարազի է բարերարաց ըրած ողորմութիւնքն վատնել՝ այդպիսեաց դրամ վճարելու համար. փոխանակ ծառայեցնելու զայնս եկեղեցւոյն սուրբ պաշտամանց, աղքատաց, հիւանդաց և ուխտաւորաց պատսպարութեան: Փոխանակ եկեղեցւոյն գմբէթին և կամարին աւերքն նորոգելու, որք յանձրևէն կը կաթեն և ի վտանգի կան կործանելու եթէ գետնաշարժութեամբ տատանի երկիրն: Արդարև ծաղրելի ենք եղած ի Լիվոռնոյ բնակեալ գաղթական ամէն ազգաց, որոնք ապշեալ կը զարմանան մեր ազգային պախարակելի վարչութեան եղանակին համար: —

Ազգայինք ըստ ամենայնի անիրաւ էին, և իրենց խծբծի պատճառաբանութիւնք չծառայեցին ինչ· այլ առաւել և

զրգռեցին իշխանութեանց հակողութիւնն, պարտուց մնացեալ մասին անթերի վճարումն ընելու համար: Մինթէ կը պակսէին ժառանգաց կողմանն փաստարանութիւնքն, որք առաւել զօրաւորք էին քան ազգայնոցն. զորս յառաջ կը բերեմք ատանօր: — Մօնս. Ֆրօզինի ի վճռելն չէր առած ի խորհրդածութեան ազգայնոց կամակորութիւնն, առանց ապահովութեան, պարտուց վճարումն անստոյգ ապագայի թողլովն: Ազգին իւրաքանչիւր տարի երկու հարիւր յիսուն կամ երեք հարիւր բէցցա տալովն, վաթսուն տարի հարկ էր սպասել որ պարտք կատարելապէս վճարուէին. արդ վաթսուն տարին երկար ժամանակ էր. եթէ քսան հազար բէցցաներն վարձու տրուած ըլլային հարիւրին երեք շահով, տարին վեց հարիւր բէցցա կը պտղաբերէին: Գէթ շարունակաբար ամէն տարի վճարէին երեք հարիւր բէցցաներն առանց ընդդիմութիւն ընելու: Դատաստականք հետզհետէ կը պակսին ի Լիվոռնոյ, եղողներէն ոմանք ընդ պատրուակաւ կը ստանային վաճառքն որպէս զի չվճարեն բաժն: Յայն սակս ժառանգք ստէպ հարկադրեալ էին դատաստան երթալ, և երեք հարիւր բէցցայից մեծագոյն մասն դատից համար կը ծախուէր. երկորին ամուսինքն Ֆօճա Աղան և Լուչիա խաթուն վախճանեալ էին. իսկ Տէր Յովհաննէսն և Տէր Յակոբն տառապեալք կը հիւծէին ի չքաւորութեան, և մինչև ցե՞րբ համբերելու էին ժառանգքն: Մինթէ քսան հազար բէցցայից գումարն բաւակա՞ն և արդարացի հատուցումն էր Աղա ավ. Մաթուսին աշխատութեանն, ծախուցն և արեանն, երբ շատերն կը զլանային հիմնադրի անուամբ պատուել զանի, ի յարգի ունել և անոր ընտանիքն: Չէր բաւական և արդարացի հատուցումն այն. վասն զի ի խորհրդածութեան չառնուեցան հանգուցեալ Աղային ծախած երկու հազար բէցցայից գումարն՝ եկեղեցւոյն յարակից զետինն գնելու համար. որ ի ներկայութեան նօտարի յամին 1706 վճարեց եւ առանձինն երկու հարիւր յիսուն բէցցա Ֆօճճի անուն ճարտարապետին:

Նմանապէս ի խորհրդածութեան չառնուեցան բարեյիշատակ Աղային հարիւրին վեց տուժանն, երբ ի պէտս Ազգին իր բովանդակ ոսկեղէնքն գրաւ տալով ըրած էր փոխառութիւններ: Այդ ամենայն անժխտելի եղանակաւ կապացուցանէին և երեւան հանէին թէ Ֆռօզինեան վճիռն առաւել օգտակար եղած էր ազգայնոց քան թէ Աղային ժառանգացն:

Յամին 1747, Յովհաննէս Մարտիրոսեանին յաջորդեց յԱզգապետութեան Յովհաննէս Նազարեանն. որում փոխանակեց վերստին Մարտիրոսեանն 1752ին. և երկարեալ տևեց պաշտօնն մինչև տասնամեայ ժամանակ և աւելի ևս: Այնուհետև չգտաւ ազգայնոց մէջ յարմարագոյն ոմն Ազգապետութեան համար. ուստի ընտրեցաւ Հիմնադիր Աղային որդին Ապաթէ Յովհաննէս. ի ժամանակին Տէր Յակոբ քահանայն հանգուցեալ էր ի Քրիստոս և Տէր Յովհաննէս մնացեալ միայն. որոյ առանձին կտակ արարեալ քսան հազար բէցցայից պարտուց գումարէն տասուերկու հազարն շնորհեց եկեղեցւոյն, վասն զի ութ հազարն վճարեալ ըլլալովն կը մնայր դեռ ևս վճարելի յիշեալ տասուերկու հազարն: Այլ եղև որ սակաւօրեայ եղաւ Տէր Յովհաննէսին Ազգապետութիւնն, վասըն զի վախճանեցաւ յամին 1765. և եղաւ վերջինն բարեյիշատակ Հիմնադրին ընտանեացն ի Լիվոռնոյ:

## ԳԼՈՒԽ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Ստեփան Վ. Խաչատուրեան Բ. Աստուածատուր եպիսկոպոսն. Հայր Նիկողայոս Մերցեան. Հայ քահանայք ի Լիվոռնոյ ի Ծննդեան Տեառն երկու դարուցն. Բենեդիկտոս ԺԴ. առաքելական կոնդակն. Սրբոյ կանոնադրութիւն եկեղեցւոյն. Յովսէփ Աշըգեան. Երկոտասանիցն աշխարհաց. Քաղաքապետին աղաղակն, Հայոց Բողոքն, Աբրահամ Կրասիրակ, Պետրոսեան Միջամտութիւնն. Սարգիս Աբրահամեան Սարաֆեան. Պետրոս Վ. Մարտիրոս Գ. Աստուածատուր. Հալաճեան Հայր Կարապետ Գ. Աստուածատուր.

*Վերջացեալ էր Հայոց եկեղեցւոյն դիւանական պարտքն ի Լիվոռնոյ, այլ ոչ նոյնպէս երախտագիտականն, որ կը մնայր աւելի քան զմիւսն անջնջելի մեծանուն Հիմնադրին և անոր ընտանեաց արարեալ մեծ բարերարութեանց յիշատակին համար: Մենք լսել կը պարտինք Խօճա Ապանին, Լուչիա Խաթունին, և անոնց որդւոյն Տէր Յակոբին յիշատակացն եղեալ զանցառութեան համար. որպէս կը լսեն եկեղեցւոյն արձանագրութիւնքն: Միայն Ապաթէ Յովհաննէսին հոգւոյն հանգստեան համար կըլլայ յիշատակութիւն մատուցմամբ վեց պատարագաց խորքանչիւր տարին. իսկ հիմնադիր Աղա սէ Մաթուսին համար տարին տասնեւերկու պատարագք կը մատուցուին, և այն սկսեալ 1840էն ի վեր հանութեամբ ժամանակակից երեսփոխանաց եկեղեցւոյն:*

*Եկեղեցւոյն Առաջնորդաց նախկինն Ծալեան Տէր Յովհաննէս վարեալ իւր ժողովրդապետական պաշտօնն մինչև յամն 1727, ի հասակի եօթանասնամեայ կենաց վախճանեցաւ. յաջորդեց Խաչատուրեան Տէր Ստեփան Վարդապետ ի Բաբերդէ՝ ծնունդն և գրեաթէ անտեղեակ իտալական լեզուի. որով անկարող լաւագոյն ծառայութիւններ ընելու: Խաչատուրեանն ունէր յընկերութեան այլ քահանայ մի. 1743ին զալստեամբն Կիլիկիոյ Կաթողիկոսին ի Լիվոռնոյ՝ եկաւ ևս Հայր*

Նիկողայոս Միրօյեան և մնաց անդ. որոյ համար կաւանդէ Գեր. Դաւիթեանն իւր ձեռագրեալ Աբրահամ Կաթողիկոսին վարուց մատենանին մէջ այսպէս. «Յուրջ յայն ժամանակս (1744) Հայր Նիկողայոս որ ընկերակից էր եղեալ Գերերջ. Կաթողիկոսին յերթալն ի Հռովմ, և ապա բաժանեալ էր ի նմանէ ի դարձին իւրում ի Լիվոռնոյ, զղջացեալ վասն թողլոյն զընկերութիւն Հոգևոր Տեառն, խնդրեաց ի նմանէ թողութիւն գրութեամբ այլ և այլ նամակաց: Դէպ եղև այն երբ ի Լիվոռնոյ առաքեալ էր յիշեալ Հայր Նիկողայոսն Հայոց Պաշտպան Քարաֆֆա անուն ծխանատրէն, որպէս զի նորոգէ անդ Հայոց եկեղեցին որոյ շինուածն ի բազում ամաց հետէ աւերեալ էր: Թէ և թշնամիք Գերերջ. Կաթողիկոսին զուր փորձէին հանել ի ձեռաց նորա զայն եկեղեցի Լիվոռնոյի, այլ ոչ կարացին բնաւ. և հաստատեալ անդ Անտոնեան կարգի Հայազգի միաբանութիւն մինչև ցայսօր պաշտօն վարեցին անդ. յետ Հայր Նիկողայոսի այլ միաբանութիւն առաքեցան ի Լիվոռնոյ և առընթեր եկեղեցւոյն շինեցին փոքրագոյն տուն» (որ ըստ մեզ չէ հաւանական, վասն զի եկեղեցւոյն յարակից չիք փոքրիկ տուն, այլ կան մեծամեծ բնակարանք շինեալք Աղա տէ Մաթուսին ժամանակէն ի վեր):

Այլ այս ինչ յայտնի է որ յԱստուածային պաշտամունս ի Լիվոռնոյ սկսեալ Յարգ. Խաչատուրեան Առաջնորդէն միշտ և հանապազ եղած է Կիլիկիոյ Կաթողիկոսաց անուանց յիշատակութիւնն: Յիշեալ Վարդապետին առաջնորդութեան ժամանակն ի Լիվոռնոյ եղեր են քահանայք ումանք, յորս զուցէ և Խաչատուրեանն իսկ, որ ըստ Լատինաց արարողութեան Քրիստոսի Ս. Ծննդեան տօնին սկսեր են երեք պատարագ մատուցանել. այսպիսի նորութիւնն վերջապէս ջնջելով Բիզայու Արքեպիսկոպոսն, փութաց ծանուցանել զայն Ս. Գահին Հռովմայ, և այսպէս արգելեալ եղաւ Հայազգի քահանայից ի Լիվոռնոյ ի Ծննդեան Տեառն երեք պատարագ մատուցանելն: Աստէն յարմար կը թուի մեզ յառաջ բերել յիշեալ արգելման

համար գրուած քահանայապետական կոնդակին օրինակն. « Բենեդիկտոս ԺԴ. Քահանայապետ առ Արքեպիսկոպոս Տիւ_րոսի Ատենադպիր Տ. Հ. Ս. Ժ. — Կրկին միաբանը Հայազ_գի քահանայք ի Լիվոռնոյ 1725էն սկսեալ շարունակած էին մինչև 1755 ի Տօնի Ծննդեան Քրիստոսի երեք պատարագ մատուցանել, պատճառելով թէ հայ կաթողիկէ քահանայք ևս կը պատարագեն երիցս յԱրևելս ի տօնի Ծննդեան: 1755ին Բիզայու Արքեպիսկոպոսն հակառակեալ Հայոց երեք պատա_րագ մատուցանելուն ի վերոյիշեալ տօնին, դիմեց Ս. Գահուն, որպէս զի տրուելի վճռոյն համեմատ արգելուի կամ թոյլ տը_րուի Հայ քահանայից ի Լիվոռնոյ յեկեղեցւոջ Ս. Գրի. Լու_սաւորչին երիցս պատարագելն »: Ծայրագոյն Քահանայապե_տին վճիռն մերժողական եղաւ, ապացուցանելով թէ Լատին եկեղեցւոյ մէջ այնպիսի սովորութիւնն ի հնուց հետէ կայր. այլ Արևելեանին մէջ չէ եղած բնաւ յիշատակութիւն, և թուելով Յունաց, Ասորւոց, Քաղդէացւոց, Ղպտեաց, Հայոց և Ռութենից խորհրդատետրքն, և չգտանելով յիշեալ սովորութեան հետքն կը յարէ. « Եղեսիոյ Եպիսկոպոսն որ ի Հռովմ բնակու_թիւն ունէր, հրաման խնդրեալ էր իրեն և միւս ի Հռովմ բնա_կող քահանայից համար որ կարող ըլլան ի Ծննդեան Տեառն երեք պատարագ մատուցանել, որուն մերժողական տուինք յամին 1710: Երբ 1674ին Հայոց ի Լիվոռնոյ հրամայուած էր տօնել զՁատիկն և զայլ տօնս ըստ Նոր տումարի՝ Հայերն տրտունջեցին, ուստի 1699ին թոյլ տրուեցաւ անոնց անդրէն ըստ հնոյն ընթանալ, մինչև որ իրենք համոզուին հնոյն տեղն նորն փոխանակել: Լիվոռնոյ բնակող Հայք կը ցանկան երիցս պատարագել ի Ծննդեան Տեառն, այլ չեն յօժարիր ըստ նոր տումարին ընթանալ: Իսկ վասն այն թէ Արևելք հայ քահանայք երիցս պատարագեալ են, ճշմարիտ է այն, այլ ոչ նպաստա_ւոր նոցա: Դոմինիկեան կարգին եպիսկոպոսն Բարթողիմ Պոլո_նիացի որ հասարակօրէն Հայոց միաբանը կը կոչուի, յամին 1318, Յովհաննէս ԻԲ. Քահանայապետէն առաքուած էր

ի Հայաստան և օծուած Նախիջևանու Արքեպիսկոպոսական Աթոռոյն վրայ: Նրանցի Բարթողիմն ի Հայաստան եղած ժամանակ, կայր բաժանեալ մի Նաայի անուն, որ ունէր ընդ իւրն երեք հարիւր եօթանասուն աշակերտներ. սա իւնքըն նրանցի Բարթողիմեայ ուրակեաց վարքէն և համբաւէն շարժեալ բարի վախճանաւ, այց եղաւ անոր, և լուսաւորեալ անորմէ կաթողիկէ հաւատոյ ճշմարտութեան, իր ամէն աշակերտօքն յարեցաւ յիշեալ Բարթողիմեայ, և այնպէս հաստատեցաւ Միացեալ Եղբարց ընկերութիւնն, որք դաւանելով ճշմարիտ կրօնն, ունէին զգեստ Ս. Դոմինիկոսի. և համաձայն Քարոզչաց կարգին սահմանադրութեան՝ կը պահէին զկանոնս Ս. Օգոստինոսի. զայս ամենայն կը յիշատակէ Կըղեմէս Գալանոսն իւր Պատմութեան գրոց մէջ: Միացեալ Եղբարց ընկերութեան անդամքն համայն հայազգի էին, և բաց ի հայերենէ չէին գիտեր այլ լեզու. Դոմինիկեան կարգին մէջ ըլլալովնին հարկ եղաւ թարգմանել ի լատինականէն ի հայ յիշեալ կարգին կանոնագիրքն, սահմանադրութիւնքն, ժամագիրքն և պատարագամատոյցն, որպէս զի կարող ըլլան գործածել զայնս Եւայեայ աշակերտքն. այսպիսի թարգմանութիւնք յետոյ 1713ին տպագրեցան ի Հռոմ: Ասոր կը հետևի որ Դոմինիկեանց պատարագամատոյցն թարգմանեալ ի հայ, նշանակեալ ունէր երկցս պատարագելու արտօնութիւնն ի Ծննդեան Տեառն. ուստի հայ Դոմինիկեանքն հարկադրեալ պահեցին այդ սովորութիւնն Լատին արարողութեանք վարուելովնին: Հետևաբար հայ Դոմինիկեանց երկցս պատարագելու սովորութիւնն երբէք չի նպաստեր Լիվոռնոյի Հայոց »... (քաղուած ի կոնդակէն Բենեդիկտոսի ԺԴ. որոյ օրինակն առաքեցաւ Բիզայի Արքեպիսկոպոսին՝ որ ըստ այնմ վարուի և արգիլէ այդ նորութիւնն Լիվոռնոյ եղող հայազգի քահանայից):

Բիզայա Արքեպիսկոպոսն Մոնսինեօր Ֆրանչեսկոս Կոսիմի անուն նոր կանոնագրութիւն մի ըրաւ Հայոց Եկեղեցւոյն հա_

մար այսպէս. «Հրամայեմք որ իւրաքանչիւր երկու տարին Հոգեգալստեան տօնին նախընթաց օրն ազգային ժողով գումարել երեսփոխանաց ընտրութիւնքն ըլլան. ընտրութեան ժամանակ քուէարկութիւնքն ըլլան առաջի ժողովրդապետին, նոյնպէս և մեր և մերոց յաջորդաց կողմանէ կարգեալ անձին: Երեսփոխանք պարտաւոր ըլլան կանոնաւոր եղանակաւ իւրաքանչիւր ամիս երեսփոխանական նիստ ունել, և ի հարկեցուցիչ առթի ատենի ստէպ ի ժողով նստիլ: Ընտրեալ երեսփոխանաց թիւն ըլլայ միշտ եօթն. Ազգապետ մի, կրկին խորհրդականք, մատակարար մի եկեղեցւոյն, տեսուչ հիւանդանոցին, դպրանոցաց և գանձապետ: Ազգապետն իր խորհրդականաց հետ պարտական ըլլան մտնել և ելնել գումարաց ընկալագրերն ստորագրել. և հետևաբար գանձապետին պաշտօնն ըլլայ ընդունել կամ տալ այն գումարներն որոնց փոխանագրերն ստորագրեալ են կանոնապէս թէ Ազգապետէն և թէ խորհրդականներէն: Ի ժողովս ներկայացող երեսփոխանք թուով պակաս չըլլան քան զհինգ, որպէս զի ժողովն օրինաւոր համարուի: Մատակարարի պաշտօնն ըլլայ եկեղեցւոյն պիտոյքն հոգալ, ճշդութեամբ՝ մատուցուած պատարագներն ի գիր արձանացնել, որպէս նաև իւր ըրած ծախքն առանձին տետր մէջ, որպէս զի ամսագլխոյն ընկալագիր առնել ժողովոյն ներկայացնէ, և ստորագրել տայ զայն, և այլն: Հիւանդանոցին տեսուչն հսկէ անկելանոցին մաքրութեան, կարգաւորութեան և ծախուցն չափաւորութեան, իւրաքանչիւր վեց ամիս համար տայ իւր տեսչութեանն: Վարձահաւաքն ժողովեալ դրամն ամէն ամիս հաւատարմաբար յանձնէ գանձապետին ստորագրեալ ընկալագրով, որուն բաւականաչափ դրամ յանձնուած ըլլայ, որպէս զի վարձ չտուողաց դէմ դատաստանական ծախուց գործածէ: Ի վերջ երկուց ամսոց՝ իւրաքանչիւր երեսփոխան ժողովոյ մէջ համար տայ իւր գործակալութեանն, որպէս զի ամենայն ինչ կարգի եղեալ վաւերականութիւնն ընդունի: Գանձապետն արկեղ մէջ

եղած դրամն յանձնէ իւր յաջորդին, եթէ սակաւ ըլլայ այն. իսկ եթէ բազում՝ շահու տրուի այնպիսի գումարն: Ջանացող ըլլան երեսփոխանք կանոնաւոր եղանակաւ ի գիր արձանագրուցանել հաշիւքն. ընկալագրերն գրելու համար հարկ է որ հայ կամ խտալացի քարտուղար գործածեն, որպէս զի ի հարկաւորութեան պատրաստական ըլլայ, և քննուի հաշուոց եկամտական վիճակն: Քարտուղարին պատշաճական վարձ վճարեն, և այն միշտ մեր հաճութեամբ: Իւրաքանչիւր երկու տարի ընդհանուր ժողովոյ հրաւէրք բաշխուին ազգայնոց ամենուն, նոր և արժանի երեսփոխանաց ընտրութեան համար: Իսկ երբ ընտրեալքն ըստ մեծագոյն մասին կանոնաւոր եղանակաւ չըլլան. այն ժամանակ մեզ կը վերապահենք գանձապետութեան արժանաւոր մէկն կարգելու յօգուտ և ի շահ եկեղեցւոյն: Հուսկ ուրեմն կը յորդորենք Ազգայինքն որ իրերաց հետ խաղաղութեամբ և սիրով վարուին յօդիւ միութեան և ի սէր եղբայրական, իրենց պաշտամանց լաւագոյն կատարման համար»: Ի Լիվոռնոյ ի 5 Յունիսի 1764: — Ֆրանչ. Կուխտի Արքեպիսկոպոս Բիզայու:

Յետ Տէր Յովհաննէս Աղայեանի յաջորդեց յազգապետութեան Կարապետ Նազարեանն և վարեց զայն պաշտօն մինչև յամն 1769. յորում ամի Յովհաննէս Մարտիրոսեանն երկրորդ անգամ նստաւ Ազգապետ. սոյն յիշեալ կրկին Ազգապետաց պաշտօնավարութեան ժամանակ, Ազգին մէջ տիրեցին անընդհատ երկպառակութիւնք: Մէկ կողմանէ երեսփոխանքն և միւս կողմանէ ազգայինք իրերաց հակառակ կը գործէին. Հայ հասարակութիւնն բնաւ գոհ չէր երեսփոխանաց մատակարարական վարչութեան եղանակին համար, երբ երեսփոխանքն առանց ակնածութեան և բացարձակ ազատութեամբ կը վարուէին: Ի զուր ուրեմն հրաւէրք կը բաշխուէին ընդհանուր գումարման, և նոր անդամոց ընտրութեան համար, երբէք Ազգին մեծագոյնք չէին յօժարեր ներկայանալ ժողովոց, որով մի և նոյն անդամք կը մնային շարունակ իրենց պաշտօնին

մէջ: Այնպիսի զժտութիւնք առաւելեալք հետզհետէ, երկոքին կողմանքն յանդգնեցան առանձին առանձին աղերսագիրս ուղղել առ Աւագ Դուռն և առ Արքեպիսկոպոսն ամբաստանելով զիրեարս. Ազգն պարտաւոր կը համարէր երեսփոխանքը, անոնք ջատագովութեամբ զիրենք կարդարացընէին:

Տարաձայնութեան երկարելովն, թէ քաղաքական և թէ եկեղեցական իշխանութիւնք վայրապար ջանացած էին ի հաշտութիւն ածել վրդովեալքն և ի հանդարտութիւն յորդորել. մինչև որ Քաղաքապետին կողմանէ ապառնալիք եղան թէ Տէրութիւնն ստիպեալ կը յանձնէ ազգային մատակարարութիւնն, եթէ չխաղաղին Հայք: Քաղաքապետին սպառնալիքն մեծապէս բորբոքեցին երեսփոխանականքն, որք համարձակեալ զանգատեցան, և առանց ակնածութեան ծանուցին նմա այսպէս «եթէ Հայոց եկեղեցւոյն մատակարարական վարչութիւնն բարձեալ յանձնումն օտարի՝ Ազգն չի հանդուրժէր այնքան ծանր անարգանաց. և թողլով իւր տրտնջական ձայնն կը հասցնէ մինչև յԱրևելս, նմանապէս այլուր մինչև այն աշխարհներ ուր բնակեալ կան Հայեր այլ և այլ Պետութեանց պաշտպանութեան ներքև»: Այլ որ առաւել զարմանալին է՝ կը համարձակէին ըսել թէ «կը հրկիզեն Լատինաց վանորայքն»:

Մինչև այն ժամանակ Դոսկանայու իշխանապետութիւնն միջամտութիւն չէր ըրած յեկեղեցական գործս. ազատամիտըն Պետրոս Լէոբոլտոս Ա. ժամանակին Աւագ Դուռն Հայոց եկեղեցւոյն համար արքունի հրովարտակ մի ուղղելով հետևեալ կարգադրութիւնն ըրաւ. «Կամելով Մեր վայելուչ իմն եղանակաւ կարգաւորել զվարչութիւն Եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ, հրամայեմք զի կարգեալն ի Մէնջ Քաղաքապետ ի Լիվոռնոյ լիցի վերակացու, և հսկեսցէ զի երեսփոխանքն առանց բացառութեան՝ ըստ կանոնաց իցեն ընտրեալք, և որ ինչ սխալ իցէ Եկեղեցւոյն և իւր ծխիցն այն ամենայն անթերի հոգա_

ցին: Քաղաքապետն՝ ես և Լատին Եկեղեցւոյն ժողովրդապետն խնդրեսցեն հաշիւ յերեսփոխանաց և ի գործ դիցեն զմիջոցս պատշաճականս, առ ի ծառայեցուցանել զեկամուտս ըստ իւրաքանչիւր սահմանեալ դիտաւորութեան· Ազգն ընտրես_ցէ զժողովրդապետն իւր առաւելութեամբ քուէից, որոյ հաս_տատութիւնն լիցի ի ձեռն Արքեպիսկոպոսին Բիզայու: Քա_ղաքապետն մեր ի Լիվոռնոյ լիցի դատաւոր առ ի դատել զվէճս յարուցեալս ի մէջ Հայոց Ազգին »:

Ցիշեալ Աւագ Դուքսն բաղձանօք որ Հայոց ձանձրալի և երկար գժտութիւնքն դադարին, առանձին մէկ հրամանա_գրով յանձնեց իւր Քաղաքապետին ի Լիվոռնոյ, որ ըստ վե_րոյիշեալ Հրովարտակին դատէ Ազգին և Երեսփոխանականաց խնդիրքն: Ըստ հրամանագրոյն այնորիկ, Քաղաքապետին կողմանէ պաշտօնական գրութեամբ ծանուցուեցաւ մեր_ազնեայց այսպէս: Նորին Արքայական Բարձրութիւնն իւր Հրո_վարտակին համեմատ վարեալ կը հրամայէ որ Քաղաքապե_տըն ի Լիվոռնոյ, Հայոց եկեղեցւոյն երեսփոխանացն չափա_ւոր ժամանակ մը շնորհէ, որպէս զի իրենց մէջ ծագած խնդիր_քըն կանոնաւորեն, և ի լրանալն պայմանաժամուն փութան համար տալու Քաղաքապետին, և նա ինքն Քաղաքապետն քննելովն պատշաճ դատաւճն ի գործ դնէ: Այդ Նորին Արքա_յական Բարձրութեան հրամանին կատարման համար կը շնորհուի Հայոց հասարակութեան և անոր երեսփոխանացն առաջիկայ Նոյեմբերի ամբողջ ամիսն, որ իրենց խնդիրքն ջա_նան վերջացնել:

Քաղաքապետին պաշտօնական գրութիւնն հասեալ մեր_ազնեայց ձեռքն, չդանդաղեցին այլ ևս, իրերաց հաւանու_թեամբ ընտրեցին և կարգեցին Անտոն Միջօն անուն փաս_տաբանն իւր դատաւոր, որպէս զի ճշդիւ քննելով իւրաքան_չիւրոց հաշիւքն ակն յանդիման ցուցանէ հետեւութիւնն: Փաս_տաբանն Միջօն գովելի իմն եղանակաւ քններ, և պաշտօնա_պէս կարգադրելով հաշիւքն՝ իւրաքանչիւրոց մատակարարու-

թեանն, վերջացոյց խնդիրքն, որով խաղաղութիւնն վերահաստատեցաւ Հայոց հասարակութեան մէջ: Եւ գումարեալ նոր ընդհանուր ժողով յամին 1773, ընտրեցաւ Ազգապետ Աստուածատուր Միքայէլեանն և անոր հետ այլ երեսփոխանական անդամք:

Ի ժամանակս յայսմիկ կնքեց իւր կեանքն ի յոյժ ծերութեան ի Լիվոռնոյ քաղաքի Կեսարիոյ Արքեպիսկոպոսն Սարգիս Վ. Սարաֆեան, որ ի Հռովմ ձեռնադրիչի պաշտօն ունէր, և բնակեալ ի Լիվոռնոյ քանի մի տարիներ շնորհեց եկեղեցւոյն իւրեն ինչքն: Ձեռընտուութեամբ յիշեալ Արքեպիսկոպոսին տպագրեցան ի Վենետիկ քանի մի պատուական մատեանք, որպէս թողած ընչիւքն շինեցաւ Եկեղեցւոյն Աւագ Սեղանն: Յանուանէ ծանօթ Տէր Յովհաննէս քահանայն Նարտին սպասաւորութիւնն ունէր: *

Իսկ Առաջնորդ Եկեղեցւոյն Խաչատուրեան Ստեփան Վարդապետ յետ քառասուներկամեայ պաշտօնավարութեանն, զառամեալ տիօք վախճանեցաւ ի հասակի հարիւր և երկուամեաց 1769ին: Ժամանակին Հայերն ի Լիվոռնոյ ըստ Լէոպոլտեան Հրովարտակին վարեալ՝ Եկեղեցւոյն նոր Առաջնորդ կարգելու համար, և ընտրեցին առաւելութեամբ քուէից զՊետրոս Վարդապետ Մուրատեա, որ ի Սեպտեմբերի ամսեան 1769 տարւոյն՝ իր հայրենի գերդաստանովն հանդերձ գաղ_

* Այս այն Սարգիս Վ. Սարաֆեանն է որ ձեռնադրեալ յարքեպիսկոպոսութիւն Աթոռոյն Կեսարիոյ յամին 1733 ի Տէր Աբրահամ կաթողիկոսէ Էջմիածնի, առաքուած էր ի Կեսարիա· Սարգիս Արքեպիսկոպոս բանիբուն և իմաստասէր անձ մի էր և պատուական ի մէջ իւրայնոցն· Արծիւեան Աբրահամ Արքեպիսկոպոսին Կիլիկիոյ Աթոռոյն վրայ Պատրիարք անուանելէն վերջ, յիշեալ Սարգիս Արքեպիսկոպոս լքեալ Կեսարիոյ թեմն գնաց ի Սիրանան յոտս Կիլիկիոյ կաթողիկոսին, ճանաչելով զնա միայն ճշմարիտ յաջորդ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին· Յետ ժամանակաց Սարգիս Արքեպիսկոպոսն ուղևորեցաւ ի Հռովմ, ուր ձեռնադրիչ Եպիսկոպոսի պաշտօնն վարեց·

թեալ ի Մեծէ Կոստանդնուպօլսոյ (որպէս վկայէ Ցարգ. Հայաճեան) հասու ի Լիվոռնոյ. և էր նա ինքն Մուրատեան Վարդապետ Դպրաստան որդի, վարժ յուսմունս, որ Եկեղեցւոյ երրորդ Առաջնորդ ըլլալով վկայեց թէ՝ սպասաւորի պաշտօնէն աւելի ստորագոյն էր Հայ Առաջնորդի պաշտօնն ի Լիվոռնոյ:

Լէոպոլտեան հրովարտակաւ Եկեղեցւոյն տուեալ նոր կարգադրութիւնն բացարձակապէս հակառակական ըլլալովն՝ Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն իրաւանցն, որ անդստին ի սկզբանէ հետէ ոչ միայն Հայոց Առաջնորդն ինքն կարգեր էր, այլ և անոր թոշակն և ապրուստն հոգացեր էր. ուստի Առաքելական Նուիրակն որ ի Փլորենտիա Ս. Գահուն կողմանէ բողոք կալաւ, և ի պաշտօնէ ծանոյց Աւագ Դքսին, թէ Առաջնորդին ընտրութեան նկատմամբ եղած կարգադրութիւնն, ուղղակի Ս. Ժողովոյն իրաւանց դէմ է, որով գործադրութիւնն անպատշան: Գեր. Նուիրակին բողոքման դէմ անտարբեր մնաց Աւագ Դուքսն, և յետ ժամանակաց ուրոյն մէկ հրովարտակով խապաւ իրեն վերապահեց Հայոց եկեղեցւոյն Առաջնորդին ընտրութիւնն ի Լիվոռնոյ:

Պետրոս Վ. Մուրատեան, որոյ առաջնորդութիւնն՝ մեր վերագոյն յիշատակեալ ազգային երկպառակութեան ժամանակն հանդիպեալ էր, ի զուր ջանաց խաղաղել Ազգն, ի զուր յորդորեց երեսփոխանքն որ միաբանեալ լինէին հետ օտարաց միջամտութիւնն խափանել. իւր դիւրազգած բնաւորութեամբն զժտութեանց երկարելն տեսնելով, կարող չեղաւ աւելի երկար տոկալ, այլ մեծապէս վշտացեալ հրաժարեցաւ իւր Առաջնորդական պաշտօնէն երրորդ տարին դեռ չլրացեալ, և առանձնացեալ իւր հայրենի տունն, ժամանակ մի մնաց ի Լիվոռնոյ, և անտի գնաց առաջնորդելու եկեղեցւոյն Անքոնայի. ուր և վախճանեցաւ յամին 1775:

Այն ինչ Մուրատեան Վարդապետն լքեալ իւր առաջնորդութիւնն առանձնացեալ էր հայրենի տունն, 1773ին առաքե-

*ցաւ ի Հռովմայ Հալաճեան Հայր Կարապետն, որ կրօնաւոր էր յԱնտոնեան կարգէ, և պատճառ դառնալ Լվովոյի Հայոց Եկեղեցւոյն Առաջնորդութեան ի Գերերիչ. Կաթողիկոսէն Կիլիկիոյ Միքայելէ Պետրոսէ Գ: Յիշեալ Հայր Կարապետ Հալաճեան եռանդուն և աշխոյժ բնաւորութեամբն մերազնեայց սիրելի հանդիսացաւ. փոյթ տարաւ նա իւրն Ազգին մէջ սէր և միութիւն հաստատելու, ի մի սիրտ և ի մի հոգի վերածելու, որպէս ինքնին յառաջ կը բերէ առանձին գրութեան մէջ: Հալաճեանն առէպ զինեցաւ Մայր Եկեղեցւոյն ժողովրդապետին և սահմանադրութեանց դէմ, որոնք խոչ կըլլային Հայ Առաջնորդաց:*

## ԳԼՈՒԽ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Գժտութիւնք հայ երախայոն Վրաստանի և Բրուտենցւոց. Ս. Գահէն յանձնական հրաման. Աշխարհական Կարդինալ Նոտարեան և Յաջորդք. Հայ քերթողապետանք ժամանակին. Լատինաձեւ Հայ քահանայք. Շեհրիմանեան Գրիգոր Կոմսին ամբաստանութիւնն. Հալածանքն աշխային երեւանց պաշտպան հանդէպանուն ու նախանձայորութեան. Հայ Առաջնորդին ընտրութեան նոր եղանակն. Ս. Ժողովոյն մտադրութիւնն. արքեւսի ննջեցելոց Թողման Հայոց եկեղեցին. Գերեզմանատուն. հրաժարումն Ս. Խաչելութեան. եկեղեցին քանդելու հանդէսն:

*Արդարեւ խոչընդոտ են եղած առհասարակ Հայազգի Առաջնորդաց ի Լվովոյ թէ Եկեղեցւոյն վարչական անպատշաճ կազմակերպութիւնն և թէ յօտարէն առկախեալ ըլլալն, որոց պատճառաւ խնդիրքն անպակասի, և անդորրութիւնն երբէք տևողական, նորանոր արկածից պատահմամբն, զորս մի մի թուել չի ներէր տեղս:*

*Այդ Հալաճեան Հայր Կարապետն յետ հասանելոյն ի Լվովոյ, տեղեկացեալ թէ Հայոց մանկունքն ի ձեռն Լատին*

քահանայի մկրտեալ կլլան ի Մայր եկեղեցւոջ քաղաքին, յիմարութիւն համարեցաւ անտարբեր մնալ այն անպատեհութեան դէմ. ուստի գնացեալ Մայր եկեղեցւոյն ժողովրդապետին, խնդրեց անորմէն երախայից Ս. Իւղ որպէս զի կարող ըլլայ մկրտել ինքնին իր եկեղեցւոյն մէջն: Լատին ժողովրդապետն ի զուր ջանաց համոզել զհալածեալն՝ յայտնելով անոր սովորութեան դէմ ըլլալն արտաքոյ Մայր եկեղեցւոյն մկրտութեան խորհուրդ պաշտելն. այլ չկարացեալ յիշեալ հալածեալին զօրաւոր փաստից պատասխանել, որ ապացուցին կը հաստատէր ի Ս. Ժողովոյն կողմանէ Առաքելական ժողովրդապետ ոչ անուամբ այլ իրաւամբ կարգեալ ըլլալն, և ամենայն ազատութեամբ իր պաշտօնն կատարել կամելն: Փութաց Լատին ժողովրդապետն ծանուցանել զայն Արքեպիսկոպոսին Բիզայու, որոյ իրաւացի դատեալ խնդիրն՝ թոյլտուութիւն ըրաւ որ Հայոց եկեղեցին կարող ըլլայ պաշտել մկրտութեան խորհուրդն: Յետ թոյլտուութեանն Հայր Կարապետն առաջին մկրտութիւնն կատարեց յեկեղեցւոջ լոկ առանց ըդրոշմելոյ. իսկ յաջորդ անգամն Էմիրզեան կոչեալ ընտանեաց մանուկն մկրտելով դրոշմեց եւ: Որուն կատարումն յանդգնութիւն համարեցաւ Հայ Առաջնորդին: Վասն զի պարզ քահանայի դրոշմի Ս. խորհուրդ պաշտելն ոչ միայն սովորութեան դէմ էր, այլ նաև ընդդէմ սահմանաց Բիզայու Գաւառական Սինհոդոսին: Այս պատճառաւ Արքեպիսկոպոսն Բիզայու յանդիմանական նամակաւ կշտամբեց զՀայր Կարապետն, պատուիրելով նմա մի ևս մկրտել յեկեղեցւոջ Հայոց: Այլ նա ինքն Հայր Կարապետն ոչ միայն ծանոյց Արքեպիսկոպոսին թէ ժողովրդապետ ըլլալովն իրեն յանցանք չի համարիր խորհուրդներ պաշտելն, այլ և համարձակեցաւ անիրաւական կոչել զայն պատիժ և հետևաբար անընդունելի կատարումն:

Յիշեալ դէպքն առիթ տուին հալածեալին գրելու ի Հռոմ և ծանուցանել զամենայն. որոյ ի պատասխանի, Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն Գահերէցն հրաման շնորհեց ըստ արե-

ցաւ ի Հռովմայ Հալածեան Հայր Կարապետն, որ կրօնաւոր էր յԱնտոնեան կարգէ, և պատշաճ դատեալ Լիվոռնոյի Հայոց Եկեղեցւոյն Առաջնորդութեան ի Գերերջ. Կաթողիկոսէն Կիլիկիոյ Միքայելէ Պետրոսէ Գ: Յիշեալ Հայր Կարապետ Հալածեան եռանդուն և աշխոյժ բնաւորութեամբն մերազնեայց սիրելի հանդիսացաւ. փոյթ տարաւ նա ինքն Ազգին մէջ սէր և միութիւն հաստատելու, ի մի սիրտ և ի մի հոգի վերածելու, որպէս ինքնին յառաջ կը բերէ առանձին գրութեան մէջ: Հալածեանն առէպ զինեցաւ Մայր Եկեղեցւոյն ժողովրդապետին և սահմանադրութեանց դէմ, որոնք խոչ կըլլային Հայ Առաջնորդաց:

## ԳԼՈՒԽ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Գժտարարութիւնք Հայ երախայից մկրտելոյ և դրոշմելոյ. Ս. Գահէն յաջողական հրաման. Աշխատաւոր Կարապետ Նալբանդեան և Յաջորդք. Հայ գերդաստանք ժամանակին. Լատինածէս Հայ համայնք. Շեհրիմանեան Գրիգոր Կոմսին ամուսնութիւնն. Հալածեանին ազգային իրաւանց պաշտպան հանդիսանալն ու նախանձաւորութիւնն. Հայ Առաջնորդին ընտրութեան նոր եղանակն. Ս. Ժողովոյն տժգոհութիւնն. արգելումն ննջեցելոց թաղման Հայոց եկեղեցին. Գերեզմանատուն. Հրաշագործ Ս. Խաչելութեան. Եկեղեցին գեղազարդելու հանդէսն:

*Արդարև խոչընդոտն են եղած առհասարակ Հայազգի Առաջնորդաց ի Լիվոռնոյ թէ Եկեղեցւոյն վարչական անպատշաճ կազմակերպութիւնն և թէ յօտարէն առկախեալ ըլլալն, որոց պատճառաւ խնդիրքն անսպառելի, և անդորրութիւնն երբէք տեւողական, նորանոր արկածից պատահմամբն, զորս մի մի թուել չի ներէր տեղս:*

*Արդ Հալածեան Հայր Կարապետն յետ հաստատելոյն ի Լիվոռնոյ, տեղեկացեալ թէ Հայոց մանկունքն ի ծնուն Լատին*

քահանայի մկրտեալ կըլլան ի Մայր եկեղեցւոյ քաղաքին, յիմարութիւն համարեցաւ անտարբեր մնալն այն անկարեւորութեան դէմ. ուստի գնացեալ Մայր եկեղեցւոյն ժողովրդապետին, խնդրեց անորմէն երախայից Ս. Իւղ որպէս զի կարող ըլլայ մկրտել ինքնին իր եկեղեցւոյն մէջն: Լատին ժողովրդապետն ի զուր ջանաց համոզել զՀայաձեանն՝ յայտնելով անոր սովորութեան դէմ ըլլալն արտաքոյ Մայր եկեղեցւոյն մկրտութեան խորհուրդ պաշտելն. այլ չկարացեալ յիշեալ Հայաձեանին զօրաւոր փաստից պատասխանել, որ ապացուցիք կը հաստատէր ի Ս. Ժողովոյն կողմանէ Առաքելական ժողովրդապետ ո՛չ անուամբ այլ իրաւամբ կարգեալ ըլլալն, և ամենայն ազատութեամբ իր պաշտօնն կատարել կանելն: Փութաց Լատին ժողովրդապետն ծանուցանել զայն Արքեպիսկոպոսին Բիզայու, որոյ իրաւացի դատեալ խնդիրն՝ թոյլտուութիւն ըրաւ որ Հայոց եկեղեցին կարող ըլլայ պաշտել մկրտութեան խորհուրդն: Յետ թոյլտուութեանն Հայր Կարապետն առաջին մկրտութիւնն կատարեց յեկեղեցւոջ լոկ առանց դըրօշմելոյ. իսկ յաջորդ անգամն Եմիրզեան կոչեալ ընտանեաց մանուկն մկրտելով դրոշմեց եւ: Որուն կատարումն յանդգնութիւն համարեցաւ Հայ Առաջնորդին: Վասն զի պարզ քահանայի դրոշմի Ս. խորհուրդ պաշտելն ոչ միայն սովորութեան դէմ էր, այլ նաև ընդդէմ սահմանաց Բիզայու Գաւառական Սիւնհոդոսին: Այս պատճառաւ Արքեպիսկոպոսն Բիզայու յանդիմանական նամակաւ կշտամբեց զՀայր Կարապետն, սպառնալիքելով նմա մի՛ եւս մկրտել յեկեղեցւոջ Հայոց: Այլ նա ինքն Հայր Կարապետն ոչ միայն ծանոյց Արքեպիսկոպոսին թէ ժողովրդապետ ըլլալովն իրեն յանցանք չի համարիր խորհուրդներ պաշտելն, այլ և համարձակեցաւ անիրաւական կոչել զայն պատիժ և հետևաբար անընդունելի կատարումն:

Յիշեալ դէպքն առիթ տուին Հայաձեանին գրելու ի Հռոմ և ծանուցանել զամենայն. որոյ ի պատասխանի, Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն Գահերէցն հրաման շնորհեց ըստ արե-

ունենան եկեղեցւոյ կիրառութեան մկրտեալ դրոշմել Հայոց նորախայքն. անհատասիկ նամակին օրինակն զոր թարգմանեալ յառաջ կը բերեմք աստէն. «Ցարգոյամեծար Հայր Կալայնա Առաջնորդ Հայոց ի Լիվոռնոյ: Կարելի չէ Զ. Ց. Հ. հայցուածոյն գործադրութիւնն, վասն զի հայկական ծէսն կը պարտաւորէ որ մկրտող քահանայն, մկրտութեան հետ ի միասին դրոշմն մատակարարէ, այլ ոչ թէ մէկն միւսէն զատելով: Ձեր Ց. Հ. ի մկրտելն կարող է ևս դրոշմել, իսկ զանոնք որ ի մկրտութեան չեն ընդունած զդրոշմն, ոչ ունիք իշխանութիւն յետոյ դրոշմ տալոյ. որով հարկ կըլլայ որ անոնք Լատին Եպիսկոպոսէն դրոշմուին, քանի որ չկայ ի Լիվոռնոյ Հայազգի Եպիսկոպոս. բայց եթէ ի Հռովմ գան, ուր չեն պակաս Հայածէս եպիսկոպոսունք: Արդ կանոնաց դէմ է պարզ քահանայի իշխանութիւն տալ զատաբար դրոշմելու: Իսկ Երուսաղեմի մեծաւորին՝ Արևելեայց ոմանց հետ այսպիսի իշխանութիւն գործածելն ժամանակաբար եղած է, և ապա յետս կոչուած. յայտ առնելով թէ Ս. Գահուն կողմանէ Լատինաց համար միայն և արտօնաբար շնորհուած էր այն: Ձեր Ց. Հ. զգոյշ ըլլայ չփոփոխելու Հայկական ծէսն, և ի միասին մկրտեալ դրոշմէ: Այսու եղանակաւ ամէն շփոթութիւնք կը փարատին, և Ազգն կը մնայ հանդարտ և գոհ», և այլն:

Ի Հռովմ ի 25 Սեպտեմբերի 1784: — Լ. Անթօնէլլի Գահերէց ծիրանաւոր:

Կը պատմէ Հալաճեանն իւր նամակաց միոյն մէջ թէ 1765ին կայր ի Բերիա քաղաք Տրանչլվանեան մի Հայր Պօղոս անուն Բիւչենցացի որ Հայոցմէ դրոշմեալքն վերստին կը դրոշմէր. և ի գանգատել ի Հռովմ բարեյիշատակ Կաթողիկոսին Կիլիկիոյ Միք. Պետրոս Գ. Ս. Ժողովն պախարակեալ կշտամբեց յիշեալ կրօնաւորն, և հրամայեց որ երթայ յոտս Միքայէլ Կաթողիկոսի ի Լիբանան, և խնդրէ թողութիւն իր ապօրինաւոր և դատապարտելի գործոցն համար:

Աստուածատուր Մխքայէլեանին յաջորդեց յԱզգապետութեան յամի 1775 իմաստասէրն և գիտնականն Կարապետ Նազարեան. յետ նորա վերստին Աստուածատուր Մխքայէլեանն, և ապա Յովսէփ Աղեքսանդրեան, որմէ վերջ Փաստարանն Անտոն Սավուր: 1783ին գրեալ մերազնեայց ազգահամարէն կը քաղենք, թէ աւք միայն էին քառասուն և չորս թուով, առանց թուելու կղերականքն. և ահա իւրաքանչիւր ընտանեաց անուանքն դնեմք աստէն կարգաւ: Աբրահամեան, Աղեքսանդրեան, Արմենեան, Աւագեան, Աւետիսեան, Գէորգեան, Եազըճեան, Թերզեան, Մուրատճա, Մարտիրոսեան, Կիրաք–Մելիման, Նազարեան, Նարկիզեան, Ճեհրիխմանեան, Պերպերեան, Պօլսեցեան, Սալվաթորեան, Սավուր:

Ի ժամանակին եղած են ի Լիվոռնոյ հայազգի լատինածէս քահանայք, որոց անուանք էին Տէր Անտոն Խաչատուրեան, Տէր Օգոստինոս Թերզեան, Տէր Կայեթանոս և Տէր Ստեփան եղբարք Արմենեան մականուամբ, և այլ ումն Նազարեան անուն: Այսպիսի լատինածէսք ոչ միայն չէին անջատեալ Ազգէն, այլ և կը մասնակցէին երբ ազգայինք ժողովոց անդամ և երեսփոխան ընտրուելով, անոնց աղքատք ազգային արկղէն ողորմութիւն կընդունէին, և մեռեալքն կը թաղուէին Հայոց գերեզմանատունն: Թէ և յընկերութեան առաջնորդին կային բուն հայածէսքն Տէր Յովհաննէս Նարտին, և միւս Տէր Յովհաննէս Տուրսունեան, ի վերայ այսր ամենայնի յիշեալ լատինածէս քահանայք խակ էին ի սպասաւորութեան Հայոց եկեղեցւոյն: Օրինակի աղագաւ, յամին 1788 երբ Ճեհրիխմանեան ընտանեաց երեւելի փաստաբան Գրիգոր Կոմս ի Լատինաց առնոյր ի կնութիւն օրիորդ մի ազնուազարմ, ընտանիք հարսին, փափաքեցան լինել Պալատին մատրան մէջ կատարել պսակման հանդէսն. Պալատն հեռու էր ի Լիվոռնոյէ իբր չորս ժամ, և Առաջնորդին դժուարին ի Լատինաց եկեղեցին արարողութիւնն կատարել. փոխանորդաբար

կարգեց իր կողմանէ զՏէր Անտոն Խաչատուրեան, որ՝ երթայ ի մատուռն, և անդ Պաւլի խորհուրդն պաշտելէն առաջ հանդիսականաց ամենեցուն առաջին ընթեռնու և յայտնէ իւրեն պաշտօնապէս Հայ Առաջնորդին կողմանէ փոխանորդ առաքուած ըլլալն:

Հալածեանին ընթացքն էին, զինել առէպ օտարաց դէմ, երբ ազգային իրաւանց կը համառակէին, մանաւանդ յարաբողութեան մասին: Շեհրիմանեան Մարգար Կոմսին յաղարկաւորութեան փառաւոր հանդէսին հրաւիրեց անէն Կանոնիկոսն և Լատին կրօնաւորները, և ի ներկայութեան անոնց՝ պաշտօնին կարգն կատարեալ քահանայիւք և տիրացուօք բարձրաձայն շարականներ գեղգեղելով հանդիսապէս տարաւ թաղից ազգային զերեզմանատունն: Ազգն խիստ զՀայր Կարապետ որ պատճառ չտայ Լատինաց զրգռութեան, այլ խոհեմութեամբ վարուի, այլ նա շարունակեց իր ազատական ընթացքն: Դիմեց դատաստանատունն Լատին ժողովրդապետին դէմ, Հայ ննջեցելոց եկեղեցւոյս թաղած հասոյթներուն մէկ մասն միայն Հայ Առաջնորդին մնալն, իսկ երեքն իրեն պահանջելուն ապօրինաւորութիւնն ցուցնելով, Ֆրօզինեան սահմանադրութիւնն անգործադրելի ըրաւ: *

Նա զի Լատին ժողովրդապետին Բիզայու Արքեպիսկոպոս

* Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն կողմանէ Բիզայու Արքեպիսկոպոսին ուղղուած թղթոյն օրինակն է. «Առաքեալն ի մէնջ Հայր Կարապետ յառաջնորդութիւն հօտին հայազգի ժողովրդեան ի Լիվոռնոյ, ծանուցանէ մեզ թէ ի վարելն իւր զժողովրդապետական պաշտօնն խոչընդոտն լինի նմա Մայր եկեղեցւոյն ժողովրդապետն ի Լիվոռնոյ։ Եթէ արդարև այդ այդպէս իցէ, Գերապայծառ Տէրութիւն Ձեր բարեհաճեսցի ազդ առնել յիշեալ ժողովրդապետին զի մի՛ նեղեսցէ և խոչընդոտն լիցի հայ միանձուն այնմիկ։ Վասն զի նա ինքն առաքեալ է ի Ս. Ժողովոյն, առ ի վարել զիւր հոգևորական պաշտօն յօգուտ ազգին իւրոյ, որոյ արդէն ընկալեալ է և զհաճութիւն Գերապ. Տ. Ձ. Այսչափ ինձ համարձակիմ խնդրել ի խնամոց » և այլն։

ձեռնադրուելովն, Մայր եկեղեցւոյն ի Լիվոռնոյ նոր ժողովըրդապետ կարգեցաւ Անթօնիօ Պալատինէթթի անուն արբանէր անձն, որ ներողութիւն չպատճառելէն ի զատ խորհուրդ եւ տուաւ Հալածեանին որ չանապարէ, այլ միշտ խոհեմութեամբ վարուելովն, պատշաճ ժամուն հայկական ծխերն անթերի կատարելովն իր իրաւունքն առանց: Այսու վարմամբ Հայր Կարապետն ի կարգս Առաջնորդաց եկեղեցւոյս եղաւ ամենէն աւելի գործունեայն. վասն զի ոչ միայն սկսաւ մկրտել և դրոշմել, այլ և իւր ժողովրդապետական իրաւասութիւնն տարածեց մինչև հոն ուր Հայեր կը բնակէին նաև քաղաքէն դուրս, և այնպէս ազատեալ հանդիսապէս յուղարկաւորեց Հայոց ննջեցեալքն: Այլ որ աւելին է, լատինածէս հայ քահանայքն իսկ ունէր յիշխանութեանն, որոց միայն մարմինն Լատինաց գերեզմանատուն թաղուելու ժամանակ արծուի նման վրայ հասաւ, և բողոքելով եղածին դէմ, տարաւ զանի Հայոց գերեզմանատունն թաղեց:

Մերոյս Առաջնորդին այսպէս ազգային ծէսերուն և իրաւանց նախանձախնդրութեան ժամանակ, Աւագ Դուքսն Պետրոս Լէօբոլտոս Ա. Լիվոռնոյի Հայոց եկեղեցւոյն նոր կարգադրութիւն տալով առանձին հրովարտակաւ, Առաջնորդին ընտրութեան եղանակն փոխեց: Ահաւասիկ այս երկրորդ հրովարտակին թարգմանեալ օրինակն է այսպէս.

« Այսուհետև Հայոց եկեղեցւոյն ժողովրդապետութեան մէջ ի Լիվոռնոյ կլլին պաշտօնեայ քահանայք գտնուելու են. մին ժողովրդապետ անուամբ, իսկ միւսն օգնական ժողովրդապետին: Ազգն ի պակասութեան ժողովրդապետին, գիտութեամբ Բիզայու Արքեպիսկոպոսին երեք յարմար Քահանայից անուններն առաջարկեալ ներկայացնէ, որոնց մէջ Աւագ Դուքսն՝ յարմարագոյն մին ընտրեալ հաստատէ Հայոց եկեղեցւոյն վրայ ժողովրդապետ: Կը հրամայէ որ Հայոց կամ Յունաց եկեղեցեաց մէջ պաշտօնեայ քահանայներէն մին տեղեակ ըլլայ արաբական լեզուին, ի պէտս խոստովանութեան հա-

սատացելոց: Այսու նորոգ կարգադրութեամբ կը ջնջէ Հռովմայ Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն Հայազգի ժողովրդապետն կարգելու սովորութիւնն ի Լիվոռնոյի եկեղեցւոջն. և կը հրամայէ որ յիշեալ Ս. Ժողովն ազատ ըլլայ իւր պարտաւորութենէն Հայոց ժողովրդապետին վաթսուն և հինգ սկուտ վճարելու: Հետևաբար կը վճռէ որ իւր արքունի գանձէն հատուցուի այն գումարն յիշեալ Հայ ազգի ժողովրդապետին: — Ի Պալատանն ի 25 Հոկտեմբերի 1785 *: Դոսկանայոյ Աւագ Դուքս իշխանաւորն՝ մեծ շնորհք չէր ըրած, յարքունական արկղէն Հայ Առաջնորդին ռոճիկ շնորհելովն. որովհետև արդէն երեքտասաներորդ դարուն սկիզբն, նաև մեր Լևոն Մեծըն թէ Ճենովացւոց և թէ Վենետաց, ոչ միայն շնորհած էր հրաման շինութեան լատինածէս եկեղեցեաց ի Կիլիկիա, այլ և տուած թոշակ անոնց քահանային ի Մամեստիա իւր արքունի գանձէն:

Վերոյիշեալ կարգադրութիւնն և հրովարտակին օրինակն պաշտօնապէս ծանուցուեցաւ Եկեղեցւոյն Առաջնորդ Հայաճեան Հայր Կարապետին, որ փութաց անմիջապէս առաքել զայն ի Հռովմ Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն. վասն զի այդպիսի եղծողական կարգադրութիւնք ընդդէմ էին մեծապէս Ս. Ժողովոյն վերագոյն իշխանութեանն: Յիշեալ Ս. Ժողովն շատ վշտացաւ այնքան թշնամութեան համար որ Պետրոս Լէոպոլտոս Ա. կը յայտնէր, և սկսեալ յամէն 1785 դադարեցաւ առաքել Հայազգի ժողովրդապետին վաթսուն և հինգ

* Միացեալ Ցունաց ժողովրդապետն իսկ ի Լիվոռնոյ ըստ Լէոպոլտեան հրովարտակին՝ Հայոց նման ի պարապութեան ժողովրդապետին ի ձեռն ազգին երեք քահանայից անուանք կառաջարկուին պետութեան. իշխանաւորն ըստ հաճոյս կանուանէ ժողովրդապետն, և հաստատական հրովարտակ միանգամայն ռոճիկ կը շնորհէ Լիվոռնոյի Յոյնք թէ և Մելքիթ չեն, այլ իրենց ժողովրդապետ երբեմն անուանած է ի Մելքիթաց. որպէս այժմեանն. Յոյնք ևս նման Հայոց սակաւաթիւ են ի Լիվոռնոյ:

սկուտն: Զկան յիշատակութիւնք ի դիւանս թէ արդեօք բողոք եղած է այս երկրորդ անգամն ի Փլորենտիա առաքելական Նուիրակէն. այս նկատմամբ գրեալ պաշտօնական նամակաց օրինակքն իսկ մեզ անծանօթ մնացած են: Այլ յետ երկարագոյն խուզարկութեանց հասաւ ի ձեռս մեր Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն Գանձերեցին կողմանէ գրեալ մէկ նամակն որ ուղղեալ է առ Արքեպիսկոպոսն Բիզայու, և այն ոչ մերձաւոր թուականաւ, զոր մեք թարգմանաբար շրջեալ ի մերն, դնեմք յառաջիկայս.

«Գերապայծառ Գերյարգելի Անճէլօ Ֆրանչեսքի Արքեպիսկոպոս Բիզայու: Յառաջ բերելով և գուշակելով այն անպատեհութիւնքն որոնք կարելի են որ ծագին, եթէ Լիվոռնոյի Հայազգի կաթողիկեայ ժողովրդեան հոգևորական հոգաբարձութիւնն յանցանել ժամանակացն յանձնուի..... միջոցներովն զոր ի գործ կը դնեն. Յարգոյամեծար Հայր Կարապետ Հալաճեան յիշեալ Հայոց ժողովրդապետն մտածեց այլ օգտակար միջոց չըլլալն, եթէ ոչ առաջակարգել իրենց Եկեղեցին ուղղակի ընդ իրաւասութեամբ Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն: Այսու վախճանաւ նա ինքն ժողովրդապետն միտս ունի ներկայանալու Ձեր Գերապայծառ Տէրութեան, և ի միասին խորհրդածելու, իր խորհրդոյն յաջողութեան և գործադրութեան եղանակն գտնելու համար: Համոզելով ըզմեզ թէ Ձեր Գերապայծառ Տէրութիւնն արդէն ունի այսպիսի զգածմունքն: Յայն սակս կը խնդրենք Ձեր Գերապ. Տէրութենէն որ բարեհաճող ըլլայ հաղորդելու մեզ Ձեր իմաստուն խորհուրդներն նկատմամբ վերոյիշեալ գրուածներուն, լսելով նաև Յարգ. Հօր Կարապետին կարծիքն: Մնալով Ձեր ցանկալի պատասխանեացն, կը հայցենք ի Բարձրելոյն, որ խընամէ և յառաջադէմ ընէ Ձեր Գերապայծառ Տէրութիւն»: Ի Հռովմ ի 14 Մայիսի 1796: — Յ. Ճերտոլի Գանձերեց ծիրանաւոր*:

* Եղած են ի Լիվոռնոյ ի մէջ հայազգի ժողովրդեան այնպիսի ընտրութեամբ մարդիկ, որոնք ժամանակ ժամանակ դժուա-

Տպագրման Հաստատող Ս. Ժողովոյն հրամանին որ արդէն ուղղուած էր առ Հալածեան Հայր Կարապետն որ կարող ըլլայ ըստ հայկական և արևելեան արարողութեան հայազգի երախայքն մկրտելով դրոշմելու, ստացանեցուցած էր ոչ միայն Լիվոռնոյի Լատին կղերն, այլ նաև Բիզայու ժամանակակից Արքեպիսկոպոսն, որ ոչ սակաւ ջանաց անգործադրելի ընելու Ս. Ժողովոյն հրամանագիրն՝ յայտնելով նոյնին համապատկերն Բիզայու Գաւառական Սինոդոսին: Յիշեալ Բիզայու Արքեպիսկոպոսն գործածած միջոցներովն, յաջողեցաւ վերջապէս խափանել տալու Հայ Առաջնորդին ի Հռովմայ ընդունած դրոշմելու իշխանութիւնն, խոսպաւ անգործադրելի ընելով ի Լիվոռնոյ: Խնամուլք զոր պարտ է ունել Պետութեան գլխաւորն քաղաքացեաց առողջապահութեան համար, Պետրոս Լէոբոլտոս Ա. Ըշմարեալ դիտեց ի Լիվոռնոյ ննջեցելոց Հայոց եկեղեցին թաղուելուն անպատեհ սովորութիւնն, որով առանձին հրամանագրաւ և արգելմամբ ըստ նմանութեան այլոց ծանուցանեցաւ մերազնեայց մի ևս այնուհետև թաղել իրենց եկեղեցւոյն մէջ: Եւ որովհետև դեռ չունէին Հայերն առանձին գերեզմանատուն, յարմարագոյն տեղ մի գնելու համար կարեկցեալ ըլլալովնին՝ ի մի գումարեալ յօրինեցին ժողովական գրութիւն մի և մատուցին զայն յիշեալ Աւագ Դքսին. որպէս զի բարեգթութեամբն շնորհէ Հայոց առանձին գերեզմանատուն մի: Հայոց աղերսն ընկալեալ բարեհաճեցաւ Աւագ Դուքսն հրաման շնորհել ըստ հետևեալ եղանակին. « Կը շնորհուի հրաման Հայազգեաց ի Լիվոռնոյ, իրենց սեպհական ծախուքն՝ անդաստանին մէկ կողմն գերեզմանատուն շինելու հա-

րութիւնս յարուցեալ են, ու գժտութիւն յայտնելով իրենց Առաջնորդին դէմ կամեցեր են պաշտօնազուրկ առնել զնա, և փոխանակել անոր տեղ, այս ինչ կամ այն ինչ միաբանութեանց վարդապետներէն. այլ Կաթողիկոսաց Կիլիկիոյ ազդեցողական զօրութեամբն յարատևեալ մնացեր են Անտոնեան Հարք ի նոյն պաշտաման մինչև ի մահ Հօր Աստուածատրոյ Տարբալեարսեան։

մար, ի պէտս և ի հարկաւորութիւն իւրեանց ազգին, մինչ թէ տեղւոյն ընտրութիւնն ըլլայ ի ձեռն քաղաքապետին ի Լիվոռնոյ, և շինութիւնն ըստ ձեւոյն զոր պատշաճ դատէ յիշեալ քաղաքապետն»: Ի Փլորենտիա, տուեալ ի 1 Յուլիսի 1784:

Ըստ այսմ կարգադրութեան և եկեղեցւոյս կալուածոց հաստոյթով գնուեցաւ՝ արտաքոյ Փլորենտեան դրան, անդաստանի կողման որոշեալ մասն, ուր ըստ հաճութեան քաղաքապետին կանգնեալ քառակուսի ամրագոյն պատուար՝ երկաթավանդակ դրան հաստատեցին, սկսելով թաղել անդ հայազգի ննջեցեալքն. ունելով խորհուրդ որ յետոյ ի միջավայր գերեզմանատան շինուի փոքրաձև մատուռն, որոյ շինութիւնն երկարեցաւ մինչև այն ժամանակ, երբ քաղաքն ընդարձակեալ՝ գերեզմանատան շրջակայքն յաճախեալ բազմացան բնակութիւնք, որով խափանեցաւ և անդ ննջեցելոց թաղումն, տանելով այնուհետև հայազգի ննջեցեալքն խառն Լատինաց այլ և այլ գերեզմանատունսն: Իսկ յիշեալ Հայոց գերեզմանատան այժմեան վիճակն շատ եղկելի է, տապանաքարինք ընդհանրապէս զողացեալք և ի բաց տարեալք՝ հազիւ կը մնան կանգուն քանի մի մահարձանք, և քանիւ չափ նոճիք ի միջավայրն: *

Ի կարգս բազմազան և նշանաւոր դիպուածոց որ ի ժամանակս առաջնորդութեան Յարգ. Հալաճեանին հանդիպեալ են ի մէջ մեր Հայոց հասարակութեան ի Լիվոռնոյ, յիշատակելի է և այս: Անդստին յամէն 1778, ծախիւք բարերարի Եկեղե_

* Երեսփոխանական ժողովոյն ոչ սակաւ ազդարարութիւն ըրած էինք մեր առաջնորդութեան ժամանակ, որպէս զի փոյթ տանի Ազգին համար նոր գերեզմանատեղի մի գնելու համար. Մեր առաջարկն խորհրդածութեան առեալ, թէ և կազմեցաւ մասնաժողով որ այս վախճանաւ պատշաճ գետին ինչ գնելու մտադիր ըլլայ, այլ սակայն գործադրութիւնն անկատար մնաց, ազգայնոց թուոյն նուազագոյն, իսկ նոր գերեզմանատան շինութեան համար պէտք եղած ծախուց առատագոյն ըլլալովն.

ցույն՝ հանգուցեալ Սարգիս Արքեպիսկոպոսին, շինուած էր սիւնազարդ և սքանչելապէս Աւագ Սեղանն, այլ սակայն չունէր սեղանն այն պատշաճագոյն պատկեր առ ի զարդարել զայն. մինչև որ բարեպաշտօնն Գրիգոր Կոմս Շեհրիմանեան եկեղեցույն այն պակասն ևս լրացոյց: — Էր առ վաճառատեղեաւ քաղաքին, հարիւր մեթրաչափ հեռի մեր եկեղեցւէն կամ սակաւ ինչ աւելի, փլայատակ այլ եկեղեցի [illegible] կոչեցեալ, ուր որմոյն վրայ Քրիստոսի սուրբ խաչելութեան պատկերն՝ 1650էն ի վեր գեղեցկապէս նկարեալ կը պահուէր. Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ այն խաչելութեան պատկերն սքանչելագործ ըլլալովն՝ մեծապէս ի պատուի ունէին զայն հաւատացեալքն, և ուխտաւորութեամբ կը դիմէին յուս նորա: Մեր Շեհրիմանեան քրիստոսասէր Գրիգոր Կոմսն, այնպիսի թանկագին պատկերն մեր եկեղեցույն մէջ փոխադրելու փափաքով և առանձինն պաղատական խնդրանօք Դոսկանայու իշխանաւորէն ընկալեալ հրաման, ուստի հաճութեամբ նորա և հաւանութեամբ Ազգային ժողովոյն փոխադրեց զայն սքանչելագործ պատկեր ի 23 Մարտի 1786 Հայոց եկեղեցին:

Յիշեալ Հայազգի բարերարն մեծամեծ ծախուք և աշխատութեամբ կարող եղաւ իւր բարի առաջարկութիւնն ի գլուխ հանել: Առեալ տարաւ ի փլայատակ եկեղեցին Լատինաց՝ գործաւորներ և արհեստաւորներ, որոնք զգուշաւոր եղանակաւ ճեղքեալ հատորաձև որմն, ուր նկարեալ կայր յիշեալ պատկերն, յաջողեցան զատելով հանել զայն ի բաց. և հաստատեալ այդ ծանրաբեռն պատկերատեսիլ որմն ի վերայ զօրաւոր գերանաց, բազմութեամբ ողջոյն քաղաքին հանդիսականց ըլլալովն թափօրական եղանակաւ բերաւ, և զետեղուեցաւ մեծաւ ճարտարութեամբ՝ Հայոց եկեղեցույն Աւագ Սեղանոյն որմոյն մէջ պատշաճապէս պատրաստեալ տեղին: Փոխադրութեան յաջորդ օրն եղան առաջին խուռն բազմութեան գաղթական ազգաց ի Լիվոռնոյ ի պատիւ Ս. Խա-

*չին Յիսուսի՝ եկեղեցական փառատր Ս. պաշտամունք ըստ հայկականն ծիսի: Որպէս նաև ի լրանալ հարիւր ամաց յամին 1886, դարադարձական երեքօրեայ տօնախմբութիւնք կատարեցան յեկեղեցին մեր ի Լիվոռնոյ ի պատիւ սուրբ և երկրպագելի Խաչին Քրիստոսի:*

## ԳԼՈՒԽ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Եկեղեցւոյն գործն և դպրոցաց կողոպտումն յերեսաց Գաղղիացւոց· Բողոք Հայոց առ Պօնաբարդ· Մահ Հաւաքեանին· Սերովբեանին առաջնորդութեան ժամանակն· Հայոց թիւն· Աղէքսաղեար· Տէրամօր Պատկերն ի մատրան և տանն· Լուսաւորչեան Առաջնորդն, որդի յաջորդ Մխիթարեանն· Աղէքսին հրկիզանաթեանք· Տէր Պ.Թ.Թ· Աղէքսանդրեան Աղէքսղեա· Եկեղեցւոյն նորոգութեան յիշատակութիւնն. նորոգութեանն ետքն աղաւաղութիւնն· պարոք· կանոնագրութիւն Գ. ուղղութեան Աղէքսի· Երեսփոխանաց ընդ հայոց ժողովութիւնն:

*Դեռ չլրացեալ ութևտասներորդ դարն՝ մինչդեռ Ֆերտինանտոս Գ* հայրական խնամովք ի խաղաղութեան կը վայելէին Դոսկանական նահանգք, Գաղղիացւոց աշխարհին ոճրագործ հասարակապետականաց լեգէոնք արշաւեալ տիրապետեցին աւագ Դքսութեան սահմաններն և ծանր հարկապահանջութեամբ նեղեցին անոր բնակիչքն: Հրամանատար Գաղղիական բանակին հասեալ ի Լիվոռնոյ յամին 1799, չշատացաւ Հայոց եկեղեցւէն ընդունած հինգհարիւր արծաթ սկուտ տուգանօքն, զորս պատրաստալէս վճարելու համար երեսփոխանական ժողովն փոխառութեամբ հարիւրին տասն շահ վըճարելու պայմանաւ առած էր այնչափ գումարն Գաբրիէլ Սալվաթորեան անուն Հայազգի սեղանաւորէն. այլ և բռնաբար եկեղեցւոյս արծաթեղէն սուրբ սպասքն՝ որոնց ծանրութեանն կշիռ էին տասնևվեց քիլօ և երկու լիպրա, զրաւեալ տարաւ նա ինքն հրամանատարն:*

Եկեղեցւոյն Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին ի Լիվոռնոյ տուզանաց համբաւն տարածեալ և լսեալ մերազնեայքն ի Բարիզ, բողոքեցին և գանգատեցան ի վնաս Ազգին եղած կողոպտին դէմ: Հայոց այսպիսի բողոքն արդարացի համարելով Կայսրն Պոնապարդ, հրամայեց որ Պետութեան գանձատունն 1811ին անմիջապէս հատուցանէ Հայոց Եկեղեցւոյն ի Լիվոռնոյ կողոպտուած արծաթեղինաց արժէքն: Որոյ գործադրութիւնն զարմացոյց առ հասարակ Լիվոռնոյի բնակիչներն. վասն զի բովանդակ Դոսկանայու տուժեալ Եկեղեցեաց մէջ, միայն Հայոցն բաղդաւոր եղած էր, և վնասուց փոխարէնն ընդունած էր Կայսեր միջնորդութեամբ: *

Յետ վարելոյ իւր բազմամեայ Առաջնորդութեան պաշտօնն լի արդեամբ հանգեաւ ի Տէր յամին 1807 բարեկիշատակն Հայր Կարապետ Հալաճեան. Նա միայն կարող եղաւ յետ վաստակելոյ վայելել հանդարտութիւն և անդորր կեանք, զոր վայրապար խնդրեցին թէ իւր նախորդք և թէ յաջորդքն. ամենայն ջանք գործածեց Հայ ժողովրդեան թէ ներքին և թէ արտաքին խաղաղութիւն շնորհելու, Ազգին վիճակն ազնուացընելու, միշտ նախանձախնդիր ըլլալով ազգային և եկեղեցական իրաւանցն, որպէս նա ինքն աւանդած է այս ամենայն իւր ձեռագիր մէկ ընդարձակ նամակին մէջ: Որմէն վայելուչ կը թուի մեզ յառաջ բերել աստէն այս հետեւեալ նշանաւոր պարբերութիւնն. « Զիրաւին խոստովանիմ՝ ձեզ ամենեցուն, բնաւին և ոչ իսկ ես կարծէի ինձ կարելի լինել զայնպիսի քաջյաղթութիւնս գործել, ոչ միայն չունելով այլ օգնիչս, կամ լոյս, կամ տեղի ինչ բուռն հարկանելոյ, ի յամենայն հրովարտակս կամ ի գրուածս մատենադարանի Եկե-

* Հռչակաւոր Գաղղիացի հայագէտ քահանայն Սիմոն Պետրոս Լուռոտ անուն՝ յելս դարուն հանդիպեալ դառն յեղափոխութեան, ժամանակ մի պանդխտեցաւ մեր հայ հասարակութեան մէջ ի Լիվոռնոյ քաղաքի։

դեցուցս, այլ բոլորովին հակառակն նպատակի խմում: Բայց յուսալով միայն երկրպագելի ողորմութեան, և օգնականութեան շնորհացն Աստուծոյ, ես ընդ իս տրամաբանելով, և որոճալով յղացեալ ծնայ զայնոսիկ փաստս և ծնունդկութիւնս, և սրբօք մտի ի հանդէս մարտի. և Աստուծոյ օգնականութեամբն զգերի ժողովրդապետութիւնն արարի ազատ և յաղթող, և զաղախին եկեղեցի մեր արարի փառաւոր թագուհի ի փառս Աստուծոյ և ի պարծանս Ազգիս: Եւ արդ զայսոսիկ այժմ գրեցի, ճշմարտապէս իմացարո՛ւք, ոչ գրեցի, և ոչ կամիմ բնաւին վասն պարծանս ինչ ստանալոյ, այլ միայն ևեթ, վասն զամբաւ փառս և գոհութիւնս տալոյ Ամենասուրբ Երրորդութեանն և մի Աստուածութեանն, ես և վասն լոյս և օրինակ և գքաջալերութիւնս ի յիրաւացի կրողութիւնս տալոյ ամենայն Յաջորդաց իմոց, և այնոցիկ ամենեցունց Ազգին իմոյ, որք գտանին, կամ ի յապագայս գտանիցին որպէս ես բռնաբարեալք»:

Յարգ. Հալածեանին յաջորդ եղաւ յԱռաջնորդութեան եկեղեցւոյն Կոստանդնուպոլսեցի ծննդեամբ Հայր Մանուէլ Սերովբեան միաբան Անտոնեան ուխտին՝ որ իւր նախորդին չափ երկար տևեց ի պաշտօնմանն, զովելի եռանդեան առաջնորդելով իրեն հաւատացեալ և յանձնեալ ժողովրդեանն: Ըստ մեր յիշատակութեան այլուր, Հայոց եկեղեցւոյն Առաջնորդաց իրաւասութիւնն ի Լիվոռնոյ թէ և դժկամակեալ յայլոց, այլ սակայն իրականապէս կը տարածուէր, առանց սահմանի, քաղաքին բովանդակ շրջակայքն և արուարձաններն, ուր որ Հայազգի ընտանիք բնակութիւն ունէին: Ըստ այսմ կարողութեան իւրում երբ Յարգ. Սերովբեան՝ յԱնգլինեանց կոչեցեալ տեղւոջ յուղարկաւորեց Հայազգի ննջեցեալ մի, տեղւոյն Լատին ժողովրդապետն իր ամենայն զօրութեամբն մաքառեցաւ Հայ Առաջնորդին դէմ, իր սահմանաց մէջ Հայ Առաջնորդին մտնելն յանդգնութիւն համարելով և առաւելապէս վիճաբանելով անոր հետ: Այլ Հայոց ազգային իրաւունք ամենայն

փառօք պաշտպանեցաւ, և նա ինքն Յարգ. Սերովբեանն յաղթող եղաւ:

Այլ աւա՜ղ որ ի ժամանակին յայնմիկ ի Լիվոռնոյ, մեր հայազգի ժողովրդեան թիւն զգալի իմն եղանակաւ նուազել սկսած էր: Որպէս յայտնի կ'ըլլայ մեզ այն նուազութիւն, մեր Հայոց Առաջնորդ Հայր Էմմանուէլին առ քաղաքապետն Լիվոռնոյի ուղղեալ պաշտօնական գրութենէն, որում մէջ 1810ին կը ծանուցանէ թէ հայ հասարակութիւնն կը բաղկանայ ի վաթսուն և երկու անձանց ևեթ միայն:*

Յիշատակութեան արժանի կը համարինք 1815 տարին, որում մէջ ի Նափոլէոնէ կալանաւորեալն Պիոս Է. Քահանայապետ անցեալ ընդ Լիվոռնոյ, քանի մի օրեր բնակեցաւ անդ: Յարգ. Սերովբեանն ընկերակցութեամբ երեսփոխանական ժողովոյն, գնացին նորին Սրբութեան այց ելլելու, և պատշաճ յարգանքնին մատուցանելու: Ծայրագոյն Քահանայապետն մարդասիրաբար ընկալաւ զՀայր Էմմանուէլն և Հայոց իշխանքն, յորդորեց զանոնք բարեկարգութեամբ հսկելու Ազգին յառաջադիմութեանն, խոստանալով անոնց ըստ պիտոյից ձեռնտու ըլլալու:

Սկսեալ յամէն 1811 մեռան հետզհետէ Ազգայինք Հայոց Ռափայէլ Պատուսմենց, Յարութիւն Շեհրիմանեան, Անտոն Նէնխուսնիա, Ալեքսան Աղեքսանդրեան, Նահապետ Ամբար, Գաբրիէլ Մուսլի, որոնք ըստ մեծագոյն մասին բարւոքապէս վարեցին իրենց պաշտօնմունքն, և այսպէս Պիոս Է. ծայրագոյն Քահանայապետին տուեալ օրհնութեամբն Հայոց կենցաղավարութիւնն ժամանակ մի անդորրաբար տևեց ի Լիվոռնոյ:

Ի վերագոյնն, յութերորդ գլխակարգութեան անդ՝ յա-

* Գեր. Սերովբեան Առաջնորդին ի Լիվոռնոյ հասնելէն առաջ Հայոց հասարակութենէն Հաճի Փօղոսն ընտանեօքն միասին ի Զմիւռնիա գնացեր էին. որոյ որդին Յովաննէս, և անտի իր թոռունք ծնեալ անդ կոչին մինչև ցայսօր Ալիկուռնացիք:

ւանդելն Հայոց եկեղեցւոյն նկարագրական ձեւն, յայտնած ենք թէ՝ Եկեղեցւոյն աջ թեւէն է մուտ փոքրիկ մատրանն, ուր զետեղեալ կայ ուրոյն խորանի վրայ Սրբուհւոյ Աստուածածնի հրաշագործ պատկերն, որ յորջորջեալ կոչի յԻտալացւոց Տիրամայր Շնորհաց: Արդ թոյլտուութիւն եղած էր ի Յարգ. Սերովբեանէ Լատին բարեպաշտից ոչ միայն յաճախել յամենայն ժամ Տիրամօր խորանն, այլ և ծախիւք զարդարել խորանն, եւ հրապարակական աղօթք և հանդիսութիւնք կատարել Հայ Առաջնորդին ներկայութեամբն: Ի հասանել ամին 1816, Տիրամօր շնորհաց տօնն, որ կը հանդիպէր առ Լատինացիս ի հինգերորդ օր ամսեանն Օգոստոսի, այլ միշտ կը կատարուէր տօնն յիշեալ ամսեան առաջին կիրակին՝ առաւել հանդիսապէս տօնելու համար զայն: Արդ նոյն 1816 տարւոյն մէջ, առաւելապէս շքեղ տօնախմբութիւն ընելու համար, Լատինացւոց մէջ դրամ հաւաքեցաւ. Ի պատրաստելն անոնց այսպէս, երեսփոխանական ժողով Եկեղեցւոյն ի խորհրդածութիւն առեալ Լատին ժողովրդեան բերմունքն, վտանգաւոր համարեցին անոնց աւելի համարձակութիւն շնորհելն. իրենց նախորդաց և Եկեղեցւոյն հիմնական սահմանադրութեանց հակառակ չգործելու մտօք, որոշեալ կարգեցին զՏէր Օգոստինոս Թերզեան վերակացու այն տօնին, որ հսկէ Եկեղեցւոյն մէջ նորանոր սովորութեանց չմուծուելուն, այլ միայն թոյլ տալու առջի եղանակաւ կատարել տօնն, որպէս սովորութիւն եղած էր Նազարեան Յովակիմայ Ազգապետութեան ժամանակէն ի վեր: Հայոց այսպիսի ընդդիմութիւնն տհաճելի երեւցաւ վերոյիշեալ բարեպաշտից, ուստի ժողովեալ Ողորմածասէր եղբարց եկեղեցին հոն կատարեցին փառաւորապէս այն տօնն: Իսկ մեր երեսփոխանական ժողովն յանձնեց Նազարեան Ֆրանչիսկոսի ազգայնոյ պաշտօն, հաւաքող ըլլալու ողորմութեանց մասյան ծախուց և տօնին պատշաճապէս կատարմանն ըստ պատշաճի աւուրքն:

Այո՛, Եկեղեցւոյն երեսփոխանական ժողովոյն, որպէս նաև Հայ Առաջնորդին պարտաւորութիւն էր բացարձակապէս նախանձախնդիր ըլլալ ազգային կրաւանց և սահմանադրութեանց կատարման համար, զգուշանալով ի նորամուտ սովորութեանց: Այլ զանցառու եղած են և ժամանակ ժամանակ թողեր են Եկեղեցին Լատին արարողութիւնք կատարելու, որպէս 1835–1837 թոյլտուութիւն եղեր է Ողորմածասէր կոչուած եղբարց, երբ անոնց եկեղեցին էր ի նորոգութեան, Հայոց եկեղեցւոյն մէջ ժամերգութիւնք և պաշտօնք կատարելու, ըստ լատին արարողութեան:

Ի մեռանել մեր հայրենակից նախորդին՝ Հայր Էմմանուէլի Սերովբեան, մնալով քանի մի տարիներ անոր տեղին ի պարապութեան, Հայր Անտոնն կամ միւս անուամբ Հայր Աբրահամ Էմեքսիզեանն Հայոց հոգաբարձութիւնն ունէր ի Լիվոռնոյ: Ի վերջոյ ազգայինք նոր Առաջնորդին ընտրութեան հարկաւորութեամբ ի ժողով նստան, և ըստ Լէոպոլտեան հրովարտակին երեք արժանաւորագոյն քահանայից անուանքն՝ առաջարկեալ ներկայացուցին Աւագ Դքսին, որպէս զի ըստ հաճոյս անոնց մին եկեղեցւոյս Առաջնորդ անուանէ. անուանք քահանայիցն այնոցիկ էին Հայր Բարսեղ Տուրսունեան, Հայր Եղիա Նահապետեան, և Հայր Աստուածատուր Սարըպետրոսեանն, երեքին ևս յԱնտոնեան ուխտէն: Աւագ Դուքսն Լէոպոլտոս Բ. ընկալեալ ազգայնոց աղերսագիրն և առաջարկեալ քահանայից անուանքն, փոխանակ անոնց մին անուանելու, անուանեց զՀայր Անտոն Էմեքսիզեան: Աղերսագրոյն հակառակ վարեալ Աւագ Դքսին զՅարգ. Էմեքսիզեան Առաջնորդ անուանելն դժկամակեցոյց Ազգին երեսփոխանքն, որոնք չկամեցան իրենց տժգոհութիւնն յայտնապէս ցուցանել, և միայն Պետութենէ ակնածութեան համար ճանաչեցին զՀայր Անտոն իբր Առաջնորդ Ազգին, որ արդէն բաւական ժամանակ Յարգ. Սերովբեանին օգնականութիւն ըրած էր. թէ և փորձառու ի պաշտամանն, այլ տկարագոյն

մարմնով և ցաւագար, ազդեցութիւնն և առաջնորդութեան կեանքն սակաւագոյն. չեղաւ ամենևին հաճելի յաչս երեսփոխանաց, որոնք պակասաւոր գտան ի սէր և ի համաձայնութեան յիշեալ Հայր Անտոնին հետ, որ վախճանեալ դէպ ի յամն 1842, յաջորդեց յԱռաջնորդութեանն Հայր Աստուածատուր Սարըսլեանոսեանն, որ Եկեղեցւոյս Առաջնորդաց շարին մէջ եօթներորդն է, իսկ Անտոնեան ուխտէն չորրորդն և վերջինն եղաւ ի Լիվոռնոյ:

Յետ աւանդելոյ Յարգ. Էմերսիզեանին անցքն, ի դէպ է յիշատակել աս իր ժամանակին նորանոր տարաձայնութիւնքն որ անցրէն 1838էն ի վեր ծագեալ և սկսեալ էին Հայազգի համարակութեան մէջ: Եկեղեցւոյս յարակից կալուածական խանութներէն միոյն վարձակալն Տէր Գոնթի անուն զինեվաճառն, որ շատ տարիներէ ի վեր յօժարաբար ի վարձու ունէր զայն խանութ և կը խնդրէր մնալ անդ և ն. քանի մի երեսփոխանք կը հաճէին Տէր Գոնթիին մնալուն, իսկ միւսքն կը բռնադատէին զայն անմիջապէս խանութէն ելնելուն և հեռանալուն համար. վերջապէս Տէր Գոնթին թողուց խանութն, այլ երեսփոխանաց գժտութիւնն ոչ միայն չդադարեցաւ, այլ ևս աւելցաւ: Հասեալ էր նոր երեսփոխանաց ընտրութեան համար ընդհանուր ժողովոյ ժամանակն. իսկ Ազգայնեան կը դանդաղէր հրաւէր կարդալով Ազգին գործադրել զայն. մինչև որ ժամանակին Առաջնորդն դիմեց խնդրելու քաղաքապետին ձեռնտուութիւնն. այսու միջոցաւ գումարեցաւ 1842ին Ազգայնոց ժողովն, և ընտրութեամբ նոր Ազգայնեան յանձն Գրիգորի Աղեքսանդրեան զէթ առ ժամանակ մի խաղաղացան Հայերն:

Գրիգոր Աղեքսանդրեանն՝ պատուաւոր անձն, ունէր արքունական պաշտօն գանձապետութեան մաքսատանն ի Լիվոռնոյ. զոր և վարեց բարւոքապէս յընթացս երկար ամաց. և երբ ի յեղափոխութեան 1848ին տիրապետած էր ռամկապետութիւնն ի Լիվոռնոյ, Գրիգոր Աղեքսանդրեանն ստիպեալ յանձ-

նելու մաքսատան հասոյթն ի ձեռս ռամկապետականաց, ըզգուշացաւ յանձնել զամենայնն, այլ միայն փոքրիկ մասն ինչ, խակ մեծագոյնն որ կը բաղկանայր յարժէթղթոց, մուծանկին մէջ զետեղելով տարաւ պահեց ի տան իւրում, և ի դարձ օրինաւոր Պետութեան ի Դոսկանա, Աղեքսանդրեանն տարաւ յանձնեց արքունեաց՝ իւր ազատած յիշեալ գումարն, և ի վարձ իւր հաւատարիմ ծառայութեանն անուանեցաւ [illegible], ամսէ ամիս չորս հարիւր ֆրանք իբր վարձ ընդունելով մինչև ի մահն յամին 1885, և վախճանելով ի հասակի ութսուն և եօթն ամաց յառաջիկայութեան մերում ի մատակարարել նմա զվերջին Թոշակն Սուրբ:

Երեսփոխանական ժողովն յամին 1843, ընդհանրապէս փափաքող էր Եկեղեցւոյն նորոգութեան ձեռնամուխ լինել. իւր անդամներէն միայն մին հակառակ էր այդպիսի առաջարկութեան, և նա ինքն վարժահասաքի պաշտօնն ունէր, և կը կոչուէր Պօղոս Անդրէասեան Զմիւռնիացի, որ և ամենէն աւելի տեղեակ էր Եկեղեցւոյն կալուածական հասիցն, փորձառութեամբն կը կամէր Ազգն և Եկեղեցին պարտուց ներթակայ լինելու վտանգէն ազատել. այլ բնաւ ունկնդրութիւն չեղաւ Անդրէասեանին լրած շահաւէտ խորհրդածութեանցն. և առանց խնդրելու Ազգին հաւանութիւնն սկսան նորոգութեան՝ խորհրդով ճարտարապետի միոյ, և կարծեցին որ Եկեղեցւոյն արկեղ երկու հազար ֆրանգ պատրաստական դրամն բաւական լինայ առ այն ձեռնարկութիւն:

Ո՜րչափ լաւագոյն էր նոցա այդպիսի գործոց մէջ առաւելապէս ծանրակշիռ խորհրդով վարուիլն քան թէ թեթևաբար, նախատես լինելով իրենց սխալ վարմանն: Իրազգաց եղան միայն երբ արկեղ մէջ պատրաստ դրամն սպառեցաւ, այն ատեն Յարկաւոր դատեցին տալով հաւանութեամբ Պետութեան երաշխաւոր Եկեղեցւոյն կալուածքն՝ երկու հազար սկուտից փոխառութիւն ընել, այնպիսի փոխառութեամբ ևս չվերջացան ձեռնարկեալ գործք: Եւ եթէ ի խորհրդածութիւն առնուի

պաշտօնական գրութիւնն որ ուղղեցաւ յամին 1868 առ Օսմանեան Հիւպատոսն ի Ֆլօրենցա, նորոգութեան համար ծախուած է վաթսուն հազար դոլլարական լիրա: Ապաքէն եպերեալ էին երեսփոխանք, ոչ միայն Եկեղեցին մեծամեծ ծախուց մատնելնուն համար, այլ և Աւագ Սեղանոյն շքեղութիւնն աղաւաղելնուն համար. այնքան փառաւոր և մեծագործ Սեղանն տապալեալ՝ անոր տեղն փոխանակեցաւ մերկածև փոքրագոյն խորանն, որոյ ձևն չէ ամենևին համաձայն և ի յարմարութեան՝ կրկնակի դէմադէմ խորանաց ճարտարապետական ձևոյն, որպէս առ հասարակ կը հաստատեն մեր աւանդածը որք միանգամ տեսած են զայն խորան յեկեղեցւոջն ի Լիվոռնոյ:

Ըստ մեր յիշատակութեան ի նախընթաց գլխակարգութեան, Շեհրիմանեան Գրիգոր Կոմսն 1786ին ի փոխարէն Փրկչին Ս. Խաչելութեան պատկերն Հայոց Եկեղեցին և ի զետեղելն Աւագ Սեղանոյն ճակատն և յորմն, ոչ միայն սեպհական ծախիւքն հրաշագործ պատկերին շրջանակըն զարդարեց, այլ և կրկին մեծահատակ գեղեցկատեսիլ արձաններ հաստատեց առ պատկերաւն Ս. Խաչին. և էին արձանք Տիրամօրն Ս. Կուսին, և Ս. Յովհաննու Աւետարանչին, թող չարչարանաց այլ առարկաներն, ամենայնն կերտեալ անթարմ փայտէ, ոսկեներկ, և մեծ ճարտարութեամբ յարմարեալ, և միշտ ի նորագոյն վիճակի: Այլ մեր նորոգողքն բարձին Ս. պատկերէն այն ամենայն գեղեցկագոյն զարդարանքն և արձանքն, և փոխանակեցին Ս. Խաչին շրջանակըն բոլորաձև ճառագայթ, որ չէ համեմատելի առջի փառաւորութեան հետն: Իսկ կրկին արձանաց փոխարէն՝ Տէմի անուն քաջածանօթ քանդակագործին այլ արձաններ պատրաստել տուին, որոնք պատուանդանաց վերայ հաստատեալ զետեղեցին մին աստի և մին անտի Աւագ խորանին կրկին ծայրերն: Այդ արձանքն՝ ըստ վկայութեան բազմաց և առանձնապէս արուեստագիտաց ունին մեծ արժէք, և կարող են վաճառուիլ այսօր ի գին երեսուն հազար ֆրան՟

գաց, մինչեռ հազիւ կէսն վճարեր է երեսփոխանական ժողովն յիշեալ Տէմի անուն քանդակագործին: Այլ որ զարմանալին է, երեսփոխանք փոխելով արձանքն՝ փոփոխեր են եւ անուանքըն, շինելով Սրբուհւոյ Մագդաղենացւոյն եւ Սուրբ Յովհաննու Մկրտչին արձանքն. յիշեալ Մագդաղենացւոյնն առաւելապէս մերկութեան կերպարանք ունելովն, չէր ամենեւին պատշաճ եւ յարմար եկեղեցւոյ համար, որով ժամանակ ժամանակ ստիպեալ են երեսփոխանք ծածկել զմերկութիւնն թեմական եպիսկոպոսաց հրամանաւն:

Երգիծաբան բանաստեղծ ոմն իտալացի ի Լիվոռնոյ քաղաքի, ի ժամանակս Նորոգութեան յօրինելով առանձին ոտանաւոր գրութիւն մի ի բերանոյ Սարաֆեան Սարգիս Արքեպիսկոպոսի, կշտամբեց երեսփոխանքն: Յայտ է թէ յիշեալ բարեյիշատակ Արքեպիսկոպոսին կտակաւ շնորհած դրամով շինուած էր առջի խորանն մեծ, որոյ գերեզմանն կայր յոտս խորանին: Իտալացի բանաստեղծն իւր ոտանաւորովն կը ներկայացնէ զբարեյիշատակ Արքեպիսկոպոսն յեկեղեցւոջ իւր դամբանաքարին վրայ զարթուցեալ եւ յոտս կացեալ ունելով զգեստ հայրապետական, պշուցեալ կը դիտէ իւր սեպհական ծախիւքն շինեալ խորանն տապալեալ եւ անյայտ եղեալ. իսկ տեղն շինեալ փոքրագոյն եւ անվայելուչն, զայրացեալ դառնայ առ նորոգողս եւ յանդիմանելովն ամօթապարտ կը կացուցանէ զանոնք:

Սակայն երեսփոխանական ժողովն պանծալով իւրենց կատարած * Նորոգութեան յիշատակն յաւերժ կենդանի պա_

* Ս. Խաչելութեան նախնի արձանքն, հրեշտակներն եւ բոլոր ոսկեզօծ զարդարանք լքեալ թողեալ մնացեր էին ի խորշ մի. մենք գտեալ զայնս՝ մեծաւ խնամով բարձեալ եւ մաքրեալ ի փոշեաց պահեցինք ի պահարանս աւանդատան, գիտելով որ առ հնախնդիր մարդիկ այնպիսի հնակերտ ձեռագործք յարգի են. — Աւանդուի որ մեծահատոր ճառագայթաձև մարմարեայ ճակատ Աւագ Սեղանոյն, որ հաստատեալ կայր չորս պատուական

ճելու համար յայլազգ ժամանակի, կրկին մարմարեայ տախտակաց վրայ արձանագրութիւններ դրոշմեցին, մին գետնադեցին յաջակողմ բեմին ի լեզու իտալական զոր շրջելով ի մերս դնենք յառաջիկայս. « Տաճարս այս կառուցեալն ողորմութեամբ Կաթողիկեայ Հայոց, և նուիրեալ անուան Սրբոյն այնորիկ որ եղեն առաջին ի քարոզել զԱւետարանն Հայրենեաց լուսոյ վնասեալ յետ ժամանակաց նորոգեալ եղև փառաւորագոյն քան զառաջինն ի ձեռն երեսփոխանացս այսոցիկ

Գրիգոր Աղեքսանդրեան
Յովսէփ Նէնիտունիա
Խաչատուր Շերպեթեան
Հ. Աստուածատուր Սարըպետրոսեան
Հ. Թադէոս Զանարեան
Գէորգ Զաքարեան »:

Իսկ միւս արձանագրական տախտակն զետեղեալ է ի ճակատ եկեղեցւոյն արտաքուստ կողմանէ, և է յօրինեալ ի կըրկին բարբառս ի հայ և յիտալական, մին աստի և միւսն անտի. մեք զհայերէն օրինակ կը բերենք յառաջիկայս.

« Յանուն Սրբոյն Գրիգորի Հայաստանեայց Լուսաւորչին
Կանգնեալ տաճարս յամի Փրկչին 1701, և Հայոցս ՌՃԾ
Ծախիւք բնակչաց Քաղաքիս
Հոգաբարձութեամբ Աղա Մաթոսին Օղլանքեշիշեանց
Առ Կոզմայիւ Մեդիչի Դքսիւ
Յաւուրս ժողովրդապետութեան Հ. Աստուածատրոյ Սարըպետրոսեան
Եւ ի գործակալութեան Գրիգորի Աղեքսանդրեան
Ի հասից Եկեղեցւոյս դարձեալ բարեպաշտ վայելչութեամբ

սեանց վրայ, յետ տապալման նոյն սեղանոյն ընդ այլ մնացորդըս առեալ տարին և թաղեցին ի գերեզմանատան Ազգին, պահելով զայնս, առ ի չինել զմատուռ գերեզմանատան ի յարմարագոյն ժամանակի:

Նորոգեալ եղև ձեռամբ Օլինդոս Բարատովի ճարտարապետի.

Կառուցաւ Աւագ Սեղանն կամարաձև սեամբ և արձանօք

Եւ ամենայն կամարակապ սեամբք բարաւոր մեծի դրան

Պատեալ կենայ քարամբ և այլ պէսպէս զարդուք և նըկարուք

Քան զառաջինն առաւել փառաւոր,

Յաւերժական յիշատակ բարեպաշտութեան Հայկազանց»:

Նորոգութեան ժամանակն եկեղեցւոյն մէջ՝ թէ Մատրան և Աւանդատան դրանց վրայ, և թէ անոնց հանդէպ դրաձև խոստովանատեղեաց վրայ, դրօշմեցան ոսկեգիր խորհրդաւոր առածք Ս. Գրոց. որմունքն ստուերագոյն ներկովք և սպիտակ գծագրութեամբք ներկեալ զարդարեցան, որպէս նաև կամարակապ յարկն և գմբէթքն այլ խաներկիւք: Իսկ անկիւնքն ամենայն վերուստ ի վայր մարմարեայ սպիտակ տախտակօք ծածկուեցան, և անոնց վերին ծայրքն զարդուք յարդարեցան. գլխաւոր չորս անկեանց վրայ նկարեալ չորս Աւետարանչաց պատկերն, իսկ ի վերայ կիսակամար յարկին Աւագ խորանին պատկեր Հօր Աստուծոյ յոտս:*

* Ազգապետն Գրիգոր Աղեքսանդրեան պաշտօնական գրութեամբ ի 5 Յունիսի 1843, ծանուցեր է քաղաքապետին ի Լիվոռնոյ թէ ի գումարեալ ընդհանուր ժողովն Ազգայնոց, համարձակեալ ներկայացեր է անդ նաև օտար ոմն, որ և կամեցեր է ժողով նստիլ ազգային կոչելով զինքն երբ ի ժողովելոցն ոչ ոք կը ճանչնայր այն օտարն իբր ազգային. փաստաբանն Յովհաննէս Աղամեան, ոչ միայն զայն ճանչնալն իբր հայ, այլ և ի ժողով ընդունուիլն բռնադատեր է զԱզգապետն. թէ և Առաջնորդին վկայութեամբն թէ չէ ազգային անձն այն ի բաց մերժուեր է, այլ Աղամեանին պատճառած շփոթութեամբ ցրուեր է ժողովն (քաղեալ է ի դիւանէ քաղաքապետարանին ի Լիվոռնոյ)։

Հասեալ յամն 1845, երեսփոխանք ձեռն արկին նոր կանոնագրութիւն մի յօրինել, Եկեղեցւոյ կալուածոց եկամտարն աւելի դիւրին եղանակաւ հաւաքելու նկատմամբ. և յետ յօրինելոյ զայն ներկայացուցին Պետութեան, և վաւերացուցեալ հաստատեցին զայն: Վարձահաւաքն Պօղոս Անդրէասեան հրաժարեցաւ իւր պաշտօնէն, և անոր տեղն անուանեալն ըստ նոր կանոնագրութեան պարտաւորեցաւ յանձնել արկեղ եկեղեցւոյ երեք հազար տոսկանական լիրա երաշխաւորութեան համար:

Այսպիսի պարագայից մէջ համանգամայն հայ հասարակութիւնն վրդովեալ էր, որ և սարսափեալ ի վնաս Ազգին եղած այնքան ծախուց և փոխառութեանցն, պատասխանատու կոչեց երեսփոխանական ժողովն որ ինքնաշարժ յանդըգներ էր ընել զայնպիսի նորոգութիւնն: Երեսփոխանքն որ անհոգութեամբ թողեր էին ի ձեռս Ազգապետին հաշուետետրքըն, անփոյթ ըլլալով քննելու ծախուց հետզհետէ աճիլն, Ազգին տնտեսութեան արժանի եղեր էին, նաև ի դատաստան իսկ մտանելու:

Զարհուրեալ երեսփոխանք Ազգին արդարացի սպառնալիքէն, յամին 1847 Ազգապետին հետ ի միասին ապաւինեցան Լիվոռնոյ քաղաքապետին, հայցելով անորմէ որ հաճի յաջողակ համարակալ քննիչ մի կարգելու, իրենց հաշուոց քննութեան համար: Քաղաքապետն թէ և չէր յօժարեալ միջամուխ ըլլալ անոնց կնճռեալ խնդրոց մէջ, այլ առաւելեալ թախանձէն տոկալեալ, անուանեց յարմարագոյն համարակալ ումն, որոյ եկեալ ի դիւանատուն Եկեղեցւոյն, նստաւ քըննել անոնց ըրած իւրաքանչիւր հաշիւքն: Յետ մանրամասն քննութեան այսպիսի հաշուոյ՝ համարակալն ներկայացոյց զայնըս քաղաքապետին. ըստ այնմ՝ և նա ինքն քաղաքապետն ծանոյց մերազնեայց թէ քննութեան հետևանքն հաճոյական չեն եղեր, վասն զի ծախուց և հասից հաշիւքն բաղդատելով՝ հասոյթքն չեն բաւական, ըստ պայմանացն փոխա֊

տուաց վճարելու տարին երկու հազար դահեկանական լիրա, ի փոխարէն ընդունուած երկու հազար սկուտից: (Դահեկանական լիրայի արժողութիւնն է 12 քրայցէր աւստրիական կամ 84 սանդիմ գաղղիական) : Երեսփոխանական ժողովն պարտաւորեալ վարձատրելու համարակալին աշխատութիւնն, իւրեանց անձզուշութեամբ, ի զուր եկեղեցւոյս ծախուց վրայ այլ նորագոյն ծախք բեռնաւորեցին:

## ԳԼՈՒԽ ՁՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Երեսփոխանաց գժտութիւնն ընդ Ազգայնոյն· Ազգայնոյն անհաճելի վարմունքն · Պետութեան դիտելն · Քննադատութիւնք · Երեսփոխանաց դրամնք · Նոր Երեսփոխանական ժողովն, անոր Խնայական մատակարարութիւնն դարձեալ վճարելու · Հրաժեր դարեկան հաշիւն ներկայացանելու · Երեսփոխանաց ընդդիմութիւնն · յայտարարութիւն նոյն · Աղաչարկութիւն կալուածոց ձրամանն · ան մշտնջենաւոր դատարանք . Ենեղեցայ միա դատարանին ։

*Այնքան մեծամեծ շփոթութիւնք յեղափոխական տարւոյն 1848, որպէս թէ յորդոր և նպաստաւոր եղած ըլլային Հայոց ներքին յուզմանցն ի Վիեննայ, կը տեսնենք զայնս դեռ ի քանի մի յաջորդ տարիներ ևս շարունակեալ: Արդ կարգըն Երեսփոխանաց էր, որոնք միաբերան տրտունջացին Ազգայնոյն դէմ, անոր ըստ հաճոյս վարուելուն, առանց խորհրդակցութեան ծախք ընելուն և վերջապէս հաշիւ չտալուն համար. սպառնացին որ շարունակելովն այնպիսի վարմունքին, ոչ միայն չվաւերացնեն յանդուգն և վնասակար մատակարարութեամբ ըրած չափազանց ծախքն և առաւելեալ հաշիւքն, այլ և պատճառ և պատասխանատու կոչեն զնա իննքն զԱզգայնոյն: Վերջապէս յամի 1850 Ազգայնոյն Աղեքսանդրեան՝ յօժարեցաւ հաշիւ տալ իւր գործակալութեանն, և*

խորհրդածել՝ որ վարձուք կալեալ քննիչ մի, Երեսփոխանաց հանելի չըլլար, խնդրեց որ արքունի համարակալներէն մին զայ հաշիւքն քննելու, կարծելով որ իրեն Պետութեան համար մատուցեալ օգտակար ծառայութեան, և իրեն Աւագ Դքսին առջև ստացած պատւոյն և համարձակութեան համար ձրիաբար ըլլայ քննութիւնն: Այլ ընդ հակառակն ձրի չըլլալէն ի զատ, վտանգաւոր և վնասակար հետևանք պատճառեց այդ պիսի համարակալի միջամտութիւնն, ազգին ազատական և ինքնիշխան մատակարարութեանն: Երբ Ազգայնեան միամիտ կը վտանգէր Պետութեան պաշտպանութեանն և կուրաբար կը յանձնէր ի ձեռս արքունի համարակալին իւր երկամեայ հաշիւքն՝ որպէս զի պարտքին իրեն դէմ դժգոհանք, Երեսփոխանք ևս առաւել հակառակեցան նորանոր ծախուց դէմ և միացան չվաւերացնելու համար անոր ազգակործան հաշիւքն: Ուստի յանձնարար մեծալ Ազգայնեանին՝ արքունի տեղապահին օգնականութեան դիմեց, ի պակասութեան քաղաքապետին ի Կիվոնեց. արքունի տեղապահն Երեսփոխանաց կրաւացի գանգատանաց դէմ պաշտպան հանդիսանալով Ազգայնեանին, սպառնացաւ Երեսփոխանաց որ եթէ յօժարութեամբ չվաւերացնեն Ազգայնեանին երկամեայ հաշիւքն՝ բռնութեամբ գործածել տայ զայն: Երեսփոխանք ոչ միայն չսաստեցան արքունի տեղապահէն ցուցեալ խստութենէ, դժկամակեալ առաւելապէս համարձակագոյնս պատասխանեցին անոր, թէ չէ կարելի որ ըլլայ կենցաղոյս մէջ իշխանապետութիւն մի երբէք որ ստիպէ առ այն երեսփոխանական ժողովն, առանց իւր հաւանութեան. Նա զի բացարձակապէս իւր կամաց հակառակ գործուած վնասքն ընդունի, և պատասխանատուութեան ծանր պարտքն իրեն վրայ բեռնաւորեալ, ներկայից և ապագայից յաւիտեանս եպերելի ըլլայ:

Միթէ կարելի՞ էր համակերպութեամբ կատարել արքունի տեղապահին խնդիրն երբ երեսփոխանական ժողովոյն անդամք ամբողջ չէին թուով, բացակայ էր քաղաքէն իրենցմէ մին, և

միւս ոմն վախճանեալ. ի վերայ այսր ամենայնի յիշեալ տեղապահին պահանջմունքն կը սաստկանային որ պակասելոց փոխան այլ երեսփոխանք ընտրուին, և այնպիսիք ոմանք՝ որ երկպառակութեանց վերջացնող ըլլան, և Ազգայնոյն հաշիւքն անմիջապէս վաւերացնեն: Այսպիսի կացութեան մէջ դժուարին խնդիր էր նաև հասարակութեան մէջ նոր անդամներ ընտրել և յօժարեցնել զանոնք որ հաճին ի վնաս Եկեղեցւոյն գործել սպառափելի ծախքն լոկ մինչև ընդունել տալ, և Ազգայնոյն պատասխանատուութեան մասնակցիլ. մինչդեռ նոյն իսկ Ազգն համայն վշտացեալ՝ սպասէր յարմար առթին, ի դատաստան կոչել որ միանգամ անուղղայ մատակարարութեամբ Եկեղեցւոյն կալուածոցն վնասակար եղած էին նորոգութեան պատճառաւ:

Որպիսի՞ օգուտ կամ շահ հնար էր քաղել ի դատաստանէ, արդեօք կարելի՞ էր անցեալն դարմանել. մէջ ասպարէզ դէզդէզ պարտք Եկեղեցւոյն բեռնաւորեալ էին, և չէր հնար ջնջել զանոնք, եթէ ոչ վճարմամբ՝ Եկեղեցւոյն կալուածոց ապագայն ապահովել, և այնու եղանակաւ միայն եղած չարեաց դարման տանել: Այսու տրամադրութեամբ տոգորեալ խաղաղասէր անձինք հրաւիրեցին Ազգն յընդհանուր ժողով. ուր գումարեալ ընտրեցին նոր անդամներ երեսփոխանական ժողովոյն, որոնք բաղկացեալ ի խաղաղասիրաց և ի փորձառու արանց՝ խնամ տարին, ազգասիրական ոգւով և խնայական եղանակաւ մատակարարելու կալուածքն և այնու յարատևութեամբ ջանացին պարտքն թեթևցնել: Ազգայնոյն փոխեցաւ և համախորհուրդ եղան 1853էն սկսեալ միայն ամենահարկաւոր ծախքն ընել, ուշադիր ըլլալով նաև անոնց մէջ խնայութեամբ վարիլ:

Այսպիսի գովելի ընթացք նոր երեսփոխանական ժողովոյն ամենեւին հաճելի չեղան արքունի տեղապահին, և միշտ դժկամակութեամբ վարեցաւ անոնց հետ գրպարտելով եւ թէ հաւատարմութեամբ չեն մատակարարեր Եկեղեցւոյն կալուածքն. այլ երեսփոխանքն մեծաւ խոհեմութեամբ համբերեցին ծանր

գրպարտանաց, և արդարութեամբ շարունակեցին իրենց ընթացքն: Տեղապահին բուռն հրամանն կը ստիպէր զանոնք որ տարուոյ գլուխն ցոյց տան մատակարարութեան հաշիւքն. այսչափ թշնամութեան համար, մկրտանեցաւ երեսփոխանական ժողովն Աւագ Դպրին պաշտպանութեանն դիմել, որ իբր հայր Պետութեան ազդարարութիւն ըրաւ արքունի տեղապահին Հայոց հետ այնու խստութեամբ չվարուելու համար: Սակայն հաշիւ տալու ձախորդ սովորութիւնն սկսան շարունակել յակամայս, որոյ դէմ բողոքելու բաւական համարձակութիւն չունէին. որովհետև իրենց ճշմարիտ տարեկան հաշիւքն ներկայացնելն, լաւ մատակարար ըլլալուն նշան համարեցին: Այսպիսեաց զգուշագոյն մատակարարութեամբն և գործած մեծագոյն խնայութեամբն ի ծախս, պարտուց առաւելագոյն մասն վճարեցաւ, թող զի ծանուցեալ էին եւ Պետութեան մեծագումար տուրք հատուցանել:

Յիշեալ երեսփոխանական ժողով հնգամեայ ժամանակ սապէս վարիչ եղաւ ազգային գործոց, սակայն ի քաղաքական խռովութիւնս կասկածանաց առիթ չտալու համար, Տոսկանա գլխաւոր ժամանակաւոր իշխանութեան շարունակեցին հաշիւքն ներկայացնել: Իսկ երբոր 1859ին Տոսկանայն զրկեցաւ ի Լէոպոլտոս Բ.է, և իշխանապետութիւնն անցաւ ի ձեռս Վիկտոր Էմմանուելի, հնոյն յաջորդող նոր քաղաքապետն ի Լիվոռնոյ, ժամանակակից Հայոց Եկեղեցւոյն երեսփոխանքն հրաւիրեց առանձին յայտագրով միով, ազդ առնելով անոնց պարտաւոր ըլլալնին ըստ սովորութեան ամէն տարուոյ վերջ իրենց մատակարարութեան հաշիւքն ներկայացնել քաղաքապետարանին, ենթադրելով նա ինքն քաղաքապետն եկեղեցւոյս կալուածքն իբր արքունական ինչք:

Ազգասիրական ոգին որով առգրեալ էին ժամանակին երեսփոխանք ի ժողով կոչեց զանոնք. քաղաքապետին հրաւէրն տարօրինակ երևեցաւ անոնց, հակառակ ազգին իրաւանց և ազատութեան, իրենք որ ազգին առաջնորդքն էին և անոր

խնամատար ըլլալու անհրաժեշտ պայմանն ունէին: Անոնց խորհրդածութեան փախճանն էր, պատասխանել նոր քաղաքականին անիրաւ հրաւէրին դէմ, յառաջ բերելով յայնմ եկեղեցւոյն, հիմնական սահմանադրութիւնք և վայելած արտօնութիւնք, և անոնց զօրութեամբ ապացուցանել թէ հաշուոյ ենթակայացումն չէ յառաջ եկեալ ի պարտաւորութենէ, այլ միայն ի ցոյց լինելոց հաւատարիմ մատակարարութեան, սկսեալ ի սուղ ժամանակէ հետէ ի ձեռն Գրիգոր Աղեքսանդրեան Ազգապետին, որ վասն յանձնական շահուն, ինքնաշարժ յօժարութեամբ սկիզբն առած էր այդ վտանգաւոր սովորութեան ի զրկանս ազգային իրաւանց և ի վնաս ազատ մատակարարութեանն: Հայք օրինաւոր տէրք Եկեղեցւոյն և կալուածոցն ի Կիպրոսոյ՝ կարգեալ էին ազատ ընտրութեամբ երեսփոխանքն, և յանձնեալ ի ձեռս նոցա մատակարարութիւնն, և հետևաբար երեսփոխանական ժողովն Ազգին պարտական կը համարուէին, և պատասխանատու անոր առջևն:

Այդ ըստ այսմ է թարգմանական օրինակ գրութեանն զոր ուղղեցին ի պատասխանի յայտագրոյ քաղաքապետին այնորիկ.

« Առաջին — Հայոց Եկեղեցւոյն հիմնարկութիւնն ըլլալով շնորհիւ հռովմայականին Ֆերտինանտայ Առաջնոյ, խոստացեալ տուան արտօնութիւնք և ազգի ազգի առանձնաշնորհութիւնք այն ամէն ազգաց որ եկաւորեն և հաստատաբար բնակին ի Կիպրոս. արդ կը հետևի աստի որ իշխանապետութեան կողմանէ պայման ինչ չըլլուեցաւ Հայոց Եկեղեցւոյն կանգնմանն համար:

Երկրորդ— Որպէս Եկեղեցւոյն գետինն, այնպէս նաև գետնոյն վրայ շինուած իւրաքանչիւր չէնք Հայազգի հասարակութեան արծաթովն թէ գնուեցան և թէ կանգնուեցան:

Երրորդ— Սապէս ևս յիշեալ Եկեղեցւոյն սուրբ սպասքն և կարասիներն, այլ և այն ամենայն ինչ որ այժմ Հայոց կը վերաբերին, ազգային բարերարաց շնորհեալ արոյքն ստացուեցան:

Չորրորդ — Առ հասարակ բարեբարքն որոնք իրենց կտակօքն Եկեղեցւոյն կալուածները ճոխացուցին, իւրաքանչիւրն ևս հայազգիք էին, իւրաքանչիւրն թողած կտակովն բացարձակապէս կամեցաւ, որ Եկեղեցւոյն շնորհեալ ինչքն միշտ ընդ միշտ մատակարարեալ ըլլան ի ձեռն հայազգի երեսփոխանական ժողովոյն:

Հինգերորդ — Եկեղեցւոյն ընչից մատակարարութիւնն յընթացս այնքան երկար ամաց բնաւ երբեք օտար մէկ իշխանութեան ձեռք յանձնեալ չէր, այլ միշտ հայազգի երեսփոխանք մատակարարքն եղած էին. իսկ օտար ազգի քննչաց միջամտութիւնն ոչ թէ ի պարտաւորութենէն, այլ միայն երեսփոխանաց ոմանց յօժարութեամբն եղած էր, և այն առանց ամենևին շարունակութեան:

Վեցերորդ — Պետրոսի Լէոպոլդոսի Առաջնոյ՝ 1769 ամին հրատարակեալ Հրովարտակն ոչ միայն Հայոց Եկեղեցւոյն կալուածոցն՝ Տոսկանայու միւս եկեղեցեաց կալուածներէն տարբեր ըլլալն հաստատած է, այլ և պաշտպանած է Հայոց իրաւունքն ընդդէմ անոնց՝ որոնք միջամտութիւն ընելու ժպրհին, Ազգին սեպհական ինչք ըլլալուն պատճառաւ »:

Այսքան զօրաւոր փաստերով ապացուցեալ Ազգային երեսփոխանական ժողովոյն պատասխանական գրոյն վրայ յաւելու իւր վերջաբան, երեսփոխանական նստին վճռական որոշումն որ էր դադարիլն այնուհետև և մի ևս ներկայացումն ընել տարեկան հաշուց: Այո՛, ի վեր քան իրենց կարողութիւնն փոյթ տարին Ժամանակին երեսփոխանքն յետս կալու և մերժելու այդպիսի ապօրինաւոր սովորութեան շարունակութիւն ընել, սովորութիւն որ Հայոց Եկեղեցւոյն բազմամեայ մատակարարութեան մէջ ի Լիվոռնոյ հետք չունէր, և միայն տասն ամաց հետէ Աղեքսանդրեան Ազգապետին գործակալութեամբն յառաջ եկած էր, ըստ ամենայնի հակառակելով Ազգային դաշնագրաց և սահմանադրութեանց:

Ժամանեալ առ Քաղաքապետն, Հայոց երեսփոխանաց գլու-

թիւնն առ ոչինչ ծառայեց, իրր թէ զայն գրած չըլլային, մանաւանդ սատակեցեալ անոր պաշտնանէութիւնն հարկադրեց զմերազնեայս այլ ևս քանի մի տարիներ ցոյց տալ մատակարարական հաշիւքն, մինչև որ այլ ծանրագոյն տուգանք եդեալ Հայոց Եկեղեցւոյն՝ պարտաւորեցին զՀայս վճարել ըզտուգանս, և խափան ազատել Եկեղեցին:

Իշխանապետութեան փոփոխութեամբն ի Դոսկանա սկսեալ 1859էն Թեսալոնիգեայն այլ և այլ իշխանական նահանգաց մէջ ստապատակութիւնք յաջորդած էին խառնական նոր միապետութիւնն կանգնելու համար՝ պատերազմական անտանելի ծախուց յաճախութեամբ, պաշտօնականք յանուն միապետութեան փոխատուութիւններ ձեռնարկեցին, և արժեթղթեր ծաւալեալ ամենուրեք կը տոկալէին նաև մերազնեայքն առանցս մասն ինչ այդ արժեթղթոց, երբ երեսփոխանքն մեր դժկամակութիւն կը յայտնէին յիշեալ թղթերն ընդունելու:

Վիկտոր Էմմանուէլ՝ թագաւոր միապետութեանն հետզհետէ Թեսալոնիգեայն փոքրիկ պետութիւնքն նուաճելով, և ջնջելով զանոնք, անոնց փլատակաց վրայ հաստատեց իր արքայական գահն: Դէպ ի ամն 1866 գործադրեց կրօնաւորական կարգերն ջնջելու խորհուրդն, երևան հանելով առանձին Հրովարտակ մի՝ որպէս նախ յաջորդ տարին առ հասարակ եկեղեցական ընչից գրաւումն ընելու վճռոյն: Որոյ պատճառաւ արքունի պաշտօնեայք, նախ ի ծածուկ խուզարկութիւններ ըրին Հայոց Եկեղեցւոյն կալուածոցն վրայ, և ապա բացարձակապար և պաշտօնապէս ծանուցին Երեսփոխանաց Եկեղեցւոյն կալուածոցն գրաւման որոշումն: Անիրաւ էր վճիռն և անփոյթ քրիստոնեայ միապետութեանն Իտալիոյ, վասն զի Եկեղեցւոյն կալուածոցն թող Հայոց վերաբերելն, անոնց հասոյթք լաւ մեծի մասին որոշուած էին և թողուած Եկեղեցւոյն հայ բարերարաց հոգւոյն համար մշտնջենաւոր պատարագներ մատուցանելու: Կալուածոց գրաւմամբն, կարելի չէր բարերարաց կամքն կատարել, այնքան խնամով

օժտեալ եկեղեցին՝ աղքատութեան վիճակի վերածելու ետեւէ էր այդ առաջարկութիւնն:

Արդ Հայոց եկեղեցւոյն ի Լիվոռնոյ մշտնջենաւոր պատարագք, որք օր ըստ օրէ մատուցանելու պայմանաւ, պաշտօնապէս ի ձեռն արքունի նօտարաց հաստատեալ էին ի զանազան ժամանակս են ութ, որոնց վրայ յուզեցաւ խնդիրն: Իսկ միւսներն որոնք պաշտօնապէս չէին հաստատեալ, ի բաց առեալ Մարկոսու Պալիթեանինն, առաւելապէս էին փոքրիկ պարտաւորութիւնք պատարագաց որք յընթացս տարւոյ մատուցանելի էին, առաւելապէս ի ձեռն Հայազգի քահանայից:

Առաջին մշտնջենաւոր պատարագն է Ալեքսան Գրիգորեանինն, որ ի վախճանելն ժամանակակից Առաջնորդ Խաչատուրեան Ստեփան Վարդապետին յանձնարարեց, որ ամէն ինչքըն հաւաքեալ ի մի, հաստատուն օր ըստ օրէ պատարագ մի մատուցուի Հայոց եկեղեցին իր հոգւոյն հանգստեան համար: Յիշեալ Առաջնորդն ըստ կամաց հանգուցելոյն ժողովեալ անոր ողջոյն ստացուածն վերածեց ի 7728 ֆրանք մայրագումար. և առանձին կոնդակով և կարգադրութեամբ Բիզայու Արքեպիսկոպոսին ի 5 Փետրուարի 1743, սկսան մատուցուիլ յիշեալ պատարագք ի ձեռն Առաջնորդի եկեղեցւոյն. թէ և տարւոյ մէջ ի բաց առեալ տասն և հինգ օրերն միայն, ամէնօրեայ էր պարտաւորութիւնն, սակայն սկսեալ 1831էն ի վեր ի ժամանակէ առաջնորդութեան Հօր Եմմանուէլի Սեբովբեան յընթացս տարւոյ հարիւր պատարագաց զեղչումն շնորհեցաւ Գրիգոր ԺԶ. Ծայրագոյն Քահանայապետին անօրինմամբն, և պարտաւորութիւնն տարեկան վերածեցաւ միայն ի 240 պատարագս:

Երկրորդն ի մշտնջենաւորաց է Սալզոի Արքեպիսկոպոսի Սարաֆեանինն, որ հաստատեալ կոնդակաւ Բիզայու Արքեպիսկոպոսին յ7 Փետրուարի 1775, հանգուցեալ բարեյիշատակ Արքեպիսկոպոսն իւր կտակագրովն պարտաւորեց Ե_

կեղեցւոյն ժամանակակից երեսփոխանքն որ իրմէ թողեալ ստացուածոց մեծագոյն մասին գումարն ծառայեցընեն իրեն հոգւոյն մշտնջենաւոր պատարագի միոյ մատուցմանն համար, և այն ի ձեռն հայազգի քահանայի միոյ մեր Եկեղեցւոյն մէջ ի Լիվոռնոյ: Սահմանեալ գումարն էր 7840 ֆրանք: Ի սկըզբանն՝ յընթացս դարու միոյ ըստ պարտաւորութեան մատուցան ամենօրեայ պատարագք. բայց յետոյ մայրագումարին պակասելովն՝ Պետութեան վճարեալ ծանր տուգանաց պատճառաւ, տնօրինեց Ս. Գահն, որ այնուհետեւ յիշեալ մշտնջենաւոր պատարագի պարտաւորութիւնն իւրաքանչիւր տարի միայն հարիւր պատարագաց մատուցմամբ վճարուի:

Երրորդն ի մշտնջենաւոր պատարագաց է Սաֆարեան Եակարեանինն, որ կտակագրովն շնորհեց Հայոց Եկեղեցւոյն ողջոյն ստացուածքն, պարտաւորելով երեսփոխանական ժողովն որ թողած մայրագումարէն մէկ մասն ծառայեցընեն իր հոգւոյն հանգստեան համար օր ըստ օրեայ պատարագ մի մատուցանել տալու Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին խորանին վրայ: Հանգուցելոյն շնորհած ստացուածոցն՝ միայն 289 ֆրանքաց հասութիւ կը մատուցուին պատարագքն, սկսեալ յամէն 1743. շարունակուեցան մինչեւ յամն 1805, յորում Ս. Գահին կողմանէ առաքեալ կոնդակի միոյ զօրութեամբ այն մշտնջենաւոր պատարագաց թիւն յընթացս իւրաքանչիւր տարւոյ միայն 263 պատարագաց պարտաւորութեան վերածեցաւ:

Չորրորդն է Ստեփանեան Վարդապետի Խաչատուրեանինն՝ Եկեղեցւոյն երկրորդ Առաջնորդին. նա ինքն առանձին կտակագրով թողուց իրեն ամէն ստացուածքն ի պարգեւ Եկեղեցւոյն, պարտաւորելով իւր յաջորդ Առաջնորդ, նմանապէս երեսփոխանական ժողովն Եկեղեցւոյն՝ որ մատուցանել տան ի ձեռն հայազգի քահանայի միոյ պատարագ մի իրեն հոգւոյն համար և այն օր ըստ օրէ մշտնջենաւորապէս Հայոց Եկեղեցւոյն մէջ ի Լիվոռնոյ, որ և հաստատուեցաւ ի 10 Փետրուարի 1762: Պատարագաց պարտաւորութիւնն միայն 314

օրուան ի տարւոջ. որոյ մայրագումար էր չորս հազար եօթն հարիւր քառասուն ֆրանք:

Հինգերորդն ի մշտնջենաւորաց է Յովհաննու Պալիթեանինն. որ թէ և վախճանեալ էր ի Բեռլին քաղաք, իւր հոգւոյն համար օր ըստ օրեայ պատարագի միոյ հաստատութիւնն եղաւ Լիվոռնոյի Հայոց Եկեղեցւոյն մէջ ի 24 Յուլիսի 1827. մայրագումար պատարագացն էր իբր հինգ հազար վեց հարիւր յիսուն և երկու ֆրանք, որուն հասոյթ տարեկան է 335 ֆրանք, որ սահմանեալ են ծառայելու իբր թոշակ 312 պատարագաց իւրաքանչիւր տարին:

Վեցերորդն ի մշտնջենաւոր պատարագաց է Աւետիսի Աւշարեանինն՝ որ կտակագրովն իւրով թողոյց Հայոց Եկեղեցւոյն ի Լիվոռնոյ քաղաքի եօթն հազար չորս հարիւր տասնուերեք ֆրանքաց մայրագումարն, որոյ հասոյթովն բարերարին հոգւոյն համար մշտնջենաւորաբար մատուցանելու պարտաւորութեամբ պատարագի միոյ հաստատութիւնն եղաւ ի 15 Ապրիլի 1718, առանձին կոնդակաւ և կարգադրութեամբ Բիզայու Արքեպիսկոպոսին: Յետ ժամանակաց Պետութեան վճարուած տուգանաց պատճառաւ մայրագումարին կիսաչափ պակասելովն, թոյլտուութիւն եղաւ Սուրբ Գահին կողմանէ Եկեղեցւոյն երեսփոխանացն, որ ըստ քանակութեան հասութին պարտաւոր ըլլան մատուցանել տալու յիշեալ պատարագըն. արդ այժմեան հասոյթն է 350 ֆրանք տարին:

Եօթներորդն է Դաւթի Յակոբեանինն որ յ31 Հոկտեմբերի 1747 իւր բովանդակ ընչից ժառանգ անուանեց մեր Եկեղեցին ի Լիվոռնոյ, պարտաւորելով զԽաչատուրեան Առաջնորդըն և ժամանակին երեսփոխանքն, որ իրեն հոգւոյն համար մշտնջենաւոր պատարագի միոյ մատուցման պարտաւոր ըլլան, ի ձեռն Հայազգի քահանայի միոյ մեր Եկեղեցւոյն մէջ: Ի 12 Յուլիսի 1835ին Հանգուցելոյն դիտաւորութեան համար մատուցուելիք պատարագաց թիւն փոխարկեցաւ յ264 պատա֊

բազս տարին: Ստացուածոց մնացեալ մասէն եկած հասոյթն հինգ բաժնի վերածեալ, մին կը շնորհուի արանց հիւանդանոցին ի Լիվոռնոյ, միւսն կանանց հիւանդանոցին, երրորդն աղքատանոցին, չորրորդ մասն մեր ազգային անկելանոցին. իսկ հինգերորդն, Քափուչեան կրօնաւորաց եկեղեցւոյն Աննատուրը Երրորդութեան ի Լիվոռնոյ, ուր թաղեալ իսկ է բարերարին մարմինն: *

Ութերորդն է Բարթողիմէոս Պետրոսեանինն՝ որ ի 17 Նոյեմբերի 1751, իւր կտակագրովն պարգեւեց Եկեղեցւոյն տուն մի պարտաւորելով Եկեղեցւոյն իշխանքն որ իւրեն հոգւոյն համար մայր եկեղեցւոյն մէջ ի Լիվոռնոյ մշտնջենաւորապէս պատարագ մի մատուցանել տան շնորհեալ տան եկամտով, որ շատ ըլլալովն՝ միայն 368 ֆր. կը ծառայէ իբր թոշակ պատարագաց. իսկ մնացեալ գումարն բաժանեալ երեք մասն, մին ծառայէ Ս. Պաշտամանց վերաբերեալ ծախուց, երկրորդ մասն աղքատաց, ուխտաւորաց և հիւանդաց համար, իսկ երրորդն ծառայէ առ հասարակ ամուսնացեալ տնանկացն ի Լիվոռնոյ:

Անա այսչափ են միայն պաշտօնապէս հաստատեալ մշտընջենաւոր պատարագք. որոնք միջնորդութեամբ Բիզայու Արքեպիսկոպոսին՝ նմանապէս արքունի նօտարաց ընդհանրապէս անցեալ դարուն մէջ սկիզբն առած են: Իսկ ուրիշ այլ պարտաւորութիւնք են սակաւ ինչ, և բաց այսմ

Մարկոսու Պալիթեանինն որ վախճանեալ ի Բերկա քաղաք ծածուկ կտակաւ շնորհեց գումար մի որ Հայոց Եկեղեցւոյն մէջ ի Լիվոռնոյ իւրեն հոգւոյն համար ամենօրեայ պա_

* Եկեղեցոյ երեսփոխանական ժողովն տարուէ տարի Քափուչեան կոչուած կրօնաւորաց ի Լիվոռնոյ կը հատուցանէ 208 ֆր. ըստ կտակի բարերարին Ցակոբեան Դաւթի. յիշեալ կրօնաւորներէն վեցերին պարտաւորք են Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին տօնախմբութեան օրն մեր Եկեղեցւոյն մէջ Սրբոյն խորանին վրայ վեց պատարագ մատուցանելու բարերարին հոգւոյն համար։

տարագ մի մատուցուի. այն պատարագին տարեկան թոշակն է հօթն հարիւր քսան և ութ ֆրանք. որոյ մատակարարութիւնն եկեղեցւոյն երեսփոխանական ժողովն չունի, այլ Գուլպէ անուն մարօնի վաճառական տուն՝ որ հաստատապէս կը բնակի ի Լիվրուլոյ, և ուղղակի ինքնին կը վճարէ պատարագին քահանային, այլ ի պակասութեան հայազգի քահանայի Լատինք կարող են մատուցանել պատարագն: Գօրովի Անդրէասեանինն՝ է վեց պատարագ իւրաքանչիւր ամիսն, մեր եկեղեցին մատուցանելու պարտաւորութեամբ յանձնուած Հօր Աստուածատուր Սարըզկերոսեան. մայրագումարն գնել են վեց արժեթուղթք քաղաքական վարչութեան Լիվրուլոյի, որոնց եկամուտն տարեկան 150 ֆրանք կը ծառայեն իբր թոշակ 72 պատարագաց յընթացս երկոտասան ամսոց տարւոյն: Մեծ ի մեռանելն Հայր Աստուածատուրն յանձնեց վերոյիշեալ արժեթուղթքն ժամանակակից վիճակաւոր եպիսկոպոս Մօնսինեօր Մեծեթթիի, որ իբր գլուխ եկեղեցական խնամատար ըլլայ պատարագաց մատուցմանն համար. ուստի և այն պատարագաց մատակարարութիւնն ևս մեր երեսփոխանական ժողովն չունի: Բայց յիշեալ եպիսկոպոսն ազատ չէ մատուցանել տալ ըստ հաճոյս այլ եկեղեցեաց մէջ յիշեալ պատարագքն, այլ միայն ի Հայոցն:

Սորայն Գրիգորի Լուսաւորչի Եկեղեցւոյն ի Լիվրուլոյ են այլ փոքրիկ պարտաւորութիւնք պատարագաց, որք ի միասին առեալ են հարիւր քառասուն և վեց պատարագք տարեկան, որոնց փոխարէն կը վճարուին եկեղեցւոյն արկղէն 198 ֆրանք, և են ըստ դիտաւորութեան տուողացն այսոցիկ.

Պատարագք 64 վասն հոգւոյ Ճեհրինանեան Կուլնապատ կոմսուհւոյ:

Պատարագք 24 վասն հոգւոյ Նազարեան Չիչիկեայ Տիկնոջ:

Պատարագք 12 վասն հոգւոյ Աղա տէ Մաթոսի Աստուածատրոյ:

*Պատարագք 6 վասն հոգւոյ որդւոյ նորա Տեառն Յովհաննու:*

*Պատարագք 6 վասն հոգւոյ Մերկենեան Կարապետի:*

*Ջայնաւոր Պատարագք 22 վասն հոգւոյ Սարգսի Արքեպիսկոպոսի Սարաֆեան:*

*Պատարագք 12 վասն հոգւոյ Նալտոնի Յովհաննէս քահանայի:*

*Արդ համագումար պարտաւորութիւնք Պատարագաց յեկեղեցւոջ Ազգին ի Լիվոռնոյ, ի միասին առեալ նաև Պատարագըն որ վասն հոգւոյ Բարթողիմեայ Պետրոսեան, որ քաղաքին Լատինացւոց Մայր եկեղեցին կը մատուցուի, նմանապէս Մարկոսու Պալիթեանինն և Պօղոսի Անդրէասեանինն որոց մատակարարութիւնն չէ ի ձեռս մերոց, են ընդ ամենայն երկու հազար եօթն հարիւր յիսուն և յոթն պատարագք, որոց փոխարէն թոշակք շուրջ իբր չորս հազար ֆրանք:*

## ԳԼՈՒԽ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

[illegible]. պաշտպանութիւն Օսմանեան [illegible]. պաշտօնական [illegible]. [illegible]. Հայոց [illegible]. [illegible]:

*Կը պարծին ի յիշատակութենէ ծննդ իշխանապետութիւնք իւր թէ իրենք մարդասիրաբար յաջորդեալ են նոցա՝ կենցաղոյս երջանկութիւն շնորհելու համար. այլ ընդ մեզ Իտալականն միթէ թերակղզւոյն միւս հնագոյն իշխանքն երբեք տուգանօք կեղեքե՞ր էին եկեղեցիքն Աստուծոյ, արդեօք ժո_*

ղովրդեան վիճակն աղքատագոյն էր այսպէս։ Եկեղեցւոյն կալուածոց գրաւման խորհուրդն սասանեցոյց մերազնեայքն և ի մանաւորի Գեր. Առաջնորդն. Հայր Աստուածատուր ամենայն կարելի և հնարաւոր միջոցներու ձեռնամուխ եղաւ որ Եկեղեցւոյն կալուածներն կարող ըլլայ զերծուցանել ի յափշտակութենէ. դիմեց նաև անուանի փաստաբանից ձեռնտուութեանն, որոց մէջ հռչակեալի են Մալենքինի Տիտոս և Ֆաւպըլլի Ֆրանչիսկոսն որոց գրած պաշտպանական գրութիւնք արդարև հզօրագոյն են։ Այն տագնապի մէջ Գեր. Առաջնորդն խնդրեց օգնութիւն նաև իբրև օսմանեան Պետութեան հպատակ, Ռիւսթէմ անուն փաշա Դեսպանէն, որպէս զի Հայոց կալուածքն ի վերահաս վտանգէն ազատէ, պաշտօնական եղանակաւ ծանուցանէ Իտալիոյ Պաշտօնակալացն Հայոց օսմանեան հպատակ ըլլալն։ Անհամարք են պաշտօնական գրութիւնք ժամանակին, և անոնց օրինակքն կը պահուին որպէս մեր Ազգային դիւանատանն, այսպէս նաև ի հիւպատոսարանն օսմանեան Պետութեան ի Լիվոռնոյ, ուր շնորհած է մեզ ազատաբար մուտ ազնիւ հիւպատոսն Անսելմի Օգոստինոս վասն քննութեան ինչ ինչ գրութեանց։

Արդ օսմանեան Դեսպանն Ռիւսթէմ փաշա հանդերձ իւրեն տատամսելովն՝ բռնադատեցաւ նախ ի Դօրինօ, և ապա ի Ֆիօրենցա քաղաք ուր փոխադրեալ էր արքունիք Վիկտոր Էմմանուէլի, պաշտպանութիւն ընել Հայոց. ի պաշտօնէ յայտ առնելով Արդարութեան և Կրօնից Պաշտօնէին Իտալական միապետութեան թէ կալուածք Եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ Օսմանեան Պետութեան հպատակ գաղթականներէն շնորհուած են յիշեալ Եկեղեցւոյն, ըստ մասին ի կենդանութեան, և ըստ մասին յետ մահուան այնպիսի հպատակացն՝ իւրաքանչիւրն իւրենց յատուկ կտակագրերովն։

Արդարութեան և Կրօնից պաշտօնեայն ընկալեալ Օսմանեան Դեսպանին Հայոց համար գրած պաշտպանական գրութիւնն, պատասխանեց 1868ին թէ Լիվոռնոյի Հայկական Եկեղեցին

Տոսկանայու Պետութեան հովանաւորութեան ներքեւ ապա_ստանեալ ըլլալովն՝ Իտալիոյ միւս եկեղեցիներուն կարգն դա_սուած է. Եկեղեցի, որուն ժողովրդապետն Պետութենէն ա_նուանեալ է. և ռոճիկն շնորհեալ արքունի գանձատունէն: Ժա_մանակ ժամանակ Եկեղեցւոյն շնորհեալ կալուածոց կտակա_գրերն Տոսկանայու Աւագ Դիւանի և վճռական Արքեպիսկո_պոսին միջամտութեամբն վաւերական հաստատութիւն առա_ցեալ են: Այսպէս համաձայն Հայկական Եկեղեցւոյն ի Լի_վոռնոյ ամենայն կալուածք Տոսկանական եկեղեցեաց նման ենթակայ եղած են Պետութեան հաստատեալ գրաւման վը_ճռոյն: Յիշեալ պաշտօնեայէն երբ հաղորդուեցաւ կցկցեալ պատճառաբանութիւնք Հայոց երեսփոխանաց, գումարեցան ի ժողով և խորհրդածեալ անդ զամենայն, յօրինեցին իրենց համար փաստաբանական գիր, այնու եղանակաւ գրեցին Արդարութեան և Կրօնից պաշտօնէին յառաջ բերած պատ_ճառաբանութիւնք, որ է բառ այսմ. « Հարկ էր որ ի Տոսկանա բնակութեամբ հաստատեալ Հայ հասարակութեան առաջնոր_դըն կամ ժողովրդապետն որ Ազգայնոցն հոգաբարձութիւնն ու_նէր՝ Պետութեան հետ միշտ յարաբերութեան մէջ ըլլար, ուստի հարկաւոր էր այնպիսի անձին կարգումն և անուանումն ըլ_լալը ի ձեռն Աւագ Դիւանին, վրան վստահութիւն ունելու հա_մար: — Առաջնորդին Պետութեան գանձէն ռոճիկ ընդունելն սկսեալ չէ Եկեղեցւոյն հիմնարկութենէն ի վեր, այլ միայն 1785էն ի վեր, կարգադրութեամբ Պետրոսի Լէոպոլտոսի Ա_ռաջնոյ, որ նախանձախնդիր մօտ լինել անձին վերապահելով Առաջնորդին կարգումն, հրամայեց որ այնուհետեւ ոչ ի Հռով_մայ այլ յարքունուստ վճարեալ շնորհուի անոր ռոճիկն:

«Առաջնորդ քահանային, որպէս նաեւ միւս հայազգի կղերին վճռական Լատին Եպիսկոպոսին հպատակութիւնն, կա_թողիկէ ուղղափառ կրօնին վարդապետութեան համաձայն է, որ միշտ միութեան և բարեկարգութեան համար ի պա_կասութեան հայ մասնաւոր Եպիսկոպոսին հարկ է որ վի_

ճակին Լատին Եկեղեցւոյն հպատակ մնան հոգևոր իշխանութեան, թէ և տարբեր է ծէսերնին:

« Իսկ բարեբարաց եկեղեցւոյն շնորհեալ կալուածոց կտակագրերն, այն Դոսկանայու Ուազ Դքսին միջամտութեամբն վաւերական զօրութիւն, նմանապէս Բիզայու Արքեպիսկոպոսին մասնակցութեամբն իբր հոգևոր և եկեղեցական գործոյ մէջ հաստատութիւն առած են »:

Սակայն զինչ շահ անոնք քաղեցին. ոչ փառք, ոչ միջնորդութիւնք և ոչ բողոքք բաւական եղան Իտալական մեծապետութիւնը յետս ընկրկելու մեր կալուածքն գրաւելու անիրաւ դիտաւորութենէն. ուստի ընդ վայր պաշտպանութիւն ըրաւ Ռիւսթէմ փաշայն օսմանեան Պետութեան հպատակ համարուելով բարերարաց շնորհած տացուածքն ազատելու մտօք. որպէս զի մերկացեալ չըլլայ Հայոց եկեղեցին իրեն օժանդներէն և իբր աղքատ մատնուի այլոց: Աստէն զննեմք Իտալական մեծապետութեան 1869 ին մասնաւոր Հայոց եկեղեցւոյն համար տուած վճռոյն օրինակն. « Լիվոռնոյի Հայկական եկեղեցին սկսեալ 1785էն ի վեր անջատած ըլլալովն Հռովմայ Տարածման Հաւատոյ Ս. Ժողովոյն իրաւասութեան վերաբերելէն, և ուղղակի Դոսկանայու Դքսութենէն առկախեալ ըլլալովն՝ թեմին մէջ ժողովրդապետութեանց յար և նման եղեալ է. վասն զի ոչ միայն թեմական եպիսկոպոսին իրաւասութեան ներքև է, այլ և ժողովրդապետն ի Պետութենէ կանուանի, և ռոճիկ կընդունի. յոր տակս ոչ է նկատելի իբր ինչք օտարի, այլ իբր ինչք թեմին, որով ենթակայ Պետական արքունի վճռոյն: Հետևապէս ի բաց առեալ կրկին մշանջենաւոր պատարագներն Ալեքսանայ Գրիգորեանին և Սարգսի Արքեպիսկոպոսին զորս կը մատուցանեն ժողովրդապետն և անոր օգնական քահանայն, մնացեալ հինգ մշանջենաւոր պատարագաց վերաբերեալ կալուածք ըստ օրինաց գրաւելիք են. այսպէս Բարթողիմեայ Պետրոսեանին մշանջենաւոր պատարագն որ ի մայր եկեղեցին կը մատուցուի»: Սակայն անկարէ վճիռն առա_

քեալ և ճառեալ էր ի ձեռս երեսփոխանաց Եկեղեցւոյն, ճառա ևս այլ գիր ի 16 Նոյեմբերի 1869, ի կողմանէ Դեսպան Ռիւսթէմ փաշայի. «Իտալիոյ միապետութեան տուած վճռէն յետոյ (կը գրէ Դեսպանն) Օսմանեան Պետութեան դեսպանն անօգուտ կը դատէ նորանոր քայլեր առնել Հայկական Եկեղեցիին կալուածքն գրաւման ենթարկութենէն ազատելու համար, որովհետև յընթացս երկու տարւոյ ամենայն հնարաւոր միջոցք ի գործ դրուեցան և սպառեցան: Ուստի եթէ Հայկական Եկեղեցւոյն երեսփոխանքն չընդունին վճռոյն կատարումն տալ, կամելով աւելի երկարել խնդիրն, այլ միջոց չմնար ընել, եթէ ոչ դատաստանի դիմել»:

Ո՞վ էր որ այսչափ յափշտակութեան և անիրաւ վճռոյն առջև անտարբեր մնայր, և յօժարէր ընդունիլ և կատարել առանց պատասխանատուութեան ծանր պարտուց ներքև մնալու: Մխիթարեան դատաստան գոչեցին մերքն, այո դատաստանի դիմելու քան թէ Եկեղեցին յաղթաուրեան վիճակ վերածել. ուստի խնդրեցին խորհուրդ ժամանակին ուշիմ և գործունեայ փաստաբաններէն, որոնց մէջ Ֆրանչիսկոս Ֆալպըրի բարձրաստիճան անձն, բարեկամ Գեր. Սարըպետուեան Հօր Աստուածատրոյ:

Արդ փաստաբանն այն երևելի Ֆալպըրի Ֆրանչիսկոս յամին 1870, յօրինեալ հրատարակեց պաշտպանողական գրութիւն մի Հայոց Եկեղեցւոյն կալուածոցն համար ի Լիվոռնոյ, որով հերքեց խաղա Արդարութեան և Կրօնից պաշտօնէին յառաջ բերած սնոտի պատճառաբանութիւնքն, և վճռոյն անտեղի ըլլալը Հայկական Եկեղեցւոյն վրայ բնաւ զօրութիւն չունենալն յայտնի փաստերով հաստատեց, և տպագրութեամբ ի լոյս ընծայեցաւ ի լեզու իտալական: Այլ ևս փաստաբանք Ֆրանչիսկոս Ֆալպըրիի նման կը վկայէին թէ Հայ հասարակութեան խնդրանքն անժխտելիք են, և անշուշտ ի դատաստանի յաղթողականք: Չէր յաշխարհի ինչ որ Հայոց խնդրանց դէմ գինէր եթէ ոչ բռնութիւնն. որչափ դժբաղդ էին ժամանակին

երեսփոխանքն որ կարծեցին զինքեանս լքեալս յամենեցունց, չունելով զոք որ նզօրեղապէս գայր ի պաշտպանութիւն նոցա ի Լիվոռնոյ, երբ Իտալիոյ այլ քաղաքաց միջի եկեղեցական ինչք Հայոց ազգին ազատ թողուած էին: Քանի փաստաբանուցիչք էին կարծիք փաստաբանից յաղթական ելլելու ի դատաստանէ, այնքան վճռական և անհաստ թուեցաւ երեսփոխանաց դատաստանի անտանելի ծախքերուն մտածութիւնն. յաղթութիւնն առացեալ այնքան մեծամեծ ծախքերով ի վնաս եկեղեցւոյ՝ չարագոյն էր քան յետս կալն յայնմիկ դատաստանէ:

Ուրեմն զինչ առնել պարտ էր. երեսփոխանք խորհրդով քանի մի մեծամեծաց բանակից եղան խոհական միաբանութեան պաշտօնէից հետ, և խոստացան փոխանակ կալուածոց գրաւմանն գումար ինչ վճարել. լաւագոյն համարելով եկեղեցին պարտուց ենթարկել նոր փոխատուութեամբք, քան թէ զրկել զայն իւր օժտմներէն: Այլ աւա՜ղ եկեղեցւոյս. հազիւ թէ ազատեալ էր իւր անտանելի պարտքերէն 1845ին՝ նոյնին նորոգութեան համար եղած ծախուց պատճառաւ, և ահա անդրէն նորանոր պարտուց կը մատնուէր:

Բանակցութիւնք յաջողեցան. վասն զի արքունի պաշտօնեայք հաւանութիւն տուին Հայոց առաջարկութեանն, որպէս վերագոյն աւանդեցինք, ազատ թողլով ժողովրդապետին և անոր օգնական քահանային մատուցած մշտնջենաւոր պատարագն, անոնց անմիջապէս եկեղեցւոյն հոգաբարձութեան օգտին ծառայելուն համար: Այլ և մնացեալ վեց մշտնջենաւոր պատարագաց վրայ կարող չեղան ժխտել ըստ ամենայնի ազգին իրաւունքն. թոյլտուութիւն ըրին որ Եռկարեանի, Խաչատուրեանին և Պալիթեանին մշտնջենաւոր պատարագացն համար անոնց մայրագումարէն հարիւրին երեսուն վճարեն, իսկ մնացեալ երեքին համար որ են Աւշարեանին, Յակոբեանին և Պետրոսեանին պատարագաց սահմանեալ մայրագումարէն հարիւրին քառասուն վճարեն, և այնու խնդիրն վերջանայ:

Այս եղաւ արքունական պաշտօնէից վերջնական որոշակի պահանջմունքն, զոր յօժարութեամբ կատարեցին երեսփոխանք, վճարելով տէրութեան գանձուն ըստ պահանջեալ հաշույն 9836 ֆրանք:

Եւ որովհետև չունէին պատրաստ դրամ, փոխառութեամբ ընդունեցան Պարոն Տէլլանօյէ կոչուած ընտանիքէն 10 հազար ֆրանքաց գումար մը, պայմանաւ զայն հատուցանելու տասն տարւոյ մէջ, 100ին 6 ֆր. և 66 սանդիմ տոկոսք վճարելով. այսպիսի փոխառութեան ամբողջական հատուցումն եղաւ վերջապէս մեր առաջնորդութեան ժամանակ յամի 1886 . և եկեղեցիս ըստ ամենայնի ազատեցաւ ի պարտուց:

Արքունի գանձուն 9836 ֆր. տարեալ վճարեցան յ13 Յուլիսի 1876: Եւ այն ժամանակէն սկսեալ դադարեցաւ վերոյիշեալ տուժեալ վեց միանջենաւոր պատարագաց մատուցումն, և շարունակեալ տևեց մինչև 1887. երբ Ս. Գահն առանձին կոնդակաւ մով նոր կարգադրութիւն ըրաւ դադարեալ պատարագաց մատուցմանն համար: Արդէն իսկ յամի 1881 տնօրէնութիւն ընդունուած էր ի Հռովմայ 100 պատարագաց վճարմամբ, փոխարէն 1876էն մինչև ցվերջ 1880ին չմատուցուած հանգոյն պատարագաց. այսչափս բաւական է վասն պատարագաց:*

Հօր Աստուածատրոյ կրօնաւորակից կրկին օգնական քահանաներէն մին կը կոչուէր Հայր Թադէոս Զանաքեան բարի և զուարճալի բնութեամբն սիրելի եղած էր ի Լիվոռնոյ: Սա ինքն ի Բիզա մէկ պատահարէն տագնապեալ հիւանդացաւ խելագարութեամբ և յետ սակաւուց վախճանեցաւ, թողլով իր վանաց

* Յառաջնորդութեան պաշտաման յաջորդն մեր ի Լիվոռնոյ Գեր. Գևորգ Վ. Տէմիրճեան նամակաւն իւրով որ յ9 Յունուարի 1889, կը ծանուցանէ մեզ թէ այժմեան պարտաւորութիւնք պատարագաց ածեալ են ի թիւ հազար երկու հարիւր ութսուն և ութ պատարագաց յիւրաքանչիւր ամի, յետ ընդունելոյ նորոգապէս տնօրէնութիւն ի Ս. Գահէն Հռովմայ:

աւելի քան երեսուն հազար ֆրանքս, թող միւս ստացուածներն, որոնք մնացին օտարաց ձեռք, (տես ի դիւանի Օսմանեան հիւպատոսարանին ի Լիվոռնոյ):

Մեր կաթողիկէ հասարակութեան յետին ժամանակի խռովութեան և ծանօթ խնդրոյն միջոցին սկիզբն՝ Անտոնեան ուխտին Աբբահայր Արքեպիսկոպոսն՝ Հասունէն գնալով իւր կղերանոցին քանի մի նորընծայ ուսանողներով դիմեցին ի Լիվոռնոյ և հոն պատսպարուեցան սուղ ժամանակ մի. ուստի ուղևորեցան ուսանողքն ի Գաղղիա, և Աբբահայրն ի Կ. Պօլիս ըստ վկայութեան ուրուք ի Լիվոռնոյ:

Ժամանակակից է և Լիվոռնոյի Առաջնորդին և երեսփոխանաց ժողովական գրութիւնն, որ յիշեալ ծանօթ խնդրէն շարժեալ ուղղեցին յանուն հայ հասարակութեան Լիվոռնոյի, աղերսագիր մի առ Ս. Գահն Հռովմայ, աղաչելով որ անանկ խստութեամբ չվարուի ազգայնոց հետ: Այլ այսպիսի գրութիւնն իրենց նուաստութեան պատճառ եղաւ. վասն զի Տ. Հ. Ս. Ժողովոյն Գաբրիէլ Ծիլիանտուրին հրաւէրովն և ստիպմամբն անմիջապէս յետս կոչեցին ի Հռովմայ վերոյիշեալ ժողովական գրութիւնն. լաւ էր եթէ գրեալ չէին: Յիշեալ ծանօթ խնդրոյ ժամանակ երբ Կիլիկիոյ Կաթողիկոսն Անտոն Պետրոս Թ. ի Հռովմ կը պանդխտէր, երկիցս ի Լիվոռնոյ ուղևորեցաւ, և ագաւ Միխայէլի անուն մարոնի քահանայի տունն, որ էր ընկերակից ի պատանեկութեան ի վարժարանն Տարածման Հաւատոյ ի Հռովմ:

Ծերունին առաջնորդն ի 25 Ապրիլի 1878 հանգեաւ ի Տէր ի հասակի 75 ամաց իւրոց. ուսեալ էր ի Հռովմ, ձեռնադրեալ ի քահանայ հիւանդագին հասաւ ի Լիվոռնոյ ուր շուրջ քառասուն տարի, իր կենաց մեծագոյն մասն հաստատ բնակեցաւ. սիրելի յաչս լատին կղերին, և անդամ անանց ժողովրդապետական ժողովքին: Թէ և էր շատ ազգասէր, այլ նա ինքն ևս յերեսաց ոմանց հակառակասիրաց ժողովրդեան կրեց նեղութիւններ, և անտես եղաւ գժտութիւններուն: Իւր երկայն-

օրեաց առաջնորդութեան ժամանակն հետզհետէ ազգայնոց թուոյն պակասելովն*, և յիշեալ տանց իւր հետ ի գժտութեան մնալովն, ինքնին ունէր եկեղեցւոյն մատակարարութիւնն իւր բազմամեայ փորձառութեամբն, մեծաւ զգուշութեամբ և արդարաբար կալուածներն յանձանձեց: Այլ որ աւելին է, մատակարարեց կալուածներն յանուն երեսփոխանաց ազգին. և բազմիցս առանց անոնց միջամտութեանն զոր կը վկայեն այսօրուան Հայք ի Լիվոռնոյ:

Այլ սակայն Սարըպետրոսեանն՝ չեղև ըստ ամենայնի գովելի, իւր անփոյթ մնալուն համար յետ մահուան լրեն օգնական կրկին միայն քահանայից, որոնց անուանքն՝ որպէս յիշեցինք ի վեր անդր, էին Հայր Թադէոս Զամաքեան և Հայր Ղուկաս Ծնճիճեան, այլ նոր քահանայ մն օգնական ունելու, որուն յանձնէր ամենայն ինչ և յաջորդ իւր թողուր: Թէ և ի սակաւուց հետէ հասած էր ի Լիվոռնոյ Հայր Բարթողիմէոս Իփէքճեանն՝ այլ հաճելի չէր եղած ոչ Սարըպետրոսեանին և ոչ վիճակաւոր լատին եպիսկոպոսին: Որուն հետևանքն են, այն եպիսկոպոսին՝ որ էր Ղուքքացի Մօնսինեօր Հռափայէլ Մեծեթթին, եկեղեցւոյս՝ փոխանակ հայազգի քահանայի, Իտալացի ոք Տօն Քրիսթօֆօրօ Օրլանտինի անուն քահանայն առժամանակեայ հոգաբարձու անուանելը, և Իփէքճեանին անմիջապէս Լիվոռնոյէն ի բաց երթալը հրամայելն ի ձեռն պաշտօնական

* Ժամանակ ժամանակ Պօլսեցի ազգայինք ոմանք գնալով ի Լիվոռնոյ բնակած են անդ ի կենդանութեան Տօր Աստուածատրոյ. յանուանէ կը յիշուին նաև Ցավութզատէ Կարապետ Աղա որդւովն իւրով Գրիգորիւ, որ բնակելով յաջորդաբար երկու տարիներ 1859–1860 ականատես եղած են Դոսկանայու յետին քաղաքական փոփոխութեանցն և անցիցն։

Առաւել կանխագոյն քան զնոսա և Եկեղեցւոյն Նորոգութեան ներկայ եղեր է Շիրպեթեան ումն Խաչատուր անուն, որ ընդ այլոյ ուրումն Պօլսեցւոյ վաճառականութեան սնեակ բացեր է ի Լիվոռնոյ, և յետոյ չաջողեալ յԱմերիկա չուեր է։

գրութեանց, անգէտ ըլլալով մեր եկեղեցւոյն հիմնական սահմանադրութեանցն *:

Հայք զինեցան եպիսկոպոսին կարգադրութեան դէմ չընդունելով գլխաւորացն քահանայն իբր հոգաբարձու եկեղեցւոյն. Հայր Բարթողիմէոս Իփէքճեանին երթալովն ի Լիվոռնոյէ՝ եկեղեցին պարապ մնաց քանի մի ամիսներ հայազգի քահանայէ մինչև ի գալուստ Սայեղեան Դաւթի վարդապետի:

Սայեղեան Դաւիթ վարդապետն Նզվյատոսի Առաքելութենէն ի Հռովմ դիմած էր, Ցիտուսեան կարգն մտնելու համար հարկաւոր հրամանն խնդրելու ի Ս. Ժողովյն, ուր Գահերէց Ծիրանաւորն խոստացաւ անոր խնդրած հրամանն շնորհել, և առաքեց զնա ի Լիվոռնոյ մնալու ժամանակեայ եղանակաւ մինչև որ իւր տեղն անցնելու համար այլ քահանայ մի առաքուի և հաստատուի մեր եկեղեցւոյն առաջնորդութեան պաշտօնով: — Այսպէս Սայեղեանն ի Լիվոռնոյ հասեալ ժամանակ մի հոգաբարձութեան պաշտօն վարեց, մինչև որ մենք ի Յունուար ամսեանն 1879 տարւոյն, ըստ կարգադրութեան Գերերջանիկ Անտոնի Պետրոսի Թ. Կաթողիկոսի և ըստ հրամանաց Ս. Ժողովյն Հռովմայ ուղևորեցանք ի Լիվոռնոյ յառաքելութիւն և յառաջնորդութիւն հայ հասարակութեան անդ: Յիշեալ Սայեղեան Դաւիթ վարդ. սիրով մեծաւ մեզ հիւրընկալեց, և այլ քանի մի ամսեր մեր հետ մնալէն վերջ ի Լիվոռնոյ, գնաց ի Գաղղիա ի Բարէ-սիւր-մօնեալ անուն քաղաք՝

* Ցայս միջոց ժամանակի վենետկոյ Մխիթարեան միաբանութեան Արժանապատիւ Աբբահայրն Իգնատիոս Արքեպիսկոպոս Կիւրեղեան ի դարձ առնելն ի Հռովմայ ի Վենետիկ, ընկերակցութեամբ Գերյարգելի Հօր Գաբրիէլի՝ եկն յայցելութիւն ի Լիվոռնոյ և պատուեց մեր եկեղեցին։

Այսպէս նաև Գերափայլ Աղեքսանդր Արքեպիսկոպոս Պալճեան ի Մխիթարեան Միաբանութենէն Վիեննայոյ, նոյն տարւոյ. այս է 1878ին սկիզբները, ի Լիվոռնոյ այց եկած էր, և Լատին վիճակաւոր եպիսկոպոսէն սիրով հիւրընկալուած բնակելով յեպիսկոպոսարանի։

— 182 —

*ուր էր նորընծայարան Յիսուսեանց կրօնից, և ապա զգեստ Յիսուսեանց: Նա և բանիբուն վարդապետ մի էր, այլ անտե-ղի ըրածն, թողլով զիւրսն և երթալովն յարիլովն օտարաց հետ:*

*Առաջնորդ Հօր Աստուածատրոյ մահուանէն անմիջապէս յետոյ, թէ և յոյժ սակաւ թուով ազգայինք, որոնցմէ ոմանք և բացակայ ի Լիվոռնոյէ, ներկայ գտնուողքն ժողովք կազ-մեցին, ուր ընտրեցաւ ազգապետ Աղամեան Յովհաննէս ա-նուն փաստաբանն, որ արդէն իւր ազգն թողեր, օտարաց հետ խառնուած էր, ամուսնացեալ Յունաց եկեղեցին, և իւր զաւակունք մկրտեալ Լատինաց մայր եկեղեցին, և ի գժտու-թեան եկեղեցւոյն առաջնորդացն հետ, խիստ և բծախնդիր բնութեամբ զանազան վրդովմանց և յուզմանց պատճառ ե-ղաւ. իսկ մատակարարութիւնն եղաւ կնքնիշխան, կանոնաւոր ամսական և տարեկան ժողովքներն խափանեցան, երեսփո-խանք ըստ մեծի մասին կամ անոր կողմնակիցներն էին և կամ եկեղեցւէս ողորմութիւն ընդունող դասէն, որով ազգապե-տին ստրուկք: Յամն 1883 մեռաւ Յովհաննէս Աղամեանն ե-կեղեցւոյս 823 ֆր. պարտական մնալով*:*

* *Որոյ կինն մեռեալ յամին 1881 յուղարկաւորեցաւ ի Յունաց. ինքն վախճանեալ յամին 1883 յուղարկաւորեցաւ ի մէնջ. իսկ աղ-ջիկն վախճանեալ յամին 1884 թաղեցաւ ի Լատինաց վասն մկր-տեալ գոլոյն առ Լատինացիս. տեսէք ուրեմն քանի արարողու-թիւնք էին ի միում տան, և որպիսի աղաւաղեալ կացութիւն ըն-տանեացն.*

## ԳԼՈՒԽ ՎԵՑՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Ժամանակ Առաջնորդութեան Մերոյ. [illegible] Առաջնորդութեան. [illegible] Գեւրեզ· [illegible] Տեառն. [illegible] Պետրոս [illegible] Տէր [illegible] Ս. [illegible] Ս. [illegible] Հայոց [illegible] Լեհաստանի? [illegible]։

*Անդստին մեր ի Լիվոռնոյ հասանելէն ի վեր մեր վարմունքն և դիտաւորութիւնն նորա եկեղեցին բարեկարգել և այլրդեալ օտարամուտ սովորութիւնքն խափանել, նմանապէս ըստ կարելւոյն Հայաստանեայց արարողութիւնքն կատարել, և զգուշանալ որպէս զի չըլլայ թէ մեր թոյլտուութեամբ առիթ տրուի օտարաց մեր գործոց մէջ խառնուելու, և ազգի ազգի վտանգաց մատնուելու յապագայ ժամանակս: Այսպիսի վտանգներէ չէր հեռի եկեղեցիս, օր ըստ օրէ ազգայնոց նուազմամբն ի Լիվոռնոյ: Նորոգութեան ժամանակէն ի վեր բարձուած մեծ վարագոյրն անդրէն աւագ սեղանոյն առաջքն զետեղել տուինք: Ժամագրոց աղօթքներն զմանս իտալերէն թարգմանեալ տպագրեցինք, որ ժողովուրդն կարենայ իր ազգային աղօթքներուն ծանօթանալ: Այլ և տասն իտալազգի պատանեաց շատ աշխատութեամբ մեր արարողութեանն և պատարագին սպասաւորութիւնն ուսուցինք (սպասաւորութեան տետրն իտալագիր տպագրելով), իւրաքանչիւր կտորն իրեն յատուկ ձայնաւոր եղանակաւն. այսպիսի վարժութեամբ և յատուկ հայկական հնչմամբ և արտասանութեամբ իտալազգի պատանիքն յիրաւի չէին զանազանուէր հայազգիներէն: Յիշուած տասն երգիչնե_*

րով կատարուած քանի մի ձայնաւոր պատարագներ՝ արժանի են յիշատակութեան, ուր հնացեալ էին հանդիսատեսք շատ ժամանակէ ի վեր ի Լիվոռնոյ կանոնաւոր ձայնաւոր պատա_րագք չկատարուելուն համար:

Այսպիսի եղանակաւ մտուցուած ձայնաւոր պատարագ_ներէն միոյն վրայ տեղեկութիւն տանք յառաջիկայս, որ գըլ_խաւոր համարելու է միւսներուն հետ համեմատելով: Արդ յամսեանն Օգոստոսի 1880 տարւոյն եկած էր ի Լիվոռնոյ Ա_տանայի Արքեպիսկոպոսն օդափոխութեան համար, որ և հա_ճեցաւ ի Տօնի Վերափոխման Տիրամօրն հայրապետական ձայ_նաւոր պատարագ մատուցանել. սոյն հանդիսութեան մէջ ոչ միայն յիշեալ տասն պատանիքն երգեցին, այլ և գտան չորս լատին քահանայք՝ որ հայ տարազ զգեցեալ ընթերակայ ե_ղան սարկաւագութեան պաշտօն վարելով և համաձայն վա_րելով ըստ մեր արարողութեան. այսպիսի սարկաւագներէն մին վարժեալ ըլլալով մեզմէ հայերէն բարբառով Աւետա_րանն ընթերցաւ ըստ աւուր պատշաճի: Ըստ հայատառնեայց եկեղեցւոյ ի վերջ պատարագի Արքեպիսկոպոսն, խաղողոյ օր_հնութեան հանդէսն կատարեց, և բաշխեցաւ առհասարակ ա_մենայն ժողովրդեան: *Եկեղեցին լի էր բազմութեամբ. հրաւի_րուած էին ի մասնաւորի Մօնսինեօր Պլազինի Կրօսեթոյի Ե_պիսկոպոսն, Գաղղիոյ և Օսմանեան պետութեանց հիւպատոս_ներն և այլ բազումք, որոնք ներկայ գտնելով պատուեցին զմեզ և խնդակից եղան մեր աշխատութեան: Սոյն հանդիսու_թեանց ընդարձակութիւնն է տեսանել լուծին ի Կածեթթա տ'Իթալիա անուն լրագրին, իւր Օգոստոս ամսեան մէկ թեր_թին մէջ, կարծեմք 20 երրորդ աւուր թւոյն **:

* Երբ մենք այսպէս ի Լիվոռնոյ վոյթեռանղն եկեղեցւոյն սպասաւորեցինք, ոմանք ի Հռովմ բամբասեցին զմեզ զանգա_տելով, թէ նորութիւններ կը մուծանենք եկեղեցին, մանաւանդ խաղողոյ օրհնութեան համար։

** Փանոսեանն աւանդեալ է նոյն տարւոյն 4436 թիւ Լրագրոյն

Այսպէս այլ ձայնաւոր պատարագ մի մատուցաւ ի յաջորդ Ծաղկազարդին, մեր բարեկամ քանի մի Մխիթարեան վարդապետաց օգնականութեամբ, որոնք այց եկած էին ի Լիվոռնոյ․ որպէս նաև յիշեալս ծրագալուցի և այլ տօնախմբութեանց:

Մեր ի Լիվոռնոյ հասնելէն երկու տարի վերջ ըստ սովորութեան առաջարկուեցաւ Տէրութեան ժողովրդեան գլխաւորներէն՝ երեք հայազգի քահանայից անունները՝ որպէս զի զմին անուանէ Առաջնորդ հայ հասարակութեան ի Լիվոռնոյ․ այսպէս մեր տուող անձն արքունի հրովարտակաւ և առանձին կոնդակաւ վիճակաւոր եպիսկոպոսին անուանեցաւ ժողովրդապետ ի Լիվոռնոյ․ տե՛ս վաւերականքն ի վերջն:

Մինչ պաշտօննիս կը մղէր զմեզ որ անտարբեր չմնանք մեզի յանձնուած եկեղեցւոյն ներքին և արտաքին վիճակներուն լաւացնելու, դժկամակ մեզ թուեցաւ տեսանել որ եկեղեցւոյն մատակարարութեան մէջ՝ ի բաց առեալ երեսփոխանքն՝ կային եւ կրկին խառնակիչք․ մին գրագիր և միւսն կալուածոց վարձքերուն ժողովող, որոնք ոչ միայն եկեղեցւոյս վրայ ունէին ծանրութիւն իւրաքանչիւրն ընդունած ամսականներովն, այլ և ոչ սակաւ խառնակութեան պատճառ կըլլային․ միթէ կարող չէի՞ն միւս երեսփոխանք այսպիսի ծառայութիւններ իրենք իրենց ընել ձրիաբար, խնայելով եկեղեցւոյս․ մանաւանդ որ ոմանք անոնց մէջ եկեղեցւոյն արկղէն ամսէ ամիս ողորմութիւն կընդունին *: Ապաքէն երեսփոխանաց բացարձակ մատակարարութիւնն առանց մեր միջամտութեանն, և վարած անկախութիւնն, չէր ինչ զովելի․ վասն զի ազգին օր ըստ օրէ նուազելովն, մեր կալուածքն յապագայ ժամանակս օտարաց

մէջ մասնական յիշատակութիւն վերոյիշեալ ձայնաւոր պատարագի․

* Եկեղեցւոյ արկղէն ողորմութիւն ընդունողքն են հետևեալքն․ 40 ֆր․ իւրաքանչիւր ամիս Միրմանեան կրկին եղբարք, անոնց քորք 18 ֆր․ ամիսն․ իսկ Աղեքսանդրեանն 20 ֆր․

գրասման վտանգն ունէր. որով մեր ջանք և փոյթ եղան՝ որպէս զի կղզուածքն անմիջապէս կաթողիկէ հասարակութեան գլխոյն ենթակայ ըլլան, և տարեկան հաշիւ տրուին: Այսպիսի դժուարին գործն ի գլուխ հանելու յաջողեցանք Աստուծոյ օգնականութեամբն. 1883էն սկսեալ երեսփոխանք տարեկան հաշիւ կը ներկայացնեն Սահի. Պետր. Ժ. Կաթողիկոս Պատրիարքին Կիլիկիոյ ի Կ. Պօլիս *: Այլ կրնայ մակաբերուիլ թէ քանի խնդիրներու և եպերանաց չիմք հանդիպած սոյնպիսի դժուարին գործողութեանց մէջ:

Մեր վարմունքը և ընթացքն զմանս գոհ կ'ընէին և զոմանս տժգոհ, ուստի տժգոհք ջանացին ստուերացնել մեր արդիւնքն, և խոչընդոտ ըլլալ մեր քայլերուն: Պակասութիւն համարեցաւ մեզ եկեղեցւոյն պակասներուն տեղ նոր սպասներ տանելնիս, եկեղեցւոյ մէջ ըրած քանի մի փոփոխութիւններնիս. մեր առաջնորդութեան յատկութիւնն ալ ոչինչ համարեցան և զլացան հարկաւոր ազատութիւնքն, տալը սպասքն բանութեամբ բարձին, և ցրուեցին բազում տքնութեամբ ժողովուած երգիչ պատանիքն: Եւս քան զևս սաստկացան զժտութիւնք, երբ տեսան Ասպետ Պօղոս Սարաֆինի անուն փաստաբանն, որ պաշտպանական գրութեամբն ապացուցած էր յայտնապէս, թէ «Առաջնորդին բնիկ հայազգի ըլլալովն՝ անկ էր անոր աւելի քան երեսփոխանս խօսակցելու՝ մատակա-

* Մինչ անգամ եկեղեցւոյն վերաբերեալ կրկին ննազոյն բարձեր և զգեստ մի պատարագի Դամպի անուն ննազէտին վաճառելու համար, հարկադրեցաւ մեր յորդորով երեսփոխանական վարչութիւնն գրել Դեբիրջ. Հօգևոր Տեառն հաւանութիւն և հրամանն խնդրել տանել: — Անգամ մի Ազգասէրն Ադամեան Պետրոս Ասպետ խօսելով ընդ մեզ կըյիշէր իւր հայրն Դաւիթ՝ այսպէս. Մեր հարք որքան նախանձախնդիր էին, բնաւ չէին ներեր այլոց իրենց ազգային գործոց մէջ երբէք միջամտութիւն ընելու, իսկ մեք անոնց որդիքն զրկեցինք զմեզ մեր ազատութենէն առիթ տալով նորանոր խնդրոց յերևան գալու.

բարեկ ազգային կալուածքն »: Յիշեալ գրութիւնն բորբոքեց ազգասէրն, և իւր ժողովականացն մէջ վճռեց որ դիմելով Տէրութեան, ջանան ամենայն զօրութեամբ բառնալ ի միջոյ այնպիսի առաջնորդ մի՛ որ ազգին վատահամբաւութեան պատճառ է ի Եւրոպա! Որով մենք ևս մեր նախորդացն կրած թէ ներքին և թէ արտաքին նեղութեանց մասնակից եղանք. վասն զի էին և ի լատին կանոնիկոսաց ոմանք, որ թշնամութեամբ վարեցան մեր հետ: Անտանելի նեղութեանց մէջ, մեզ միշտ զօրավիգն օգնական եղաւ վիճակաւոր եպիսկոպոսն անմահ յիշատակաց արժանի Մօնսինեօր Բաչինի, և անոր քահանայ եղբայրն. որպէս նաև Կոմսն Ֆրանքինի, Մարգէզն Տիւֆիւր Պերթի, և Գավալիէր Ճիւզեբբէ Լիթթի*:

Վերջապէս հարկ եղաւ որ Օսմանեան հիւպատոսն Կալիանի էֆէնտի պաշտօնապէս գայր ի Հռովմայ, և ի խաղաղութիւն վերածել ամենայն ինչ ազատէր մեզի խռովողաց եղողներէն: Անդանօր ժողով գումարեցաւ ընդ նախագահութեամբ վիճակաւոր եպիսկոպոսին, և ընկերակցութեամբ Օսմ. հիւպատոսին, ուր հեռացմամբ հնոցն նոր երեսփոխանք կարգեցան մասնակցութեամբ առաջնորդին, և Ասպետն Պետրոս Աղամեան Ազգապետ նստելովն: Գիտելի է որ Պետրոս Աղամեանի կնկին հօրեղբայրքն էին լատինածէս կրօնաւորք ի Քալտեչեանց կարգէն:

Ասպետն Պետրոս Աղամեան հռչակաւոր եղած էր. ժամա֊

* Մեր սատարաց մին գրած էր առ վիճակաւոր եպիսկոպոսն այսպէս. «Որ ինչ բարեմտութեամբ գործեաց ժողովրդապետն, ի չարն մեկնեցին խուժն. ասացին թէ գործէ հակառակ կանոնադրութեանց՝ զորս նոքին իսկ չունին ի գործածութեան. քանզի յօժարութեամբ կամեցան զնա իւրեանց ժողովրդապետ, այնքան պնդութեամբ յամառեալ են պաշտօնազուրկ առնել: Տեսէք, Գերապայծառ Տէր, որպիսի է յանդգնութիւն արանցն այնոցիկ. զի չեն միայն դատախազք և վկայք ամբաստանութեան, այլ և լինին դատաւորք և պատժիչք ողորմելւոյն այնմիկ»:

նախ ունէր յատուկ դպրատուն մի, որ յետոյ վնասեալ յերեսաց Յունաց ոմանց յՕտեսսա քաղաքի և խափանեցաւ. Էր ևս Գանձապետ պաշտօնեայ Դոսկանական Տէրութեան. Ինքն արդարացի անձն մի է. իւր ազգասիրութիւնն յառաջեամբ կը կատարէ, երանի թէ միւս երեսփոխանք ևս անոր նմանէին և օգտակար ըլլային եկեղեցւոյն. ազնիւ բնութեան տէր, աստուածավախ և սիրով ամենեցուն հետ ի մատակարարել եկեղեցւոյն կալուածները: — Աստէն հարկ է որ եկեղեցւոյն կալուածոցն վրայ տեղեկութիւն տամք:

Եկեղեցին հայկական ի Լիվոռնոյ ունի իւր բոլորտիքն չորս մեծամեծ տներ, իւրաքանչիւրն չորս կամ հինգ դստիկոններով, որոնց մէջ է առաջնորդարանն, նաև հիւանդանոցն որ ժամանակաւ կը ծառայէր ազգին, այժմ ի վարձու տրուած է. այլ տուն մի քաղաքին Վենետիկ կոչուած մասին մէջ. տուն մի ճեպօնի կոչուած պանդոկին յետին կողմն. իսկ մայր եկեղեցւոյն կողմնակի դիմացն մէկ տան կրկին դստիկոնները, որպէս նաև Կածծարինի կոչուած փողոցին մէջ այլ տան մեծագոյն մասն դստիկոնները՝ եկեղեցւոյս կը վերաբերին. կան ևս (censi) կոչուած երկիրներ, որ են անդաստանք վարձքով յանձնուած քանի մի իտալացի ընտանեաց, որոնք ունին զայնս ի հնուց հետէ շարունակաբար որդի ի հօրէ. այն անդաստանք արտաքոյ են ի Լիվոռնոյէ:

Բարատտային վկայութեանն հետևելով՝ որ 1844ին եկեղեցւոյս նորոգութեան ճարտարապետն եղաւ, եկեղեցւոյն բոլորդակ կալուածոցն արժէքն է 201, 845 Դոսկանական լիրա. ըստ մեզ այլ ևս աւելի է, և համարելու է շուրջ երկու հարիւր քառասուն հազար ֆր: Մեր կալուածոց եկամտից երրորդ մասէն մէկն ունի Տէրութիւնն փոխան հարկաց, որ արդարև ծանր է. իսկ մնացեալ մասերն կը ծառայեն մշտնջենաւոր պատարագաց թոշակացն համար. քահանայից ռոճկին, նոյնպէս իտալացի գործակալներուն, եկեղեցւոյն ծախուցն և ըրած ողորմութեանցն:

Միթէ բարերարաց կտակացն կը հակառակէ՞ր ի սկզբանէ հետէ մեր սնուցած փափաքն ինչ ինչ ունայն ծախուց փոխարէն՝ խնայութիւն ընել և ծառայեցնել այն քանի մի հայազգի աղքատ պատանեաց դաստիարակութեանն, զոր քանիցս անգամ յայտնած ենք եւ Գերերջանիկ Կաթողիկոսին:

Դառնանք մեր պատմութեանն: Ցանխեանն Մարտի 1883 տարւոյն, Լիվոռնոյի նաւային գործարանն Լեբանթօ անուն նոր նաւակերտ զրահաւոր և հոյակապ շոգենաւին ծով իջնալուն հանդիսին հրաւիրուած էր Ումպերթ Ա. Իտալիոյ թագաւորն և Թագուհին. որոնց հասանելուն շքեղ հանդէսներ կատարուեցան. մենք եւ նոյն հանդիսին ներկայ ըլլալով ի պատիւ Թագաւորին հայերէն մէկ նուագ յօրինեալ մատուցինք, և յետոյ արքայական շնորհակալութեան գիր ընդունեցանք:

Նոյն միջոցներն ուխտած էինք Տիրամօրն, որ պաշտպանած էր զմեզ, ըստ օրինակին անոր երևմանն ի Լուրտ արձան մի ստացանք և զետեղեցինք եկեղեցին, ուր եղբայրութիւն մի եւ հաստատեցինք անոր անուանն՝ հաւանութեամբ Բաչինի Եպիսկոպոսին. այլ և մասնակից ըրինք զայն եղբայրութիւն Լուրտի եկեղեցւոյն Աւագ եղբայրութեան հետ. այն մասնակցութեան վաւերական գիր ընդունելով պահեցինք զայն շրջանակաւ եկեղեցին, միշտ ի յարաբերութեան ըլլալով Լուրտի Աւագ եղբայրութեան հետ և հաղորդ անոր առանձնաշնորհութեանցն և ներողութեանց:

Եղբայրութեան կանոնացն համաձայն տարին չորս անգամ երեկոյեան ժամերգութիւնք կը կատարուին Տիրամօր արձանին առաջքն, և եղբարքն ամենայն պարտական են ներկայ գտնուիլ, որոնց սպրգած ընծայքն կը զարդարեն Սուրբ Արձանն: Ստացանք եւ ի Ճենովայէ՝ ուր պահի Աբգար Թագաւորին Ս. Դաստառակին՝ համանմանն օրինակն, և մեծամեծ հանդէսներով բերեալ զետեղեցինք մեր եկեղեցւոյ մէջ այսպիսի ազգային յիշատակ մի*:

* Սրբոյն Գրիգորի Լուսաւորչի անուամբ էր եղբայրութիւն մի

Երկոտասաներորդ գլխակարգութեան մէջ ստանդած էինք թէ եկեղեցւոյս Աւագ խորանին որմին մէջ զետեղուած էր Հրաշագործ սուրբ խաչելութեան պատկերն, ուր 1786ին փոխադրեալ էր մեծամեծ հանդիսութեամբ. արդ յամին 1886 փոխադրութեանն հարիւրամեայ տարին կը լրանայր. ուստի փափաքեցանք Յիսուսի փրկչին սուրբ Խաչելութեան պատկերին փոխադրութեան տօնն փառաւորապէս կատարելու. հաւանութեամբ Թեմական եպիսկոպոսին՝ երեքօրեայ տօն հանդերձեցինք, և դիմեալ առ Ս. Քահանայապետն մէկ աղերսագրով՝ լիակատար ներողութիւն ստացանք անոնց համար, որոնք զան յայցելութիւն սուրբ Պատկերին, և հոգևոր հանդիսութեանց ներկայ ըլլան, և այլն: Հրաւիրեցինք ի Կ. Պօլսէ Գերապայծառ Ճանճեան Յարութիւն եպիսկոպոսն և այլ քահանայքն ի Հռոմէից. երեքօրեայ հանդիսաւոր ժամերգութիւնք և ճաշաւոր պատարագք մատուցան. քաղաքին ամէն եկեղեցեաց դըրուներն գոցուած էին մեծագոյն հրաւէրք. հրաւիրագրին յետին մասն գրեալ էր այսպէս. «Ոչ է լոկ հայկական տօնահանդէս՝ այլ եւ հռոմէական. զի որպէս առ հարս մեր մասնակից եղան առհասարակ քաղաքացիքն փոխադրութեան սուրբ Պատկերին, ըստ նմին օրինակի յորդորեմք զամենեսին զի փութասցին առ ի գալ և տօնել ի միասին զմեծ դարադարձն»*:

կանխապէս Հայոց եկեղեցւոյ մէջ, ըստ օրինակի այլ եղբայրութեանց որ են ի զանազան եկեղեցիս Դոսկանայու, այլ երկայն ժամանակէ ի վեր դադարեալ է այն։

* Յամսեանն Հոկտեմբերի 1885 եկաւ մեզի այցելութեան Ապրօ Իշխանն որ Իտալացեալ մէկն է և կը կոչուի Բրինչիբէ տ'Ապրօ Բագրատունեան. Ապրօն իտալացի արքունական գերդաստանէն օրիորդի միոյ հետ ամուսնացած է և կը բնակի ի Նափոլի. որ զալով մեզ վկայեց թէ իւր նախորդներէն մին՝ եկեղեցւոյս հիմնարկութեան ծնունդ եղողներէն էր. Ապրօ Գէորգ Չէլէպի անուամբ. Նոյն տարին եկաւ նաև Տրապիզոնի Եպիսկոպոսն Գերապայծառ Մարմարեան ի Լիվոռնոյ. նաև Գերյարգելի Ծաղիկեան Հ. Մեսրոպ և Գուրգենեան Հայր Օքսենտիոս վարդապետք:

Առնէն արժան է ի մէջ այլոց աւանդել ինչ ինչ սովորութիւններ, որ ունին հայ գաղթականքն ի Լիվոռնոյ*: Պսակի խորհրդոյն արարողութիւնն կը կատարուի տարբեր եղանակաւ. Մաշտոցէն քանի մի էական աղօթքներ առնուած են, և համառօտակի անոնք միայն կը գործածուին: Ժողովրդապետն Լատինաց նման, երեք անգամ յաջորդաբար ի տօնս պարտաւոր է եկեղեցւոյ մէջ ազդարարութիւն ընել ծանուցանելով պսակելոց անուանքն, որ չըլլայ թէ բարոյական ինչ արգելք ըլլայ անոնց մէջն, և ժողովրդենէ գիտցողն ժամանակին զայն յայտնէ զայն ժողովրդապետին, որ ըստ այնմ վարուի նա, և օրհնէ պսակն, միշտ վիճակաւոր եպիսկոպոսին հրամանն շնորհելովն: — Իտալական միապետութեան հպատակ ըլլալովնին՝ բաւական չէ կրօնական հոգևոր պսակն միայն, պարտական են նա քաղաքական վարչութեան պալատն ներկայանալով, անդ նա պսակուիլ քաղաքական օրինաց համաձայն, ուպէս զի օրինաւոր համարուի անոնց ամուսնութիւնն:

Մկրտութեան խորհուրդն կը կատարուի ժողովրդապետէն տաճարին և ոչ ի միասին դրոշմի խորհրդեան հետ՝ ըստ սովորութեան Հայաստանեայց եկեղեցւոյ, որուն համար երկայն

* Կիրակի և տօն օրեր յեկեղեցւոջ կը մատուցուի վերջին պատարագն ի ժամ կիսօրէի, ըստ պիտոյին երբ հարկ ըլլայ ազգային ժողով գումարել, սովորութիւն է կէսօրուան պատարագին վերջանալէն յետոյ սկսիլ ժողովն ի դիւանատան եկեղեցւոյն:

Այժմեան երեսփոխանք են թուով վեց, Ազգապետն և երկու խորհրդականք, մատակարարն, գանձապետ, և վերակացու մի հիւանդանոցին (անուամբ միայն և ոչ գործով, վասն զի չիք հիւանդանոց): Եթէ ժողովել վեց անդամոց կարծիք բաժանել ըլլան կէս առ կէս ի հաւասար մասն, այն պարագայի մէջ Ազգապետն կը վայելէ կրկին ձայն, (որով Ազգապետին եղող կողմն մեծագոյն մասն կը համարուի):

Ժողովոյն մէջ կը նստի նաև իտալացի գրագիրն, որոյ պաշտօնն է ժողովոց ատենագրութիւնքն ընել պատրաստապէս, և ապա ստորագրել տալ զայն ներկայ երեսփոխանաց, վաւերականութեան համար:

խնդիրներ յուզուած են Հօր Կարապետի Հալաճեանի կենդա_
նութեան ժամանակն։ Այլ եօթնամեայ հասակին մէջ լատին եպիսկոպոսէն կը դրոշմուին։

Զատկական հաղորդութեան սպասը ազատութիւն է որ և իցէ Լատինաց եկեղեցիներ կատարել, այլ հարկ է որ հայ ժողովրդապետն Լատինաց նման իր ազգակիցներուն տոմսակ_
ներ բաշխած ըլլայ, որպէս զի անոնք կարող ըլլան հաղորդ ընդունած եկեղեցիին յանձնել, որպէս զի յետոյ տոմսակաց ժողովմամբն կարող ըլլայ ժողովրդապետն ճանչնալ՝ խոստո_
վանչերին զատկական սպասը կատարելը։

Ննջեցեալք հանդիսաւորապէս երգօք և շարականօք կը յուղար_
կուին հայ ժողովրդապետէն, և կը թաղուին Լատինաց այլ և այլ գերեզմանատներուն. որովհետև ի Զմիւռնիա տարբեր եղբայ_
րութեանց վերաբերեալ՝ զանազան գերեզմանատներ կան։ Այսպիսի եղբայրութեանց անդամ են եւ Հայազգիք։ Թէպէտև Հայք ունէին առանձին գերեզմանատուն, բայց քաղաքին մօտ ըլլալուն արգելուած է մեռելոց թաղումն։

Տոմարի գործածութիւնն է ըստ նորոյն, յառաջագոյն քան զշինութիւն եկեղեցւոյն էր ըստ հնոյն։

Սովորութիւն էր ի թիւ պատարագի զընթերցուածն կար_

Իտալացի գրագրին պաշտօնն է տարեկան հաշիւքն կանոնա_
ւոր արձանագրել ի հաշուետումար. ատէն աննարկաւոր կը դատիմք մեք եկամտական հաշուոց վրայ մանրամասն տեղեկու_
թիւններն տալ։

Երեսփոխանաց այժմեան վիճակն աւելի օգտակար է. անոնց սակաւաթուութիւնն կը հարկադրէ մի և նոյն անձանց վերստին և յարատևաբար ժողովոց անդամ ընտրուիլ նորանոր ընտրու_
թեանց ժամանակ. և որովհետև սակաւ են՝ ըստ իմիք իրենք են ընտրողք զինքեանս, թէ և զայն կանոնաւոր երևակաւ ընեն. իսկ կանոնագրութիւնքն ըստ մասին են ի կիրառութեան, և այն ըստ հաճոյս երեսփոխանիցն. և չիք ոք որ ի գթելն նոցա, զանոնք պարտաւորութեան ածէ։ Վասն զի Առաջնորդին իշխանութիւնն յոյժ ամփոփեալ և չափաւորեալ է։

դալ դէպ ի ժողովուրդն դառնալով, որ մեր օրն խափանեցաւ: Ռոնըուայի հանդիսութեան, առաքելոց կը փոխանակեն 12 զօտացեալք՝ կաղք և կոյրք, որոնց ոտքերն կը լուացուին և իւրաքանչիւրին մոմ մի և տօնականական դրամ մի կը հատուցուի, որ կը կոչի բաօլի, և ունի 76 սանդիմի արժողութիւն: Նոյն օրն Սուրբ Գերեզմանն կը կառուցուի, և կը յաճախեն իւրաքանչիւր եկեղեցեաց Եղբայրութիւնք շապիկ հագած, նաև բազմութիւն ժողովրդեան, որով գրեթէ մինչև կէս գիշեր եկեղեցին բաց կը մնայ, անթիւ մոմերով լուսաւորած:

Ճրագալոյցի երեկոեան պատարագք թէ՛ ի Ծննդեան Տեառն և թէ ի Զատկի յարութեան կը մատուցուին ի մուտս արևու և ըստ լատինաց ի քսաներորդ չորրորդ ժամու:

Իւրաքանչիւր ուրբաթ երեկոյեան ժամն 9, եկեղեցւոյն զանգակք կը հնչեն, որպէս նաև միւս եկեղեցիներուն ի յիշատակ աւանդման հոգւոյ Յիսուսի փրկչին մերոյ:

Ի քսաներորդ իններորդ օրն, Պենտեկոստէէն յետոյ կը կատարուի եկեղեցւոյս տօնն ի յիշատակ սրբոյ Հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչի՝ որուն նուիրուած է եկեղեցիս: Յետ հանդիսաւոր պատարագի Սրբութիւն Սրբոցն կը զետեղուի ի բազմոցի, և յերեկոյի յետ ժամերգութեան օրհնութիւն կը տրուի հանդիսութեամբ: Նշանաւոր է նոյն օրուան պատարագն. վասն զի ընթերցուածէն առաջ կը մատուցանեն երկու մեծամեծ մոմեր Ս. Լուսաւորչին խորանին. ընծայաբերքն ի ծունկս իջեալ համբուրեն զաջ ժողովրդապետին և յանձնեն մոմերն՝ մին քաղաքին հիւանդանոցին կողմանէ, իսկ միւսն Լուօկօ Բիօ կոչուած որբանոցին կողմանէ. ժողովրդապետն պատարագիչ խաչ ի ձեռին կ'օրհնէ զանոնք և կառնէ մոմերն: Նոյն օրն Քափուչեան կոչուած կրօնաւոր քահանայք պարտաւոր են վեց պատարագ մատուցանել Սրբոյն Գր. Լուսաւորչին խորանին վրայ, իրենց բարերարութիւն ընող Յակոբեան Դուքսին հոգւոյն համար: Որոնց դիւրին չըլլալով տօնին վեց քահանայ գտանել, միայն 2 քահանայք կը մատուցանեն տօնին, միւս 4 պատարագներն

կը մատուցուին յաջորդ օրեր, շատ տարիներէ ի վեր:

Կը յաւելունք ասել թէ այսօրուան Լիվոռնոյ ծնած Հայն ընդնաւ զանազանութիւն չունի մէկ Իտալացիէ. հայ լեզուն չի ճանչնար, կը յորջորջի Ալֆրետօ, Կուալթիէրօ, մականունն փոխած է յԱլեսսանտրի և յՆատալի. շարականէն չախորժիր, իսկ աշխարհին պատմութեանն տեղեակ չէ, Լատինաց տօներն կը տօնէ, լատինացի քահանայից կը խոստովանի, Լատինաց պահքերն կը պահէ հետևելով անոնց չորս եղանակաց երեքօրեայ ծոմապահութեամբ: Կը դրօշմուի ի պատանեկութեան, և Լատին եկեղեցեաց յատուկ Եղբայրութեանց մասնակից է, պարտաւորեալ անոնց հետ երգել ժամերգութեան *:

Մի միայն հայ ժողովրդապետին իրաւասութեան ներքև ըլլալուն համար ի Մկրտութեան Տեառն և ի Զատկի յարութեան նա իւրն Հայ ժողովրդապետն անոր տունն կօրհնէ, կը մկրտուի, կը պսակուի, և կը թաղուի անորմէ, և միայն այս չափովս հայ կը համարուի:

Իտալական միապետութեան հպատակ ըլլալով՝ բանակի մէջ ծառայելու պարտաւորութիւն ունի, իւրաքանչիւրին չափահասութեանն ժամանակ զինուորութեան անցնելու համար քաղաքական վարչութիւնն կը դիմէ Առաջնորդին վկայագրոյն:

Այսօր Լիվոռնոյի հայ հասարակութիւնն գոյացնող իննետասն արք են, որոնց 11 Ադամեան ընտանիքէն և հինգն ի Միրմաննեանց, և երեքն արտաքուստ. իսկ իգական սեռէն ևս 19 անձինք, որոնցմէ ոմանք եկք են իտալացիներէն, որպէս

* Ազգայիններէն ոմանք քաջալերեցինք որ գան մեզմէ հայերէն ուսանին. եղան փափաքողներ այլ միշտ խօսքով. Տունօրհնէքն Լատինաց նման սենեկէ սենեակ շրջելով և օրհնեալ ջուր ցօղելով կընեն:

Թող անոնց նուազ ըլլալն, կան ոմանք իրենցմէ որ այլ քաղաքներ փոխադրեալ կը բնակին:

նաև կամ ի մերոց որոնք Իտալացւոց անցած են, վասն զի խառնեալ են ամուսնութեամբ:

Հայ հասարակութեան այժմեան կացութիւնն ի Լիվոռնոյ չէ ծաղկեալ վիճակ ինչ, այլ առաւել յետընթաց. ըստ մեզ Լիվոռնոյի Հայոց ծաղկեալ վիճակն տևեց մինչև իննևտասներորդ դարուն սկիզբն, որովհետև ազգէն պակաս չէին վաճառականք, վասն զի բազմաթիւ էին, որմէ յետոյ միշտ անկման վիճակի վերածեցաւ, ազգային նուազելովն և վաճառականաց պակսելովն*:

Ցառաջագոյն առաջնորդարանին կահկարասիքն կը վերաբերէին առանձին իւրաքանչիւր Առաջնորդաց. իսկ այժմ չէ այնպէս, այլ հարկաւորք ծառայութեանն ստացուած են եկեղեցւոյն արկղէն ի դիւրութիւն Առաջնորդին:

Առաջնորդարանն ունի եօթն սենեակ, որոնք կից ըլլալով իրարու՝ հաղորդակցութիւն ունին, որ չէ յարմար այլ և այլ անձանց բնակութեան, որով հարկ եղած է որ օգնական քահանայք առանձին առանձին բնակութեամբ բաժնուին իրարմէ մի և նոյն շէնքին մէջ այլ և այլ դստիկոններ. դստիկոն մի ալ յաւելուած է ծառային պահարանին շէնքին վրայ **:

* Դէպ ի դարուս սկիզբն, որպէս արդէն յիշեցինք, Լիվոռնոյի Հայազգիներէն Հանի Պօղոսն ընտանեօք հանդերձ ի Զմիւռնիա փոխադրուեր է իր Յովհաննէս որդւովն, որոց սերունդք մինչև ցայսօր կան ի Զմիւռնիա քաղաքի և կը կոչուին Ալիկուռնացիք. Են ևս ի նմին քաղաքի Անդրէասեանք սերունդ Պօղոսի Անդրէասեանի մեռելոյ ի Լիվոռնոյ, որ էր յերեսփոխանաց եկեղեցւոյն.

** Կը պահուի յԱռաջնորդարանի պատկեր մի հնագոյն ի վերայ տախտակի նկարեալ երկայն մէկուկէս մեթրօ և լայն հազիւ կէս մեթրօ. զոր մեք խնդրեալ տեղեկացանք ի հնագիտէ միոյ՝ թէ այն պատկեր է գործ երեքտասաներորդ դարու, որ ըստ նոցա ասի գոթացի ձև կամ բարբարոսական դպրոց: Պատկերն այն է Սրբոյն Սեղբեստրոսի Հռովմայ քահանայապետի, որ ընկողմանեալ տեսանի անդ. ի ճակատ պատկերին է խորշ մի ուր կը գուշակուի թէ արդէն եղած ըլլայ հին ոսկեձոյլ կնիքն Վիսքօնթի կոչեցեալ մար-

Առաջնորդարանին մէջ կայ գրատուն մի, ուր գտնըւել կան գրեալ. հազար հատոր տպագիր գրեանք, ի հայ, ի լատի_նական և յիտալացի բարբառ, որոնց ոմանք հազուագիւտք՝ հին տպագրութիւն ըլլալուն համար:

Եկեղեցւոյն պահարանին կից կրկին դիւաններ կան, մին ժողովրդապետական ուր պատարագաց, մկրտութեան, պսա_կի և ննջեցելոց և ազգահամարի տումարներ ամփոփուած են. իսկ միւսին մէջ գտնըւել կան եկեղեցւոյ պատմութեան և մատակարարութեան վերաբերեալ ձեռագիրք և հաշուե_տումարք, Պարոն Աստուածատուր Աղալին վերաբերեալ ստա_ցուածութեան և պարոնութեան հրովարտակք տուեալք Հռով_մայ Ս. Քահանայապետներէն: Քանի մի ձեռագիրք առանց կարևորութեան. որոնց մէջ ճաշոցագիրք մի, խորհրդատետր մի գնեալ ի Շեհրիմանեանէ ումեմնէ ի Փլորենտիա քաղաքի, և այլ խորհրդատետր մի: Հայ լատին բառարան մի յօրինեալ ի Սահփան վարդապետէ Սահփանեանց, որոյ օրինակիչն Յարութիւն Շեհրիմանեան յամի 1796: Կայ եւ հին պատկե_րազարդ աւետարան մի, յորում միայն հետևեալ գրութիւնն կայ այսպէս. «Սուրբ Աւետարանս յիշատակ է Պարոն Աւետիքին հօրն հեք Պետրոսին և իւր որդւոյն Աղամալին և Պետրոսին»:

Կը կարծուին որ այլ ձեռագիրք եւ եղած ըլլան, բայց ի ժա_մանակին Հռոմ փոխադրեալ, անյայտ եղեր են: Այսչափս կնքենք ու ինչ վասն տոլորութեանց և տեղեկութեանց Հայ գաղթականաց ի Լիվոռնոյ*:

գիզացն. վասն զի անոնց կնքոյն տուած յայտնապէս կը տեսնուի խորշին ստորևն. կնիքն ոսկեձոյլ կը պակսի, այլ այսու ամենայ_նիւ պատկերն ունի արժողութիւն այս վիճակիս մէջ իբր երեք հազար ֆրանքաց:

* Արևելք լրագրոյն 1172երորդ թուոյն մէջ յիշատակուած է թէ արդի առաջնորդ եկեղեցւոյն ի Լիվոռնոյ եկեղեցւոյն վարա_գոյրն ի բաց առնալով տեղէն, հայկական մէկ յատկութենէն մերկացուցեր են զայն:

Յամսեանն Մարտի 1887 Կիլիկիոյ Գերերջանիկ Կաթողիկոսն Ստեփաննոս Պետրոս Ժ. հաճեցաւ այց գալ ի Լիվոռնոյ. ուստի ուղղակի ի Հռովմայ Բիզա ուղևորեցաւ, և նոյն վիճակին ազնուական Քաբբօնի անուն Արքեպիսկոպոսէն արժանավայել յարգանօք հիւրընկալուեցաւ յԱրքեպիսկոպոսական պալատան մէջն, ուր գնացինք և մեք ի Լիվոռնոյէ մեծարանօք ողջունելու զնորին Սրբութիւն Հոգևոր Տեառն. որ անմիջապէս նոյն օրն հանդիսիւ եկաւ և մտաւ ի Լիվոռնոյ մեր եկեղեցին, և տարածեալ իւր Ս. Աջովն օրհնեց հանդիսատես ժողովուրդն որ եկեալ էր ընդ առաջ նորա. իսկ մեք ազգովին մեծաւ ցնծութեամբ լցեալ էինք, կաթողիկէ հայ հասարակութեան Գերագոյն Հովուին մեզ ըրած այցելութեան համար: Յաջորդ օրն որ էր Կիրակի 8–20 ամսոյն՝ Նորին Սրբութիւնն հանդիսաւոր պատարագ մատոյց մեր եկեղեցւոյն մէջ, և յետոյ օրհնութիւն տուաւ սուրբ Հաղորդութեամբ: Յետ վերջանալոյ եկեղեցւոյն հանդիսութիւնքն՝ Ազգայնոյն առանձնատան կից սենեկին մէջ պերճական նախաճաշ տալով պատուեց զՆ. Ս. ուր խուռն դիմեցին ազգայինք, այլ և քաղաքին մեծամեծքն և կանոնիկոսք, Ամենապատիւ Հոգևոր Տեառն Ս. Աջն համբուրելու և օրհնութիւնն խնդրելու: Այս ամենայն կատարուելէն վերջ, առաջնորդեալ մեք Ն. Ս. տարինք շրջելու Լիվոռնոյի գեղեցիկ ծովափունքն, և անտի գնացինք յայցելութիւն ի քաղաքապետական Պալատն: Նշանաւոր է անդ քաղաքապետին վկայութիւնն՝ որ ըրաւ Ն. Ս. յետ շնորհակալ ըլլալու նմա, և ողջունելու այնպիսի այցելութիւնն՝ որ լինն պարծանք համարած էր զայն, յաւել ըսելով թէ «Նոյն առթիւն զինքն պարտաւոր կը համարի Ն. Ս. առջեւ վկայելու թէ հայկական եկեղեցւոյն կղերն ի Լիվոռնոյ իւր բարւոք գնացիւքն, Իտալական միապետութեան մեծ համակրութիւնն կը վայելէ միշտ»:

Գերերջանիկ Կաթողիկոսն թողեալ Լիվոռնոյ ի Վենետիկ ուղևորեցաւ յետ ճաշելոյ Ազգայնոյն տանն: Այլ նա ինքն երթալէն առաջ մեր խնամեալ վարած կեանքն շատ համարելով

ի Լիվոռնոյ, շնորհեց մեզ հրաման դառնալոյ ի հայրենիս մեր. և մենք տուեալ ի մայիս ամսեանն 1887 մեր ազնիւ բարեկամացն հրաժարական ողջոյն, որոնք տխրաձեալ մեր անջատմանն մեր վերստին դարձն մաղթեցին, որոնց մեր կողմանէ պատասխանն եղաւ թէ եթէ Աստուած կամեցեր է պատրաստ եմք առ այն: Յետ որոյ հասանք ողջամբ ի Կ. Պօլիս, և կարգեցանք ժողովրդապետ ի Մեծի Կղզւոջ, ուրանօր ձեռնամուխ եղանք առաջիկայ Լիվոռնոյի Հայ գաղթականութեան և եկեղեցւոյն պատմութիւնն յօրինելու*:

* Պատշաճագոյն էր թերևս ի վեր անդր ուր սովորութեանց վրայ ճառեցինք յաւելուլ և զայս յետագայս.

Լէօբոլտոս Պարպօնի անուն դատախօսն ի Լիվոռնոյ՝ հարցեալ և տեղեկացեալ ի մէնջ զսովորութեանց և զաւանդութեանց որ յամանորումն ի Հայաստան աշխարհի, գրեաց յօդուած մի և հրատարակեաց զայն ի պատկերազարդ շաբաթաթերթի միում, այսպէս.

«Արդարև շնորհալի խմն են կրկին աւանդութիւնքն զորս ունին Հայք, որոց յիշատակն մինչև ցայսօր կենդանի պահի ի միջի նոցա. Ժողովուրդն այն պատմէ թէ ի ծննդեան Յիսուսի մանկանն, Տիրամայրն չունէր ինչ առ ի ծածկել զնա. ուստի էառ զտերևս օձախոտոյ և այնու պատատեաց զմանուկն. որ չէր այնքան յարմար առ պիտոյսն. այլ մնաց բանն աւանդական՝ որով իւրաքանչիւր բարի կիւլիկեցի Հայք ժողովեալ ի խոտոյ անտի և եփեալ զայն մեծաւ ախորժակաւ ուտեն.

«Նոյնպէս միւսն ոչ նուազ արժանի ազդոյ երևակայութեան արևելեայց: Աւանդութիւնն այն թէև առեալ և թուեցեալ ի բարձանց հասանէ մինչև ի նահապետն Նոյ. Սպիտակազարդ նահապետն իբրև ի մէջ ժայռից ի գագաթ Արարատայ լերին, չգտանէր ինչ ևս խոտոյ ի համայնաշխարհ ջրհեղեղէն. ոչ ենխուր ինչ, ոչ ծնեբեկ, ոչ հազար, ոչ բանջար, և ոչ եղերդ ինչ լեռնային, ուր կնճռեալ զդէմս և զծնօտս մածուցեալ յետս, ի խորհրդածութեան իւրում ուշադիր լինէր թէ ի խորշս տապանին անշուշտ իցեն մանրորդ փշրանք, և պաշարեաց մնացորդք, ուստի որդիքն և նուանք զհետ եղեն շրջել վեր ի վայր և թօթափել զկողովս և զզամբիղս առ ի ժողովել ի մի վայր որ ինչ էին ի նոսա. Արա-

## ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

**Միրմանեանց գերդաստան. Մաքսուդեայ մատեանն, Պարտան. Թերեզորեանց դէտ. Կայսրն Լեոն, տպանութիւնն, եղբօր ձախատումն. Միրմանեանց ցրուէլն, դեռադուք ի Վենետիկ և ի Գոակնա, էջմիածնապարտութիւնն. Գրիգոր Միրման, ճախութիւնն. Ժացորդք Նոյա, Կնիք, Ճիշգրտութիւնն: Շեհրիմանեանք յԱստրխանն ի Վենետիկ. Պօղոս խոճա, Գրիգոր խոճա, Շեհրիմանեանց թիւն ի Լէվոռնոյ, Գրիգոր խոճին տպագրանն, Շեհրիմանեանց կնիքն։**

*Առաջիկայ գլխակարգութիւնն կը փութամք նուիրելու Լիվոռնոյի Հայ գաղթականութեան վերաբերեալ կրկին ազնուական գերդաստանաց վրայ, մեզ ծանօթ ուրոյն աւանդութիւնքն յառաջ բերելով: Յիշեալ կրկին գերդաստանաց մին է Միրմանեանցն, իսկ միւսն Շեհրիմանեանցն: Արդ՝ Միրմանեան կոչուած ընտանիքն թէ՛ ի Վենետիկ, և թէ՛ ի Լիվոռնոյ քաղաքներն 1600էն առաջ ոչ միայն վաճառականութեան կը զբաղէին, այլ և Պարսից Շահին Դեսպաններն էին թէ՛ Վենետկոյ հասարակապետութեան առջին և թէ Դոսկանայու դքսութեանն: Իսկ մասնաւորապէս ի Լիվոռնոյ գտուած ընտանեաց յիշատակութիւնն է անդտին յամէն 1582: Ունիմք ի ձեռին այլ ձեռագիր*

*ընչն որ խնամեացն այնպէս, չէր կարելի ի կատարած գործոյն լքանել յերեսացն, ուրանօր գեղեցկատեսիլ երկին յետ սպառման ջուրցն տայր երաւէր, զի ագուցեալ զկօշիկս երթիցեն առտաքս ի շրջագայիլ ի զբօսավայրսն»*

*«Անդ փառաւորեալ Նահապետն պաղատանս մատուցեալ առ Աստուած և ինքնին շրջելով զթեզանիս լուցեալ կրակ մի մեծ, ելից յընդարձակ պատուկ մի զամենայն, զցորեանն, զմսրացորեն, զչամիչ, զծիրան, զշաքար, զկինամոմոն, զնուշ, զարմաւ և զամենայն յաւելուածս, զորս որդիքն և նուանք ժողովեալ էին աստի և անտի: Այսպիսի խառնուրդն կոչի Անուշապուր, որ է թան ազգային, զոր մինչև ցայսօր ժամանակի ուտեն Հայք ի Ծննդեան Յիսուսի»:*

աղերսագիր մի Միրմանեանց ուղղեալ անոնցմէ առ Աւագ Դուքսն յամի Տեառն 1619:

Արդի Լիվոռնոյ բնակող Միրմանեան եղբարց երէցն ունի մագաղաթեայ ձեռագիր մատեան մի յիտալական բարբառ, մեծութիւն նորա ըստ լայնութեան 20 սանդղիմեթր, իսկ ըստ երկայնութեան 30 սանդղիմեթր, գրեալ է Վենետկոյ հասարակապետութեան ժամանակ արքունի նօտարներէն, զոր ոչ միայն մեծաւ զգուշութեամբ կը պահէ, այլ և դժուարաւ ցոյց կուտայ զայն փափաքողաց, և հազիւ մեզ իւր իրենց առաջնորդին թոյլտուութիւն եղաւ մատենին քննութեանն, և այն սուղ ժամանակ մի:

Մատենին ճակատն գծագրեալ է ազգատոհմին փառաւոր կնիքն, որուն յարակից է տոհմային ծննդագրութիւնն, որ քաղուած է ի տապանագրաց. յետոյ այլ և այլ յիշատակական տեղեկութիւնք՝ որոնք ստացուած են Էջմիածնի Աթոռոյն դիւանէն, որոնցմով կարող են եղեր Վենետկոյ հասարակապետութեան առջևն պաշտօնապէս հաստատել իրենց իշխանազուն ըլլալն և վաւերացնել զայն:

Մենք քաղելով այն մատենէն կարևոր տեղեկութիւնները թարգմանաբար կը յարենք աստէն, որ կը համարուի հետաքրքրական և արժանի յիշատակութեան:

Ըստ մատենին, ի Բարձր Հայս Արտաշէսի յաջորդ թագաւորք՝ տարածեալ իրենց իշխանութիւնն սահմանակից ժողովրդոց վրայ՝ ունէին ի հպատակութեան զԱղուանս և զՎիրս: Միրմանեայ Պարսամ անուն որդին՝ զոր Յոյնք Պարսան կոչեցին, էր յԱղուանխատանէն, ծնեալ յԱռուծ (Aruz) ի Ջորն Աղուանեաց, ուր էր Առխծուց դղեակն, ուր և գահ իշխանական Պարտանին հօրն Միրմանայ:

Կոստանդին չորրորդին ինքնակալութեան ժամանակն Պարտանն թողեալ Առխծուց դղեակն ուղևորեցաւ ի Բիւզանդիոն, և զինուորութեամբ մտաւ Բրետորականաց լէգէոններուն մէջ, յետ որոյ բարձրացեալ գլուխ կարգեցաւ Բրետորականաց Կու_

տանդին հինգերորդին ժամանակ, և ամուսնացաւ Նիկեփորայ քրոջն Թէոդոսիայ հետ, որով մեծամեծ պատիւներու հասաւ: Վասն զի Նիկեփորայ որդւոյն իշխանութեանն գահակից եղաւ նոյն ինքն Պարտանն, և անոր մահուանէն վերջ ինքնագլուխ տիրեց մինչև իր վախճանն յամն 813: Երբ Բիւզանդականք Պարտանի երկու որդիներէն երէցն իշխանական անուանեցին կոչելով զայն Լէոն Հայկազն. Լևոն Հայկազնի պետութիւնն տևեց եօթն ամի և սպաննուեցաւ նոյն խել Բիւզանդականներէն, և անոր կրկին որդիքն ներքինացնելով աքսորեցին Բրօթի կղզին:

Պարտանին միւս որդին Գէորգ՝ Լէոն Հայկազնի եղբայրն, խակոյն եղբօրն սպանութիւնէն վերջ գնաց իւր հօրն հայրենիքն յՄղուանս, և հաստատուեցաւ անդ. ուր կը յիշատակուի անոր սերունդէն Միրման անուն մէկն, և Կիրակոս ոմն Միրմանայ որդին. որ Կիլիկեցւոց թագաւորութեան ժամանակներն Մեծին Լևոնի բանակին զինուորական էր, և յետոյ թագաւորն իշխան անուանեց զնա Բերդաւագ կարգելով Ցաննոյ կամ Անոյ քաղաքի յամին 1179. Կիրակոսի որդին Մարգար, որպէս նաև անոր սերունդն հաստատապէս մնացին յիշեալ Անոյ քաղաքն մինչև յամն 1366:

Չորեքտասաներորդ դարուն կէսէն վերջ, երեք ճիւղի բաժնուեցան Միրմանեանք. Այլաճվերտի Միրմանայ Գրիգոր որդին Բոլոնիա անցաւ, միւս որդին Յովհաննէս՝ Վրաստան. իսկ երրորդ որդին Ասբամվերտի Ջուղա բնակեցաւ, երբ հայրենիք Թաթարաց և բարբարոս ազգաց արշաւանացն ասպարէզ եղած էր, պատերազմունք իրարու յաջորդէին, և բնակիչքն ի փախուստ կանգարէին, թողով իրենց աշխարհքն ճարակ սրոյ և թրոյ: Այսպիսի տագնապներու մէջ, վեշտասաներորդ դարուն կէսերն հասաւ Շահ Աբբասն ի Ջուղա, և առեալ տարաւ հասարակ բնակիչներն տարաւ ի Պարսկաստան, հետևաբար Ասբամվերտէն սերած Միրմանեանք ևս գնացին ի Պարսկաստան և հիմնարկեցին միւս գաղթելոց հետ զՆորն Ջուղա:

Պարսից յաջորդ Շահք գիտելով Միրմանեանց իշխանազուն տոհմէ ըլլալն, ի պատուի ունէին զանոնք. և պաշտօններ կը շնորհէին. որով և դեսպանութեամբ յարգուեցան:

Ըստ վերագոյն մեր աւանդութեանն ի Լիվոռնոյ դեսպանութիւն ըրած են 1582էն ի վեր մինչև յամն 1726: Այսպէս նաև ի Վենետիկ քաղաքն. ուր 1688ին Գրիգոր անուն մէկն Միրմանեան, դիմեց հասարակապետութեան վաւերական հին ձեռագրերու վկայութեամբ, նաև Ջուղայեցի մեծամեծ վաճառականաց հաստատութեամբն՝ որոնք ևս կը բնակէին ի Վենետիկ, որպէս զի յարքունուստ մասնաւոր հրովարտակ ընդունի ի հաստատութիւն իւր ազնուականութեան, և տիտղոսներն գործածելու: Ըստ վկայութեան այս Գրիգորի իւրն Յարութիւն Միրմանեանի որդի էր, և տէր Դոսկանայու դքսութեան մէջ մեծամեծ կալուածներու, բայց քաղաքացեաց անծանօթ իւր իշխանազուն ցեղէ սերած ըլլալն, ուստի կը փափաքէր որ Վենետիկ բնակող Նոր Ջուղայեցի երևելի վաճառականաց հարցուփորձ ըլլայ, և այն քննութենէն երևան ելլէ իւր ազնուականութիւնն, որ Աստուծոյ առանձին պարգև մի էր իրեն. որպէս զի այնուհետև վաւերացեալ պաշտօնապէս իւր տիտղոսքն կարող ըլլայ գործածել զայնս: Այդ վերյիշեալ մատեանն զըրեաթէ վաթսուն երեսէ կազմեալ է և կը պարունակէ առաւելապէս վկայից քննութիւնքն. այսպիսի վկաներն եղած են Տեհրիմանեան եղբարց հետ, Խօջա Կարապետ Վելճեանց, և Ղուկաս Ալանեանց. իսկ անուն արքունի քննչի Դոմինիկոս Լաուրէթանօ: Այսչափ ինչ ի մատենէն է, ճիւղագրութիւնն ստորև կը դնենք. Միրմանեանց Կիրաք բառն որ կը յարեն իրենց մականուանն այսպէս Կիրաք–Միրման, ըստ մեզ է Կիրակոս իրենց նախորդին անունն:

Գրիգոր Միրմանեանն, Վենետիկ քաղաքին փոքրիկ Հայոց եկեղեցին՝ որ փլելու աստիճան հինցած էր, 1688ին ի հիմանց նորոգեց զայն իւր ծախիւքն և զարդարել տուաւ ներքուստ գոյնզգոյն քարերով, այսպէս և եկեղեցւոյն ճակատն իրեն

*գիրդաստանին իշխանազնեայ կնիքն յարմարեալ զետեղեց, ուր մինչև ցայսօր կը պահուի: Այս Գրիգոր նոյն* 1688 *տարւոյն վախճանելով թաղուեցաւ յեկեղեցւոջն: Իր թոռն և համանուն Գրիգոր՝ տասուերկու որդիք ունէր, և որոց անուանքն կը դնենք ստորև**:

*Աւանդական է որ Միրիմանեանք Պարսկաստանէն ի Լիվոռնոյ փոխադրուած ժամանակն անգին ակունք բերած ըլլան. այդ ակերէն մին այնքան մեծ էր որ շատերն կը նախանձեցընէր, և Պետրոս Միրիմանեանն որ կը պահէր զայն բնաւ չէր կամեցեր վաճառել զայն. իւր տունն էր յարակից Լիվոռնոյ*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| * *Միքայէլ* | *ծնեալ* | *ի Լիվոռնոյ* | 28 *Սեպտ.* 1739 | *կնքահայրն* | *Դաւիթ Յակոբեան:* |
| *Պետրոս* | „ | „ | 2 *Փետր.* 1741 | „ | *Գրիգոր Աղաօղլու:* |
| *Ֆրանչի* | „ | „ | 2 *Հոկտ.* 1743 | „ | *Գասպար Մարկոսեան:* |
| *Յովհ. Յովակիմ* | | *վինենտիկ* | 12 *Յուլ.* 1744 | „ | *Յովակիմ Մարկոսեան:* |
| *Յուստինէ* | „ | „ | 13 *Սեպ.* 1746 | „ | *Յովակիմ Մարկոսեան:* |
| *Ստեփան* | „ | „ | 14 *Հոկտ.* 1747 | „ | *Առաքել Արիլեան:* |
| *Յարութիւն* | „ | „ | 11 *Մայիս.* 1749 | „ | *Առաքել Աբելեան:* |
| *Կարապետ* | „ | „ | 25 *Սեպ.* 1750 | „ | *Պօղոս Շեհրիման:* |
| *Մարի Թերեզա* | „ | *Լիվոռնոյ* | 8 *Փետր.* 1752 | „ | *Պօղոս Շեհրիման:* |
| *Բեռնարդոս* | „ | „ | 8 *Օգոստ.* 1753 | „ | *Անտոն Րանիէրի:* |
| *Յակոբ* | „ | „ | 8 *Մարտ.* 1775 | „ | *Պօղոս Շեհրիման:* |
| *Աննա Խոսրովիդուխտ* | „ | | 24 *Յուլ.* 1756 | „ | *Կարոլոս Կարկանի:* |

քաղաքին պարապացն. յամն 1716 ի գիշերի միոջ գողք բնակարանն և սպանեալ զՊետրոս գողացեալ ակն տարին*:

Միրմանեանք հետզհետէ վաճառեցին իրենց անսպառելի ստացուածքն և մեծամեծ գումարներն, անանկ որ այսօր ի Լիվոռնոյ եղող Միրմանեան երեք եղբարքն Ստեփան, Յովսէփ և Եղիա յետին աստիճան աղքատ են, և բուռն գործելով կը պարապին գործարանաց մէջ. սոյն երեք եղբարք ծնած են Լիվոռնոյի լեռնակողմն մէկ պալատին մէջ, զոր վաճառեց իրենց հայրն Գրիգոր ի չքաւորութեան: Յիշեալ երեքն ամուսնացեալք են, յետին երկուքն ունին դստրեր, իսկ Ստեփանն ունի կրկին որդիք, որոնց անուանքն են Աւկուսթօ և Ալֆրէտօ:

Այսպիսի փառաւոր Տոհմին յետին մնացորդք կը գտուին տնանկացեալք ի Լիվոռնոյ: Իսկ արտաքոյ եղողներուն վրայ տեղեկութիւնք կը պակսին: Այժմ են ի Ռուսաստան Միրիմանեան մականուամբ ընտանիք**, զուցէ ազգականք Լիվոռնոյի Միրմանեանց: Որպէս նաև հանդիպած եմք մեք ի Գաղղիա փաստաբանի միոյ՝ գրեթէ ութ տարի առաջ ի Գաղղիա հալածեալ հայց կրօնաւորաց պաշտպանութիւն ընելուն առթիւն որ կը կոչուէր Միրման, որ չէ յայտ թէ անոր նախնիքն հայ ըլլան, զոր տեսած եմք յերկաթուղւոջ ի ճանապարհորդելն:

Միրմանեանց կնքոյն ձևն է, երկգլխեան արծիւ և թագ արքունական՝ նշանակելով Յունական իշխանականութիւնն. արծուին կուրծքն՝ կողմնակի կը տեսնուի այն մէկ կապոյտ դաշտի վրայ՝ նշանակ տոհմին ազնուական ըլլալուն, միւս կողմանէ մէկ աղաւնի թռուցեալ, նշանակ Աղաւնեաց ձորոյն ուր բնակեցաւ առաջին Միրման: Ի միջավայր կնքոյն է առիւծ մի ի

* Միրմանեանք ի Լիվոռնոյ ունին եւ քանի մի հին պարգևագիր, որոնք շնորհուած են իրենց ի Կիլիկեցւոց և ի Պարսից։

** Յորս Բազարատ Միրիմանեան վարիչ վարժարանին ի Տփխիս։

գնացս՝ նշանակ առիւծուց դղեկին, իսկ առիւծին ստորև զե-տեղեալ է տակառաձև փեթակ մի, որմէն մեղուներ կելլեն, նշանակելով՝ թէ Աղաւնեաց ձորոյն գլխաւոր և անուանի բերքն է ազնիւ մեղր:

Դնենք ի հետագայ իջին զճիւղագրութիւն Մխիթարեան տոհ-մին, ինչպէս գտեր եմք ի մագաղաթեայ մատենին, յաւելլով մեր կողմանէ զհինգ անուանս, որ կը պակսէին ի մատենին, զոր յայլուստ լրացուցինք:

5 Աւետուաթ 1865

4 Ստեփան 1829

3 Գրիգոր 1803

2 Ստեփան 1747

1 Գրիգոր 1721

Յարութիւն 1741

Գրիգոր 1688

պակաս

Կիրակոս 1616

Ամիրօն 1567

Գրիգոր 1550

Ամիրօն 1518

Աբրամվերդի 1478

Ալլահվերդի 1441

Աբրամվերդի 1399

Ալլահվերդի 1364

Մարգար 1240

Կիրակոս 1179

Պարտան 800

*Ծննդագրութիւն իշխանազուն տոհմին Միրմանեանց ի Լիվոռնոյ։*

*Իսկ Շահրիմանեան ազնուազարմ Տոհմին գալով՝ կարծիք են թէ մնացորդ ըլլան հին մէկ նախարարութեան. ասոնք եւ ունէին մեծագումար ստացուածք, և թողեալ զՆորն Ջուղա տարածեցան ի Մատրաս Հնդկաց, ի Վենետիկ և ի Լիվոռնոյ. Տեսնելով մէկ հին յիշատակագրին աւանդութեանն՝ իրենց հետ Շահրիմանեանք շուրջ երկու միլիոն տուգաթ բերեր են յԵւրոպա, որմէն մէկ միլիոնն զետեղած կը պահէին Լիվոռնոյ քաղաքի Վենետիկ կոչուած մասին իրենց վերարերեալ ապարանին մէջն: Միշտ բազմաթիւ եղած են ի Լիվոռնոյ քան զՄիլմանեանս, և ընդհանրապէս վաճառականութեամբ զբաղած են, բազմիցս ճամբորդութիւններ ընելով: Շահրիմանեանք էին՝ որ վենետկական հասարակապետութեան պատկանեալ անդերու մէջ որկղի մշակութիւնն եւս քան զեւս ծաղկեցուցին և անուանի եղան՝ որ նոյն հասարակապետութեան երկրին գլխաւոր և շահաւէտ արգասիքներէն մին համարուած էր:*

*Շահրիմանեանք ոչ միայն Իտալիոյ փոքրիկ պետութեանց առջեւ պատիւ ունէին, այլ և յԱւստրիա, ուր երթեւեկած են եօթնտասներորդ դարուն վերջերն: Յամն 1699 Աւստրիոյ Կայսր Լէոբոլտոս Ա. Շահրիմանեան Տոհմին Պարգեւագիր մի շնորհեց իր ստորագրութեամբ, որով դասակից և հաւասար անուանեց զանոնք Աւստրիոյ ազնուականաց՝ և կոմսութեան տիտղոս շնորհելով բովանդակ գերդաստանին: Մենք սոյն Պարգեւագրին հին հայերէն թարգմանութիւնն կը դնենք ի յաւելուածն պատմութեանս:*

*Շահրիմանեան գերդաստանին Վենետկոյ հասարակապետութեան մէջ հաստատեալ ճիւղն հետզհետէ խառնեալ ամուսնութեամբ Իտալացւոց հետ, սակաւ առ սակաւ հայութենէն հեռացան, որոնց մին իննեւտասներորդ դարուն սկիզբն Քեօճճա կոչուած թեմական Աթոռոյն Եպիսկոպոս անուանեցաւ լատին ծիսի:*

*Շահրիմանեան Կոմսն Պօղոս որդի Աստուածատրոյ կը յիշուի բազում գովութեամբ, որ եղաւ անուանի զօրավար Աւստրիոյ*

կայսերական բանակին մէջն. որուն զանազան քաջութեանցն համար, Կայսրուհին Մարիա Թերեզա մէկ ոսկի խաչով վարձատրեց զանի. այն Պօղոս Կոմսն Պոհեմիոյ մէջ երկարատև զօրաց հրամանատարութիւնն ըրաւ, ապա Տալմացիա անցաւ, և յետոյ ի Վիէննա և ի Թրիեստէ, և հուսկ ուրեմն ի ի Ֆլումէ, ուր Հունգարացի Ասպետ գժտութեամբ ըլլալով հետն, մեղացաւ և գնաց ի Կորիցիա բնակելու ընտանեօքն հանդերձ, յարքունուստ ունելով տարեկան երկու հազար ֆիորին ի ռոճիկս, ուր վախճանեցաւ ի հասակի 69 ամաց յամին 1790:

Պօղոս Կոմսին միւս եղբայրն կը կոչուէր Զաքարիա անուանի գրագէտ ժամանակին, որ և էր եկեղեցական: Իսկ անոնց հօրեղբայրն Կոմսն Էմմանուէլ՝ դեսպանութեան պաշտօն կը վարէր ի Ռուսաստան Պարսից Շահին կողմանէ: Էմմանուէլ Կոմսին որդին Մարգար Կոմսն վախճանեցաւ ի Լիվոռնոյ յամին 1789. իսկ միւս որդին Յովհաննէս Կոմս վախճանեցաւ ի Մատրաս Հնդկաց յամն 1791: Իսկ Գրիգոր Կոմսին բարեպաշտութեան յիշատակութիւնն ի պատիւ հրաշագործ Ս. Խաչելութեան Յիսուսի որ կը մեծարուի հայկական եկեղեցւոյ մէջ ի Լիվոռնոյ արդէն եղած է յընթացս պատմութեանս: Յիշեալ բարեպաշտ Կոմսին անուանն ընծայուած է Պատրատեանց Գէորգ վարդապետէն պղնձատիպ գեղեցկաշէն պատկեր մի մեծ, Ս. Հայրն մեր Լուսաւորիչ զետեղուած է միջավայրն և շուրջն Ս. որդիքն և թոռունքն և այլ սուրբք Հայաստանեայց եկեղեցւոյ. եւ երեք Անձինք ամենասուրբ Երրորդութեան. ուր սուրբ Լուսաւորչին ոտից կողմն գրեալ է «Ահաւասիկ ես և մանկունք իմ՛ զոր ետ ինձ Աստուած»: Հոյակապ պատկերիս ստորեւ կայ Շեհրիմանեան Տոհմին կնիքն և հետևեալ գրութիւնն այսպէս (յամն 1786)*:

* «Առ Ազնուական Պարոն Գրիգոր Շեհրիմանեան — Յիսուսի վայելուչ իմն թուեցաւ մեզ ի լոյս ածել զպատկերս զայս յանուն պերճապայծառ Ջերումն Տէրութեան, որ ի մէջ սերնդոց գիւցա-

Ծնդրխմաննեանք թէ և այնքան ընչաւէտ և բարեպաշտ՝ այլ չեն յօժարած ամենևին հայ հասարակութեան վերաբերեալ ազգային տուրքերն վճարել, այն պատճառաւ յամի 1731 Դաւիթ Կոմսն և Նիկողեցւոյն երեսփոխանք ի Լիվոռնոյ անհամաձայն վարեցան նոցա հետ:

Նիկողեցւոյն ազգանամարական տետրի մէջ յամի 1788 կան նշանակեալ Ծնդրխմաննեանց անուանքն որ ի Լիվոռնոյ, և են Մարգար, Դաւիթ, Ստեփան, Գրիգոր, Յարութիւն, Պետրոս, Կարապետ, Գրիգոր փաստաբանն, Փիլիպպոս, Միքայէլ, Յովհաննէս, արք մեծատունք: Մարգար Կոմսն ունի իւր կենդանագիրն պղնձատիպ, որուն ստորեն տոհմային կնիքն և ծնունդեան տողերն. «Կենդանագիր համանման, Մարգարայ Ծնդրխմաննեան, Աշխարհաշուրջ ճամփորդեան, Պաշտօնատար Հայկազնեան»: Իսկ փաստաբանն Գրիգոր ունէր իւր անուանն տոմսակն, որուն մէջ մեծաւ ճարտարութեամբ գետեղեալ և գծեալ քանի մի առարկայք, յայտարարք էին Գրիգոր Կոմսին իբրև զհռչակաւորն Միքէլ Անճելօ՝ քանդակագործ, պատկերահան, բանաստեղծ և միանգամայն բանագէտ ըլլալն:

Մեր Հայկական Գերեզմանատունն ի Լիվոռնոյ գտած եմք Գրիգոր Կոմսին տապանագիրն իւր ազնուազարմ կողակցին հետ լատինական բարբառ, որուն թարգմանութիւնն է. «Աստ թաղեալք կան մարմինք Գրիգորի Իմաստասիրի Ծնդրխմա-

ցանց արանց ազգիս մերոյ, ծերոյին ազնուատոհմութիւնն անցեալ ցանցեալ զամենեքումբք, հանրահռչակեալ պանծոյ հնութեամբ, պերճութեամբ և սիրալի ընտիր ընտիր արամբք, որք յամենայն ուրեք փայլեցան պէսպէս քաջագործութեամբք թէ ի Պարսկաստան, թէ ի Հնդկաստան, և թէ ընդ բոլոր Եւրոպիա։ Եւ առաւել անուանակից գոլով ծեր Սրբոյ Հօրս մերոյ Գրիգորի Լուսաւորչին Հայաստանեայց Հայրապետին. զորոյ զազգանամարութիւնն որդւոց և թոռանց նորա պատկառելի կարգեցաք, իբրաւցի համարեցաք բարեհամբաւել, և զձեռն անուն յայսմ գործակցութեան, ինչանակ սիրոյ և պատուոյ չնաշխարհիկ տանդ Ծնդրխմաննեան, որոյ բազմաց ի նոցանէ ի բազում ուստեք արժանի ե-

նեանց և կողակցի նորին Տարեայ Պարթօղուչչի, կեցեալ երկոքին իսկ արդար գնացիւք առաջի Աստուծոյ, առաջի մարդկան, և առաջի իւրեանց:

« Գրիգորն խորին ուսմամբ և իմաստասիրական օրինակաւ, իսկ Տարեա քրիստոնէավայել առաքինութեամբ և համբերատար ի վշտալից հիւանդութեանց:

« Եղեն օրինակք բարի ամենեցուն, անձկալիք բարեկամաց և բարեկամք բարեպաշտից:

« Մին հանգուցեալ ի 1820, և միւսն ի 1821, թողին յերկրի յարգական յիշատակ և անձուկ իւրեանց սիրելեաց »: Արտաքոյ քան զԼիվոռնոյ վախճանեալ քանի մի Տեարխմանեանց ժառանգութիւնքն առացան Լիվոռնոյ եղողքն, որպէս երբ հանգեաւ ի Տէր յամի 1845 ի Մատրաս Հնդկաց Յովհաննէս Կոմսն որդի Միքայէլի Կոմսի, երեւելի վաճառականի:

Այժմ ի Լիվոռնոյ Տեարխմանեանց գերդաստանն անհետ եղած է, բայց ի Վենետիկ կան դեռ ևս մնացորդք ի սնանկութեան. ի Լիվոռնոյ յամի 1867 մեռածախօսեւ վախճանեալ կըլկին բոյք Մարիաննա և Վարդուհի Պարթօղինի—Տեարխմանեան, եղեն Տեարխմանեան մօր կողմանէ և առհմին յետին յիշատակն: Արդարև եղկելի է, որ անչափ դարերէ ի վեր ծաղկեալ տոհմն ու, պատուով և վաճառականութեամբ փարթամ և բազմամեայ բնակիչքն, տարածեալ և հաստատեալ այլ և այլ կողմեր՝ այժմ անհետ եղած է, մեր միւս իշխանազանց հետ որոնք հայրենեաց կործանումէն վերջ, գաղթելով ցրուած էին եւրոպի վաճառաշահ քաղաքներ:

ղաք տեսութեան։ Որպէս և ի վերջոյ ի հռովմ պանծալոյդ, և անմոռանալի որդւոյդ Պարոն Յարութեանին. վասն որոյ ընդ նախապատուիլն այսոցիկ երանելեացս և ազգային արանցս, յիշեցին հանապազօր և պատուական անուանք ձեր. ընդ որս և անարժանութիւնս մեր, որ եմս ամենախոնարհ ծառայ ձեր « Գէորգ Վարդապետ Պաղտասարեանց Անթապեցի» ։ ( Որուն հանդէպ կայ գրեալ խաչերէնն)։

Ի յիշատակ Տեհրխմանեանց Վենետիկ քաղաքն կայ աղքա-տաց համար կանգնեալ արհեստից վարժարան մի, Մանին կոչուած. որուն շնորհած է կտակաւ իւր բովանդակ ստա-ցուածքն Տեհրխմանեան ոմն ի մեռանել իւրում: Այժմ ի Լի-վոռնոյ կը պահուին Տեհրխմանեանց մեծագին իւղաներկ կնիքն կտաւի վրայ նկարուած, և որպէս աւանդած եմք այլուր, բա-ռարան մի ձեռագիր Լատին - հայ, և խորհրդատետր մի, և տպագիր պատասխանական վէճքն, զոր մենք ստացեալ յայ-լուստ զետեղած եմք ի դիւանատան:

Տեհրխմանեանց ազնուազարմ տոհմին կնքոյն ձևն է այս-պէս. քառակուսի չորս խորշերէ բաղկացեալ մէկ վահան, որուն վրայ կայ զետեղեալ թագ իշխանական, վերին խորշերէն ա-ռաջնոյն մէջ կապոյտ դաշտի վրայ չորս աստեղք կան, եր-կրորդին մէջ երկգլխեան արծիւ մի: Վարի խորշերէն առաջ-նոյն մէջ դարձեալ երկգլխեան արծիւ որպէս վերագոյն, իսկ վերջին խորշին մէջ երկու բազուկք, որոնք իրարու կցեալ եր-կու կողմէն ունին սիրտ մի վերացուցանելով:

## ԳԼՈՒԽ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

Հայաշէն քաղաքական և վաճառական է Վենետիկ. Ս. Խաչ եկեղեցին, հայկական տեղեկութիւնք. Ծերակուտին հրովարտակութիւնն — Հայ. Մխիթար Աբբահայրն. Ս. Ղազար կղզին. Մենաստան, դպրոցն, և վարժարան. Անտոն, Ս. Լազարեան, Հայոց եկեղեցին. Հայաշէն կտակն, անոնց ժառանգութիւնն և կալուածոց վաճառումն. Հայաշէն հոգաբարձուաց ժողովոյ:

*Մինչև ցարդ զբաղեալ էինք ի պատմել որ ինչ գիտելի էր Լիվոռնոյ քաղաքին Ազգայնոց վրայ. այսուհետև մեր ակնարկն դարձուցեալ յայլ և այլ իտալական քաղաքներ, նկատենք որ ինչ յիշատակական աւանդութիւնք մնացած են ի մեր նախնեաց գաղթականութենէն: Հայք բազմածանօթ եղած են իտալացի ժողովրդեան կանխագոյն քան երթևեկութիւնքն հայազգի վաճառականացն յիտալիա, և կամ Վենետիկոյ ի Հայաստան. ևս կանխագոյն քան զԽաչակրաց ժամանակն: Սկսեալ ի հռչակաւոր Ներսէս Պատրիկէն՝ որ Յուստինիանոս Կայսեր կողմն զօրավարն էր, և իւր հայ նիզակակիցներովն վեցերորդ դարուն մէջ ասպատակելով արշաւեց յԻտալիա, և բուռն զօրութեամբ հուանեց Իտալիոյ մեծագոյն մասն, ուր և վարեց իւր կեանքն փոխարքայութեամբ:*

*Թո՛ղ առանձնականաց հետզհետէ երթևեկութիւնքն ի Հռովմ յուխտ գերեզմանաց գլխաւոր առաքելոցն, ի մնանաւորի գաղթականութիւնք սկսած են ի մետասաներորդ դարուն ի Վենետիկ քաղաք. որպէս վկայած է զայն բարձրաստիճան մէկ ատենադպիր վենետկական հասարակապետութեան, ըստ յիշատակութեան Ճնախօս Հօր Ղուկաս Ինճիճեան:*

*Սամուէլ Երիցու ընդարձակողն՝ կաւանդէ թէ մեր Կիլիկիոյ թագաւորութեան վերջացած ժամանակն յամին 1413, երեսուն հազար հայազգիք, որոնց մէջ բազմաթիւ արքայազունք*

և իշխանազարմք յԻտալիա փախուցեալ հաստատեցան այլ և այլ կողմեր: Եւս յաջորդ դարերու մէջ շարունակեցան այլ գաղթականութիւնք, և այն ի Լեհաստան և յԻտալիա, երբ բազմացան եւ վաճառականաց երթևեկութիւնք, որոնց կեդրոն կարող է համարուիլ Վենետիկ քաղաքն. և եթէ աւելի նախանձախնդիր ըլլային ազգութիւննին պահելու հաստատուած տեղերնին, անոնց սերունդն և որդիք մինչև մեր օրեր կրնային հասնիլ. այլ աւա՜ղ որ չեն տեսած, պատճառն կը գրէ բազմահմուտ Հայր Ղ. Ալիշան թէ ի Դիւանս անդ Վենետիկ քաղաքի գտանին երկու հարիւր ամուսնութեանց արձանագրութիւնք ընկ ի Վենետիկ քաղաքի արարեալք խառն Հայոց և Իտալացւոց մէջ: Որոնց լաւ էր եթէ իրենց հայրենիքն մնային, քան թէ գաղթել խալսու աննետացած ըլլային օտարաց մէջ:

Եւ որովհետև Վենետիկ քաղաք ծովեզերեայ թագուհին՝ կեդրոն համարուած էր մերոց վաճառականութեան, սկիզբն առնելով մեք ի Վենետիկոյ ըստ կարգի աւանդենք իւրաքանչիւր քաղաքաց գաղթականութիւնք ուր Հայք աւելի կամ նուազ յիշատակ թողած են իրենց ազգութեան: Այլ խորհրդածութիւն մի եւ ունինք ընել. որ է՝ մերոց յԻտալիա յաճախելուն պատճառներէն մին զուցէ թերևս Հռովմայ Ս. Քահանայապետէն պաշտպանութիւն գտնելու համար եղած ըլլայ, որոնք անչափ փութով խնամեցին Ռուբինեանց և անոնց յաջորդ Լուսինեանց իշխանութիւնն: Լուսինեան թագաւորաց ժառանգութիւնն, Սարտենիական թագաւորաց անցնելուն համար է՝ որ ի Դուրինօ քաղաք թագաւորական կնքոյն մէջ վահանին վրայ կը նշմարուին քառածև խաչեր. այն քառածև խաչերուն առաջնոյն մէջ կան այլ եւ չորս խաչեր կամ բաժանումներ, որոնց երկուքին մէջ են կրկին առիւծք կարմիր արքայական թագերով, որոնց մին նշանակ է Հայոց թագաւորութեան, իսկ միւսն Կիպրոսի թագաւորութեան:

## ՎԵՆԵՏԻԿ

*Քաջածանօթ են Վենետիկ քաղաքն այցելութեան գնացողք և տեսած են հոն Ս. Մարկոսի եկեղեցւոյն աւագ դրանն կից կրանիտ սիւներուն վրայ բազմաթիւ Հայոց անուանքն գրուած, գրեթէ երկու դարի միջոց՝ թուականաց զանազանութեամբն, վասն զի սկսեալ են յամէն 1613, և վերջացեալ յամն 1791:*

*Հայք բնակութեամբ եւս հաստատեալ էին յիշեալ Մայր եկեղեցւոյն մօտերն, որպէս նաև Սրբոյն Պօղոսի և Յովհաննու նուիրուած եկեղեցւոյն կողմերն: Իսկ Ս. Մարիամ Ֆորմօզայ եկեղեցւոյն կից փողոցի մը անունն ի յիշատակ հոն բնակեալ Ջուղայեցի հայ վաճառականաց մինչև մեր դարն կը կոչուէր Փողոց Ջուղայու: Յիշատակելի է նաև մերոյս Սրբոյն Վլասայ Հայրապետին Ս. Աջն որ ի հնուց հետէ փոխադրեալ ի Վենետիկ քաղաքն, անդանօր կը պահուի յարգանօք ծանօթ եկեղեցեաց միոյն մէջ:*

*Այսօր Իտալիոյ մէջ դեռ մեր ազգին սեպհական ստացուած մնացեալ սակաւաթիւ եկեղեցիներէն մին համարելու է սուրբ Խաչին եկեղեցին ի Վենետիկ. որուն հիմնադիրն եղաւ Կաստրիկնոս Ծէնոյ անուն վենետկեցի ազնուականն, որ երախտագէտ պարգևեց զայն եկեղեցի Հայազգեաց՝ անոնցմէ ընդունած ինչ ինչ ծառայութեանց փոխարէն: Յետ ժամանակաց մեծապէս աւերեալ ըլլալովն, վասն զի շինեալ էր հնգետասաներորդ դարու մէջ, յամն 1688 ի հիմանց նորոգեց եկեղեցին գոյնզգոյն քարամբք և վայելչութեամբ Խօճա Գրիգորն Միրմանեան: Այժմ ունին եկեղեցին ՎՎ. ՀՀ. Մխիթարեան Միաբանութեան և իւրաքանչիւր կիրակի պատարագ մի կը մատուցուի:*

*Իսկ եկեղեցւոյս մօտ կայր ապարան մի, Վենետկոյ հասարակապետութեան Սեբաստիանոս Տոժին Մարկոս անուն որդին շնորհեալ հայազգի եկեղեցականաց բնակութեան հա_*

սալ. որ և կտակաւն հրամայեց, նոյն ապարանին նորոգութեան համար հարկաւոր ծախքերն ըլլան իւր թողած ստացուածոց եկամտովն: Բարեբախտ այս Մարկոս բոլանզակ ճոխութիւնն Ֆրանչիսկեան կարգին կրօնաւորաց թողուց, պարտաւորելով զանոնք ըստ կտակին վարել: Այլ չեղև այնպէս, վասն զի երբ եկեղեցւոյն նորոգութիւնն եղաւ, Ֆրանչիսկեանք չյօժարեցան ապարանին նորոգութեանն ձեռնտու ըլլալ, որով վէճք ծագեցան, և վճռով դատաւորաց պարտաւորեցան Ֆրանչիսկեանք ըստ մասին օգնելու եղած ծախուց: Կը յիշատակուի ևս որ նոյն ապարանին կից եղած ըլլայ Հայոց համար գերեզմանատուն մի:

Ս. Խաչի եկեղեցին կը կատարուէին պատշաճական հոգևոր հանդիսութիւնք և տարեկան տօնախմբութիւնք, և կը յաճախէին անդ Վենետիկ քաղաքին լաւինածէս Պատրիարքն և ազնուականքն, իսկ Հայք այսպիսի հանդիսութեանց առթիւ այցելուաց ծաղկի փունջեր կը պարգևեն եղեր: Մեծ էր և եզական Վենետկոյ հասարակապետութեան Հայոց ըրած պաշտպանութիւնն և շնորհքները, որոնց պատճառն չէր միայն Կիւլիկիոյ թագաւորութեան հետ եղած դաշնադրութիւնքն, այլ և մանաւանդ մեր Հայազգի վաճառականաց նոյն հասարակապետութեան շահուն համար մատուցած ծառայութեանց համար, որոնց ապացոյցներն կը գտնին յիշեալ քաղաքին արքունի դիւանացն մէջ: Այլ մասնաւորապէս յիշատակութեան արժանի է ծերակուտին մէկ հրաման որ գումարեցաւ ի 24 Ապրիլի 1640. որուն արձանագրութեանց մէջ գրուած է այսպէս. «Այս ազգին օգնելն օգտակար է մեզ որ վաճառականութեամբ, մանաւանդ մետաքսի տուրևառութեամբ ի Վենետիկ քաղաքն կը յաճախէ:»: Այսպէս արքունի դիւանին այլ և այլ յիշատակութեանց մէջ Հայոց ազգն կոչուած է ի ծերակուտէն՝ բարեպաշտ, սիրելազգին, հաճոյական, օգտակար, միշտ շահաւոր: Ի նշան համակրութեան ի կողմանէ ծերակուտին հրաման շնորհուած էր Հայոց որ արձակ համարձակ իրենց վաճառքներն, Վենետ-

կոյ Ս. Մարկոսի հրապարակին վաճառեն առանց ինչ հարկ վճարելու. այսպէս որ և իցէ գոյութիւն ըրած է հասարակապետութիւնն, որովհետև հանգուցած էր թէ միայն Հայք են զարգացուցիչ վաճառականութեան և ծաղկեալ վիճակին Վենետկոյ: Ի մասնաւորի որկզի մշակութեան ճոխութիւնն որ եղած էր հայազգի Շեհրիմանեանց ազգեանք. ի մի լաւն երկայն ժամանակ Հայք յիշուի վաճառականութեան շարժառիթն եղան և գանձերու տէր. ունէին Ս. Մարկոսի հրապարակին վրայ շատ շարժական խանութներ, և կը վաճառէին կերպասներ, գորգեր, և մարգարիտներ, որ կը զանազանուէին միւս ազգերէն իրենց հայկական տարազովն: Մինչև 1800 դեռ կային յիշեալ հրապարակին վրայ երկոտասան կրպակներ. ժամանակակից վենետկեցի մէկ իշխան՝ դժկամակեալ Հայոց վայելած այսպիսի առանձնաշնորհութեանց, փութաց խափանել և արգիլել զայն. այլ դատաւորք պաշտպանեցին Հայոց իրաւունքն, սատարութեամբ աղձանագրութեանց դիւանին արքունական:

Այսպէս Վենետկոյ ծերակոյտն յօժարութեամբ և առանձին վճռով շնորհեց բարեյիշատակ Մխիթար Աբբահօր Ս. Ղազարու կղզեակն յամեան Սեպտեմբերի 1717. որ իւր միաբանակիցներովն արդէն թողեալ զՄոտոն, (ուր ունէր զմենաստանն Մեթոնի), դիմեալ ապաստանած էր և խնդրած նոյն ծերակուտէն ապաւինականութիւն ի Վենետիկ քաղաքի: Ս. Ղազարու կղզեակն ժամանակաւ մուրացիկ աղքատաց անկելանոց ըլլալու ծառայած էր, և ունէր մէկ փոքր եկեղեցի, և ինչ ինչ բնակարաններ. որոնց մէջ առժամանակեայ եղանակաւ զետեղեցաւ միաբանութիւնն սակաւ նորոգութիւն ընելով մինչև յամն 1740. երբ այժմեան գեղեցիկ վանքն շինեցաւ: Շէնքն կրկնայարկ է, վանաց միջավայրն քառակուսի պարտէզ, կողմնակի սրահներ. անդ է վայելուչ մէկ եկեղեցի որուն մէջի փառաւոր վեց սիւներն հնազոյն են, եկեղեցին հինգ խորան_

ներ ունի. Աւագ Սեղանոյն առջև թաղեալ կայ բարեացապաշտ Մխիթար Աբբահօր մարմինն*:

Վանուց մէջ կայ մատենադարան՝ ուր ամփոփուած են հայկական ընտիր և պատուական ձեռագիրք: Թանգարան մի ուր ի մէջ այլոց նմուշներուց կը պահուին նաև ազգային դրամք, և մերոյս Լևոնի վերջնոյ ոսկեզիր սուսերն** . և Նորընծայարան ուսմանց: Թէ և նախ քան զՄխիթար Աբբայ՝ ազգային տպագրութեան անդրանկութիւնն ի Վենետիկ եղած է յամն 1565 Աբգար դպրի արդեամբք, և յետ նորա եղած են այլ բազում տպագրութիւնք ի տպարանս Պօլսոյ Անտոնի և այլն, այլ սկսեալ յամէն 1788 հաստատեցաւ առանձին տպարան ի Սուրբն Ղազար, որուն յոգնաթիւ հրատարակած տպագրութիւնք արդարև Ազգիս գրականութեան մեծ ծառայութիւն մատոյց, որով Մխիթարայ սոյն անմահական գործն ընդհանուր Ազգին համակրութեան արժանի եղաւ: Նոյն իսկ Մեծն Նափոլէոն Պոնապարդ յարշաւելն իւրում ի Վենետիկ յայցեց Ս. Ղազարու կղզեակն:

Ի Ս. Ղազար Մխիթարայ յաջորդած են հետզհետէ այլ Աբբահայրք: Յամն 1750 Ստեփան Վ. Մելքոնեան, յամն 1800 Ստեփան Վ. Գիւլեր Ագոնց՝ որ ձեռնադրեցաւ Արքեպիսկոպոս ի Հռովմ. 1826ին Սուքիաս Վ. Սոմալեան Արքեպիսկոպոս, յամն 1846 Գէորգ Վ. Հիւրմիւզեան Արքեպիսկոպոս. յամն 1876 Իգնատիոս Վ. Կիւրեղեան Արքեպիսկոպոս:

Ստացեալ ունի Յարգելի Մխիթարեան միաբանութիւնն ի Վենետիկ քաղաքի ընդարձակ գեղեցկաշէն ապարան մի՝ ուր հաստատած է Մուրատեան և Ռափայէլեան կոչուած միացեալ վարժարաններն***:

* Ս. Ղազարու վանաց թիկունքն կայ փոքրիկ գերեզմանատուն, ուր թաղեալ կան վարդապետք և աշխարհականք և ունին առանձինն տապանագիրք:

** Սուսեր վրայ դրոշմեալ է. «Տուր Տէր զօրութիւն ծառայի քոյ»:

*** Մելքոնեան Աբբահօր կենդանութեան ժամանակ յամն

## ԱՆՔՈՆԱ

Անքոնա ծովեզերեայ քաղաքն եւս՝ երեքտասաներորդ դարէն սկսեալ՝ երթեւեկած են մերազգի վաճառականք եւ հաստատուած անդէն բնակութեամբ եւ ընտանեօք, որոնց թիւն հասած էր մինչեւ հարիւրյիսուն ընտանիք, որոնք ունէին իրենց յատուկ եկեղեցին եւ հայածէս քահանայն իրենց հոգաբարձու, ըլլալով միշտ ի յարաբերութեան Վենետկոյ եւ Լիվոռնոյի Հայոց հետ: Անքոնա քաղաքին պաշտպանն՝ Սուրբն Կիւրիակոս համարուած է տեղացի պատմիչներէն հայազգի եւ թագաւորազուն. ոմանք կարծեն թէ ծնեալ ըլլայ ի Դուին քաղաք, իսկ այլք ի կողմանս Կիլիկիոյ, ի Սիս, եւ թուականքն իսկ կը տարբերին մեծապէս: Արդ հրաշագործս այս Սուրբ Կիւրիակոս պանդուխտ հասած եւ ապաւինած էր Խաչակրաց կարգին մենաստանն յԱնքոնա քաղաք, յետոյ երթեալ անապատի կողմերն Սրբոյն Սեղբեստրոսի եկեղեցւոյն մերձ, առանձնական կեանք վարեց եւ ի հոտ սրբութեան հանգեաւ ի Քրիստոս: Կաւանդեն նա Սրբոյն վարուց պատմիչքն թէ թագաւորին մեծին Հայոց ի լսել Սրբոյն մահն, առաքեց իւր դեսպաններն որպէս զի արքայավայել հանդիսիւ փոխադրեն անոր մարմինն ի Հայաստան: Այլ Անքոնացի ժողովուրդն մեծապէս հակառակեցան Սրբոյն մարմինն Հայ դեսպանացն յանձնելու, եւ վճռով ժամանակակից Քահանայապետին Հռովմայ պահեց զայն իբր ստացուած Անքոնայի ժողովրդեան:

Քաղաքին մէջ՝ մեր հայկական Եկեղեցւոյն յարակից բնակարանաց մէջ բնակեցան ժամանակ մի հայազգի կուսանք, եւ յամի 1859 փոխադրեցան անտի ի Հռոմ Պիոս Թ. Ս.

1773 ուղեւորեալ մասն մի ի միաբանից հաստատեաց վանս ի Թրիեստ եւ յետոյ յամն 1811 ի Վիէննա, ուր մինչեւ այսօր կը պարապին ուսմանց եւ ազգին դաստիարակութեանն մատենից տպագրութեամբն եւ վարժարանօք:

Քահանայապետին թղյատութեամբն. որուն աղերսագիր մատուցանելով կուսանք խնդրած էին զայն հրամանն: Անթոնայի կուսաստանին սկզբնաւորութիւնն եղած է կրկին գաղատացի կուսանաց ձեռքով, շուրջ յամն 1770, ըստ վկայութեան Քոյր Աննայի Էքմէքճեան, որ բնակած էր այդ նոյն Անթոնայի կուսաստանին մէջ: Արդ կրկին Գաղատացի կուսանքն հասեալ յԻտալիա բնակեր են ի Քասթել—ֆիտարտօ աւանն, ուր իրենց օր ըստ օրեայ ապրուստ զտեր են իրենց գործած մէկ տեսակ կտաւովն, եւ իւրաքանչիւր տարի մէկ անգամ հնարաւոր ուխտագնացութիւն կընեն եղեր ի Լօրեթօ, սուրբ Կուսին Տնակն: Այս առթիւ մէկ անգամ կը հանդիպին ի ճանապարհին վրայ Հռովմայեցի ծխականի մը, որ տեսնելով զանոնք իրենց արեւելեան տարազովն և անոնց բարեպաշտութիւնն որ անանձկ հնարաւոր ուխտագնացութիւն կընեն, տեղեկացաւ անոնց վիճակին վրայ, որով ի գութ շարժեալ տարաւ ի Ս. Ժողովոյն Տ. Հաւատոյ ի Հռովմ տարեկան եկամուտ մի, անոնց ապրուստին համար: Երբ այսպէս ի Քասթել—ֆիտարտօ յիշեալ կուսանաց ապագայն ապահովուած էր՝ զկնեցին Արեւելքէն հետզհետէ այլ կուսանք, մինչև որ եղան թուով ինն: Եւ ուրէին իրենց մեծաւորուհի քոյր Գաբրաօղլեանն՝ մին կրկին հիմնադրերէն:

Մարուշեան Պօղոս վարդապետ, Նախագահութեան պաշտօն բարձրանալէն առաջ, յամն 1832, Գործակալ կարգած էր ի Հռովմ Սրբոյն Վլասայ եկեղեցւոյն: Մարուշեանս այս ծանօթացաւ Քասթել—ֆիտարտոյի կուսանաց, և մեծապէս աշխատեցաւ անոնց յառաջադիմութեանն, որով և միջնորդ եղաւ յիշեալ կուսանաց ի Քասթել—ֆիտարտոյէ յԱնթոնա փոխադրուելուն: Ուր եկեալ աւելի քան զքսան տարի բնակեցան մեր եկեղեցւոյն յարակից շէնքերուն մէկուն մէջ: Այլ կուսանաց կրկին հիմնադիրքն վախճանեալ ըլլալով Քասթել—ֆիտարտոյի մենաստանին եկեղեցւոյն մէջ պատուով թաղուեցան: Որոնց համար տեղացի ժողովուրդն յարգութիւնն կը մատուցա_

նէ, թափօրով այցելութեան երթալով անոնց գերեզմանացն:

Իսկ Անկոնա մերոյս կուսանաց գործակալութիւնն փարեց Քանօնիկօ Նուտի անուն քահանայն, որ էր հայազգի լատինածէս մինչև կուսանաց ի Հռոմ փոխադրութեան ժամանակ: Յիշեալ Քանոնիկօ Նուտի ծնած է յԱնկոնա, մնացորդ մեր գաղթական ժողովրդեանն, որոց ազգութիւնն չպահելուն համար՝ սպառեալ է այսօր Հայոց անունն յԱնկոնա:

Եկեղեցին մեր կանգնեալ յամին 1262, որ նուիրեալ էր յանուն Ամենասուրբ Հոգւոյն, յանձնեցաւ մշտնջենաւորապէս Քափուչեան կոչուած կրօնաւորաց յամին 1867: Իսկ յարակից չէնքերն մաս առ մաս վաճառեցան յետին ժամանակներս ի ժամանակս կաթողիկոսութեան Անտոնի Պետրոսի Թ:

Մուրատեան Պետրոս վարդապետ Լիվոռնոյի եկեղեցւոյն Առաջնորդն հրաժարեալ ի Լիվոռնոյէն՝ ինչպէս յիշատակած ենք ի կարգի պատմութեանս՝ անցաւ յեկեղեցին Անկոնայի և հոն վախճանեցաւ 1775ին: Եղած են և ոչ սակաւ հոգաբարձու Մխիթարեան Վարդապետք ի միաբանից Սրբոյն Ղազարու. յորոց վերջինն եղաւ Հայր Դանիէլ Վարդապետ, որ յամին 1852 ի Վենետիկ ուղևորեցաւ. յաջորդեց անոր Գեր. Կղեմէս Վարդապետ Մարկոսեան, և ապա Պօղոս Վարդապետ Ճիշմանեանն և այլն. մինչև իսպառ դադարեցաւ քահանայից առաքելութիւնն յԱնկոնա*:

* Ի հայրենեաց մերժեալ արտաքս
Առուտուրաւ շահավաստակ
Ի Վենետիկ և ի Գենուա,
Եւ ի սահմանս առին ըզկայ
Ի Դիրբենեան և ի յԱտրիակ.
Միմեանց հանդէպ ծովուց իշխանք.
Ց'Անկոնա ՚ւ Անքոն քաղաք
Նրամ հրամ պանդըխտականք,
Բիւր աստ բիւր անդ թափառական
Կործանեցին ըզհայաստան
Եւ զԹորգոմն իմ և Ազքանազ
Վերածեցին ի թիւ նուազ...

## ԳՂՈՒԽ ԽՆՆԵԻՏԱՄՆԵՐՈՐԴ

Աշէ—յհ ժէշ——կ է Հ——մ, ուր ——դ—ն—քէր, եկեղեցի, և հ—քե———ն. Ս. Մ—րէ—մ— Եփէկ———ն—յն բ—րե—ր. Աշ—եղէ—կ——ն, —եղէկ—րէ—ն. Ս. Վ.լ——յ եկեղեցին, Լ.ե—նե—ն Հ—ր-ժ—ր—ն: Հ——վէննա—— հ—յկ—կ—ն ժէշ———կ. Աշ—ննo ———նն. Բէ-—ննէ. Նե—գ—լէ—, Ս. Լ——————րեին մ————ն. Ն—ր—— ——լ—ն. Մ—ն———, Ս. Սէ—մէ Հ—յկ—ն ծփն———. Բ————, Բ————յ— Վ.—րժ—ր—նն.

## ՀՌՈՎՄ

*Հնագոյն քան զամենայն յիշատակութիւնս բնակութեան Հայոց ի յաւիտենական քաղաքին*, կը գտնի Լատերանեան Տիեզերական ժողովոյն գործոյն մէջ. եւ են կրկին հայազգի արքայից անուանք՝ որ ներկայ եղեր են յիշեալ Տիեզերական ժողովոյն յամին 649. որոց միոյն անունն էր Դալասիոս Աբ_ բայ Երէց Հայոց Մենաստանին, խսկ միւսին անունն Գէորգ Աբ_ բայ Երէց Կիլիկիոյ Մենաստանին: Կիլիկիոյ Մենաստանն որ Սրբոյն Պօղոսի Առաքելոյ Գլխատման տեղւոյն մօտ էր, վերջին ժամանակներն այս է յամն 1869, պեղեալ նոր երեւան եկան հայազգի տապանագիրք՝ որոց գլխաւորին օրինակն ներ_ կայեալ է.*

** Երթալն մեր յառաջին նուագ յամի 1879 ի Հռոմ և ի տե_ սանելն այնքան հոյակապ շինուածս՝ հիացեալ յիշատակեցինք սրբոյն Զաքարիա Կաթողիկոսի Հայոց վկայութիւնն, որպէս ասէ. «Յառաջագոյն քան զծնանելն ի Բեթղեհեմ տայ զերկրաւոր պե_ տութիւնս ի Հռոմայեցիս, քանզի ի Հռոմ հանգերձեալ էր կար_ գել զԱթոռն Պետրոսի և Պօղոսի, և զգլխաւորութիւն սրբոյ Եկե_ ղեցւոյ. եւ զՀռոմայեցւոց թագաւորութիւնն կոչելոց էր ի հա_ ւատս լինել զաւազան քրիստոնէական դաւանութեան ի վերայ զինամարտից խաչին Քրիստոսի». (Ճառ Ծննդեան).*

*«Ի թուին Հայոց ՋԾԴ. ի Մայիսի Է. կանգնեցաւ նշան սուրբ խաչիս յանուն Վարդան Քահանայի ճգնօղ կրօնաւորի, որ փոխեցաւ ի Քրիստոս յաւուրն ԺԱ. որ օրն է Ծաղզարդայ. և իւր եղբայրն Գրիգոր միայնակեաց որ է մաքրող և լուսարար Գլխատման Սրբոյն Առաքելոյն Պօղոսի, կանգնեաց զսուրբ խաչս բարեխօս իւրեանց, և այլ եղբարց: Որք հանդիպիք՝ վերագրելոցս թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ, և զնեղկելի կազմողս խաչիս զՓուանկ զրակ ծնողիւք իմ, և Քրիստոս ձեզ ողորմեսցի, ամէն»:*

*Ըստ ոմանց վկայութեանն մետասաներորդ դարուն մէջ ունէին Հայք ի Հռովմ Վատիկանեան Պալատին մեծ փողոցի մէջ հին տուն և եկեղեցի, Սրբուհւոյ Աստուածածնի և Սրբոյն Լուսաւորչայ նուիրեալ, զոր նորոգեաց և գեղեցկացոյց Ս. Քահանայապետն Կղեմէս Բ. յիշեալ փողոցին անունն իսկ կը յորջորջուէր Տէյլի–Արմէնի: Նոյնպէս Վատիկանու Պալատան և եկեղեցւոյն հրապարակին վրայ, կայր երեքտասաներորդ դարու մէջ այլ փոքրիկ եկեղեցի և վանատուն մի, ուր կը բնակէին երկոտասան միանձունք, որ և կը յիշատակուէր Մատուռն Ս. Ցակոբայ Հայոց:*

*Մեր ազգային հիւրանոցին վաւերական գրութեամբքն կը ստուգուի և կը հաստատուի որ Վատիկանու հրապարակի եկեղեցւոյն այժմեան ընդարձակ հրապարակն շինուելէն առաջ ունէր մեր ազգն նոյն տեղուանքն եկեղեցի և հիւրանոց, զորս հարկ եղև ի բաց բառնալ ի սէտս և ի պայծառութիւն տիեզերահռչակ Առաքելականին տաճարին համար*:*

* *Յիշատակեալ կայ ազգային հիւրանոցին գրատան մէջ ի Հռովմ այսպէս. «Ես Ցակոբ ի կարգէ Սրբոյն Բասիլիոսի տուի զիմ Աւետարանս Ս. Աստուածամօրս Հայոց Եկեղեցւոյս»:*

*Ի Հռովմ գրեալ Աւետարանաց մէկ օրինակն՝ որ գրեալ է յամի* 1310 *և կը պահուի այժմ ի Նոր Ջուղա քաղաքի ունի յիշատակարան այսպէս. «Ի հռչակաւոր մայրաքաղաքս Հռովմ ի հանգստարան Հայոց առ դրան Ս. Առաքելոյն Պետրոսի և Պօղոսի, և Սըրբուհւոյ Աստուածածնիս և խորանիս սրբոյն Պետրոսի»։*

Ս. Քահանայապետն Պիոս Դ. առ որ մերս Միքայէլ Կաթողիկոս Աթոռոյն Ս. Էջմիածնի առաքած էր կրկին նամակներ և առանձին դեսպան զԱբգար Դպիր, յամի Փրկչին 1563, շնորհեց Հայոց ազգին ի Հռովմ բարձուած եկեղեցեաց փոխարէն Սրբուհւոյն Մարիամու Եգիպտացւոյ եկեղեցին: Սոյն եկեղեցի հնութեամբ անուանի, վասն զի ի ժամանակս կռապաշտութեան տաճար էր կռոց, և մեհեան: Ժամանակին ի Հռովմ բնակեալ Հայքն զայս քահանայապետական պարգևատուութիւնն մէկ գրութեամբ յիշատակեցին առ Դաւիթ Պատրիարքն Երուսաղէմի, որուն օրինակն ցարդ կը պահուի:

Պիոս Դ. յաջորդող Քահանայապետն Հռովմայ Ս. Պիոս Ե. իւր նախորդին նման բարերար եղաւ ազգիս Հայոց, և որովհետև ժամանակին ի ձեռն մերոյս Աբգարու Դպրի ձուլեալ էին հայկական տպագրութեան տառեր՝ առանձին տպարան հաստատեց ի Հռովմ ազգիս համար. Նաև վարժարանի մը հաստատութեան կամքն ունէր, այլ վաղահաս մահուամբն յամի 1572 անկատար մնաց իւր փափագն:

Սրբուհւոյն Մարիամու Եգիպտացւոյ եկեղեցւոյն յարակից մէկ անդաստանին վրայ՝ ազգային բարերարաց դրամովն շինուեցան բնակարանք, ուր ծառայեցին թէ պանդխտաց բնակութեան և թէ եկեղեցւոյն եկամտից համար: Այսպիսի բարերարաց անուանց ցուցակն կը պահուի թէ նոյն եկեղեցւոյն Սարկաւագանոցին մէջ՝ եղեալ շրջանակաւ որմին վրայ, և թէ մեր ազգային այժմեան հիւրանոցին գրատանն մէջ: Նոյն Սրբուհւոյ Մարիամու եկեղեցւոյն հիւրանոցն բնակեցան հետզհետէ բազմաթիւ հայ եպիսկոպոսունք, որոց՝ ոմանց մարմինքն

Ա՛յլ օրինակ Սրբոյ Աւետարանին գրեալ ի Հռովմ յամի Փրկչին 1254 կը պահուի ի մատենադարանի Սրբոյն Ղազարու, որ ունի այս յիշատակարան. «Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուին Հայոց ՉԳ ի մեծ յանուանի յակնադիտակ և ի հռչակաւոր քաղաքս՝ Հռովմ կոչեցեալ, ընդ հովանեաւ սրբոց Առաքելոցն Պետրոսի և Պօղոսի»:

թաղեալ կան յիշեալ եկեղեցւոյն մէջ, որոց կենդանագիրք կը պահուին դեռ մեր այժմեան հիւրանոցն ի Հռոմ: Յիշեալ Եպիսկոպոսաց անուանքն, են հետևեալքն.

Յովհաննէս Վ. Դազլյանեան Արքեպիսկոպոս Մամպրոյ † յամն 1773:

Սամուէլ Վ. Լաճնեան Եպիսկոպոս Պրուսայ † յամն 1773:

Գրիգոր Վ. Արքեպիսկոպոս Տարենտոյ † յամն 1774

Աղեքսանդր Վանեցի Եպիսկոպոս ի միաբանից Աղթամարայ † յամն 1781:

Իսկ Աղեքսանդր Պատրիարքին Ասլանեանի տապանն է Ս. Կարոլոսի եկեղեցւոյն մէջ ի փողոցն Զորից Աղբերց որ վախճանեցաւ ի հասակի 96 ամաց:

Սրբուհւոյն Մարիամու Եգիպտացւոյ մէջ կայ նաև տապանագիր Բաղինեան Յովհաննէս Արքեպիսկոպոսին, որուն կը պահուի նաև կենդանագիրն յիշատակարանաւ յամն 1650:

Բաց յայլոց է այլ ևս Եպիսկոպոս Յովհաննէս անուն, որ և կատարած է հարիւրամեայ հանդէսն շնորհման Սրբուհւոյ Մարիամու եկեղեցւոյն ազգիս, որպէս գրեալ է ի յիշատակարանի կենդանագրի նորին յամն 1663: Նմանապէս թաղուած է ի Սրբուհի Մարիամն և Վրթանէս Արքեպիսկոպոս Կեսարիոյ, միաբան Էջմիածնի:

Եօթնևտասներորդ դարուն վերջերն, որպէս նաև ութևտասներորդին սկիզբներն, երբ ի Կ. Պօլիս յարուցեալ էր հալածանք նահատակութեամբ Տեառն Կոմիտասայ ի Կ. Պօլիս և Տեառն Մլքայէլի ի Սեբաստիա, և այլն, փախստական գնացին և ապաւինեցան ի Հռոմ ազգային եպիսկոպոսներէն Մամպրոյ, Կեսարիոյ, Կիպրոսի, Եդեսիոյ, Կաֆայի և այլ եպիսկոպոսք. որոց ոմանք թէ և երկար մնացին ի Հռոմ, այլ ոչ որ անոնցմէ կարգեցաւ ձեռնադրիչ եպիսկոպոս և մեծաւոր ազգային հիւրանոցին: Որուն սկիզբն եղաւ յամի 1713. և կարգեցաւ առաջին ձեռնադրիչ եպիսկոպոս Գրիգոր Արքեպիսկոպոսն Եդեսիոյ: Որ հանգուցեալ յամի Փրկչին 1721, ընտրե-

ցաւ անոր փոխանորդ Վրթանէս Արքեպիսկոպոս Կեսարիոյ ի Մխարանից Ս. Էջմիածնի, որ մինչև հարիւր տարի ապրեցաւ: Յամն 1760 կարգեցաւ Յովսէփ Արքեպիսկոպոս Եդեսիոյ, որ վախճանեցաւ յամի 1767. յաջորդեց անոր տեղն Սիմոն Վ. Ումուտեան Եպիսկոպոս Անկիւրիոյ: Յետ մահուան սորա յամն 1774 կարգեցաւ Սամուէլ եպիսկոպոս Բիւթանիոյ կամ Պրուսայ, որ մնացեալ քանի մի տարիներ՝ թողեալ դարձաւ իւր Աթոռն, ուստի իւր տեղն ընտրեցաւ յամի 1781 Պօղոս Վ. Լեւոնեան Արքեպիսկոպոս Ախլցխայու: Որուն յաջորդեց յամի 1785 Ստեփանոս եպիսկոպոս Ախլցխայի, և յետ տասն ամաց վախճանեցաւ: Յամն 1795 ընտրեցաւ Աթանաս Վ. Սարաֆեան յԱնտոնեան կրօնաւորաց: Սարաֆեանին մահուանէն յետոյ յամի 1824 կարգեցաւ Տէր Գրիգոր Բաղինեան, որուն օգնական տուաւ Պօղոս Վ. Մարուշեան, որ յետոյ Նախագահ եղաւ ի Կ. Պօլիս:

Սրբուհւոյ Մ. Եգիպտացւոյ եկեղեցւոյն բարերաց մէջ կը յիշուին նաև հայազգի քահանայք, որպէս Տէր Միքայէլ Սանոսեան, Տէր Յակոբ Նիկողոսեան, և Տէր Գրիգոր Աստուածատուրեան: Է ևս յիշատակութիւն հաստատութեան մէկ հանապազօրեայ մշտնջենաւոր պատարագի, որ յամին 1794 թողեալ է Գըլճըօղլու գերդաստանէն:

Դէպ ի յամն 1830 Հայք թողուցին իրենց նախնի եկեղեցին Ս. Մարիամու Եգիպտացւոյ, Տիբեր գետին մօտ՝ խոնաւութեամբ առողջարար օդ չունենալուն պատճառաւ. որուն փոխարէն շնորհեցաւ ազգիս Հայոց Սրբոյն Վլասայ մեր հայրապետին եկեղեցին ընթերակայ շէնքերուն ի միասին, ի ժամանակս Քահանայապետութեան Գրիգորի ԺԶ*:

* Մերոնց թողլուն Ս Մարիամու Եգիպտացւոյ եկեղեցին, յանձնեցաւ Լատինաց, Ամենասուրբ Հաղորդութեան կոչուած Աւագ եղբայրութեանն - ուր մշտնջենաւորապէս իրենց պաշտամունքն կատարելու եռևէ էին: Այլ արդի իտալական միապետութիւնն փակած է եկեղեցին: Իսկ բնակարանք յարակից նոյն եկեղեցւոյն

Մարուշեան Գեր. Պօղոս Արքեպիսկոպոս յարմարելով ըստ մեր արարողութեան Սրբոյն Վլասայ Աւագ խորանն, նոյնպէս կառուցանելով առանձին հիւրանոցն առ երի, բնակեցաւ անդէն հինգ տարի: Երբ վախճանեալ ի Կ. Պօլիս Նախագահն Նուրիճեան, ընտրեցաւ յաջորդ Մարուշեան, ի Հռովմ ի տեղի նորին կարգեցաւ Գեր. Փափազեան Իգնատիոս Արքեպիսկոպոս. որում ծերութեան ժամանակն օգնական ընտրեցաւ Հիւրմիւզեան Եղուարդ Արքեպիսկոպոս՝ որ և յաջորդն եղաւ ի վախճանել նորին յամին 1852: Հիւրմիւզեան Եղուարդ Արքեպիսկոպոս երեսուն տարի շարունակ վարեց իւր պաշտօնն, ուսմանն պարապելով և սիրելի և յարգելի ըլլալով ամենեցուն, և ի հասակի 78 ամաց վախճանեցաւ յամին 1876: Յետ մահուանն նորա ձեռնադրիչ եպիսկոպոս ի Հռովմ Աղեքսանդր Արքեպիսկոպոս Պալճեան ի Յ. Միաբանութենէն Մխիթարեանց Վեննայու, և յետ մահուան նորա այժմեան Յովհան Արքեպիսկոպոս Քիւփէլեան:

Սուրբ Վլասու եկեղեցին թաղեալ է Յովհաննէս վարդապետ Թօփուզեան՝ Գործակալ Աթոռոյն Կիլիկիոյ, որոյ տապանագիրն է ըստ առաջիկայիս.

« Տիեզերազօրչ փողոյն ի շառաչ
Յարիցէ աստի Փրկչին ընդ առաջ
Բարուն Յովհաննէս տանէն Թօփուզեան
Փոխանորդ ի Հռովմ Գահին Կիլիկեան.
Ի Գաղատիոյ նըժդեհեալ մանուկ
Փոխեալ առ Աստուած ըզվաթսնամենիւք.
Քեռն հարազատի քանդեալ յիւր ի դիր
Արտօսր ի յական զայս արձանագիր »:
Հանգեաւ ի թուին Հայոց ՌՄՂԳ.

տրուած են և կը տրուին վարձու ի բնակութիւն զանազան ընտանեաց, որոնք կը պարտաւորին հատուցանելու տարեկան վարձն կամ սակ կալուածոց տեառն: Կալուածոցս տէր

Ի մէջ բարերարաց եկեղեցւոյն Սրբոյն Վլասայ կը յիշատակի նաև Պարոն Ալեքսան, որ ի խնդրոյ Իգնատիոս Արքեպիսկոպոսի Փափազեան պարգևած է Ս. Վլասայ եկեղեցւոյն նորոգութեան համար հարիւր սկուտ արծաթադրամ*:

Յիշեալ եկեղեցւոյն այժմեան վիճակն շատ հնացեալ ըլլալովն՝ հանդերձեալ է նորոգումն. որուն յարակից եղած ընդարձակ բնակարանք առատ վարձեր կը պարգևեն եկեղեցւոյն:

Իսկ հոյակապ վարժարանի մը շինութիւնն ի Հռոմ ի պէտս մեր ազգին, որ ի հնուց հետէ կը փափաքուէր, սահմանեալ էր յԱստուծոյ՝ որ անմահ յիշատակաց արժանին Լևոն ԺԳ. Քահանայապետին արդեամբքն ըլլայ, որուն այլ և այլ պարագայից մէջ Հայոց համար ցուցած սէրն և խնամքն արդարև արժանի է երախտագիտութեան մերում, և կը գերազանցէ քան զմիւս Քահանայապետներն**: Վարժարանն ի յիշատակ

մնացած է միշտ հայոց ազգն, որուն այժմու մատակարարն է Մեծաւոր ազգային հիւրանոցին և կաթողիկոսական գործակալ Գեր. Յարութիւն Ռուպեան:

* Ի մէջ այլոց յիշատակութեանց հարկ է մեզ աւանդել եւ թէ սկսեալ յամէն 1761 մերազգի Անտոնեան ՏՏ. կրօնաւորք ունէին ի Հռոմ իրենց համար կղերանոց մի, ուր ի սկզբան չէր այնչափ յաճախութիւն նորընծայից մինչև յամն 1834, երբ ի Պէյթխաշպօյէ Լիբանանու եղաւ փոխադրութիւնն ի Հռոմ իրենց կղերանոցին, և անկէց մինչև յամն 1870. յետ որոյ վաճառեցաւ Իտալական միապետութեան ի կողմանէ յիշեալ ՏՏ. Հարց:

Յիշեալ Անտոնեան միաբանութեան հիմնադիր և գլուխ եղած է Կիլիկիոյ կաթողիկոսն Աբրահամ Պետրոս Ա. տալով անոնց Լիբանանու Մարօնի Անտոնեան կրօնաւորաց կանոնն ի Յիսուս Փրկիչ անուն վանաց մէջ ի Լիբանան, ուր էր նախնի կաթողիկոսարանն: Մերազնեայ Անտոնեանց կարգն հաստատութիւն առած է անմիջապէս Կիլիկիոյ կաթողիկոսութեան նորոգութենէ ի վեր ի Լիբանան ի Տէյր Գրեմ կոչեցեալ տեղւոջ:

** Հայասէր Քահանայապետն այլ և այլ առթից մէջ զՀայերս Ազնիւ Ազգ կոչելով՝ ընդհանուր Հայոց համակրութեան արժանի է եղած.

հիմնադիր և բարերար Քահանայապետին՝ Լեւոնեան կը յորջորջի. հոյակապ և ընդարձակ շէնք մի է, որում գեղեցիկ մաս մի վերջերս շինեցաւ. ունի առողջարար օդ և բարի դիրք, նախանձելի ի Հռոմ: Իսկ եկեղեցւոյն գեղեցկութիւնն զերազանց է և ճոխ ազգի ազգի ընտիր քարամբք, ճարտարաձև և զմրեխթազարդ, աւելի քան երկոտասան պատշելի խորանք զարդարեալ իւրաքանչիւրն պատկերօք և նկարուք և փառաւոր տեսարանօք, և անուն Ս. Նիկողայոս Տոլենտինեան: Արդ այսպիսի գեղեցիկ եկեղեցի մի՝ որում նման չունէր ուրեք մեր ազգութիւնն՝ այսօր տէր եղաւ անոր ի Հռոմ, շնորհիւ հայասէր Քահանայապետին Լեւոնի ԺԳ: Ասա և այժմ կան քսանի չափ պատանիք ի Լեւոնեան վարժարանն, որոնց ապրուստն և հայթհայթն առատութեամբ հիմնադիր Քահանայապետին է, նա մանաւանդ թէ զետեղեալ է այնչափ ինչ մեծ մայրագումար՝ որոյ հասոյթովն յապագայի, նոյնչափ և աւելի ևս պատանիք պահպանեալ պատսպարուին ի Լեւոնեան – Հայկական վարժարանին ի Հռոմ:

## ՀՌԱՎԵՆՆԱ

Հռավեննա ժամանակաւ յորջորջուեր է նաև Արմենիա, ուր բազմաթիւ հայ պանդուխտք կան եղեր, մանաւանդ քաղաքին կից Քլասսէ կոչուած ծովեզերեայ քաղաքն կամ նաւահանգիստն: Հետևելով խաւացի մէկ պատմարանի վկայութեանն՝ հիմնադիրք Հռավեննայ քաղաքի եղեր են Հայք, որոց անունն և յիշատակութիւնն չորրորդ դարէն ի վեր եղած ըլլալն կաւանդուի: Քաղաքին նշանաւոր եկեղեցիներէն միոյն գաւթին մէջ կանգնեալ կայ Սահակայ Կամսարականին դամբանն, որ ժամանակաւ կուսակալ նստած էր ի Հռավեննա, ուր հանգեաւ յամին 664. յիշեալ Սահակայ Կամսարականին եղբօրն ևս է մահարձան ի յոյն գրութիւն:

Ի Հռավեննա զօրատեղի է եղեր նաև հայազարմ զինուո_

բաց, իբր կեսարական պաշտօնէից խալական գաւառաց հաստատելոց ի կողմանէ յունական կայսրութեան: Վերջին դարերու մէջ աւելի կամ պակաս դեր կան եղեր Հայք, և անոնց անուամբն թաղ մի կա: Ի մետասաներորդ դարու բնակեր են հայազգի միանձունք՝ հաւանականաբար ի Բարսեղեանց, և մենաստան մի որուն յարակից եկեղեցին կոչուած է Ս. Յովհաննէս Հայոց:

Ի Հռովեննա վաղեմիք ոմանք Լատինաց վանքերն Արմենիոյ վանքեր կոչած են: Որպէս ի Բիէմոնթէ մասին վերին Իտալիոյ կայ մինչև ցայսօր աւան մի որուն անունն է Արմէնօ. ունի երկու հազար բնակիչ, ամենեքին Իտալացիք. յիշեալ աւանին Արմենօ կոչուելուն պատճառն անյայտ մնացեր է: Իսկ լատ մեզ ակիզբն առած է թերևս հայկազն նգնաւորի միոյ օթևանատեղի ըլլալուն համար: Ոչ այնչափ հեռի ի Հռովեննայէ է այլ քաղաք մի Ռիմինի անուն, ուր եղեր են յանցեալում հայ բնակիչք, ունելով հոգետուն մի յանուն սրբոց Աւետարանչացն Յովհաննու և Մատթէոսի: Երբեմն քաղքիս մէջ եղող Հերոնիմոսեան անուն եղբայց ժողովատեղին կայր արձանագրութիւն մի ի հայ բարբառ այսպէս. «Թովմաս Վարդապետս շինեցի զայս տուն ի թուին Հայոց ՉԽԵ»:

Ի Ռիմինի Վարդան անուն քահանայ մն օրինակեալ է ըզգիրս Ագաթանգեղեայ ի հոգետան Հայոց սրբոց Յովհաննու և Մատթէոսի Առաքելոց ի թուականին Հայոց ՉԳ:

## ՆԷԱՊՕԼԻՍ

Նէապօլսոյ մէջ ըստ աւանդութեան կայր եկեղեցի մի նուիրեալ ի պատիւ Հոգւոյն Սրբոյ, ի ձեռս Հայոց հոն բնակելոց, որուն յիշատակ մինչև այսօր կայ յանուն Հայոց փողոց մի. այլ կը պակասին կարևոր ծանօթութիւնք:

Քաղաքին միջավայրն է եկեղեցի Սրբոյ Հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչի, ուր ամփոփեալ կը պահուի Սուրբ Հօրս զան_

կըն և շղթայից ընկոյք. եկեղեցւոյն յարակից է մենաստան իտալացի ազնուական կուսանաց՝ որոց նախորդք արևելքէն հոն փոխադրեալ էին: Մերոյս Ս. Լուսաւորչի տօնախմբութեանն գաւառին մէջ ուխտօրեայ հանդիսիւ կը կատարուի, և թափօրով կը շրջի Սրբոյն արծաթեայ արձանն, որուն կուրծքն զետեղուած է Ս. Հօրս նշխարաց մասն *:

Նէապոլսոյ շրջակայքն է այլ քաղաք մի Նարտօ անուն, ուր բնակիչք ունին իրենց յատուկ պաշտպան զմեր Ս. Հայրն Գրիգոր Լուսաւորիչ: Նարտօ քաղաքին Մայր եկեղեցին զետեղեալ կայ Սրբոյն բազուկն, որով մեծամեծ հրաշագործութիւնք և շնորհք եղած են տեղացի հաւատացելոց, որոնք յարգանօք խրախճանքի ամէն ուրոյն տօն կը կատարեն ի պատիւ Սրբոյն: Անտոն Պետրոսի Թ աշխատութեամբն ի Նէապոլսոյ յամին 1866 փոխադրեցան Հայաստանեայց Ս. Լուսաւորչին չարչարանաց վերաբերեալ սյարքն և շղթայից ընկոյք, և զետեղուեցան յաթոռանիստ եկեղեցին ի Բերա Կ. Պօլսոյ:

## ԲԱՏՈՒԱ

Բատուա մերձաւոր Վենետիկ քաղաքի, ունի ոչ սակաւ յիշատակութիւն հայազգի վաճառականաց երթևեկութեանցն, նաև նոյն քաղաքին մէջ հաստատ բնակութեանն. քաղաքին արուարձաններէն միոյն մէջ կայր եկեղեցի մի և կը կոչուէր Սրբուհւոյ Մարիամու Հայոց: Քաղաքին վանատանց միոյն որ կը կոչուի Սրբուհւոյն Հեղինեայ՝ հիմնադիր եղեր է Դաւիթ անուամբ Հայ աբեղայ մի յամի Փրկչին 1308, ուր ժամանակաւ

* Հայ կուսանաց յարևելից յարևմուտս փոխադրութեան ժամանակէն և յիշատակներէն միայն սուրբ Լուսաւորչին մասունքն կը մնան, և քանի մի նկարներ զետեղուած ի վերնատան երգեհոնի. նկարներն կը ներկայացնեն արևելատարազ կուսանքն, որ ի ծովու ալէկոծեալ ճամբորդութիւններ ըրեր են, այլ ողջամբ հասած ի Նէապօլիս, և անդ սիրով հիւրընկալուած:

Հայ միանձունք բնակեր են, իսկ այժմ կուսանք փոխանակեր են նոյն վանատունն: Ժամանակաւ կայր և տպագրատուն մի Հայոց, ուր յամին 1690 տպագրեալ հրատարակեցաւ Դաշանց թուղթն: Այժմ Ազգիս վերաբերեալ չկայ այլ ինչ՝ եթէ ոչ ընդարձակ ապարան մի ստացուած ՏՏ. Մխիթարեան Միաբանից Ս. Ղազարու, ուր էր արդէն վարժարան: Բատուա քաղաքին եպիսկոպոսական Աթոռն նստած է երբեմն Ս. Փիլոնտիոս հայրապետն հայազգի:

## ՄԱՆԹՈՒԱ.

Յիշատակելի է մերոյս Սրբոյն Սիմէոնի Հայկազն ճգնաւորի յետին բնակութեան և պանդխտութեան վայր ըլլալուն համար, ուր ննջեաց ի Տէր ի հոտ անոյշ սրբութեան, և անուանեցաւ պաշտպան քաղաքին: Հայկազն Սրբոյն մարմինն կը պահուի կենայ գեղեցկաշէն դամբարանին մէջ յեկեղեցւոջ Ս. Բենեդիկտոսի, առ որով է հռչակաւոր Աբբայարանն: Կաւանդուի որ Ս. Սիմէոն ճգնաւորն ծնած էր ի Հայաստան յՈրշամուշատ քաղաքի յիշխանազարմ ծնողաց. որ հետևելով ճանապարհին Քրիստոսի հրաժարեցաւ ի փառաց, ի հարստէն և ի հայրենի բնակարանէն, ճգնաւորական կենօք շրջեցաւ յանապատս, գնացեալ ուխտաւոր ի Ս. Երուսաղէմ ընկալաւ անդ թուղթ յանձնարարական Արսէն Պատրիարքէն, ուղևորեցաւ ի Հռոմ: Յետ որոյ որպէս զՍ. Դաւիթ Հայկազն շրջեցաւ Բիզա և Լուքքա և Դոսկանայու շատ քաղաքներն, և շարունակեալ ճանապարհն գնաց Բավիա, Միլան և Դօրինօ: Ապա անցաւ Գաղղիա, ուր թողլով իւր սքանչելագործութեան յիշատակներն՝ գնաց յուխտ գերեզմանի Ս. Յակոբայ առաքելոյ ի սպանիական քաղաքն Քոմբոսթելլա: Սպանիոյ թագաւորն լուեալ Սրբոյն համբաւն դիմեց անոր և ընկալաւ բժշկութիւն իւր հիւանդ դստերն. թագաւորէն շնորհեալ պարգևքն մերժելով Սուրբն հոգ տարաւ կրթելու հոն Յովհան անուն ոմն աշակերտեալն

միաձնական վարուց մէջ: Յետ որոյ հրաժարեալ իր աշակերտէն յետս դարձաւ անդրէն ի Գաղղիա, և ապա յԻտալիա, և գնալով քաղաքէ ի քաղաք հասաւ յամին 1013 Մանթուա քաղաքին սահմանն, ուր էր Բենեդիկտեան կրօնաւորաց մենաստանն կառուցեալ ընդ միջավայր Բոյ գետոյն և Լարիոն վտակին. հիւրընկալեցաւ ի միաբանից մենաստանին, վասն զի մեծ էր Սրբոյն համբաւն, և բարեգուշակ գալուստն, և երեքտասանամեայ կեանքն որ վարեց Բենեդիկտեանց մենաստանս լի եղաւ արդեանքը, բարի օրինակաւ նոյնպէս սքանչելագործութեամբ. և անոր փոխումն ի կենաց հանդիպեցաւ յամին 1026, և թաղեցաւ փառօք վանաց եկեղեցւոյն մէջ: Հայկազն Սրբոյս գլուխն արծաթապատ տփոյ մէջ զետեղեալ է: Մանթուացիք ամենայն կը հայցեն Սրբոյն օգնութիւնն յառաւելուլ և ի նուազել ջուրցն, և պէսպէս են Սրբոյն Սիմէոնի գործեալ սքանչելիքն և անթիւք: Յիշեալ եկեղեցւոյն մէջ զգուշութեամբ կը պահուին դեռ ևս Սրբոյն գործածած հայագիր Աւետարան և Սաղմոսագիրքն, նոյնպէս և յանձնարարական թուղթ Արսէն Պատրիարքին Երուսաղեմի, որոյ օրինակն է հետևեալն.

« Արսէնիու Պատրիարքի Երուսաղեմացւոյ՝ թուղթ յանձնարարութեան վասն Սիմէոնի միանձին և անապատականի:

Անուամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Նազովրեցւոյ, և սրբոյ Գերեզմանի նորին, որոյ պահապան կարգեցայ թէպէտ ոչ իմոյ արժանաւորութեանս, յԱրսենիոսէ անարժան Պատրիարքէ Երուսաղեմի, կնքով, նշանաւ սրբոյ Գերեզմանիս Տեառն եկեղեցեաց ուղղափառաց ողջոյն և խաղաղութիւն: Աղաչեմ զամենեսին առ որս հանդիպեսցի Սիմէոնն այդ միանձն և սրբագործ քրիստոնեայ և անապատական, ծնռընտու լինել նմա, զի այր ընտիր է և բարի: Որ ոք յինքնակալաց կամ ի թագաւորաց կամ ի դշխոյից կամ յեպիսկոպոսաց ոք կամ ի վանահայրց, կամ մարկիս, կամ կոմէս, և յամենայն ի Քրիստոս հաւատացելոց, որ վասն սիրոյն Քրիստոսի, բարի արաս_

ցէ սմա կամ պաշտպանելով, կամ զնմանապատկերն ցուցանելով, քանզի անգէտ է լեզուաց, օրհնեալ եղիցի ի Հօրէ և յՈրդւոյ և ի Հոգւոյն Սրբոյ, և պահեսցէ զնա Տէր յամենայն գործս բարիս, օրհնեսցէ և սրբեսցէ, և յաւուրն այցելութեան բազմեցուսցէ յաջակողմեանն Քրիստոսի ընդ ընտրելոց, և լուիցէ զձայնն, եթէ Եկայք օրհնեալք Հօր իմոյ. զօրացուսցէ զնա հոգի Տեառն, և զբանն Աստուծոյ՝ զոր յօժարութեամբ սրտի ընդունելիցի՝ հաստատուն և անփոփոխ պահեսցէ, զի մի սասանեսցի ի պատրանաց սատանայի: Եւ որ անարգեսցէ զսա և նեղեսցէ, ընդ դատապարտեալսն լիցի մասն նորա և յաւիտեան. ամէն: Եւ է Սիմէոնն այդ միանձն և անապատաւոր, և ազգաւ Հայ» *:

* Եղբայր Հռափայէլ Ցուստինէոս անուն կրօնաւոր Բենեդիկտեան հրատարակեաց յամին 1477 մատեան մի յորջորջելով զայն Արմէնիատոս անուամբ, յորում իւր հազար լատին տաղաչափական տողիւ պատմեաց զսքանչելի վարս մերոյս Սրբոյն Սիմէոնի հայկազն ճգնաւորի, ի տասն երգս բաժանելով զմատեանն զայն:

Մատենագիրն յետ նախերգանացն հանդիսանայ ի դրուատել զՀայաստան աշխարհ այսպէս (զոր յառաջ բերեմք առեալ զայն ի մեծանուն Հօրէ Ալիշան վարդապետէ).

Զամենազան դարաստանս՝ մինչ տընկէր Տէրն յարևելս
Անուանածիգ դալարեաց բաժակեալ ջուրս հեշտընտեւս,
Աղբիւր բըղխեալ վիժանուտ յարևելից ագարակ
Ի քառառաջ բաժանէր անդուստ գետոց ի վըտակ.
Ցորոց միջի զուարճանայր դալարացեալ անդաստան
Զոր կոչեցին հինքն՝ և ցարդ նորքս անուանեն Հայաստան։
Բազումք ըզնա վիպասանք գովեցին յերգս հընաճառք,
Ըզնա հանուրց գերունակ քարոզեցին և սուրբ տառք.
Անդ դադարեաց ապաստանն երբեմն յուսոյ մարդկան լաստ
Մինչ համասփիւռ յալեաց խորս՝ Տէր զանօրէնս արկ տապաստ.
Եւ անդ Բարձրեալըն վըկայ զգօտին պարզեաց ծիածան
Ցիշել ազգաց առյապայ զկըտակ ուխտին հեշտական, և այլն։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ

Բիզա, Պետրոս Հայկազն, Պետրոս Կիմատէր Կարդուզեանց վանականն, Նկարագրութիւն վանականին, Պետրոս Հայկազնայ պատմէրն, ձեռագիրնն. Լաւրա, Ս. Գառնէր Հայկազն, աւետարանա-ցութեանն, հետևողութեանն և մահն. Աշխարհին, հրաշագործու-թեանք, անապական մարմնն. Ճենովա, անկէսագործ Կիտարական, Ս. Բարթողիմեոսյ եկեղեցին. Բարսեղեանք. Փիսբեանց, Բարսե-ղեանց եկեղեցիքն, ժամանակութիւնն. Սիենա, Բարսեղեանց շինեալ և կանոնն, կոչակա չորրեայ քաղաքն, Հայոց եկեղեցայն եղա-ներէ պատմէրն.

## ԲԻԶԱ

*Բիզա պճնազարդ քաղաքն, անուանի նոյն անուամբ վանուց մի հասարակապետութեան կեդրոն ըլլալուն համար, ըստ աւանդութեանց եղեր է ի յարաբերութեան Կիլիկեցւոց հետ: Այժմեան շոգեկառաց կայարանին հրապարակին յարակից կայ եկեղեցի Սրբոյն Անտոնի, որ ժամանակաւ Հայոց կը վերաբերի եղեր, այս է չորեքտասաներորդ դարուն մէջ. ուր չկը րինչ հետք Հայոց վերաբերելուն համար: Քաղաքիս մէջ հաստատեալ հայ վանականներէն մին Պետրոս անուն կը յիշատակուի ցայսօր Կարդուզեան կարգին հոյակապ վանաց հիմնադիր ըլլալուն համար: Յիշեալ Պետրոսն էր որդի Մխիթարեայ Ուղոլինեայ, զոր Բիզացիք կոչեցին Տէլլա Գերճինէ. նա ինքն մեծատուն և ազնուական, Պետութեան աւագանւոյն մէջ դասուած էր: Պետրոսն թէ և ամուսնացեալ խալուհւոյ միոյ հետն՝ այլ էր անորդի: Որուն անզաւակութեանն համար Կարդուզեան կրօնաւոր մի՝ խոստովանահայր յիշեալ Պետրոսի՝ յորդորեց զանի որ իւր ճոխ ստացուածովն ի յիշատակ իւր մենաստան մի կանգնէ: Ըստ այսմ Պետրոս ի վախճանելն կը-*

տակաւ շնորհեց՝ ի բաց առեալ իւր կնոջն համար հարկաւոր մաս մի, մնացեալ բովանդակ ստացուածն ի շինութիւն Կարդուզեանց մենաստանին, որ արդարև մեծագործ և հրաշալի է բարերարութիւնն: Պետրոս՝ կտակակատար անուանեց իւր կընոջ եղբայրն Նինոս Բուչչի անուն քահանայն. որ և Բիզայու աթոռանիստ եկեղեցւոյն կանոնիկոսներէն մին էր: Սա հաւանութեամբ վիճակաւոր Արքեպիսկոպոսին, Բիզայէն շուրջ երկոտասան քիլօմէթր հեռու մէկ բլրակի վրայ Քալչի կոչուած գեղին մօտ ձեռնամուխ եղաւ յիշեալ սքանչելի վանաց կանգնման յամի Փրկչին 1367. յաջորդ տարին վախճանեցաւ նաև կողակից Պետրոսի Պաչիամէա, որուն ժառանգութիւնն ևս ծառայեց ի պէտս շինութեան յիշեալ Կարդուզեանց վանացն. այլ և Բիզայի ոչ սակաւ ազնուականք ստացութիւն ըրին հարկաւոր ծախուց, որ աւարտեցաւ յետ երկար ամաց՝ այս է դէպ ի 1400 թուականն Քրիստոսի: Յաջորդ դարերն ևս ի բարերարաց ոմանց մեծամեծ ստացութիւնք եղան յիշեալ վանաց նորոգութեան համար: Որոյ ստորագրութիւնն կարճառօտ աւանդենք:

Են առանձին նախամուտք վանաց, և յարակից բնակարանք այցելուաց համար. ուստի մտեալ՝ 4500 մեթրօ քառակուսի մէկ հրապարակի վրայ է կառուցեալ մեծագործ շինուած, ի միջավայրն եկեղեցի, և շուրջն եռայարկ վանք. եկեղեցին հրաշաձև, վանաց առաջին յարկին վրայ շարեալք աւելի քան երկոտասան մատուռք ըստ սովորութեան Կարդուզեանց մի քան զմիւսն գեղեցկագոյնք. եկեղեցւոյն ետև այլ ընդարձակ զարդարուն հրապարակ, զոր ընդգրկած է կամարակապ շէնքն, վանաց մէջ ամենուրեք դրոշմեալ յորմունս ազդու բանք սուրբ Գրոց: Ի մի բան, շէնքն պատուական քարանց ճոխութեամբն, և ճարտարաձև կերտմամբն, հրաշալիք կը համարուին, և հայ հիմնադրին յաւիտենական պարծանք:

Ի դիւանի վանաց կը պահուէին՝ հազուագիւտ ձեռագիրք. այլ յետ արշաւանաց Գաղղիացւոց յանցելումն դարու անյայտ

եղած են: Իսկ ի գրատանն՝ ցայսօր զետեղուած կը պահուի հիմնադրին խղանեակ պատկերն, որուն ստորեւն կնքին եւ անունն գրեալ այսպէս. Mirantus De Virgine Armenus Mercator Pis. hujus Certusæ fundator. Եկեղեցւոյն կից սրահին մէջ կայ նկարեալ յորմն՝ նաեւ պատկեր Նինոս Բուչչի քահանայի այսպիսի գրութեամբ. Ninus Puccius da Spuzzavento Petri facultatibus Certusæ fundationem instituit. Որպէս նաեւ առ երի պատկեր այրւոյն Պետրոսի հետեւեալ գրութեամբ. Bacciamea Puccia Petri Uxor.

Իսկ գերեզմանն Պետրոսի հայկազն հիմնադրին է Բիզա քաղաքին Ս. Ֆրանչիսկոսի մենաստանին գաւթին մէջ Քոնվենթուալի կոչուած կրօնաւորաց, որուն մօտ ձախակողմն տապանին վրայ կայ նկարեալ Տիրամօր պատկերն, եւ Սրբոցն Ֆրանչիսկոսի եւ Նիկողայոս. առ ոտս Տիրամօր կայ նկարեալ եւ հայկազն Պետրոս ի ծունր կացեալ եւ յաղօթս: Ի վաւերականաց կը քաղուի թէ Պետրոսն ծնած է ի Բիզա, ունի եղեր եղբայր մի եւ կրկին քոյր:

Արդի մեծաւոր Կարդուզեան միաբանից է ութսնամեայ բարի ծերունի մի Պրունոս Դիղոնի անուն, որ ոչ միայն մարդասիրութեամբ հիւրընկալեց զմեզ, այլ եւ կրկին շնորհեց մեզ վերոյիշեալ տեղեկութիւնքն: Կը յիշատակուին եւ բազում երեւելի անձինք որ այց եկած են այս վանաց, որոնց մէջ կան Ս. Քահանայապետներ եւ իշխանազունք:

Բիզայու կոչեցեալ Հայտան մէջ Թորոս անուն Ակրցի աբեղայն օրինակեց Կաւայի Թադէոս եպիսկոպոսէն թարգմանուած հայաբարբառ սուրբ Պատարագի մեկնութեան մատեանն ի թուին Հայոց ՌՅԾԴ. ձեռագիրն այժմ կը պահուի ի կայսերական մատենադարանն ի Վիէննա քաղաքի, ուր փոխադրուած է Լորենեան Աւագ դքսութեան ժամանակն: Ակվար Բաւենից գիւղերէն մէկն է ի մեծն Հայտան:

## ԼՈՒՔՔԱ

*Ի Լուքքա քաղաք՝ ըստ ոմանց վկայութեան կայր Հայոց եկեղեցի Սրբոյն Պօղոսի կոչուած, այլ առ պակասութեան կարևոր ծանօթութեանց կը շատանամք միայն մերոյս հայկազն Սրբոյն Դաւթի յիշատակութիւնն ընել:*

*Է ի Լուքքա քաղաքի որպէս կը յորջորջեն Իտալացիք Սան Տավինօ Արմէնօ սուրբն, մեծապէս ի յարգութեան՝ անհամար հրաշք գործելուն համար, որուն ծագումն հետևեալ եղանակաւ կաւանդեն պատմիչք առհասարակ: Սուրբ Դաւիթ հայկազն էր ծնեալ ի Հայաստան մետասաներորդ դարու մէջ, մեծատուն և ազնուական ծնողաց զաւակ. որ ի չափահասութեան՝ Քրիստոսի մէկ խրատին հետևելով՝ բաշխեց իւր բովանդակ ստացուածքն աղքատաց, և հագնելով ուխտաւորաց տարազ, հետիոտս գնաց յայցելութիւն Ս. Գերեզմանին Քրիստոսի յԵրուսաղէմ, ուստի փութաց երթալ յուխտ ի Հռոմ առ գերեզմանս Առաքելոց սրբոցն Պետրոսի և Պօղոսի. յետ որոյ ուղևորեալ երբ կերթար ի Սպանիա յուխտ սրբոյն Յակոբայ Առաքելոյ՝ ի ճանապարհին հասեալ ի քաղաքն Լուքքա իջևանեցաւ ուխտաւորաց համար սահմանեալ մէկ անկելանոցի մէջ, ուր հազիւ քանի մի օրեր պատսպարեցաւ, վասն զի խոշտանգեալ ճանապարհի նեղութիւններէն հիւանդ էր: Ժամանակին բարի խաթուններէն մին Աթա անուն տեսեալ հայկազն ուխտաւորին հիւանդութիւնն ի գութ շարժեցաւ, և զի մեծատուն էր՝ տարաւ զանի իւր մերձաւոր տունն, ուր խնամարկեց մեծապէս. սոյն եղաւ Աթա տիկնոջ հիւրընկալութիւնն և մխիթարութիւն. վասն զի հայկազն ուխտաւորն ծանրացեալ օր քան զօր հիւանդութեամբ՝ մահուանէն երեք օր առաջ յայտնեց բարեպաշտուհի տիկնոջ իւր մերձաւոր մահն շնորհակալութեամբ, մարդասիրութեամբ պատսպարելուն համար, և օրհնելով զտիկինն Աթա ի հոտ սրբութեան հան-*

գնաց ի Քրիստոս յ'3 Յունիսի 1050: Այսպէս իւր ապարանին մէջ կարճատև շուրջ քսան օր ապրելուն համար բարեպաշտուհի տիկինն տրտմեցաւ, մխիթարուելով միայն զանի Աստուծոյ տանեանն մշտատև բարեխօս ստանալուն համար, որով փութաց մեծամեծ ծախուք և արժանավայել շքեղութեամբ կատարել Սրբոյն յուղարկաւորութեան հանդէսն յեկեղեցւոջ Ս. Միքայելի հրեշտակապետին, և հանգոյց զսուրբ մարմինն ի շրջակայ գերեզմանոցի: Քաղաքացի այրի մի որ ունէր ախտ տեռատեսութեան արեան՝ ըստ դիպաց գըտաւ յաւուր միում ննջել և անկեալ ի վերայ գերեզմանին՝ ուր թաղեալ էր հայկազն Սուրբն. Սուրբն երևնալով տեսլեամբ տեռատեսին յայտնեց հոն իւր ոսկերաց վրայ անզգուշութեամբ նստած ըլլալն. կինն սասանեալ կանգնեցաւ յոտս և գտաւ խոկոյն բժշկեալ հիւանդութենէն: Բուսեալ էր նաև որթ Սրբոյն գերեզմանին վրայ, և խաղողէն ուտողքն բժշկուեցան իրենց պէսպէս հիւանդութիւններէն: Այդքան սքանչելեաց յաճախութիւնք առիթ տուին Սրբոյն մարմնոյն փոխադրութեան յիշեալ Ս. Հրեշտակապետին եկեղեցին և ամփոփմանն արկղի միոյ մէջ: Ժամանակ ժամանակ հանեալ Սրբոյն մարմինն եկեղեցւոյ մէջ հանդիսութիւնք եղան. վերջապէս յամի 1646 աւելի փառաւոր շքեղութեամբ և թափօրով զետեղուեցաւ Սուրբն եկեղեցւոյն աւագ խորանին ներքև: Հայկազն Սրբոյն մարմինն մինչև ցայսօր անապական մնացած է, խորանին ներքև ազնիւ բոսորագոյն մետաքսեղէնի վրայ տարածեալ. հոն է նաև Սրբոյն տարած գլխարկն և գաւազանն: Ի տօնի Սրբոյն յ'3 Յունիսի ամէն տարի, այն գլխարկն սովորութիւն է այցելուաց գլուխն դնել ի նշան յարգանաց և տալ ի համբոյր Սրբոյն բազուկն որ անջատեալ ի մարմնոյն արծաթապատ եղած է: Անհնար է մեզ բարեպաշտ հաւատացելոց բազմութեան թիւն ճշդել որ նաև շրջակայ սահմաններէն զհայկազն Սուրբն բարեխօս ունելով կը դիմեն յեկեղեցին իբրև ուխտաւորք: Մենք կրկին անգամ արժանի եղանք տեսնելու ըզ-

Սուրբն այցելութեան ելթալով. մին Լուր տօնին՝ երբ բազմութեան առջին բացեալ է քող խորանին որ կը ծածկէ զսուրբ մարմինն. իսկ միւս անգամն՝ որ դեռ առաջին անգամն էր մեր այցելութեան յամին 1879, ի շնորհս մեր հայութեան միայն հնար եղև և հրաման բացման զոգնոցի և քողի տապանակին, ուր խոնարհեալ պագի մի աղօթեցինք վասն մեր և վասն բարեաց ազգին մերոյ: Յիշատակութեան արժանի է որ յամի 1646 երբ հանդիսապէս թափօր եղեր է յեկեղեցւոյ, հրաւիրուեր են ի Լիվոռնոյէ երկոտասան հայկազն մեծատունք, որպէս զի անոնք իրենց ուսոցն վրայ տանին թափօրին մէջ հայկազն Սրբոյն Դաւթի մարմինն, և այսպէս շքեղութեամբ տարեալ զետեղեր 'են ստորև ասած խորանին, ուր մինչև այսօր անշարժ պահուեր է:

Ի դիւանատան եկեղեցւոյն կը պահուի երկոտասան հայկազանց անուանքն որոնք ինքնին գրեալ յիշատակարան մի հայազգիր յանձներ են հոն: Կայ նա այլ յիշատակարան մի, որ առաջնորդութեամբ Եւդոկիացի Ալեքսանի այլ չորս վաճառականք հայազգիք երթեալ են ի Լիվոռնոյէ յամի 1656 յուխտ մեր Սրբոյն, որոց անուանքն իսկ են դրօշմեալք:

Հայազգի այցելուաց մէջ կը յիշատակուի Իշխանն Սափար որ Պարսից Շահին դեսպանն է եղեր, և քանի մի հայ ընկերներով գնացեր են ի Լուքքա յուխտ տապանի Սրբոյն, դէպ ի յամն 1610, և անտի գնացեր են ի Հռոմ: Յիշեալ դիւանատան հայազգիր վաւերականներէն մին գրեալ է այսպէս. «Ի 26 Յուլիսի 1596, Դաւիթ ուխտաւոր ի սուրբ Յակոբ գնալն վախճանեցաւ ի քաղաքս Լուկայ և բազում սքանչելիս արար ի կենդանութեան և յետ մահուան, և էր ի Հայոց ազգէն. ես Յովհաննէս Եպիսկոպոս գրեցի զայս բան»: Կայ այլ գրութիւն մի այսպէս. «Ես Առաքել Եպիսկոպոս Երևանցի եկի Լուկայ, ուխտ արի սուրբ Դաւիթ ի թուին Հայոց ՌԾԺԸ»:

Լուքքա քաղաքին մէջ կայ հին մէկ տան մէջ սենեակ մի, ուր աղքատին խորան մի, և որմին վրայ գրեալ յիտալական

լեզու. «Աստ հանգեաւ Ս. Դաւիթ հայկազն»։ Որ և է ուխտատեղի, և ի տօնին կը յաճախեն այցելուք:

## ՃԵՆՈՒԱ

Ի Ճենուա բարձրավայրի միոյ վրայ կայ կառուցեալ եկեղեցի Սրբոյն Բարթողիմեայ՝ որ մինչև ցայսօր կը կոչեն զայն տեղացիք Հայոց անուամբն, որպէս նաև մերձաւոր մէկ ուղի կը կոչուի Փողոց Հայոց: Սոյն եկեղեցւոյ մէջ մեր ազգային աստուածապարգև յիշատակն կը պահուի չորեքտասաներորդ դարէն ի վեր. մերոյս Աբգարու Ցխտու Փրկչէն ընդունած Ս. Դաստառակն է յառակայէս, որ աւելի քան զինն դար մնաց մեծարեալ յԵդեսիա մինչև ի Կ. Պօլիս փոխադրութիւնն. վասն զի Կայսրն Կոստանդին Պորփիւրոժէն յամի Փրկչին 944 զնեց զՍ. Դաստառակն Եդեսիոյ սարակինոսաց քաղաքապետէն և արժանավայել հանդիսութեամբք բերեալ զետեղեց իւր արքունական մատուռն ի Պալատան: Ուր և մնաց չորս դար և աւելի ևս, երբ Լէոնարտոս Մոնթալտօ Ճենուացի զօրավարն ի վարձ ծառայութեան պարգև ընդունեցաւ զայն Յովհաննէս Բալէոլոկոս կայսրէն, և տարեալ ի Ճենուա քաղաք պահեց զայն բարեպաշտութեամբ. և ի վախճանելն յամի Փրկչին 1380 յիշատակ թողոյց զՍ. Դաստառակն Հայոց, Ճենուայի Հայոց եկեղեցւոյն. ուր միշտ պատուեցաւ մեծապէս և ցուցեալ հրաշալեօքն հաւատացելոց ուխտատեղի եղաւ: Արդ սովորութիւն է յիշեալ Ս. Բարթողիմեայ հայկական եկեղեցւոյն մէջ իւրաքանչիւր տարի ութօրեայ հանդիսութեամբ տօնախմբութիւն կատարել ի պատիւ Ս. Դաստառակին Քրիստոսի. տօնախմբութիւնն ութօրեայ կը սկսի Պենտեկոստէի առջին օրէն. Նոյն օրն Ս. Դաստառակն կը զետեղուի յիշեալ եկեղեցւոյն վերնատանն կից մատուռի մըոյ մէջ սեղանոյ վրայ, ուր կը դիմէ անհամար բազմութիւն չորս կողմերէն յուխտ Ս. Դաստառակին. այսպէս արժանի եղանք և մեք տեսանել և յար-

գել մեր ազգային սրբազան աւանդն յ30 Մայիսի 1882 ըստ նոր տումարի գնացեալ մեր ի Ճենուա քաղաք*: Եկեղեցւոյն աւանդատան մէջ գտանք տապանագիր մի հայերէն արձանագրութեամբ, այսպէս.

« Այս է տապան Հայրապետին՝
Որ է որդի Անանիային.
Սա յերկրէ է Գողթան տանին
Որ ի գեղջէն Նարբերդային.
Վախճանեցաւ Հայոց թուին
Հազար հարիւր երսուն վեցին
Եւ յապրիլի քըսան հընգին.
Ով՝ հանդիպի այս տապանին
Հայր մեր յերկինս մի շնորհին
Վասն սիրոյն Քրիստոսին »:

Վերոյիշեալ Ս. Բարթողիմեայ եկեղեցին ունին եօթնետասաներորդ դարուն կէսէն ի վեր Բառնաբեան կարգի լատինածէս կրօնաւորք, որոնք շինեցին ի պէտս իւրեանց եկեղեցւոյն կից նոր վանատուն մի ի վերջին ժամանակս. վասն զի միւս մեծակառոյց մենաստանն, իտալական միապետութիւնն գրաւեալ փոխանակեց զայն ի վարժարան խուլ–համրաց: Այդ մեծակառոյց մենաստանին հիմնարկուք եղած են Բարսեղեան կարգին Հայ Եղբարքն. դեռ ցայսօր ի մուտս վանաց կամ մենաստանին կայ կանգնեալ Սրբոյն Բարթողիմեայ Առաքելոյ հսկայաձեւ մարմարեայ արձանն:

Բարսեղեան կարգին Հայ կրօնաւորաց հիմնադիրք եղած են, ըստ վկայութեան իտալացի պատմագրաց, կրկին հայազգի միանձունք, որոնց մին ունէր անուն Արքայ Մարտիրոս վա_

* Թէ և Գաղղիացիք յարշաւելն յիտալիա կողոպտեալ էին Ս. Բարթողիմեայ եկեղեցիէն և տարեալ էին զՍ. Դաստառակն ի Գաղղիա, այլ յետոյ սակայն դարձուցին անդրէն յետս ի Ճենուա հայոց եկեղեցին:

խուցեալ պատսպարեալ եղան ի Ճենուա շուրջ յամն 1300, Սեաւ լերին ճգնարանէն, Կիլիկիոյ քանդման ժամանակն:

Յիշատակեալ կրկին միաբանութք Կիլիկիոյ Սեաւ լերին հա-սնայք ի Ճենուա ճգնողաբար և առանձնական վարք վարելով օրինակ բարի եղան ամենեցուն, մինչև շարժեալ ի գութ քաղաքին մեծատուն վաճառականներէն մին Օպերթոյ անուն, փութաց անոնց տեղի շնորհել Մոնթալտօ կոչուած լերան վրայ և այլ նպաստներ ևս ըրաւ: Որուն օգնութեամբ, և այլ և այլ մեծամեծաց սատարութեամբ Հայ միաբանութիւնքն շինեցին զհոյակապ մենաստանն և յարակից Սրբոյն Բարթողիմեայ Առաքելոյ եկեղեցին, յամի Փրկչին 1308. Ժամանակին վիճակաւոր Արքեպիսկոպոսն ևս նպաստեց անոնց մեծապէս: Որպէս նաև Ս. Քահանայապետն Կղեմէս Ե. հաճեցաւ Ներողութիւն շնորհել, մեր հայազգի միաբանից նպաստաւոր և բարեբար եղողներուն: Այսպէս հռչակեցաւ անոնց համբաւն և Ս. Բարթողիմեայ եկեղեցին ուխտատեղի կոչուեցաւ. տեղացի բարեպաշտք միտեալք ի վանս կրօնաւորեցան և հետզհետէ բազմանալով միաբանից թիւն սկսան տարածիլ Իտալիոյ զանազան կողմերն, և շինեցին առանձին հոգետներ և եկեղեցիներ:

Ցուցակ ժամանագրական համօրէն եկեղեցեաց Հայոց յԻտալիա

| | |
|---|---|
| Ի Հռոմ | 1240. Ս. Աստուածածին, Ս. Լուսաւորիչ Ս. Պօղոս գլխատման: |
| Փլորենտիա | 1250-1491. Ս. Բարսեղ |
| Րիմինի | 1254 Ս. Յովհան և Ս. Մատթէոս |
| Անգոնա | 1260 Ս. Հոգի. Ս. Անաստասիա. |
| Սիենա | 1270 Ս. Աստուածածին (Ս. Խաչի և Գերեզմանի) |
| Բերուճիա | 1271 Ս. Մատթէոս և Ս. Բառնաբաս |
| Սալեռնոյ | 1283 Ս. Կարապետ (Ս. Կոզմաս) |
| Օրվիէտոյ | 1288 (Ս. ?) |
| Վիդերպոյ | 1290 Ս. Սիմոն և Ս. Յուդա |
| Գոլոնիա | 1303 Ս. Աստուածածին, Ս. Յովհ. Մկրտիչ. Ս. Հոգի. |

| | | |
|---|---|---|
| Օգանայ | 1496 | Ս. Բարսեղ, Ս. Մարիամ Կարմեղայ |
| Ֆերրարա | 1304–1442 | Ս. Աննա |
| Ճենովա | 1307 | Ս. Բարթողիմէոս Առաքեալ |
| Պատուա | 1308 | Ս. Մարիամ Նազարեթայ |
| Ֆագիոլի | 1312 | Ս. ? |
| Կուպպիոյ | 1318 | Ս. Հրեշտակք, Ս. Աննա |
| Լուկկա | 1319 | Ս. Պօղոս |
| Ֆապրիանոյ | 1319 | Ս. Հոգի |
| Բարմա | 1319 | Ս. Բարսեղ |
| Բիզա | 1320 | Ս. Անտոն |
| Միլան | 1320 | Ս. Կոզմաս և Ս. Դամիանոս |
| Նափոլի | 1328 | Ս. Հոգի |
| Բիսդոյա | 1340 | Ս. Բարսեղ և Ս. Ոնոփրիոս |
| Վենետիկ | 1348 | Ս. Յովհ. Մկրտ. 1434 Ս. Խաչ |
| Ֆաէնցա | 1372 | Ս. Թովմաս (Ս. Մարթա). |

Եւ ևս ի Չիվիթա Վէքքիա, ի Ֆօրլի, յԻմօլա, ի Բեղարոյ կամ Բեղգարա։ (ի համագրութեան Ալիշանեայ յերես 372)*։

* Բաց ի վերագոյն յիշատակելոց կան եղեր ևս ի Հռովմենայ Ս. Յովհաննէս հայոց, ի Բավիա Ս. Յուստինանէ և Ս. Կարոլոս, ի Բոնթէքօրօնա Ս. Պետրոս Առաքեալ, և ի Կալվա Ս. Խաչ անուամբք եկեղեցիքն:

---

Ի Բերուճիա կամ Պերուժ հայոց ճոգետանն պարգեւած է մերոյս Լեւոն թագաւորէն ճաշոց գիրքն, որ ունի յետագայ յիշատակարանն. «Լեւոն շնորհօքն Աստուծոյ և օգնականութեամբ նորին թագաւոր ամենայն հայոց, որդի հանգուցեալ արքային Հեթմոյ, վասն խնդրոյ Յովհաննէսի քահանայի պարգեւեցաք զժամագիրքս զայս իւր եկեղեցւոյն Ս. Մատթէոսի Աւետարանչի, որ է ի Փերուժ քաղաք՝ յիշատակ մեր և նախնեաց մերոց ի թուականութեանս հայոց ՆՃԻԸ։— Յիշեսջիք և զիս զՀեթում նուաստ Սարկավ. մի սուրբ ընթերցողք, և զեղբայր իմ զՂուկաս քահանայ, և զՕշին Սարկաւագ......»: Այս արքայական ձեռագիրն կը պահուի այժմ ի հիւրատան ազգին ի Հռովմ:

Իսկ յՍրբեպիսկոպոսական մատենադարանի անդ ի Բերուճիա է ցեցակեր գիրք թղթոց Ս. Առաքելոյն Պօղոսի. Յիշատակարանն է. «Փառք Հօր արարչին մերոյ և Որդւոյ փրկողին մերոյ և

## ՖԻՕՐԵՆՑԱ

*Ֆիօրենցա զոր Փլորենտիա կոչած են մեր նախնիքն, ունի ի բարձրավայրն գեղեցիկ բլրոյ վրայ սքանչելի տաճարն Սրբոյն Մինասայ, և առընթեր եկեղեցւոյն մենաստան ընդարձակ որ այժմ անբնակ թողեալ է և կը ծառայէ միայն վիճակին քահանայից տարեկան հոգևոր ուխտօրեայ առանձնութեանն: Ըստ վկայութեան Ռիքա, Մաննի և Վարքի պատմաբանից՝ յիշեալ սրբոյն Մինասայ կամ Սան Մինիաթոյի մենաստանն մինչև մետասաներորդ դարուն սկսուածն բնակեր են հայազգի Բարսեղեան կրօնաւորք, և այնուհետև թողեալ զայն լատինածէս միանձանց՝ քաղաքին մէջ հիմնադրեր են այլ մենաստան և*

*Հոգւոյն Սրբոյ նորոգողին միրոյ, յանսպառ և յանծերանալի յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

*«Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զաստուածախօս վարդապետութիւն Ս. Առաքելոյն Պօղոսի որ յառաջ քան զլինելն աշխարհի:*

*«Ի հայրութեան Տեառն Սուքիասայ, տեփաննոս քահանայ, Յովհաննէս Շամգորեցի և աշակերտ նորին Յովհաննէս քահանայ որ օրինակեաց»:*

*Իսկ խորագիրն է «Ընդօրինակեցան գիրքս այս ըստ Կեսարացւոց օրինակացն որ կան ի յարգեղս գրոց սրբոյն Պամփիլեայ իւրովք ձեռագրովք գրեալ»:*

*Կը յիշատակուի այլ պարգևագիր մի յարքունական Դիւանատան ի Դօրինօ, Լեւոնի երրորդի Ճենուացւոց շնորհեալ յամի 1288, որպէս նաև ի Մեսսինա քաղաք կայ եւ պատճէն այլ պարգևագրի շնորհելոյ յամին 1332 ստորագրութեամբ և կնքով արքունական, ի Լևոնէ հինգերորդէ. կը յիշատակուի մեր գաղթականներէն Մանուէլ անուն ոմն թարգման որդի Յովհաննու Ասպետի հայկազնոյ ծնեալ ի Ճենուա:*

*սրբոյն Բասիլիոսի եկեղեցին: Որ եթէ հետամուտ ըլլանք Բարսեղեանց սկզբնաւորութեանն քննել ի ձեռնուտ՝ եղած է այն յամի Փրկչին* 1308, *հետեւաբար չկային ի սկսուած տասներորդ դարու, որով չէ ճիշդ պատմչաց վկայութիւնն:*

*Իսկ Ռիքա կը վկայէ եւ թէ հայազգի միանձունքն Ֆլորենցայի կից անտառին մէջ Մուճելլօ կոչուած տեղն ունին եղեր եւ մենաստան (ուր Ֆրանչիսկեանք կը բնակին այժմ): Բարսեղեանք իրենց եկեղեցեացն մէջ ըստ Հայաստանեայց եկեղեցւոյ երկայն արարողութիւնք կատարելով՝ Ֆլորենցայու ժողովրդեան հայերէն լեզուն այն աստիճան ազդեցութիւն ըրեր է որ իրենց մէջ իբր առակ կը գործածեն եղեր ըսելը «հայկական են քոյին ձենչմունք»*, (come la solfa degli Armeni), *երբ պատանիներ իրերաց խօսքեր չիմանան:* (Storia delle Chiese fiorentine, Padre Richa).

*Սրբոյն Մինասայ տաճարն նմանեւ կրկնայարկ եկեղեցի մի է, ունի պատուական նկարներ եւ քանդակներ, ուր թաղեալք կան քաղաքին ազնուականքն, այլ եւ առընթեր եկեղեցւոյն գերեզմանատուն գեղեցկակերտ. յաջակողմն Սրբոյն Մինասայ տաճարին գեղեցիկ դաշտի մի վրայ կանգնեալ է պղնձեայ հսկայաձեւ արձանն Դաւթի՝ Գողիաթայ գլուխն ի ձեռին ունելով, որ եւ զբօսավայր է, ուր համատեսիլ կընծայուի աչաց բոլանդակ քաղաքն: Ֆլորենցայու մատենադարանաց եւ զանազան դիւանաց մէջ կը պահուին զանազան հայագիր մատեաններ եւ մագաղաթներ, յորս է եւ փոքրադիր կախարդագիրք մի, որուն երեսքն են վանդակաձեւ կարմրագծեալք:*

*Մենք այլ եւ այլ անգամ ի Լիվոռնոյէ ուղեւորեցանք ի Ֆլորենցա քաղաք՝ հայրենեաց վերաբերեալ յիշատակաց հետազօտութիւնքն ընելու արքունի դիւանատանց մէջ: Ուր Ֆիլցա Սթրօցիանա կոչուած ձեռագրաց ծրարաց մէջ կը յիշատակուի թէ Փլորենտեան հասարակապետութիւնն վճռեր է յամի Փրկչին* 1407, *ընծայել յարքունեաց տարուէ տարի վեց մաս մեղրամոմ Հայ եղբարց Սրբոյն Բարսղի եկեղեցւոյն:*

Հնգետասաներորդ դարուն վերջերն ի Ֆլօրենցա Բարսեղեանք սպառեր են հետզհետէ վախճանելով. ուստի եկեր են ի Միլանէ այլ երեք Բարսեղեանք՝ կալուածոց տէր ըլլալու համար: Որոնց մին Յակոբ Մարղինեան անուն պատսպարուեր է Ս. Հոգւոյն ընկերութեան կոչուած քահանայից վանատունն, և փոխարէն բարերարութեանն յամն 1491 կտակաւ խոստացեր է թողուլ Բարսեղեանց ինչքն յիշեալ ընկերութեան. այլ մեռծ ի մահ զղջալով՝ նոր կտակաւ անուաներ է ժառանգ Ս. Բարսղի եկեղեցւոյն Սիմոն անուն Դոմինիկեան կրօնաւորն, այս է յամն 1495. Այլ սոյն երկրորդ կտակն ոչինչ համարուեր է, Հոգւոյն Սրբոյ ընկերութեան քահանայք ժառանգեր են Ս. Բարսղի եկեղեցին. և դէպ ի յամն 1625, իրենց ծախքովն նորոգեր են եկեղեցին: Սոյն եկեղեցին այժմ բողոքականաց աղօթատեղի փոխեալ է: Արքունի դիւանն մինչև ցայսօր կը պահուի Բարսեղեանց կարասեաց ցուցակն որ թողեր է Յակոբ Մարղինեանն*:

Իսկ Լաւրենտեան կոչուած մատենադարանն կայ եղեր ի թիւն 149 ձեռագիր մի, որոյ խորագիրն. է «Սահմանք եղբարց Արամեանց կարգի Սրբոյն Բասիլիոսի, որ յայսկոյս ծովու: Քանզի ի պատուիրանէ կանոնի հրամայեմք», և այլն. ուր մինք երկիցս գնացեալ, փակեալ գտանք դռներն յ12, Մայիսի 1887, քաղաքական հանդիսութեանց աւթիւ**:

* Հաստրակաց գրատան մէջ տեսեալ եմք յամն 1886 ձեռագիր ընդարձակ Պատարագամատոյց մի ընդօրինակեալ յամին 1684 ի Բոլոնիա ի քաղաքն Լէօբօլի. ուր կայ ժամամուտ ի պատիւ Սրբոյ Երրորդութեան այսպէս.

«Օրհնեալ ես Սուրբ Երրորդութիւն Հայր և Որդի և Սուրբ Հոգին յիրիս Անձինս բաժանեալ և մի բնութիւն ոչ զատեալ: Աղաչեմ զքեզ Ճշմարիտ Աստուած տօնողացս ողորմեա և կեցո»:

** Դէպ ի յամն 1439 ի ժամանակս տիեզերական ժողովոյն ի Փլորենտիա քաղաքի միւրոյս կոստանդին կաթողիկոսին կողմանէ գտան ներկայ չորեքին հրեշտակքն Հայոց, որոց անուանքն էին

## ՍԻԵՆՆԱ.

Ի Սիեննա քաղաք մինչև այսօր թէ և լքեալ և փակեալ, այլ կայ մերոյս Բարսեղեանց Ս. Խաչի և Ս. Գերեզմանի կոչուած փոքրիկ եկեղեցին, մերձաւոր Կամոլեան անուն դրան քաղաքին յաջակողմն նորա յելանելն ի քաղաքէն: Մենք շրջելով Արքունի դիւանատան մէջ ի Սիեննա, հետամուտ եղանք աշխատելով յիշատակութիւններ քաղել. և առաւել քան ի Փլորենտիա ի Սիեննա յաջողեցանք գտանել զանոնք. ուր ի դիւանատան են ոչ սակաւ վաւերականք, յորս յիշատակին Բարսեղեան Հայ եղբարքն: Այսպիսի վաւերականներէն մին Իննովկենտիոս Զ. Պապին մէկ կոնդակին օրինակն է, որ ի չորրորդ տարին իւր քահանայապետութեանն ուղղեր է յԱւինիոնէ Գաղղիոյ առ Հայ եղբարս որ յայսկոյս ծովու, սահմանելով՝ որ այնուհետև Հայ եղբարքն հագնին Սրբոյն Օգոստինոսի կարգին տարազն և պահեն նոյն կարգին կանոնքն, կարգեն մէկ Աբբահայր ի Քարոզչաց կարգէն Ս. Դոմինիկոսի, իսկ յաջորդ աբբահարքն յետոյ ընտրուին ըստ հաճոյս ի Հայ եղբարց: Կոնդակին օրինակն որ կը պահուի այժմ՝ գրեալ է ի 25 Օգոստոսի 1377. և օրինակողն Հայ եղայրներէն Բոլոնիացի Եղբայր Փիլիպպոսն:

Բարսեղեանք իրենց կարգին հաստատութեան համար դիմած էին աղերսագրով առ. Ս. Քահանայապետն Իննովկենտիոս Զ. աղաչելով որ բարեհաճի Նորին Սրբութիւնն միւս կրօնաւոր կարգաց նման իրենց ևս գլուխ կարգելու Աբբահայր մի. ստանան կալուածս և մատակարար ըլլայ իրենց Աբբահայրն ընդհանուր՝ համօրէն իրենց մենաստանաց ընչիցն: (Dal-

Սարգիս, Մարկոս, Թովմաս և Յովակիմ վարդապետք, զորս մեծարոյս կոչեաց Նեգինէոս Դ. ժամանակակից ծայրագոյն Քահանայապետն։

lo spoglio de'contratti dell'Archivio di S. Dom. A· C. 101. a 670. nell'Archivio di Stato in Siena).

Սոյն յիշատակեալ կոնդակէն առաջ Բարսեղեանց տարազն էր հայկական և արևելեան. ունէին լրթագոյն սպարեզօտ մազեղէն, որոյ վերայ ի ձև փորուրարի մէկ եմիփորոն, կնգուղ և սևագոյն փիլոն: Արևելեան տարազին հետ, փոփոխեցին եւ սովորութիւնքն, որպէս նաև լեզուն սակաւ առ սակաւ, լատինաբար սկսան կատարել ծէսերն՝ և այլն: Վերջապէս Բարսեղեանց կարգին կրօնաւորական բարեկարգութիւնն նուազելով, երբ ուսմունքն և կանոնապահութիւնն պակասեալ էր, իսկ աղքատութիւնք և անկարգութիւնք զգալապէս յաճախեալք, և թիւ նոցա օր քան զօր կը նուազէր. յամի Փրկչին 1650 Ս. Քահանայապետն Իննովկենտիոս Ժ. առանձին կոնդակով միով ջնջեց Հայ եղբարց կամ Բարսեղեանց կարգն: Իսկ յետ ջնջման կարգին մնացեալ եղբարց թոյլտուութիւն եղաւ որ ըստ ճաճոյս կարող ըլլան այլ կարգերու կրօնաւորաց վանքերն երթալ, որպէս նաև ոմանց մինչև իրենց մահն ռոճիկ վճարեցաւ ի Հռովմայ:

Ստորև առանձեալ յիշատակագրութիւնքն քաղած ենք մեզէն ի վաւերականաց արքունի դիւանին Սիենա քաղաքին: Սոյն քաղաքին գաւառական սահմանագրութեանց տետրքն – սկսեալ յամէն 1263 մինչև 1277 – կը նշանակեն որ քաղաքապետական վարչութիւնն տարուէ տարի Հայ եղբարց Ս. Խաչի շնորհեր է քսանևհինգ սիենական ոսկեղրամ ռոճիկ: (Negli statuti del Comune di Siena).

Նպարակավաճառն Կուխտարելլօ Սիենացի ի վախճանելն իւրում յաւուր 29 Օգոստոսի 1308, շնորհեր է Հայ Եղբարց դրամս տասն: (Nella pergamena di S. Agostino di Siena).

Միթա անուն կին մի Լարոյի այրին կտակաւ թողուց յաւուր 16 Հոկտեմբերի 1312, Հայ եղբարց Ս. Խաչի դրամս քառասուն: (Dallo spoglio di S. Dom. A. C· 8 a 31).

Լիբրա անուն կողակից Նասոսոս Մարխաքօթթիի կտակաւ շնորհեց Ս. Խաչի եկեղեցւոյն Հայ Եղբարցն դրամս քանի յաւուր 3 Յուլիսի 1348: (Libro Nono Pergamena, Borghesi L. 218).

Կուլիէլմոս Յովհաննէսեանն ի Հայ Եղբարցն յամի Փրկչին 1439, Սիենայի Մայր եկեղեցւոյն ձայնապետ և երգիչ կարգեցաւ. որուն աշխատութեան տարեկան վարձք կանոնիկոսաց ժողովքն կը վճարէր ոսկի Ֆիօրին քառասուն: (Deliberazioni dell'Opera di Siena E. 5. pag. 50. tergo).

Բարթողիմէոս Կիմոսեան ոմն ի Հայ Եղբարց յամին 1434 կարգեցաւ հոգաբարձու Սիենայի շրջակայից մէկ եկեղեցւոյն, որ կը յորջորջուէր Եկեղեցի Տիրամօր ի Բեթղեհեմ: (Dall'Aurieri, Notizie Storiche).

Վերոյիշեալ Բարթողիմէոս Կիմոսեանն կը յիշատակուի այլուր իբր վերակացու և մատակարար կալուածոց և ընչից Տէր Կուլիէլմոս Պուլյա անուն Եպիսկոպոսին ի Սիենա: (Documento dell'Archivio di Riformazioni).

Կրացիանոս Նանոսեանն կը յիշատակուի յամին 1462 իբր մեծաւոր և երիցագոյն Ս. Խաչի և Գերեզմանի եկեղեցւոյն Բարսեղեանց ի Սիենա, որուն իշխանութեան հպատակէին ողջոյն Դոսկանայու մէջ հաստատեալ Հայ Եղբարքն: (Diario Senese, Parte prima, pagina 144).

Սիենայի իշխանութեան ներքև Սան-Ճեմինիանոյ անուն միջնադարեան աւանին շրջակայքն է մենաստան մի և իւր անդաստաններ, որ մերոյս Բարսեղեանց վերաբերեր է ժամանակաւ, այլ յետոյ Ոլիվէդանի կոչեցեալ կրօնաւորքն ժառանգեր են զմենաստանն և զկալուածսն:

Գնացեալ մեր յայցելութիւն յ18 Ապրիլի 1887 եկեղեցւոյն Ս. Խաչի և Գերեզմանի ի Սիենա որ լքեալ և փակեալ կը մնայ, տեղեկացանք որ մինչև յետին ժամանակներ եկեղեցին ունի եղեր առանձին քահանայ լատին՝ որ իւրաքանչիւր ամիս յիշեալ եկեղեցւոյ մէջ կրկին պատարագ մատուցանելու պար-

տաւորութեամբ կընդունէր Սինեայի քաղաքական վարչութենէն հինգ արծաթ սկուտ, որ է 60 սկուտ արծաթադրամ տարին: Այլ քահանային վախճանելէն յետոյ, քանի մի տարիներ ղաղարեր է պատարագաց մատուցումն, մինչև որ պարտաւորեր է դատաստանաւ քաղաքական վարչութիւնն նորէն պատարագներն մատուցանել տալ, այլ ոչ որպէս յառաջն. վասն զի թոշակն այժմ զեղչեալ, տարին քսան սկուտ միայն կը վճարէ, իւրաքանչիւր ամիս մէկ պատարագի պարտաւորութեամբ:

Ս. Խաչի և Գեթսեմանի եկեղեցին չէ մնացեալ այլ ինչ ի Հայ Եղբարց Բարսեղեանց՝ բայց եթէ Աւագ խորանին խաղաներկ ճարտարագրիչ պատկերն, որ է Քրիստոսի փրկչին մերոյ Ս. Խաչէն վար առնուլն*:

* Կը յորդորենք պատմութեանս վերծանողներն ուշի ուշով ընթեռնուլ յետագայ յաւելուածներն և վաւերականքն, որոնք պատմութեանս ամբողջացուցիչ և կարևորագոյն մասն են:



# ՅԱՒԵԼՈՒԱԾ ԱՌԱՋԻՆ



## ՕՐԻՆԱԿՔ ՊԱՏՃԷՆԻՑ

| | | | |
|---|---|---|---|
| Պատճէն | Ա. | Օրինակ | Արտօնագրոյ Ֆերտինանտոսի Առաջնոյ |
| » | Բ. | » | Առաջին Դաշնագրի Հայոց ի Լիվոռնոյ |
| » | Գ. | » | Երկրորդ Դաշնագրի Հայոց ի Լիվոռնոյ |
| » | Դ. | » | Աղերսագրոյ Ազգին առ Աւագ Դուքսն |
| » | Ե. | » | Առաջին Կանոնագրութեան Հայոց |
| » | Զ. | » | Երկրորդ Կանոնագրութեան Հայոց |
| » | Է. | » | Հրովարտակի Լէոպոլտոսի Առաջնոյ |
| » | Ը. | » | Նամակի Առաքելական Նուիրակին Փլորեն-տիոյ |
| » | Թ. | » | Յայտարարութեան Ս. Ժողովոյն առ Նոյնն |
| » | Ժ. | » | Երկրորդ Հրովարտակի Լէոպոլտոսի Առաջ-նոյ |
| » | ԺԱ. | » | Երրորդ Կանոնագրութեան Հայոց ի Լիվ. |
| » | ԺԲ. | » | Վճռոյ Իտալական Միապետութեան |
| » | ԺԳ. | » | Պարգևագրի Լեւոնի Կիլիկեցւոց Արքայի |
| » | ԺԴ. | » | Պարգևագրի Աւստրիոյ Կայսեր. |



# ՅԱՒԵԼՈՒԱԾ ԱՌԱՋԻՆ

## ՊԱՏՃԷՆ ԱՌԱՋԻՆ

**Օրինակ Արտօնագրին զոր Նորին Պերճազանց Բարձրութիւնն Մեծ Դուքսն շնորհեաց Հայկական ազգաց բնակելոց ի Լիվոռնոյ, յաւուր 10 ամսեանն Յունիսի և յամի մարդեղութեան Տեառն 1593, հանեալ է մատենից վճռոց հասարակաց որ է Դիւանին Բարձրագոյն Արխիւն է Փլորենտեան մայրաքաղաքի։**

*Տէր Ֆերտինանտոս Մետիչեանց շնորհօքն Աստուծոյ Երրորդ Աւագ Դուքս Դոսկանայու, Չորրորդ Դուքս Փլորենտիոյ և Սիենայու, Տէր Երկաթեայ Դրան Ելպայու և Զկնավաճառ Աւանին, ծիլիօ կղզւոյն և Աւագ Պաշտօնապետ Ռովրական Կարգի Սըրբոյն Ստեփաննոսի․*

*Ամենեցուն ձեզ, ով վաճառականք իւրաքանչիւր ազգաց, Արևելեայք և Արևմտեայք, Սպանիացիք և Փորթուկալլիացիք, Յոյնք, Տաճկաստանցիք, Իտալացիք, Եբրայեցիք, Թուրք, Հայք, Պարսիկք և այլք, ողջոյն համայնից: Սոյնին յայտագրովս ծանուցանեմք ձեզ թէ որպէս մեք շարժեալ իցեմք արժանի խնամատարութեան, նա մանաւանդ փափաքանօք, վասն հասարակաց օգտի ի քաջալերել զօտարականս առ ի գալ և յաճախել վիւրեանց սուտուրս և զվաճառս ի մէջ անձկալի քաղաքի մերում Բիզայու և ի նաւահանգիստն Լիվոռնոյի, ղաղարելով և բնակելով հանդերձ ընտանեօք ձերովք կամ առանձինն․ յուսալի է մեզ զի շահաւորագոյն լիցի այն ողջոյն Իտալիոյ և ըն-*

պատակաց մերոյ և առանելապէս աղքատաց դասուն։ Ուստի և ըստ վերագոյն ասացելոցս և սակս այլ պատճառաց յորդորիմք տալոյ և շնորհելոյ ձեզ, որպէս իսկ զօրութեամբ ներկայ յայտագրոյս այսմիկ տամք և շնորհեմք զշնորհաբաշխութիւնս, և զարտօնութիւնս, զառանձնաշնորհմունս, զազատութիւնս և զապահարկութիւնս ըստ ներքոյ գրելոց այսոցիկ։

(Հետևաբար Աւագ Դուքսն Ֆերտինանտոս Առաջին մի առ մի նշանակելով շնորհած է ի Լիվոռնոյ եկողաց և բնակողաց կրօնական բացարձակապէս ազատութիւն, ի քաղաքական տուրց ապահարկութիւն, ազատական առուտուր, ապահովութիւն շահեալ գումարաց վճարման, ներումն և թոյլտուութիւն գործեալ յանցանացն, անկախութիւն ըստ խղճի ի դատաստանաց հրաման կազմելոյ առանձին հասարակութիւնս, և յերթևեկութեան վաճառականաց ուղևորական նպաստներ, և այլն և այլն։ Որոնք ի քառասուն և աւելի ևս յօդուածոց մէջ պարունակեալ ըլլալով և երկարագոյն՝ զանց ըրած ենք թարգմանաբար յառաջ բերել զամենայնն։ Իսկ վերջաբան յայտագրոյն է ըստ այսմ՝ հետևեալ եղանակի)։

Վասն որոյ հրամայեմք ամենեցուն ատենապետաց, քաղաքապետաց, գործակալաց, զօրապետաց, ոստիկանաց, ծովապետաց, զնդապետաց և նաւապետաց և ամենայն պաշտօնակալաց մերոց թէ ի ցամաքի և թէ ի ծովու տէրութեանս մերում, որպէս զի անլուծանելի իմն եղանակաւ պահեսցեն և պահեցուսցեն զվերոյիշեալ տուչութիւնս, ապահարկութիւնս, շնորհմունս և արտօնութիւնս մեր։ Թէպէտև ինչ ինչ օրինաց սահմանադրութեանց, հրովարտակաց և արգելմանց հակառակեսցին, զայնս բնազդեցիկ շարժմամբ մերով, հաստատուն գիտութեամբ, և լիազօր բացարձակ իշխանութեամբ տնօրինեմք յամենայնի։

Ի ստուգութիւն որոց իրաց հրամայեցաք Ատենադպրի Պաշտօնէի մերոյ՝ զի դրոշմեսցէ զյայտագիրս այս, ստորագրելով զայն ձեռամբ մերով և դրութեամբ սովորական կնքոյ մերոյ։

Տուեալ ի Փլորենտիա, ի Պալատան մերում յաւուր 10 ամսեանն Յունիսի, յամի Տեառն 1593. և ի վեցերորդ ամի մերում Աւագ Դքսութեանս Դոսկանայու, և այլոց իշխանութեանց մերոց:

(ստորագրեալ)
**ՖԵՐՏԻՆԱՆՏՈՍ ՄԵՏԻՉԵԱՆՑ**
**Աւագ Դուքս Դոսկանայոյ**

(Տեղի կնքոյ)

**Հրամանաւ Պերճափայլ Աւագ Դքսին**
**ԵԱԳՈԲՈՍ ՏԱՐՏԻ**
**Ատենադպիր**

**Մարիա Թերեզա Աւստրիոյ կայսրուհւոյն անցեալ դարու մէջ Թրիէստէի գաղթական Հայոց շնորհած Արտօնագիրն էր առաւել իմն ճոխ և շահաւորագոյն (տե՛ս Հանդէս ամսօրեայ, Երրորդ Տարի, երես 92)*:**

**Եւս Ռուսիոյ Կատարինէ կայսերուհւոյն Արտօնագիրն որ շնորհեց ի նպաստ Ազգին Հայոց յամի 1781, Արտօնագիրն այն տպագրեցաւ ի Մատրաս Հնդկաց ի տպարանի Յակոբայ Շամիրեան:**

## ՊԱՏՃԷՆ ԵՐԿՐՈՐԴ

**Օրինակ առաջին Դաշնագրութեան Հայոց, արարեալ ի Լեհաստանայ, 17 Յունիսի 1683. Բնագիրն [illegible] թարգմանութենէն [illegible] է Հայ [illegible], գտանելով [illegible] է Դիւանատանի Եկեղեցւոյն Հայոց ի Լեհաստանայ։**

*Կամօք Ամենակարող և Ամենատուր Երրորդութեան Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, որ շնորհեաց հաստատութիւն գործոյս այսորիկ, և եղիցի ի մէջ մերում միութիւն բարեխօսութեամբ մերոյս Սրբոյ Լուսաւորչին Հայաստանեայց: Ամենակալ Տեառն հաճութեամբ ունիցի զօրութիւն առաջիկայ սահմանադրութիւնն կամ հաստատութիւնն զի մեք Հայազգիքս որ կամք զաղխս ի Լեհաստան թէ վաճառականք և թէ այլք, մեծամեծք և փոքունք, ամենեքեան ունելով զմի և զնոյն զգածումն և զյօժարութիւն՝ կամելով կամեցաք զի ի քաղաքիս յայսմիկ յապագայ ժամանակի շինեսցի եկեղեցի մի վասն Ազգին մերոյ և յարակից այնորիկ հիւղք ինչ, ուրանօր կարող լիցին բնակիլ քահանայք Ազգին մերոյ, որպէս զի յեկեղեցւոջ այնմիկ կատարեսցին արարողութիւնքն ի լեզու մեր և ըստ սովորի մերոյ: Այլ և բնակեսցին յառաւելեալ հիւղսն յայնոսիկ աղքատք Ազգին մերոյ. (և զի յայսմ աշխարհի առէպ մեծամեծք տնանկանան և աղքատք մեծանան), վասն այսորիկ եղիցի վասն տնանկաց և արական սեռի սերնդեան նոցա բնակութիւն ի վերոյիշեալ հիւղսն յայնոսիկ: Որովհետև են ի քաղաքիս յայսմիկ այլ և այլ ազինք Յոյնք, Գաղղիացիք և Հոլանտացիք որք խնամեն զտնանկս ազգին իւրեանց, սակս որոյ և տնանկք մեր չլինիցին խորթայք առաջի այլոց ազգաց, այլ եղիցին օժանդակեալք նոքա ի մերայնոց: Նոյնպէս և ապագայ սերունդք նոցին ի քաղաքիս այսմիկ, համարեսցին որպէս եղբարս և համազգիս: Եւ թուեալ լիցին նոքա ի մէջ հասարա-*

կութեան սիրոյ, և վայելեսցեն զամենայն արտօնութիւնս, որ-պէս վայելէ Ազգն մեր յայսմիկ քաղաքի:

Որոյ սակս հաստատեցաք և հաստատեալ կամեցաք զդաշ-նադրութիւնս այս, անուանելով իբր երեսփոխան մեզ զԽօճա Գէորգ Զէլէպի, զի նա ինքն լիցի այսուհետև վերատեսուչ ի վերայ Ազգին մերոյ, և յամենեցունց յազգային մեծատանց որք կամիցին առ ի փառս Աստուծոյ և ի պայծառութիւն Ազգին մերոյ տալ նուէրս ինչ վասն շինութեան վերոյիշեալ եկեղե-ցւոյն և հիւղից նորա, նուէրն և հասոյթն յառանձին մատենի ուրեք արձանագրեսցին. յորմէ ի յայտ գայցեն թէ անուանք հատուցողացն և թէ հատուցեալ գումար նոցին, որպէս զի յանխտեանս յիշատակեսցի որ նուիրատուն եղև, և Խօճա Գէորգն թեթևաբերուն ելցէ ի հաշուոյ ընկալեալ դրամոցն:

Արդ այժմիկ բարեպատեհ է առիթն զի Հարքն Սանդալա-ւորք (Ֆրանչիսկեանք) ունելով զպարտէզ մի, կամին վաճառել հաւանութեամբ Աւագ Դքսին զպարտէզն այն: Մեք ստորա-գրեալքս հաճ և հաւան եմք զի Խօճա Գէորգն գուն գործեսցէ առ ի գնել զայն յանուն Ազգին մերոյ սակս վերոյիշեալ շինուա-ծոց, և թէ զարժողական զին պարտէզին այնորիկ և թէ զայլ ծախս արարեալս ընկալցի Խօճա Գէորգն ամ ըստ ամէ ի հա-ւաքեալ ողորմութեանցն առանց ինչ շահս պահանջելոյ: Այս-պէս Խօճա Գէորգն եթէ կամեսցի սկսանել զշինուած եկեղե-ցւոյն և հիւղիցն ի մէջ յիշեալ պարտէզին, շնորհեալ եմք նմա լիովին իշխանութիւն որ առնիցէ ըստ հաճոյից իւրոց, զի այն է հաւանութեամբ և մերով հրամանաւ:

Որ գրեցաւ ի թուականին Հայոց ՌՃԼԲ. յաւուր ԺԷ Յունիսի. իսկ ի թուականի ծննդեան Տեառն մերոյ 1683, ի Լիվոռնոյ:

(Ստորագրեալքն)

Ես Գրիգոր Կիրակ—Միրիման հաւան եմ
Ես Սուլթանում Յոհաննիսեանց հաւան եմ
Ես Պետրոս Փանոսեանց հաւանիմ
Ես Յովանճան Սարգիսեանց հաւանիմ

Ես Յովակիմ Մարգարեանց հաւանիմ
Ես Պօղոս Աղեքսանդրեանց հաւանիմ
Ես Պապաճան Աւետիքեանց հաւանիմ
Ես Սարգիս Ղեւոնդեանց հաւանիմ
Ես Մելքոն Անդրիասեանց հաւանիմ
Ես Յովանճան Փանոսեանց հաւանիմ
Ես Ալեքսան Վրթանէսեանց հաւանիմ
Ես Յովհաննէս Նազարեանց հաւանիմ
Ես Պետրոս Գալուստեանց հաւանիմ
Ես Մնացական Ահարոնեանց հաւանիմ
Ես Բերսատամ Յովհաննէսեանց հաւանիմ
Ես Բարթողիմէոս Մանուէլեանց հաւանիմ
Ես Պետրոս Թօփճեանց հաւանիմ
Ես Թովմաս Ամիրազատէեանց հաւանիմ
Ես Յովանճան Գէորգեանց հաւանիմ
Ես Պօղոս Ճամալեանց հաւանիմ
Ես Առաքել Փանոսեանց հաւանիմ
Ես Անտիգոս Մանուէլեանց հաւանիմ
Ես Թովմաս Բարթողիմեանց հաւանիմ
Ես Վարդան Փիլիպպոսեանց հաւանիմ
Ես Անտիգոս Պետրոսեանց հաւանիմ
Ես Մանուէլ Մանուէլեանց հաւանիմ
Ես Վրթանէս Գրիգորեանց հաւանիմ
Ես Ալեքսան Մարգարեանց հաւանիմ
Ես Փիլիպպոս Միքայէլեանց հաւանիմ
Ես Ղուկաս Անդրէասեանց հաւանիմ
Ես Մանուէլ Յովհանճանեանց հաւանիմ
Ես Նիկողայոս Փանոսեանց հաւանիմ
Ես Յովհաննէս Մանուէլեանց հաւանիմ
Ես Պետրոս Նազարեթեանց հաւանիմ

## ՊԱՏՃԷՆ ԵՐՐՈՐԴ

**Օրինակ երկրորդ Դաշնագրութեան Հայոց արարեալ ի Լեհաստան քաղաքի յաւուր 18 Մարտի 1697. Հայ բնագիրն պահուեալ պե_տական Թարգմանութենէ առնի գերմանի է հայ շրջանի եւն, հա_նեալ այն ի Դիւանէ Եկեղեցւոյն Հայոց ի Լեհաստան:**

*Հաճութեամբ Ամենակարողին Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ ուղղեալ յաջողեսցէ զհանդերձեալ գործառնութիւն մեր, և Սուրբ Հոգին եկեսցէ օգնական լինել տկարութեանս մերում:*

*Մեք ստորագրեալ վաճառականքս՝ օգնականութեամբ Ա_մենակարողին Աստուծոյ համաձայնեցաք վասն շինութեան Ե_կեղեցւոյն Հայոց ի Լվովունոյ, առ ի վերակացութիւն նորին ըն_տրեցաք իբր գլուխ մեր զԽօճա Մարգար Ճելալխանն, զի լիցի յամենայնի վերակացու վասն շինութեան վերոյիշեալ Եկե_ղեցւոյն:*

*Մեք ստորագրեալ ազգայինքս ներկայքս ատենի յօժարա_բար տացուք վասն շինութեան եկեղեցւոյ, զայնչափ դրամ որքան մեզ հաճոյ թուեսցի, և տացուք արձանագրել զայնս ի գիրս յիշատակաց: Իսկ վաճառականքն որ եկեսցեն յետոյ և գնայցեն, և կամեսցին տալ ի նպաստ հոգւոց իւրեանց զդրամս ինչ, և կամ խոստացեալ լիցեն այլուր տալ զնոյն վասն շինու_թեան վերոյիշեալ Եկեղեցւոյն՝ կամիմք զի տուեալ լիցի և յան_ձնեալ ի ձեռս նորին Խօճա Ճելալխանի, և դրամն այն արձա_նագրեալ լիցի ի գիրս յիշատակաց:*

*Մեք ստորագրեալք վաճառականքս միաբանութեամբ և յօ_ժար կամօք դաշնադրեալ և հաստատեալ եմք թէ վասն մեր և թէ վասն այնոցիկ որք եկեսցեն զկնի մեր և կամ գնայցեն, թէ արևմտեան Հայք լիցեն և թէ արևելեանք, յորում և լիցէ աստի_ճանի ի հանգամանս և ի կացութեան որք բերիցեն յոր և ի_*

ցէ տեղեաց նաւուք կամ վարքայիւք զինչ և իցէ տեսակս, և կամ հանեալ ի Լիվոռնոյէ առաքեսցեն, թէ ի հասանելն և թէ ի յղելն արտաքս զմետաքս, զասուի, զկտաւ, զկերպաս, ըզ-մուշկ, զկարմիր որդան, զրուստ, զսաթ, զամպար, զլեղակ, սակս այսպիսի տեսակ վաճառաց թէ լինիցին ի պատոյտս և թէ յարկեղս, իւրաքանչիւր տեսակն յայսպիսեաց վճարեսցէ մի Բէցցա (8 reali) առ մէն մի բեռն: Իսկ սակս մեղրամո-մոյ, ասղանւոյ այծից, թելագործ և պարզ բամբակաց, կեր-պասուց այծէից, շաքարեղինաց, և վաճառացն որք բերին են զաւառացս այսոցիկ և Վենետկոյ, և սակս մնացեալ ամենայն տեսակաց վաճառաց, վասն իւրաքանչիւր պատոյտի և արկեղ, թէ ի վաճառելն աստէն և թէ ի յղելն արտաքս վճարեսցեն կէս Բէցցա առ մէն մի բեռն:

Դարձեալ մեք ի ներկայիս Հայազգի ստորագրեալքս հաստա-տեալ հաստատեցաք զվերոյգրեալ բաժանումն, առ ի ծա-ռայել վասն ակնտոյից շինուածոյ Եկեղեցւոյն մերոյ, և հայցելով զՊերճապատիկ Աւագ Դուքսն պաղատեցաք որպէս զի բարե-հաճեսցի թողուլ և իշխանութիւն տալ մեզ զի հաստատեալ և վաւերացեալ լիցին վերոյիշեալ պարտաւորութիւնքն և առաջ-արկութիւնքն մեր: Որպէս զի ո ոք և իցէ ի Հայոց՝ թէ ի ներ-կայից և թէ յայնոցիկ որ գալոց իցեն աստ այսրէն մի կա-րասցեն և մի ունիցին իշխանութիւն ինչ հակառակելոյ վերա-գրելոցն ըստ ամենայնի, և զի ամենայնն անթերի հաստատեալ կայցէ և վաւերացեալ:

Ի թուականին Հայոց ՌՃԽԶ յաւուր ԺԸ Մարտի․

Իսկ յամի փրկութեան մերոյ յաւուր 18 Մարտի 1697, ի Լիվոռնոյ:

(Ստորագրեալք)

Ես Գէորգ Ասլրօ Չէլէպի

Ես Դաւիթ Ջաքարեանց հաստատեմ որպէս ի վեր

Ես Ռուսթամ Դաւիթեանց հաստատեմ որպէս ի վեր

*Ես Յակոբ Մանասեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Ստեփան Թասալեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Մովսէս Անտովնեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Վարդան Ամիրխան հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Յովակիմ Գրիգորեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Իրակուլի Աւետիքեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Աղապապ Արիստակէսեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Յակոբճան Յովսափեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Յովհաննէս Բարավեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Աղա Մաթոսեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Ծատուր Թասալեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Դաւիթ Մարութեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Մկրտում Փարուանեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Յարութիւն Կարապետեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Պապաճան Աւետիքեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Յովհան Արնիխանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Էմմանուէլ Եղիայեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Յովսէփ Սիմոնեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Պիճխտու Բերատան հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Ծատուր Ֆլիէրթեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Յովհաննէս Զաքարեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Անդրէաս Բերիմեանց հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Յովհան Սարուխան հաստատեմ որպէս ի վեր*
*Ես Յովակիմ Թորոսեանց հաստատեմ որպէս ի վեր**:

* *Գտանի ի դիւանատան Եկեղեցւոյն մերոյ ի Լիվոռնոյ վկայական գիր մի այսու եղանակաւ գրեալ.*

*«Ես Յովհաննէս Աղա ընկալայ զհայագիր նախապատճէն երկրորդ Դաշնագրին, զոր իտալական օրինակաւն հանդերձ յանձնեցի դատարանի քաղաքիս, յաւուր 7 Յունուարի 1722.*

*Ի ստուգութիւն որոյ վկայ է*

*(ստորագրեալ) Ատենադպիր դատարանին*

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱՐԿԱՆԻ**

## ՊԱՏՃԷՆ ՉՈՐՐՈՐԴ

Աղերսագիր Աշխարհականաց ժողովրդեան առ Աւագ Դպրան առ ի գնել շարունակ Յովսէփեան կրթարանացն ի Լեհաստան. Ընդ_ գծերն գտնել կայ ի Դիւան արքունական ի Փլորենտիա*, որոյ ֆոտո_ ժառանգութիւնն է.

Առ Նորին Պերճապայծառ Բարձրութիւնն Կոմս Գ.
Աւագ Դպրաց Դուքսնայոս

Բնակեալք ի Լվովանոյ քաղաք Ազգ Հայոց և ի դիմաց նորին Գէորգ Աւլիօ Զէլէպի որ մին է ի նմին հասարակութեան և ե_ րեսփոխան նոյն նորին, ամենախոնարհ ծառայ և հպատակ Ձերում Պերճապայծառ Բարձրութեան, յայտ առնեմք առաջի դնէ թէ որպէս վերոյիշեալ Ազգն այն ցանկայ շինել աստանօր նո_ րոգապէս առ ի մեծագոյն փառս Աստուծոյ զեկեղեցի մի բնա_ կարանօք հանդերձ և վերաբերելովքն: Եւ քանզի ոչ գտանեն վայր ինչ կամ տեղի առաւել պատշաճագոյն քան զպարտէզն այն որ զատեալ է յեկեղեցւոյն Սրբոյն Կոզմայի և Դամիանոսի.

Ուստի աղաչաւորն ծնրադիր յանուն յիշատակելոց հայցէ ի Ձերմէ Բարձրութենէ առ ի բարեհաճել և շնորհել զհրաման գնելոյ զյիշատակեալ վայրն ի պէտս Ազգին Հայոց ըստ ամե_ նայնի որպէս և է ի գին չորս հազար վեց հարիւր (մի, երկու, և սասն) Թէցցայից, ըստ արժեցուցման Յովսէփ Լօրենցի Աւա_ գաւորին երրորդական գործակալի, յետ բանակից լինելոյ և արժեցուցանելոյ ևս ի ձեռն Յովհաննու Դոմինիկոսի Ֆէլի, և Ամբրոսիոսի Սթէֆանինի: Մատուցեալ Բարձրութեան Ձերում քսան առ հարիւրն առաւել, ի վերայ արժողական գնոյ դա_ տելոյ ի ձեռն նորին իսկ Լօրենցի Աւագաւորին, և ըստ այսմ

*Լվովանոյ քաղաքի Դատաստանատան Դիւանաց մէջ մեր Եկե_ ղեցւոյն վերաբերեալ նախնի և կարևոր գրութեանց գրեթէ իւրա_ քանչիւրոց պատճէնն կարելի է գտանել:

*պարտաւորել ընդ ամենայնիւ ի գին հինգհազար չորս հարիւր ութսուն և հինգ և վեշտասան բէցցայից, և վճարել ի գործ սակարկութեան վաճառման և գնման, յառաջիկայութեան առն այնորիկ որ ի Պերճապայծ Բարձրութենէ Ձերմէ գործակատար կարգեսցի: (Ստորագրութիւնք ազգայնոց)*

*Ցաւուր* 10 *Փետրուարի* 1692.

*“Ցստորև Աղերսագրոյն կցեալ է շնորհումն հրամանին այսպէս„*

*Ըստ աղերսանացն շնորհեալ է, այսու ամենայնիւ Նոտարն Բենեդիկտոս Մօքի ի սակարկութեան և ի հարկաւորութեան ժամու պատրաստ գտանիցի յանուն Պերճապայծ Բարձրութեանն, առ ի բարւոք կատարումն արծաթագրական գրութեանցն:*

*Ի հնգետասան Փետրուարի, և ի հազար վեցհարիւր իննսուն և երկու Մարդեղութեան Տեառն: (ստորագրեալ)*

ՖՐԱՆՉԻՍԿՈՍ ԲԱՆՉԻԱԹԻՔԻ

## ՊԱՏՃԷՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ

**Առաջին կանոնադրութեան եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ, որոշեալ ի յետ Ֆրօչինի Արքեպիսկոպոսին Բիզայոյ յաւուր 6 Յուլիսի, 1718: Բնագիրն պահեալ է յԱրքեպիսկոպոսական Դիւանին ի Բիզա քաղաքի:**

*Ֆրանչիսկոս Ֆրօչինի Կոմս Սրբազան Հռովմէացւոց Ինքնակալութեան, շնորհիւն Աստուծոյ և Առաքելական Սուրբ Գահին Արքեպիսկոպոս Բիզայու, և Նախագահ Քորսիկա և Սարտենեա կղզեացն և Դեսպան, և այլն և այլն.*

*Ըստ պարտաւորութեանս մերոյ զոր ունիմք հանապազ առ ի հսկել ևս քան զևս յառաւելութիւն մեծագոյն փառացն Աստուծոյ, կամելով կանոնս ինչ հաստատել վասն Նորաշէն Եկեղեցւոյն ի Լիվոռնոյ որ ի պէտս կաթողիկեայ Հայազգեաց,*

նուիրեալ յանուն Սրբոյն Գրիգորի Նահատակին և Հայաստանեայց Լուսաւորչին, թէ՛ վճռական իշխանութեամբ մերով, և թէ կարողութեամբ այնուիկ զոր շնորհեաց մեզ Սուրբ Ժողովն Տարածման Հաւատոյ նամակօքն որ յ31 Յունուարի և ի 20 Յունիսի 1718, հաստատեմք զհետագայ կարգաւորութիւնս, և հրամայեմք այնու իշխանութեամբք զճշդական և անդրժելի պահպանութիւն այնոցիկ:

Նախնաբար հրամայեմք զի պահեսցին և ընդ միշտ պարտաւորեսցին պահել զթէ՛ութիւնսն համօրէնս և մասնաւորս, որովք ի կողմանէ Սրբոյ Ժողովոյն Տարածման Հաւատոյ տուաւ հրաման վասն շինութեան Եկեղեցւոյն Հայոց Ազգին: Եւ ի կատարումն թէութեանց Սուրբ Ժողովն պարտաւորեաց զմեզ (զի ըստ աղերսանաց մատուցելոց առ նոյն Ս. Ժ. որպէս է տեսանել ի Հրամանագիրն թոյլտուութեան որ յ8 Մարտի 1701, որոյ օրինակն կցեալ է ընդ կարգաւորութեանս այսմիկ) պատուիրել ժամանակաւոր [illegible] քահանայից, զի ընդ պատժով պարտաւորութեան որպէս արտայայտեալ են յատորն յիշատակեալ թէութեանցն՝ հսկիցեն առ ի ճիշդ պահպանութիւն նոցին:

Երկրորդաբար հրամայեմք զի ընտրեսցի պաշտօնեան ի ձեռն Հայոց Ազգին այնորիկ, որպէս այդէն հրաւիրեալ էին առ ի գումարել ժողով, և ընտրել ի մէջ ազգայնոց զաջողակ և զյարմարագոյն ումն վարչապետ * անուամբ առ ի վարչութիւն գործոց Եկեղեցւոյն այնորիկ, որոյ պաշտօնն տևեսցէ ամս երկուս, և ի վախճանել ամացն երկուց յաջորդաբար յամսեանն Յունիսի լինիցին նորոգ ընտրութիւնքն, որպէս զի սկիզբն առցէ վարչութիւն նոցա յամսեանն Յուլիսի: Իսկ եթէ հարկաւոր դատեսցի առ ի բարւոք սպասաւորութիւն Եկեղեցւոյն այ-

* Իտալական բառն Governatore որ վարիչ կամ վարչապետ կը նշանակէ՝ մեք յընթացս պատմութեան հասարակօրէն Ազգապետ կոչած եմք, իբր հայազգիաց գլխաւորն և իշխանն:

նորին վերահաստատել զայլ ևս երկուս ամս ի պաշտաման զՎարչապետն, պարտաւորեսցի ընտրեալն և կամ վերահաստատեալ անձն առ այն պաշտօն՝ առնուլ զվաւերականութիւնն և զհաւանութիւն մեր և կամ զյաջորդացն մերոց:

Անկ է Վարչապետին ընդունել զմնարս, զհասոյթս ամենայն և զեկամուտս զինչ և իցէ եղանակաւ վերաբերեալս վերոյիշատակեալ եկեղեցւոյն, ընդունել զամենայն տուրս և զողորմութիւնս մերթ ընդ մերթ պարգևեալս, նշանակելով զայնս հաւատարմաբար ի մատենի միում, կոչելով զայն Հաշուետումար եկամտական, առ ի հայթհայթել և զնել զայն ամենայն որ ինչ ի պէտս ծառայութեան եկեղեցւոյն այնորիկ ուխտոյ իցէ ի տարւոջն, որպէս զի վայելուչ լինի պաշտամամբ և վայելչութեամբ պահեալ լիցի եկեղեցին: Նմանապէս նշանակել յայլում խմիք մատենի զծախս, Հաշուետումար ելից կոչելով զայն, որպէս զի ի լրանալ երկուց ամաց կարասցէ ցուցանել զհաշիւս: Նոյնպէս հրամայեմք զի հաշիւքն այնորիկ յիւրաքանչիւր յերկամեայ ժամանակս քննեալ լիցին յերկուց համարակալաց, յորոց մին կարգեսցի ի ձեռն ժամանակաւոր Արքեպիսկոպոսին, խոլ միւսն ի ձեռն Ազգին. և որ ինչ ի ձեռին պատրաստ ունիցի և առաւելեալ վերոյիշեալ Վարչապետն ի լրման երկամեայ ժամանակի, պարտաւոր լիցի դնելոյ ի պահեստ ի Գրասատունն հասարակաց, յօգուտ յիշատակեալ եկեղեցւոյն: Պարտ է Վարչապետին գրել զցուցակ համօրէն սրբազան սպասուցն, կահուց և կարասեաց և այլոց ամենայն ընչից վերաբերելոց եկեղեցւոյն այնմիկ, ունել զխնամս և զպահպանութիւն նոցա, յանձնելով զայնս ընդ ժամանակս ժամանակս՝ երբ պիտոյ իցեն ի ծառայութիւն աստուածային պաշտամանց եկեղեցւոյն, որպէս զի յամենայնի պատշաճաբար և շքեղաբար կատարեսցին սուրբ պաշտամունքն առ ի մխիթարութիւն, ջերմեռանդութիւն և ի բարեպաշտութիւն հաւատացեալ ազգայնոցն: Նոյն սակս պարտաւոր է խորհրդակից լինել զայսմ ամենայնէ ընդ [illegible] քահանայիցն, որոց միոյն անկ է ունել զհոգևորա_

կան վարչութիւնն, որ ինչ անկատր իցէ ի կատարումն արարողութեանց ի մատուցումն տէրունական պաշտամանց և յայլում ամենայնի որ ի հոգևորական առաջնորդութիւն իցէ, վասն օգտի և բարւոյ հոգեաց և ի պահպանութիւն կաթողիկէ սուրբ կրօնիցն: Եւ ի հարկաւորին առնել զծախս ինչ քան զսովորականն առ առաւել զեղեցկութիւն և զարդարանս եկեղեցւոյն, և սակս այլ ինչ նորանոր առթից, պարտաւորեսցի կանխիկ ծանուցմամբ և հաւանութեամբ ազգայնոց ի գործ դնել զայն ամենայն:

Երկրորդ, և զի եղեալ է ի կողմանէ յիշատակեալ Ազգին Հայոց սուրբ՝ և այն իշխանութեամբ և հաւանութեամբ Պերճապատիւ Ասազ Դիքսին ի ձեռն հրամանագրացն որ ի 25 Նոյեմբերի 1697 և ի 15 Հոկտեմբերի 1715, ի հարկաւորութիւն և պարտաւորութիւն իւրաքանչիւր ընտանեաց վաճառաց հասելոց ի ձեռս համօրէն Հայազգեաց ի Լիվոռնոյ քաղաքի, յորում և իցէ ժամանակի վասն ծառայական պիտոյից յիշատակեալ եկեղեցւոյն, նոյնպէս վասն հատուցման պարտուց որ ի վերայ կայ առ ժառանգս հանգուցեալ Աղա սէր Մաթոս Պարոնի ի պատճառս շինութեան եկեղեցւոյն այնորիկ: Ի բաց հանեալ նախ զայն մասն որ ծառայէ տարեկան պիտոյից եկեղեցւոյն և Թոխճուր քահանայիցն այնոցիկ՝ որք առաջնորդ լինին մերոյս յայտարարական գրոյս, և ըստ վճռոյ մերոյ որ յ30 Դեկտեմբերի 1713: Այլ որպէս զի ազատեսցի եկեղեցին Հայոց ի վերյիշատակեալ պարտուցն, ժառանգք Պարոն Աղային ընկալցին զհատուցումն, և համանգամայն թէ արդարութիւնն, և թէ աստուածապաշտութիւնն ի միասին կատարեսցին, հրամայեմք զի Կարչապետն ի տրոցն ամ ըստ ամէ հաւաքելոց՝ զերրորդ մասն պարտաւորեսցի վճարել ի հատուցումն վերյիշեալ պարտուց առ ժառանգսն այնոսիկ, և զմասն մի պահեսցէ ի ծառայութիւն և ի պէտս յիշատակեալ եկեղեցւոյն, մինչև լիցեն պարտքն այնոքիկ լիովին վճարեալք, և կամ ըստ փոփոխութեանց պարագայից չեկեսցէ ի մէնջ այլ ինչ հրաման հակառակ:

*Չորրորդ, հրամայեմք մերով վերոյիշեալ իշխանութեամբ թէ թեմականաւ և թէ յանձնարարելովն այնուիկ շնորհելոյ ի Սուրբ Ժողովոյն Տարածման Հաւատոյ, զի Խօճա Դաւիթ Բուսթանն պարտաւորեսցի ցուցանել զհաշիւս այնր ամենայնի որ հաւաքեաց և ընկալաւ թէ՛ նկատմանցն ոյ և լցէ եղանակաւ վերաբերեալս եկեղեցւոյն, նուիրացն և ողորմութեանցն առ նոյնն արարեալս, և թէ տրոցն հասաքելոց ի հաշիւ եկեղեցւոյն ի ժամանակէ անտի վարչութեանն մինչև ցայսօր: Այսու վախճանաւ կարգեմք լիբր համըակալ առ ի քննութիւն հաշուոց վասն օգտի և շահու եկեղեցւոյն զփաստաբանն Ռիչչի Ատենադպիր մեր և զԽօճա Յովհաննէս Նազար մին ի յիշատակելոյ Ազգէն Հայոց:*

*Հինգերորդ, առ ի կատարումն վերոյիշեալ հրամանաց մերոց ի ձեռն Հայոց զոլով ընտրեալ և անուանեալ ի Վարչապետ վասն յետագայ երկուց ամաց Խօճա Ցալութիւնն որդի Գրիգորի Կիրաք Միրման, հաստատեմք զնա մեք և հաւանիմք, որպէս զի փութասցի անյապաղ ի կիր արկանել զայս կանոնագրութիւն մեր առ ի յառաւելութիւն աստուածային պաշտամանցն, և ի պայծառութիւն վարչութեան եկեղեցւոյն այնորիկ:*

*Տուեալ ի Լիվոռնոյ, յԱրքեպիսկոպոսական Պալատան մերում յաւուր* 6 *ամսեանն Յուլիսի* 1718.

*(Ստորագրեալ)*

**ՖՐԱՆՉԻՍԿՈՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՌԻՋԱՑՈՒ**

*(Ստորագրեալ)*

**ԱՆՏՈՆ ՌՈՍԿԱ ՔԱՐՏՈՒՂԱՐ**

## ՊԱՏՃԷՆ ՎԵՑԵՐՈՐԴ

**Երկրորդ Կանոնագրութիւն եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ արարեալ է [illegible] կողմէ Արքեպիսկոպոսին Բիզայու յաւուր 5 Յունիսի 1764. Բնագիրն գոյ յԱրքեպիսկոպոսական Դիւանատան ի Բիզա քաղաքի, որոյ Հայկականն է ըստ այսմ.**

*Ի մուտս անդ ներկայ դարու աւարտեալ շինուած եկեղեցւոյն Հայոց ուղղափառ ծխի՝ բացեալ եղև ի պէտս Հայկազեան Ազգին, նուիրեալ Աստուծոյ ամենակալի և կոչեցեալ ի պատիւ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, ընդ անմիջական իրաւասութեամբ ժամանակաւոր Արքեպիսկոպոսին Բիզայու, բարեխնամ թոյլտուութեամբ Սրբոյ Ժողովոյն Տարածման Հաւատոյ, և մշտափայլ յիշատակաւ Նորին Թագաւորական Բարձրութեան Կոզմասայ Գ* Աւագ Դքսին Դոսկանայու. որ արքայական խոստմամբ թէ՛ յանուն իւր և թէ յանուն Յաջորդացն իւրոց խոստացաւ Սրբոյ Ժողովոյն այնմիկ անջնջելի պահել զայն իրաւասութիւն յԱւագ Դքսութեան անդ թէ ի հոգևորս և թէ ի ժամանակաւորս: Տուեալ եղեն յայնժամ և ապա ևս ըստ հարկաւորութեան ի Գերապայծառ Արքեպիսկոպոսէն պատուէրք ինչ և կանոնք առ ի բարւոք վարչութիւն յիշատակեալ եկեղեցւոյն այնորիկ, և օգնականութեամբ Աստուծոյ կալուածական ստացուածք նորին ոչ թէ նուազեցան ինչ, այլ մանաւանդ թէ աճեցան ի շնորհս բարեպաշտական տրամադրութեան Հայկազն Ազգայնոց, արարեալ յօգուտ եկեղեցւոյն իւրեանց և Անկելանոցին: Սակայն առ բարւոք կարգաւորութիւն և վարչութիւն նորա և առ ի ոչ այլայլել ըզհանգուցելոց սուրբ դիտմունս, ըստ ժամանակացն ընտրեցան ի ձեռն տեարց երեսփոխանաց որ պաշտօնեայք ի վերայ Ազգին հաւանութեամբ Գերապայծառ Արքեպիսկոպոսին. և երբեմն ևս համաձայնեալ, եղեն ընտրութիւնք տեարց երեսփոխանաց*

ի ձեռն վիճակաւորին, որպէս յամսեանն Յունուարի յամին 1760:

Լուեալ այժմիկ զանխտրողական հայցուածս առ Մեզ ուղղեալս ի տեարց անտի Երեսփոխանաց որք պատրաստական գտանին առ ի ցուցանել զհաշիւս իւրաքանչիւր իւրեանց մատակարարութեանցն, և առ ի փութալ ի կարգումն նորոց պաշտօնատեարց և երեսփոխանաց ի պէտս եկեղեցւոյն, անկելանոցին, և կալուածոցն, կարօտութեամբ ժամական իշխանութեանս, ես և այնու յանձնարարելովն Մեզ թէ ի Սրբոյ Ժողովոյն և թէ յիշխանէն մեծէ, անկ համարիմք հովուական պաշտաման Մերում առ ի գալ և որոշել եղանակ ինչ որ լիցի առաջնորդ Ազգին ի խաղաղութիւն և ի բարւոք և հաստատուն մատակարարութիւն կալուածոց եկեղեցւոյն և անկելանոցին:

Վասն որոյ յետ հասուն խորհրդածութեանց կարգեմք զորոշական թիւ ինչ անդամոց կարևորաց առ ի վարչութիւն եկեղեցւոյն, անկելանոցին և կալուածոցն, և հրամայեմք զի ի նախընթաց աւուր Պենտեկոստէի յիւրաքանչիւր կրկին ամս արասցին ընտրութիւնք Երեսփոխանացն և Պաշտօնատեարց ի ձեռն քուէից առաջի ժողովրդապետի եկեղեցւոյն և առաջի ուրուք որ ի Մէնջ կամ ի Յաջորդաց Մերոց կարգեսցի առ այն:

Այսու եղանակաւ ընտրեալքն յետ ընդունելոյ ի Մէնջ զհաստատութիւնս իւրեանց համարեալ լիցին օրինաւոր գլխաւորք և երեսփոխանք եկեղեցւոյն, անկելանոցին և կալուածոցն, կազմելով նոցա առանձին խորհուրդ և ժողով որ սովորաբար և յարատևաբար ժողովեսցի մի անգամ ևեթ յիւրաքանչիւր ամսեան. իսկ արտաքոյ սովորութեան՝ ստէպ ևս երբ հարկաւոր դատեսցի այն ի Գլխաւորէն և կամ յԱզգապետէն:

Պաշտօնատեարքն որք ի Մէնջ հարկաւորք դատին առ ի բարւոք վարչութիւն և ի հաստատուն մատակարարութիւն, հրամայեմք զի ըստ այսմ լիցին · Առաջին Ազգապետ, Երկրորդ Նախնական խորհրդական, Երրորդ Երկրորդական խորհրդա-

Ի վերջանալ երկուց ամացն՝ իւրաքանչիւր պաշտօնատէր պարտաւորեալ է տալոյ ճշդիւ և հաւատարմաբար զհաշիւ գործառնութեանցն առ նոյն Ժողովական Խորհուրդն առ ի ստանալ անտի զհարկաւոր վաւերականութիւնն: Եւ Արկղապետն յանձնեսցէ ի ձեռս յաջորդին իւրոյ որքան գրամ իցէ յարկեղն. սակայն եթէ առաւելեալ իցէ գումար Բէցցայիցն պարտի փոխանագրով իւիք յետ ստորագրելոյ զայն ի համօրէն անդամոց Ժողովոյն տալ ի պահեստ ի Տուն գրամից կոչեցեալ տեղւոյն, առ ի կիր արկանել զայն յետոյ ըստ պիտոյիցն, և այն միայն հաւանութեամբ Մերով:

Պարտի յիշեալ Ժողովական Խորհուրդն կարգել զՔարտուղար ումն որ իցէ կամ Հայ ազգային և կամ իտալացի, միայն թէ հաւանեալ ի Մէնջ, որ իցէ հմուտ դպրութեան, որպէս զի զծախս նշանակեսցէ ի տետրի արձանագրեսցէ ի Հաշուեմատեանս յաւէտ պատշաճաւոր փոխանագրովքն. զորս պահեսցէ կանոնաւոր իմն եղանակաւ առ ի բաղդատութիւն հաշուոց արկեղ, և ի Հաշուեմատեանի անդ նշանակեսցէ զյառակացեալ փոխանագիրս թէ՛ ելեմտականս և թէ զելիցն, առ ի կարող լինելոյ և տեսանելոյ ըստ հաճոյս նոյն Ժողովական Խորհրդոյն՝ զվիճակ և զկացութիւն արկեղ, առանց հարկաւորութեան դիմելոյ և քննելոյ զմուտս և զելս առ Արկղապետին: Ժողովական Խորհուրդն պարտի սահմանել Քարտուղարին այնմիկ զամական ինչ փոխատուութիւն սակս կիրառութեան պաշտաման այնորիկ՝ որչափ ինչ հարկաւորեսցի սակս գրուածոց և յստակութեան նորին, և այն միշտ Մերովս հաւանութեամբ:

Ի վերջանալ երկուց ամացն՝ ի նախընթաց աւուր Պենտեկոստէի հարկ է լինել կանխագոյն ատորմամբ հրաւիրագրաց առ մէն մի Ազգայինս. հարկ է լինել ատեանք, ընտրութիւնք նորոց Պաշտօնատեարց, և կամ վերահաստատութիւն արդէն եղելոցն որպէս զի պարտ դատեսցին օգտակար և յարմար Եկեղեցւոյն, Հիւանդանոցին և Աղքատացն: Ցետ առնելոյ զընտրութիւնս նորա, և կամ զվերահաստատութիւն արդէն եղելոցն,

Պաշտօնատէր երեսփոխանքն փութասցին ընտրել և կարգել զպաշտօնեայս և զգործակալս տորնագրին*, կարգելով ի գլուխ իւրաքանչիւր պաշտաման զայս գործունեայս և աջողակս, ասկս քաջ վարելոյ զպաշտօնն զայն որ յանձնեալ եղեն առկախմամբ ի ծողովական խորհրդոյ: Ի վախճանի ի լինելն երեսուն ճարկի՝ յորժամ ի մէջ ընտրելոցն երկոքին մասն յերիցն չիցեն օրինաւորապէս ընտրեալք, յայնժամ վերապահեմք Մեզ զընտրութիւն և զկարգումն Արկղապետին վասն քարդոյ ևեթ և ասկս հաւատարմաբար մատակարարելոյ զողջոյն զումարս դրամոց պատկանելոց Եկեղեցւոյն և Հիւանդանոցին, առ ի պատշաճագոյն խմն եղանակաւ զետեղել ի Մոնտս և յելս առ հասարակ զամենայն որ հայիցի առ այնպիսի գործողութիւն: Եւ վասն կարգաւորելոյ ըստ կերպի և եղանակի սահմանելոյ ի վերագոյն անդր՝ առկախմամբ և պատշաճական հպատակութեամբ առ ծողովական խորհուրդն:

Յորդորեմք ուրեմն և աղաչեմք վասն սիրոյն Յիսուսի զհամօրէն զազգայինն Տէարս, առ ի կեալ ընդ միմեանս անձուկ կապանօք կաշկանդեալք ի սուրբ և յեղբայրական սէր և ի բարին՝ ի կիր արկանելն իւրաքանչիւր զյատուկ պաշտօն իւրեանց. ունել զսուրբ նախանձաւորութիւն ասկս հոգևոր և ժամանակաւոր օգտի Եկեղեցւոյն և Հիւանդանոցին, առ ի ընդունել ի Պարգևատուէն ամենայն բարեաց յԱստուծոյ զարժանաւոր վարձս յայսմ աշխարհի և ի հանդերձելումն:

Տուեալ ի Պիզա ի Պալատան Մերում ի 5 աւուր ամսեանն Յունիսի 1764:

(Ստորագրեալ)

ՖՐԱՆՉԻՍԿՈՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԻՉԱՅՈՒ

(Ստորագրեալ)

ՓԻԼԻՊՊՈՍ ՔՕՔՔՕԼԻՆԻ

Ընդ. Ատենադպ. Արքեպիսկոպոսական

կան, Չորրորդ Մատակարար եկեղեցւոյ, Հինգերորդ Հիւանդա֊պետ կամ Տեսուչ հիւանդանոցին, Վեցերորդ Վարժարանաց և այլոց դասուց: Վերջապէս Եօթներորդ Արկղապետ, ի ձեռս որոյ հարկ է յանձնեալ լինել ամենայն հասոյթ եկամտական, ըստ կերպի և եղանակին որպէս աւանդեսցի ստորև:

Ազգապետն և ընդ նմին երկոքին խորհրդականքն պարտին վերաբազմիլ և ունել եւ զպաշտօն պահպանութեան Դիւա֊նատանն և ստորագրել զփոխանագիրս * թէ՛ եկեղեցն և թէ Մը֊տիցն. առանց փոխանագրաց այնոցիկ Արկղապետն մի կա֊րասցէ ընդունել զեկամուտս և ոչ հանել ի ձեռաց զելս՝ թէ և իցէ դոյզն ինչ գումարն: Իսկ ի դիպուածս երբ Ազգապետն կամ ի խորհրդականաց ոք արգելեալ իցէ զբաղմամբ ինչ գալ ի ժողովս ամսային, փոխանակեսցէ ի տեղի բացակային՝ առ ի ստորագրութիւն կարևոր փոխանագրացն այլ ոմն յԱզ֊գայնոցն կարգմամբ ի ձեռն այլոց խորհրդականացն. նոյնպէս ըստ այսմ վարեսցի ի պակասութեան այլոց պաշտօնատարացն անդամոց ժողովոյն, որպէս զի կացեալ մնասցէ այն բաղկա֊ցեալ միշտ ի հինգ անդամոց:

Մատակարար եկեղեցւոյն պարտի հսկող լինել առ ի հոգալ զպիտոյս եկեղեցւոյն և աւանդատանն, պարտաւորեալ է նա ինքն ճշդիւ և խնայաբար վարել ի ծախս մոմեղինաց ի պէտս եկեղեցւոյն. ի մէջ աւանդատան եկեղեցւոյն պարտի ունել զտո֊մարական տետրս, ի մէջ որոց պիտոյ է նշանակել զպարագա֊յութիւնս պատարագաց, նոյնպէս զմնացուածս նոցա: Նմանա֊պէս Աւանդապահին հարկ է ունել այլ տետրս ասկս փոքրիկ ծախուց զորս օր ըստ օրէ անկ իցէ առնել ի պէտս եկեղեցւոյն և աւանդատանն, և ի վերջ ամսոյն ցուցանել զայն հաշիւ առ

* Իտալական բառն Mandato պատուիրագիր, ուէպ ի կիր ածեալ ի վարչութիւնս, է քարտէն ստորագրեալ ի Գանձերիցէն և յընթերակայիցն, որով հրամայի ընդունել կամ վճարել զգումար ինչ, զոր շրջեալ ի հայն, առ ի յաւ ևս արտայայտել զիմաստն գործածական առնեմք զայն փոխանագիր.

Պաշտօնատեարս յառնելն նոցա ի մէջ իւրեանց զժողովական Խորհուրդ, առաջի որոց հարկ է դնել զմէն մի գործառնութիւնս պատշաճականս, ասկս բարւոք վարչութեան և հաւատարիմ մատակարարութեան և պատրաստութեան իւրաքանչիւր փոխանորդաց ըստ վերագոյն յայտարարելոցն:

Հիւանդապետն կամ Տեսուչն Հիւանդանոցին պարտի խնամ տանել այնմ ամենայնի որ հայի առ նոյն կանոնաւոր խնամ եղանակաւ և ճշգական խնայութեամբ վարելով, որպէս ի շնորհել զառողջական նպաստս ողորմութեանց, նոյնպէս և յայլում ամենայնի որ ինչ պատշաճեսցի առ ի մաքրութիւն և ի վայելուչ տնածումն, պարտաւորութեամբ ունելոյ ի գլխ զամենայն թէ զեկամտական հասոյթս և զելս ամենայն, առ ի կարող լինելոյ տալս ի վերջ վերցանելոյ ժամանակի տարւոյ ի ժողովական խորհրդէ զհաշիւ բարեպաշտական մատակարարութեան իւրոյ:

Վարձահաւաքն (հարկապահանջ) պարտի պահանջել զհասոյթս համօրէն Եկեղեցւոյն, Հիւանդանոցին և որ ինչ սատուածայնի պաշտամանց պատկանեսցին. և զամենայնն ամփոփ յամսոյ հատուցանել ի ձեռս Արկղապետին կանխագոյն պատրաստեալ փոխանորդով, որոշեալ նմին զկարևոր վարձս, որպէս սովորութիւն է տալ նմանագոյն հարկապահանջից, առ որ հարկ է յանձնել այլ ևս զումար ինչ Բէցցայից, առ ի բարւոք գործածութիւն նորա ի պարտաւորեալն առնել ի դատաստանական խնդիրս թէ յառս և թէ ի վճարել տուրս Եկեղեցւոյն և Հիւանդանոցին, ծանօթս տալով զայնմ ամենայնէ վերոյիշեալ ժողովական Խորհրդոյն որ ինչ է ի շահ և ի պատիւ Եկեղեցւոյն և Հիւանդանոցին, մատուցանելով յիւրաքանչիւր ամսեան զհաշիւ գործառնութեանց իւրոց առ նոյն ժողովական Խորհուրդն: Առ որ պարտի յանդիման առնել զանվարձ մնացեալ կալուածս, զնորոգեալ բնակարանս և կամ զառնելի նորոգութիւնս, ընդունելով զպատշաճ հրաման առնլոյ զփոխանազիրս առ ի վճարել զվարձս արհեստաւորացն:

Ի վերջանալ երկուց ամացն՝ խորաքանչիւր պաշտօնատէր պարտաւորեալ է տալոյ ճշգիւ և հաւաստարմաբար զհաշիւ գործառնութեանցն առ նոյն Ժողովական Խորհուրդն առ ի տեսանել անտի զհարկաւոր վաւերականութիւնն: Եւ Արկղապետն յանձնեսցէ ի ձեռս յաջորդին իւրոյ որքան գրամ իցէ յարկեղն. սակայն եթէ աւաւելեալ իցէ գումար Բէցցայիցն պարտի փոխանագրով իւիք յետ ստորագրելոյ զայն ի համօրէն անդամոց Ժողովոյն տալ ի պահեստ ի Տուն գրամոց կոչեցեալ տեղւոյն, առ ի կիր արկանել զայն յետոյ ըստ պիտոյիցն, և այն միայն հաւանութեամբ Մերով:

Պարտի յիշեալ Ժողովական Խորհուրդն կարգել զՔարտուղար ոմն որ իցէ կամ Հայ ազգային և կամ խառնացի, միայն թէ հաւանեալ ի Մէնջ, որ իցէ հմուտ դպրութեան, որպէս զի զծախս նշանակեալս ի տետր արձանագրեսցէ ի Հաշուետումարս յաւէտ պատաշաճաւոր փոխանագրովքն. զորս պահեսցէ կանոնաւոր իմն եղանակաւ առ ի բաղդատութիւն հաշուոց արկեղ, և ի Հաշուետումարի անդ նշանակեսցէ զյատկացեալ փոխանագիրս թէ՛ եկամտական և թէ զելիցն, առ ի կարող լինելոյ և տեսանելոյ ըստ հաճոյս նոյն Ժողովական Խորհրդն՝ զվիճակ և զկացութիւն արկեղ, առանց հարկադրութեան դիմելոյ և քննելոյ զմուտս և զելս առ Արկղապետին: Ժողովական Խորհուրդն պարտի սահմանել Քարտուղարին այնմիկ զամսական ինչ փոխատուութիւն ըստ կիրառութեան պաշտաման այնորիկ՝ որչափ ինչ հարկաւորեսցի ըստ զրուածոյ և յատկութեան նորին, և այն միշտ Մերով հաւանութեամբ:

Ի վերջանալ երկուց ամացն՝ ի նախընթաց ատուր Պենտեկոստէի հարկ է լինել կանխագոյն առաքմամբ հրաւիրագրաց առ մէն մի Ազգայինս. հարկ է լինել ատենի, ընտրութիւնք նորոց Պաշտօնատեարց, և կամ վերահաստատութիւն արդէն եղելոցն որպէս զիարդ դատեսցեն օգտակար և յարմար Եկեղեցւոյն, Հիւանդանոցին և Աղքատացն: Ցետ առնելոյ զընտրութիւնս նորս, և կամ զվերահաստատութիւն արդէն եղելոցն,

Պաշտօնատէր երեսփոխանքն փութասցին ընտրել և կարգել զպաշտօնեայս և զգործակալս ատորնագրին*, կարգելով ի գլուխ իւրաքանչիւր պաշտաման զարս գործունեայս և աջողակս, սակս բարւոք վարելոյ զպաշտօնն զայն որ յանձնեալ եղեն առկախմամբ ի Ժողովական խորհրդոյ: Ի վախճանի ի լինելն երեսուն հարկին՝ յորժամ ի մէջ ընտրելոցն երկոքին մասն յերիցն չիցեն օրինաւորապէս ընտրեալք, յայնժամ վերապահեմք Մեզ զընտրութիւն և զկարգումն Արկղապետին վասն բարւոյ ևեթ և սակս հաւատարմաբար մատակարարելոյ զողջոյն գումարս դրամոց պատկանելոց Եկեղեցւոյն և Հիւանդանոցին, առ ի պատշաճագոյն իմն եղանակաւ զետեղել ի Մոնտ և յԵլս առ հասարակ զամենայն որ հայիցի առ այնպիսի գործողութիւն: Եւ վասն կարգաւորելոյ ըստ կերպի և եղանակի սահմանելոյ ի վերագոյն անդր՝ առկախմամբ և պատշաճական հպատակութեամբ առ Ժողովական խորհուրդն:

Յորդորեմք ուրեմն և աղաչեմք վասն սիրոյն Յիսուսի զհամօրէն զազգային Տեարս, առ ի կեալ ընդ միմեանս անձուկ կապանօք կաշկանդեալք ի սէր և յեղբայրական սէր և ի բարին՝ ի կիր արկանելն իւրաքանչիւր զյատուկ պաշտօն իւրեանց. ունել զսուրբ նախանձաւորութիւն սակս հոգւոր և ժամանակաւոր օգտի Եկեղեցւոյն և Հիւանդանոցին, առ ի ընդունել ի Պարգևատուէն ամենայն բարեաց յԱստուծոյ զարժանաւոր վարձս յայսմ աշխարհի և ի հանդերձելումն:

Տուեալ ի Բիզա ի Պալատան Մերում ի 5 աւուր ամսեանն Յունիսի 1764:

(Ստորագրեալ)

ՖՐԱՆՉԻՍԿՈՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԻԶԱՅՈՒ

(Ստորագրեալ)

ՓԻԼԻՊՊՈՍ ԲՕՔՔՕԼԻՆԻ

Ընդ. Ատենադպ. Արքեպիսկոպոսական

(Տուող կանոնագրութեանս այսորիկ երկրորդի՝ Ֆրանչիսկոս Արքեպիսկոպոս էր համանուն ընդ միւսոյն որ ետ զկանոնագրութիւնն առաջին, որ կոչէր Մոնսինեօր Ֆրանչիսկոս Ֆրօզինի. իսկ սա Մոնսինեօր Ֆրանչիսկոս Կուխտի):

## ՊԱՏՃԷՆ ԵՕԹՆԵՐՈՐԴ

Հրովարտակ Պետրոսի Լեհաստանի Առաջնոյ Աւագ Դասին Դանիելեան, տրուած յամսեան 29 Դեկտեմբերի 1769, որոյ բնագիրն պահեալ է յԱրքունի Դիւանատան ի Փետերբուրգ մայրաքաղաքի.

*Կամելով մեր յաղագս Ռովմկական կացութեան վերածել զկարչութիւն Եկեղեցւոյ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին որ ի նոսահանգստեանս մերում ի Լվովոյ, զի այնպիսապէս զնայցէ այն, որպէս վայել է աստուածային պաշտամանն և մերումս իսկ, և զի անշարժ մնասցեն կտակունք Ազգին Հայոց որ շինեացն զայն, և առ ի ընդհանուր և մասնաւոր օգուտ մատակարարութեան կալուածոցն նորին, հրամայեմք զի այսուհետեւ Քաղաքապետն մեր ի Լվովունց ունիցի զբացարձակ վերատեսչութիւն նորին, որպէս զի պաշտօնեայքն համայն, առանց բացառութեան ուրուք, կանոնապէս եղիցին ընտրեալք, և զհետ լիցին նոքա առնել զնորոգութիւնս հարկաւորս շինուածոյ Եկեղեցւոյն և պատկանելոցն առ նոյնն. և զի առաւապէս հոգացեալ լիցեն սպասքն ամենայն Աւանդատանն ի պէտս կիրառութեան կրօնից ըստ հայկական արարողութեան:*

*Այլ ի կատարումն այսր ամենայնի՝ իշխանութիւն տամք զի Քաղաքապետն ի միասին ընդ Աւագերիցու Կանոնիկոսացն դասու ամ ըստ ամէ պահանջեսցեն ի մատակարարաց եկեղեցւոյն այնորիկ զհաշիւ մատակարարութեան իւրեանց, ի գործ ածել զնոսա ամենայն և զնախատեսութիւնս, զորս թէ կարևորս և թէ օգտակարս համարին, առ ի գործածութիւն ե-*

կամոքիցն ի սպէտս պաշտամանց Եկեղեցւոյն և ի նպաստակն որոց ասկի սահմանեալ լիցին, և կատարեալ վճարեսցին օգտակարագէս բարեպաշտական դիտաւորութիւնքն որովք ճոխացեալ է եկեղեցին: Շնորհեսցի Ազգին Հայոց զիրաւունս ընտրելոյ առաւելութեամբ քուէիցն զժողովրդապետն ի սպէտս ծխի իւրեանց, որ միշտ վաւերացեալ լիցէ յԱրքեպիսկոպոսէն մերմէ Բիզայու առանձին կոնդակաւն իւրով. առ որ հանճիմբ զի յաւէտ շնորհեալ լիցի հրամանագիրս մեր ազատապէս վարելոյ զպաշտօն առաջնորդութեան:

Քաղաքապետն մեր ի Լիվոռնոյ լիցի միշտապէս օրինաւոր դատաւոր նոցա, և խափանիչ ամենայն հակառակութեանց եթէ երբեք յուզեալ լինիցին զինչ և իցէ եղանակաւ ի մէջ ազգայնոց և կամ այլոց. սակայն յամենայնի վարելով այնպէս որպէս շահաւորագոյն իցէ վասն եկեղեցւոյն, կղերաց նորա և մատակարարութեանն, կարողութեամբ որոշելոյ նաև անխայութեամբ և կարճառօտիւ զայնպիսի խնդիրս որք ըստ ինքեան կարիցեն թոյլտուութիւն առնել նմա, և ոչ պահանջեսցեն կանոնաւոր խմն դատաստանական քննութիւնս և վարմունս:

Բովանդակութեամբ իշխանապետական կարողութեանս և բնական ծանօթութեանս մերոյ՝ բառնամք յօրինաց անտի զամենայն որ ինչ հակառակեսցի առաջիկայ որոշողութեան՝ մերոյ ի հարկաւորութեան, թէ և զուցէ կարեւորագոյն դիպուածն առ ի խնդրել զմասնաւոր խմն յիշատակութիւն:

Առաջիկայ Հրովարտակս մեր յանձնեալ լիցի առ Քարտուղար Արքունական Իրաւանց, որպէս զի պահեսցի այն յարձանագիրս Քարտուղարութեան այնորիկ, և անտի առաքեսցի օրինակ վաւերական առ Քաղաքապետն ի Լիվոռնոյ, որպէս զի զետեղեսցէ յարձանագրութիւնս որ առ Արքեպիսկոպոս մեր Բիզայու, և առ այլս առ որս պիտոյ իցէ:

Տուեալ ի Բիզա քաղաքի ի 29 աւուր ամսեան Դեկտեմբերի 1769:

## ՊԱՏՃԷՆ ՈՒԹԵՐՈՐԴ

**Օրինակ նամակի [illegible] [illegible] որ է [illegible], [illegible] [illegible] առ Սուրբ Ժողովն Տարածման Հաւատոյ յ'19 փետրուարի 1770. [illegible] և [illegible] է [illegible] [illegible] [illegible] Սրբոյ Ժողովոյն որ է Հռոմ:**

*Վսեմագոյն և Գերարգոյ Տէր*
*Տէր իշխան Ամենապատիւ*

*Կարի իմն ծանօթագոյն էին ինձ նորաձեւութիւնքն մուծեալք ի Լիվոռնոյ ի պէտս եկեղեցւոյն ազգին Հայոց որ է անդ, և արդէն իսկ որոշեալ էի ի մտի ես ինքնին երթալ անդ յառաջ քան զդառնալն իմ ի Փլորենտիա, առ ի կարող լինելոյ և տեսանելոյ տեղեկութիւնս առաւել իմն ճշդագոյնս, և առ ի մատուցանելոյ ապահովապէս ճշգրիտ ծանօթութիւնս զայնմանէ թէ՛ Ակրոնեացն և թէ Վսեմութեան Ձերում:*

*Առ այժմ յառձեռն պատրաստ պատասխանի՛ երկու կէտք են զորս կարեմ առաջի դնել Սրբոյ Ժողովոյդ. յորոց մին է արքունի հրովարտակն, զորոյ օրինակն ծրարեմ աստ առ Վսեմութիւն Ձեր: Հրովարտակն այն առաքեալ եղև յանակնկալս ի Լիվոռնոյ և ի ծածուկ կալեալ իբր բազում եօթնեակս: Իսկ միւսն է մանրամասնութիւնքն զայնմանէ, զորս ստիպողական խուզարկութեամբս կարացի գտանել:*

*Սինկղիտոսն Բուչելլայի պաշտօնեայ Իրաւագիտութեանն Աւագ դքսականն, որ հակամէտ է առ ի եղծանել զամենայն զոր միանգամ Կոզմաս Գ (Աւագ Դուքս) բարեպաշտութեամբն իւրով մուծեալ էր, ուստի բարեպատեհ համարեցաւ զառիթ երկպառակութեանցն, որք յուզեալ էին ի մէջ հայ ազգայնոցն ի պատճառս մատակարարութեան եկամտիցն եկեղեցւոյն նոցա. որոյ կացութիւն հայթհայթանօքն ճոխացեալ է*

զարդիս առատագոյն խնամս ճանիւք քան ի ժամանակս այնոսիկ (առաջինս) յորում օժտեալ եղև: Գեղեցկագոյն անուամբս (այսու) Ազգայնութեանն նախայիշատակեալ Պաշտօնեայն ջանանայր եղև առ ի հաստատել գիշխանն թէ առ նա ինքն պատշաճեալ է լիովին խրատատութիւն եկեղեցւոյն այնորիկ, արդէն ի սկզբանէ անտի յանձնեալն Արքեպիսկոպոսին Բիզայու. որոյ ոչ կարացեալ ամենևին խաղաղել զանառիքելի արևելեայն զայնոսիկ, և միայն առաւելագոյն խնամ քաղցրութեամբ և ճարտարամիտ եղանակօք ընկալաւ ի նոցանէ որ ինչ յօգուտ և շահաւոր էր ի ժամանակս անդ կենդանութեան Յովհաննու Աղա Տէ Մաթոսի՝ որ էր այր բանիբուն և խոհեմ, կրթեալ գոլով ի Հռովմ ի վարժարանի Տարածման Հաւատոյ, որ մեռաւն արդէն յերից ամաց հետէ, գործնականապէս Ազգայնոյ նոցա ընտրեալ ի նմին իսկ Ազգէն ազդարարութեամբ Գերապայծառ Արքեպիսկոպոսին:

Այլ Հայն որ յաջորդեաց Աղա Տէ Մաթոսի էր ոմն շրջասէր և ամփեալ ոգւով, որ թիկունս իւր առեալ զպաշտօնեայս իշխանապետութեանն թէ ի Լիվոռնոյ և թէ ի Փլորենտիա, առ ի ունել ի ձեռին զմատակարարութիւն Եկեղեցւոյն, յարոյց վէճս և կռիւս ընդդէմ երկուց առաւել խնամածայրոց եղելոցն. և դիմեալ յԱրքունիս, ձգելով առ ինքն զՔաղաքապետն Լիվոռնոյի, որպէս զի տացէ վկայութիւն նպաստաւոր անձին իւրում:

Այնպէս զի յընթացս երկուց ամաց հակառակութեան ոչինչ իւիք եղև կարելի Գերապայծառ Արքեպիսկոպոսին առ ի համոզել զՄինկղիոտտն Բուչելլայի առ ի վերստին դնել զկրս յառաջին վիճակն իւրեանց. չեղև նմա կարելի և ոչ իսկ ցուցանելն ակներև թէ իրաւունքն ի հաստատել զժողովրդապետ Ազգին Հայոց ի Լիվոռնոյ՝ էր ամենայնիւ սեպհական ինչ Սրբոյ Ժողովոյն այնորիկ, որոյ ծախիւք էր խնամեալ:

Ի նանիր և ի զուր եւս բողոք կալաւ, զի ոչ իւիք կարող էին ժամանակաւորք Արքեպիսկոպոսք Բիզայու ի ճանաչել զուղղափառութիւն անձին (ժողովրդապետին) առանց կանխաս-

*ցութեան Սրբոյ Ժողովոյն Տարածման Հաւատոյ. այսպէս եւ առ ոչինչ պէտս եղև յաւելուլն նորա թէ անհնար էր ծանրաբեռնել զեկեղեցին Ազգին Հայոց ի Լիվոռնոյ վճարմամբ այնքան ռոճկի որպէս վայել էր եկեղեցականի միոյ յարմարագունի առ ի բարւոք լնուլ զգործս պաշտամանն:*

*Պաշտօնեայն պատասխանի ետ միայն բերանով, ասելով թէ Փոխանորդն ի Լիվոռնոյ ի շնորհելն ժողովրդականին զիշխանութիւն և զկարողութիւնն ի հոգևորս՝ ըստ հաճոյս կարող է բանակից լինել ընդ Հռովմայ, և թէ յաջորդքն նորա ազատաբար կարող էին առնել ըստ այնմ յապագայ ժամանակի:*

*Անհաւաճիկ որչափ ինչ պատիւ ունիմ առաջի դնել Վսեմագոյն Տէրութեան Ձերոյ ի լրումն յարգելի հրամանացն որք յանձնեցայք եղեն ինձ թղթովն որ ի 11 ներկայիս. շնորհաւոր և օգտաւէտ ինձ վարկանիմ զառիթս այս առ ի նորոգել զապացոյց առաւելագոյն յարգութեան և մեծարանաց իմոց, որով խոնարհեալ մատչիմ ի համբոյր Ձեռացդ.*

*Վսեմագոյն Տէրութեան Ձերում*
*ի Պիզա յ19 Փետրուարի 1770:*

*(Ստորագրեալ)*
***Ամենախոնարհ . . . ծառայ***
**Ա. ՄԱՆՁԻՆՖՕՐԹԷ**
***Արքեպիսկոպոս Թեսաղոնիկիոյ***



## ՊԱՏՃԷՆ ԻՆՆԵՐՈՐԴ

**Յայտարարութիւն Սրբոյ Ժողովոյն Տարածման Հաւատոյ ուղղեալ առ Առաքելական Նուիրակն որ յԱրքունիս Տոսկանայոյ, ի 25 Յունիսի 1770. օրինակն հանեալ է ի Դիւանէ Նորին իսկ Ս. Ժողովոյն որ է Հռոմ։**

*Յամսեանն Յունուարի յանցելումն ամի 1770, հաւաստեաւ ծանեաւ Սուրբ Ժողովն Տարածման հաւատոյ զնոր հրովարտակըն և զկանոնագրութիւնն արարեալ ի Նորին Թագաւորական Բարձրութենէ Աւագ Դքսին ի պէտս Եկեղեցւոյն Հայոց որ բնակեալքն են ի Լիվոռնոյ:*

*Ի հրովարտակի անդ այնմիկ հաստատեալ էր զի յապագայի Ազգն և Եկեղեցին նախայիշատակեալ ի մատակարարութեան եկամտիցն և ի քննութեան հաշուոցն, եղիցի անմիջապէս ստորակարգեալ Իշխանին: Եւս և ընտրութիւն ժողովրդապետին և ժամանակաւոր Պաշտօնատեարց պարտիցի լինել ի ձեռն Ազգայնոց, և վաւերական հաստատութիւնն լինիցի յետոյ ի Նորին Թագաւորական Բարձրութենէ, և ի վիճակաւորէ տեղւոյն՝ որ է Գերապայծառ Արքեպիսկոպոսն Բիզայու:*

*Եւ յիրաւի իսկ, յետ սակաւու միոյ անցելոյ ի վերայ ղիպուածոյս այսորիկ, դէպ եղև առ ի նախատեսել-վասն Եկեղեցւոյն նոր զումն ժողովրդապետ, և ըստ եղանակի հրամանագրոյն ընտրեալ եղև յԱզգայնոց անուն Տէր Պետրոս Մուրատեան քահանայ հայազգի՝ ածեալ և բերեալ զնա ի Կոստանդնուպօլսոյ, որ զարդիս եւ վարէ զնոյն պաշտօն:*

*Նորաձեւութիւն ինչ այսպիսի, ոչ այլ ինչ կարէր առնել եթէ ոչ մեծապէս վշտացուցանել զՍուրբ Ժողովն, վասն զի այժմիկ աւելի քան հարիւր ամք անցեալք են յորմէ հետէ Վ_*

-ֆէ-րն կամ ժողովրդականն Հայոց նախայիշատակեալ ընդ միշտ խնամարկեալ եղև ծախիւք նորին և առանձին ռոճկաւ եօթն Բէցցայից:

Քանզի ի շնորհիւ հրամանի ի կողմանէ Սրբոյ Ժողովոյ անտի ի պէտս Հայոց առ ի վարչութիւն եկեղեցւոյ նոցա, (որ յ'3 Մարտի 1689) ի մէջ այլոց պայմանադրութեանց ի կողմանէ նոցա կարևոր խնդ եղանակաւ ընկալեալցն, ընկալեալ եղև նոյնպէս և ապահովեալ յիշխանութենէ Աւագ Դքսին Կոզմայ Գ․ որ ի ժամանակս թագաւորութեան իւրոյ շնորհէր զայդ ապահովութիւն, թէ՛ ի կողմանէ իւրմէ և թէ ի կողմանէ յաջորդացն իւրոց, որպէս յայտնի լինին ի թղթոց՝ որոց օրինակքն հրապարակապէս ծանուցեալք են, (և են յառաջ բերեալքն ի յաւելուածի անդ մերում), յիշատակեալ էին անդանօր յառաջին և յերկրորդում տեղւոջ, թէ եկեղեցին Հայոց ի Լիվոռնոյ, պարտի ճանաչել զհեղինակութիւն Սուրբ Ժողովոյն, և թէ քահանայն և կամ քահանայքն, որք մատակարարք լիցին, պարտաւորեսցին յամենայն ժամանակի, անուանեալ լինել ի Սրբոյ Ժողովոյն և ի նմանէ իսկ ընդունել զկոնդակ առաքելութեանն:

Յայսպիսի բարւոք և ի հաստատական պատճառս յեցեալ ի վերջոյ որոշեցաւ յընդհանուր ժողովն որ ի 25 Յունիսի, զի առաջի դիցին Արքունեաց Դոսկանայու իրաւունք Սրբոյ Ժողովոյն, և պահանջել ամենայն պարտաւորութեամբ զյետս կոչումն, և կամ չափաւորութեամբ ինչ մեղմել զյիշատակեալ հրովարտակն, որ մեծապէս և յայտնի խնդ եղանակաւ վնասակարն է իրաւանց նորին (Սրբոյ Ժողովոյն): Այլ որովհետև Նորին Թագաւորական Բարձրութիւնն արդէն գնացեալ յարքունիսն ի Վիէննա, սակս այնորիկ յետաձգեալ եղև խնդիրն այն մինչ ի դարձ նորին, և յետոյ հարկ եղև երկարել զխնդիրն և ևս, ի պատճառս փոփոխութեանն եւ ի բաց կոչման Առաքելական Նուիրակին Մօնսինեօր Մարքօլինիի:

Զարդիս յաջորդեալն Տէրութեան Ձերոյ ի տեղի նորին,

ցանկացեալ են Վսեմութիւնք նոցա (Ծխրանատրաց ժողով) զի Ջանանանր լիցի յառաջ տանել զխնդիրն զայն և ամենայն եռանդեամբ և ճարտարութեամբ այնուիկ որպէս վայել է Ձեզ, ներկայացուցիչ զոլովն առաջի Նորին Թագաւորական Բարձրութեանն, և Պաշտօնէից նորին, ցուցանելով ոչ միայն զանիրաւութիւն զոր ընդունի Սուրբ Ժողովն, որովհետև նմա միայն պատշաճին իրաւունք առ ի ընտրել ըզժողովրդապետս զօրութեամբ վերոյգրեալ պայմանացն․ այլ և անպատեհութիւնն որ կայ ընդ մէջ՝ սակս պարտաւորութեանն խնամատար լինելոյ նորա (ժողովրդապետի) ծախուք իւրովք առանց մասնակից լինելոյ յընտրութեան նորին:

Բաց յայսցանէ բարւոք էր յառաջաւորս լինելն և ի խորհրդածութեան առնուլ, որովհետև կարևորագոյն խնդի ի պէտս լաւագոյն սպասաւորութեան հաւատացելոցն այնոցիկ, և սակս պահպանելոյ զողջամտութիւն կրօնիցն՝ զի մնասցէ միջամտութիւն և մասնակցութիւն յընտրութեան ժողովրդապետին, որպէս մինչև ցայժմ հաստատեալ էր Սրբոյ Ժողովյն, լինելով նորա լիովին ծանօթ ուղղափառ Հայ քահանայիցն, կարէ առնել քան զայս ի դիպուածի անուանել զնոր ժողովրդապետն, և կարգել զայն որ ունիցի հաւատս հաստատունս և զփորձառական աջողակութիւն:

Երբ ազդողաբար Տէրութիւն Ձեր գործակից լիցի յայսմ առենայնի՝ որպէս յուսամքն, և ի կիր ածցէ խոհեմաբար զայսոսիկ խորհուրդս, ի ձեռն վերոյիշեալ վաւերական թղթոց որք այնու փախճանաւ յարակցեալ եղեն ներկայ Ցայտարարութեանս, յայնժամ լիովին վստահութիւն ունիցիմք զի Նորին Թագաւորական Բարձրութիւնն ճանաչելով զարդարութիւն խնդրոցն և վասն թախանձանացն մատուցեալ փութացի տալ զհարկաւոր և զպատշաճական հրամանս, առ ի յետս անդրէն վերադարձուցանել զխնդիրն յառաջին վիճակ իւր, և թողուլ Սուրբ Ժողովոյ առ ի վայելել զհեղինակութիւնն և զազատու_

թիւնն զայն զոր ունէր խրատուն՝ և զոր ըստ այսմ տնօրինաւոր վայելեալ է յընտրութեան ժողովրդականին ի Լիվոռնոյ:

Տուեալ ի Հռովմ յաւուր 25 Յունիսի 1770:

(Ստորագրեալ)

**Գանձերեց Սրբոյ Ժողովոյն**

**ԾԻՐԱՆԱՒՈՐՆ ՔԱՍԹԵԼԼԻ**

—

(Թողլի ընտրութեան ժողովրդականին Եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ կամ վերապահումն անուանման նորա ի ձեռն իշխանականին Դոսկանական Պետութեան, պատճառս եւ ոչ սակաւ բանակցութեան և երթևեկութեան պաշտօնական գրութեանց ընդ մէջ Հռովմայ և Փլորենտեայ, զորոց օրինակս թէ և ունիմք ի ձեռին, այլ զանց առնեմք զամենայնն մի ըստ միոջէ ստորանօր յառաջ բերել: Ի վերայ այսր ամենայնի, առ ի ծանօթս կացուցանել զայնցանէ զհետաքննիս մեր՝ փոքր ի շատէ քաղեալ զիմաստս ինչ կարևորագոյնս ի գրութեանց անտի դնեմք աստէն:

Ի տեղւոջ ուրեք գրեալ է ի Ծիրանաւոր Գանձերեցուէ Սրբոյ Ժողովոյն այսպէս. «Զգլխաւոր ռամի եղեալ իցէ ծագումն և սկիզբն այսպիսի նորաձևութեան իրիք, և վասն որոյ պատճառաց բերեալ իցեն Արքունիքն յորոշումն առնելոյ զայն. վասն որոյ աղաչեմ Ներկայիս զՏէրութիւն Ձեր, (Առաքելական Նուիրակին), որպէս զի ի մասնաւորի ծանեսցի տալ զայսմանէ տեղեկութիւնս ինչ առ ի առաջնորդութիւն նորին Սրբոյ Ժողովոյն ... Իսկ ի պատահել առթին երբ Տէրութիւն Ձեր ճարկադրեալ լիցի խօսակից լինել ընդ ուրուք, որոյ ի յարաբերութեան իցէ ընդ գործոյն այնորիկ, կարող է զեկուցանել նմա յայնժամ խոհեմութեամբ և ճարտարամտութեամբ Ձերով, թէ ժողովրդապետն Հայոց խնամեալ գոլով ի Սրբոյ Ժողովոյն Տ. Հ. կանոնական օրէնք պահանջեն զի ի նմանէ լիցի կարգեալ և ի նմանէ լինելի առկախեալ» ...

Այլուր գրէ Ծիրանաւորն առ Առաքելական Նուիրակն

այսպէս. «Գալով առ խնդիր ժողովրդապետին Հայոց՝ կարելի է զի վախճան Նորին Թագաւորական Բարձրութեանն չիցէ առ ի զրկել իրականապէս յիրաւանց զՍուրբ Ժողովն, զոր ունի ի մասին ընտրութեան նորին, որպէս ասեն թէ Գերապայծառ Արքեպիսկոպոսն Բիզայու և թէ գործակալն Կուլիէլմոս Ռիչչի. այլ սակայն ճշմարտութիւնն այն է զի ի Հրովարտակի Աւագ Դքսին Տոսկանայի հակառակն, յորմէ երևի թէ հարկաւոր իցէ զգոյշ և արթուն կալ ի վերահաս վտանգէ, որ թէ և ոչ զար-գիս, այլ սակայն յապագայ ժամանակի կարելի է ծնանել..»:

Ի թղթի միում գրեալ ի 27 Յուլիսի 1771 ի Ծիրանաւորէն առ Գեր. Տէր Պետրոս վարդապետ Մուրատեան գոյ ծանուցեալն այսպէս. «Ձեզ զանց արարեալ երբեք առ ի յանձնարարել Գերապայծառ Նուիրակին զգործս ժողովրդապետութեանդ այդորիկ, և տուեալ եղեն նմին նաև հարկաւոր հրահանգք, որ-պէս զի կարող լիցի պաշտպանել առաջի Աշխարհաց Իշխա-նաց զիրաւունս Սրբոյ Ժողովոյն, յետ գործառնութեանց ար-ժանաւոր առաջնորդիս այսորիկ. յուսամ զի Տէրութիւն Ձեր ևս կարող լիցի յառաջին եղանակն ամփոփէն առնել. և ընդ այսմ միաշէր լինել համբերատար ի կիր արկանել զբնիկ եռանդն Ձեր ի ծառայութիւն հոգւոցն այնոցիկ»:

Ի ձեռն այսպիսի բանակցութեանց Սրբոյ Ժողովոյն և թե-լադրութեանց նորին ի կողմանէ Աշխարհացն, ընդհանուր թոյլ-տուութիւն նոյն վարելոյ ըստ նախկին եղանակի, որպէս յայտնի տեսանի. զի յետ Մուրատեան Պետրոս վարդապետի՝ յաջորդն նորա Հալանեան՝ որ ալլէն առաքեալ էր ի Ս. Ժողովոյն ի Լիվոռնոյ, առանց ինչ միջնորդութեան քաղաքական Պետու-թեան ծանուցեալ եղև իբր օրինաւոր ժողովրդապետ եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ: Իսկ յամին 1785 եկն այստեղ այլ հրովար-տակ որ գրեալ մերկացոյց ի սպառ զՍ. Ժողովն յայսպիսի ի-րաւանց):

## ՊԱՏՃԷՆ ՏԱՍՆԵՐՈՐԴ

Երկրորդ Հրովարտակ Պետրոսի Լեթունոսի Ասջոյ Աւագ Դպրին Դուքանեանց, տուեալ յաւուր 25 ամսեանն Սեպտեմբերի յամին 1785, է փոխանակ մայրաքաղաքի, և պահեալ յԱրքունական Դիւանի անդ։

*Նորին Պերճապայծառ Բարձրութիւնն մեծարելի Հրովարտակաւն իւրով որ ի քաղանիցն Սեպտեմբերի ընդ նոսա անցելոյ ծրամայէ զի այսուհետև յեկեղեցւոջ Հայոց լինիցին երկու եկեղեցականք, մին ունելով անուն Ժողովրդապետի և միւսն անուն Օգնականի իւր աջակից նորին։*

*Ի պարապութեան ժողովրդապետի պարտի Ազգն առաջարկել զանուանս երից քահանայից կանխագոյն ծանուցմամբ առ Արքեպիսկոպոսն Բիզայու՝ զի անուանեալ եղիցի ի Նորին Պերճապայծառ Բարձրութենէ, որ առաւել յարմարագոյն դատեսցի ի նոցանէ։*

*Կամ է Նորին զի ի միջի երկուց քահանայիցն, և կամ ի միջի այնոցիկ որք ծառայեսցեն յեկեղեցւոջ Յունաց, գտանիցի մշտաւն ոմն որ գիտիցէ զլեզու արաբական, առ ի դիւրութիւն ի պէտս խոստովանութեանց։*

*Նորին Պերճապայծառ Բարձրութիւնն շրջէ ըստ այսմ զտկարութիւն անուանման ժողովրդապետի ցարդ ի կիր արկեալ ի կողմանէ Ս. Ժողովոյն Տարածման Հաւատոյ Հռովմայ, հանձնեալ զի թոշակ վաթսուն և իննսուն սկուտիցն հատուցելոց ցարդ ի նոյն Ժողովոյ առ ժողովրդապետն հատուսցի այսուհետև յեկեղեցականն Արկղէն։*

*Ի հաղորդելն զայս իշխանապետական կարգադրութիւն Գեբանոսյան Տէրութեանց Ձերոց՝ և այլն։*

Տուեալ ի Լիվոռնոյ ի Պալատան Քաղաքապետի ի 21 աւուր ամսեան Հոկտեմբերի 1785.

(Ստորագրեալ)

Քաղաքապետն Լիվոռնոյի
ՏԱ. ՄՕՆԹԱՈՒԹՕ

—

(Առաջի եղեալ օրինակն Նսկլորդ Հրովարտակի է ըստ այնմ որպէս հաղորդեալ եղև ի Քաղաքապետէն Լիվոռնոյ քաղաքի առ Առաջնորդ Եկեղեցւոյն մերոյ և առ Երեսփոխանս նորա: Հանեալ է մեր զայն ի Դիւանէ Եկեղեցւոյս մերոյ որ ի Լիվոռնոյ քաղաքի, և յեղեալ ի Հայ բարբառ:

Իսկ ի դիւանատան վարչութեան Եկեղեցական կալուածոցն ի Լիվոռնոյ գտանի յիշատակութիւն Հրովարտակին այնորիկ՝ գրեալ ի ձեռն Քաղաքապետէ Լիվոռնոյի առ Վարչապետ Եկեղեցական կալուածոցն՝ այսպէս. «Այսպ հարկ է զի ծանիցէ
» Երևելի Տ. Ձ՚. զհրամանն հաղորդեալ ինձ ի Քարտուղարէ
» Արքունի Իրաւանց՝ Նամակաւն որ յ30 Յուլիսի 1784, որ ի
» բաց կացուցանէ յոր և իցէ փոփոխմանց զերկոսին Եկեղե-
» ցիս զՅունացն և Հայոց, որք թէ և ունին ընկերական երևոյթ
» երեսփոխանօք և պաշտօնատերամբք, այլ գործնականապէս
» են պարզ ժողովրդապետութիւնք օտար ազգայնոց պատու-
» պարեալ իւրաքանչիւրն սեպհական ժողովրդապետօք, զորոց
» անուանումն և զթիւն նախատեսեալ են ի Յօդուածս 33,
» 34, 35 որ ի յարակից Հրովարտակին: Ի բաց կացուցանէ
» նաև զայլ ընկերական ժողովս օտարականաց՝ որպէս զՀո-
» լանտացւոցն, և այլն և այլն

Յօդուածքն 33, 34, 35, որ ի Հրովարտակին
ի 25 Սեպտեմբերի 1785.

Յօդ. 33. « Յեկեղեցւոջն Յունաց լինիցին երկու Եկեղեցա-
» կանք, մին ժողովրդապետ անուամբ, իսկ միւսն Օգնիչ: Ազգն
» առաջարկեսցէ ի պարապութեան զերկս ոմանս նախընթաց
» տեղեկութեամբ Արքեպիսկոպոսին Բիզայու, և այն որ ա-

*» ունել յարմարագոյն է՝ անուանեսցի ի Նորին Պերճապայծառ*
*» Բարձրութենէ:*

*Յօդ. 34. « Մի և նոյն եղանակ ի կիր արկցի յԵկեղեցւոջն*
*» Հայոց, եղծմամբ սովորութեանն զոր ունէր Ժողովն Տարած_*
*» ման Հաւատոյ Հռովմայու առ ի անուանել: Եւ Արկղն Եկե_*
*» ղեցական համառօտ զվայթուն և իւր սկսեալ զորս համառօ_*
*» ցանէրն յիշատակեալ Ժողովն:*

*Յօդ. 35. « Ի միջի Քահանայիցն որք պարտաւորեալ իցեն*
*» սպասաւորել Եկեղեցւոյն այնոցիկ՝ ջանասցեն լիցի զի զը_*
*» տանիցի համապատ ոմն որ տեղեակ իցէ արաբական լեզուի*
*» առ ի դիւրութիւն լսելոյ զխոստովանութիւնս»:*

## ՊԱՏՃԷՆ ՄԵՏԱԱՄԱՆԵՐՈՐԴ

**Կանոնադրութեան երրորդ արարեալ է Լեհաստանայ յԱշխարհին երես_ փոխանական ժողովոյն և հաստատական վաւերականութեան տուեալ է Լէոպոլսոյ [illegible] [illegible] [illegible] Դոկտանայ. հանեալ է Դիւանատանէ Եկեղեցւոյն Հայոց որ է Լեհաստանայ:**

*Զհաշուականութիւն միատարրութեան չէ պարտ կալ_ նուլ ըստ փառաւորականաց եղանակի կրկնապատիկ գրու_ թեանց, այլ միայն ըստ յայտարարութեան Ոնեթոյն՝ այնպէս որպէս ի կիր արկեալ է ի վարչութենէ Եկեղեցական ստա_ ցուածոցն ի Լիվոնոյ և յայլոց լոկ միատարրութեանց առհասարակ, առ ի պէտս ոչ արկանելոյ ի կիր զերկարագոյն ժամանակ, և առանց կնճռութեան լոկ կարող լինել ճա_ նաչելոյ զտնտեսական վիճակ եկեղեցւոյն յորում և իցէ աւուր, որով առաւել ևս դիւրին լիցի կազմակերպել զտարեկան հա_ շուեկշիռն:*

*Բ. Տնտեսական տարի Եկեղեցւոյն համգունատիպ սովորա_ կան տարւոյ սկսանիցի յառաջին աւուր Յունուարի և վերջա_ ցի ի յետին աւուր Դեկտեմբերի:*

Գ. Առ ի հաւասարակշիռ առնել խնամական յառաջատեսութեամբ զծախս և զմտոյթս, յիւրաքանչիւր տարւոջ յամսեանն Նոյեմբերի, յառաջ քան զընդմիջել նորին՝ պարտի Քարտուղար եկեղեցւոյն գրել և պատրաստել զնախահաշուական Հաշուեկշիռն ի պէտս յաջորդ ամին, որպէս սովոր է առնել առ մնացեալ վարչական և համայնական մատակարարութիւնս, մատուցանելով զայն Ազգայնոյ եկեղեցւոյն, որպէս զի և նա ինքն կարգեսցէ վաղվաղակի զերկուս երեսփոխանս առ ի վերաքննութիւն այնորիկ:

Դ. Սկսեալ յառաջին օրէ ամսոյ մինչև ի քսանեօթն ամսեան Դեկտեմբերի՝ Երեսփոխանքն գումարեսցին ի ժողով, և լուեալ զՑարաբերութիւն կրկին վերաքննողացն, արարեալ անդ զամենայն սրբագրութիւնս և յաւելուածս, զորս ի դէպ վարկանիցին, որոշեսցեն զընդունելութիւնն Նախահաշուական Հաշուեկշռոյն այնորիկ:

Ե. Նախահաշուական Հաշուեկշիռն յետ վաւերացուցման Երեսփոխանացն յանձնեալ եղիցի յԱզգայնոցն առ Նորին Վսեմութիւն Քաղաքապետին Վիլոնոյի ի վերջին մնացեալ աւուրս և միջոց ամսեանն Դեկտեմբերի:

Զ. Ամ ըստ ամէ յառաջին ութ աւուրս ամսեանն Մարտի Քարտուղարն մատուսցէ Ազգայնոյն զՀաշուեկշիռն կամ ըզհամարատուութիւն մատակարարութեանն նախընթաց տարւոյն: Այլ և յայսմիկ լիցին կարգեալ յԵրեսփոխանացն երկուք առ ի վերաքննութիւն այնր, որպէս զի Հաշուեկշիռն այն ի մնացեալ աւուրս ամսեան Մարտի առաջի արկեալ լիցի ժողովոյն, ընդ Ցարաբերութեանն երկուցն այնոցիկ ի պէտս որոշութեան և վաւերացման, ուրանօր պարտի լինել առաջիկայ և Քարտուղարն առ ի տալ զհարկաւոր բացատրութիւնս: Եւ յետոյ օրինակ մի ի Հաշուեկշռոյն այնորիկ յանձնեալ եղիցի Նորին Վսեմութեանն Քաղաքապետին Վիլոնոյի ի միջոցի յառաջին ութնեկի ամսեանն Ապրիլի:

Է. Եթէ լիցի ինչ յաւելեալ մասն ի տարեկան Հաշուեկշռոյն

գետեղեսցի կուտեալ գումարն այն ի Խնայական Արկեղ, և կամ կալցի այլ իմն առժամանակեայ եղանակաւ, ըստ որոշման Երեսփոխանացն ի ժողովն զոր պարտին առնել յընթացս ամենայն Ապրիլի, ուշադիր լինելով զի ապագայ յաւելմանց գումարացն և վերահաս նորանոր հասութից և կամ փոխանակութեանց առացուածոց, այն գումարք կուտեալք կարող լիցեն կազմել մայրագումար ինչ պատշաճական առ ի կիրառութիւն իրիք որոշակի:

Ը. Առ ի բարւոք և յապահովական խնամատարութիւն ի վարձելն զկալուածս՝ պարտին յանձնիման լինել Երեսփոխանացն թէ՛ ըստ օրինի և թէ ըստ նիւթոյ, որ ինչ յարաբերական երաշխաւորութիւն իցէ ի մէջի:

Նախ, Տեղեկագիր ճարտարապետին ի վերայ գնոյ կալուածոցն ոչ այնքան յեկամտիցն առացուցանելի է ի հետազօտելն զայն ըստ տեղական եղանակի, և ըստ զգուշութեան խղճի մտաց, որչափ զվիճակէ նոցին իսկ կալուածոցն առացուցանելի է, առ ի գիտել թէ վիճակն այն ի բաղդատելն ունիցի ինչ կորուստ ի ճատապարտական գնոյն ամսի:

Երկրորդ, Կարծիքն Խորհրդականին Եկեղեցւոյն՝ յորմէ մարթ իցէ յայտնի լինել գիտական և օրինաւոր վիճակի առացուածոցն մատուցելոց յերաշխաւորութիւն կիրառութեան: Կարծիքն այն պարտի լինել ընկերացեալ գէթ պայմանօք Գրաւականութեան:

Թ. Վարձաւորութիւնն չլինիցի վաւերացեալ երբ ազատ արժէք առացուածոցն մատուցելոց ի գրաւ՝ չիցէ կրկնապատիկ աւելի քան զգումարս և զմայրագումարն ի վարձու առելոց և երեքամսեայ շահուցն: Ի նկատի ունելով զծախս կարևորս դատաստանականս որ ըստ փոփոխութեան դիպուածոց կարեն ծագել և առնուլն առ ի բռնադատական վաճառումն և կամ ի մասնական հատուցումն: Արժէք կալուածոցն որ ի քաղաքի զետեղեալ են՝ հարկ է զի առաւելագոյն իցեն քան զմայրագումարն և զշահն, և այն կրկնապատկաբար յերիս մասունս՝ յոր-

ժամ գործառնութիւնն է զգնմանէ ազատակի միոյ և կամ այլ ինչ վարձատրութեանց, որոյ տևողականութիւնն յերկարեսցի աւելի քան զհնգամեայ ժամանակ:

Ժ. Վաւերական գրութիւնքն զորոց բանք եղեն ի յօդուածն Ութերորդ՝ պարտին յիշատակեալ լինել ի վճիռ ժողովոց հաստատելով զվարձատրութիւնսն, և մնասցին ի Դիւանատան Եկեղեցւոյն: Այլ և զուն գործեսցի զի ծախքն որ վասն Տեղեկագրոյն և Օրինաւորական Խորհրդատուին վճարեսցին միշտ յայնմանէ որ ընդունի զդրամսն:

ԺԱ. Ամենայն Հաշուեկշիռքն պարտին բովանդակեալ ունել զատորագրութիւնս Երեսփոխանացն և միացուցեալ և պահեալ շարունակաբար ըստ կարգի թուականացն:

ԺԲ. Եկեղեցին ունիցի զվարձահատոյց կամ հարկապահանջ ոք, առ որ յանձնեալ լիցի չափաւորական իմն գործակալութիւն առ ի պէտս պահանջելոյ զեկամուտս նեթ: Ընտրութիւն նորին՝ որպէս նաև ի բաց հանումն նորա ի պաշտօնէն իցէ ըստ հաճոյս Երեսփոխանացն, չլինիցի մասնակից Խորհրդեան նոցին, որով չունիցի ընաւ իրաւունս մտանելոյ ի ժողովս:

ԺԳ. Վարձահատոյքն յառաջ քան ընդունելն զպաշտօն իւր՝ ապահովս կացուցանել պարտի զեկեղեցին սակս բարուք գործակալութեանն՝ դնելով յԱրկեղ Եկեղեցւոյն զգումար երեք հազար գուլդենական լիրայից, և կամ տալով զհաստատուն երաշխաւոր ոք, որ երաշխաւորեսցէ զանձնական պարտաւորութիւնն առ ի հատուցանել զայնպիսի գումարն ի ձեռն օրինաւորական ինչ գրաւու: Ազատարար վարեսցին Երեսփոխանքն յընդունելն զմի և կամ զմիւս եղանակ երաշխաւորութեանն:

ԺԴ. Յետ որոշելոյ զեղանակ հաստատական երաշխաւորութեան, կարգաւորութիւնն վասն գրաւոյ յանձն լիցի հաւանութեան Երեսփոխանացն, առաջի որոց պարտին բերեալ լինել վաւերական գրութիւնք, զորմէ բանք եղեն ի յօդուածն Ութե_

բոլոր. և սահմանեսցի ըստ արժանաւորութեան և ըստ մտաց Իններորդ վերոյգրեալ Յօդուածոյն:

ԺԵ. Երբ երաշխաւորութիւնն տուեալ կայացի զետեղ_մամբ երեք հազար դոսկանական լիրայից յԱրկեղ Եկեղեցւոյն, Արկղապետն վճարեսցէ զշահ նոցին վարձահատուցին չորս առ հարիւր, յետ անցանելոյ իւրաքանչիւր չորից ամսոցն: Յետ դադարման գործակալութեան վարձահատուցին՝ գումարն այն յետս անդրէն դարձուսցի առ նա ինքն, այլ յետ երկուց ամ_սոց յետ դադարման:

ԺԶ. Յանձն է խնամոց Երեսփոխանացն, առ ի կիր արկա_նել ապահովապէս զգումարն զայն ի գործ դնել շահաւոր ի հաշիւ Եկեղեցւոյն. զայն գումար զորմէ քանի եղեն ի նախըն_թաց յօդուածին, և կամ ի հաստատուն պարտուց ինչէ լիցին:

ԺԷ. Վարձ տանցն՝ որոց զինս բարձրագոյնս են քան զքսան լիրայս դոսկանականս յամսեան՝ պարտին բացայայտ երևել յա_ռաջին դաշնագրութեանցն արարելոց ի վարձահատուէ ան_տի զօրութեամբ գործակալութեանն, այնպիսի զինս որք պատշաճ դատեալ են ի նմանէ. սակայն պայմանական է այն, և միշտ եղեալ զհարկ հաւանութեան Երեսփոխանաց, առ որս առաջարկել և մատուցանել պարտի ի ձեռն Ազգապետի Եկե_ղեցւոյն զգրուածն զայնօսիկ. վաւերականութիւն գրուածոցն արտայայտեսցի ստորագրութեամբ Երեսփոխանացն այնոցիկ եղելոց յատուկ գրուածոցն, և դրութեամբ մի և նոյն թուա_կանի ժողովոյն. ապա թէ ոչ, չլինի պարտաւոր Եկեղեցին:

ԺԸ. Վարձահատուն պարտի ծանուցանել Ազգապետի Եկե_ղեցւոյն վասն բնակարանացն անվարձ մնացելոց՝ որպէս հետ_զհետէ կարեն պատահել ի կալուածս. զբանալիս այնպիսի անվարձ մնացեալ կալուածոցն՝ պարտի ի պահեստի դնել ի դիւանատան Եկեղեցւոյ:

ԺԹ. Վարձահատուն ոչ երբեք կարէ առնել զվճարումն ինչ, և պարտաւոր է զամենայն գումար հաւաքեալ յանձնել ի ձեռս Արկղապետի Եկեղեցւոյն: Արկղապետն պարտի առնել զվճար_

մունս վասն որ և իցէ իրաց ի ձեռն փոխանորդաց Քարտուղարին՝ ստորագրելոց յԱզգայնոյն, այլ և գէթ ի միոյ ի Խորհրդականացն:

Ի. Միշտ վճարեալ լիցին նաև հաշիւք նորոգութեանցն արարելոց յԱրկղայնոյն ի ձեռն փոխանորդացն որպէս ի վեր անդր, ըստ զեղչեալ ծանօթագրոյ Քարտուղարին և կամ Ճարտարապետին այնորիկ որ իցէ ի ծառայութեան Եկեղեցւոյ:

ԻԱ. Պարտի վարձահատուն նախ լինել ի բարւոք պահպանութիւն շինուածոց, և ծանօթս կացուցանել զերեսփոխանս զկարևորացն, որք իրազեկ լեալ զվիճակէ այնոցիկ, ըստ պահանջման պարագայից սահմանեսցեն զոր ինչ պատշաճ վարկանին:

ԻԲ. Ի գլխաւորս դանդաղման պարտականաց առ ի հատուցանել զեկամուտս պահանջեալս ի վարձահատուէն, որպէս ի գլխաւորս հրաժարման կամ փախստեան վարձաւորացն, նա ինքն պարտի մղել ըստ պատշաճողութեան ամբաստանութիւնս դատաստանականս համախոհութեամբ ընդ Ազգայնոյն թէ պահպանողաբար և թէ գործադրաբար. այսու ամենայնիւ մղեսցի ամբաստանութիւնն ոչ յանուն վարձահատուին, այլ յանուն երեսփոխանացն ևեթ:

ԻԳ. Ի նկատի ունելով զայժմեան եկամտական հանգամանսն որ ի տարւոջ, պարտաւորեալ է վարձահատուն զետեղել յԱրկեղ Արկղայնոյն՝ առանց դանդաղելոյ աւելի քան զերրորդ օր իւրաքանչիւր ամսեան՝ զգումար հազար դոկանական լիրայից ի հաշիւ հաւաքեալ վարձուցն ի նախընթաց ամսեանն, և ոչ երբեք կարասցէ զանձն ազատ կացուցանել, պատճառելով թէ չև ևս է հաւաքեալ զվարձս այնչափս:

ԻԴ. Վարձահատուն ի կիր արկցէ հաշուետետր մի՝ ուրանօր խնամով նշանակեսցէ զհաշիւ իւրաքանչիւր պարտականաց և զօրըստօրեայ հաւաքեալ դրամս: Ի լինել հարկին պարտ է յանդիման առնել զհաշուետետրն զայն ժողովոյ Երեսփոխանացն և Ազգայնոյն, ևս և իւրաքանչիւր Խորհրդականացն և

*Արկղապետին, Քարտուղարն պարտի գէթ մի անգամ ի չորեքամսեայ ժամանակս վերաքննել զհաշուետետրն զայն և դնել զթուականս քննութեանն և զստորագրութիւնն իւր:*

*ԻԵ. Զի ի կէսն հասեալ Փետրուար ամսեանն՝ վարձահաւաքն պարտի զհամար հաշուոյն ստորագրելով յանձնել Քարտուղարին, զայնպիսի համար հաշուոյն որ ի գործակալութեան իւրում ի նախընթաց ամին մինչև ի վերջ Դեկտեմբերի արարեալն է, առկախ թողլով զայնոսիկ մասունս զորս մինչև ցայնժամ չև է հաւաքեալ: Քարտուղարն վերատեսեալ և ճըշգրտեալ զհամար հաշուոցն, մատուցէ զայն Երեսփոխանաց առ ի վաւերացուցումն. յետ որոյ վարձահաւաքն անընդմիջապէս պարտի վճարել Արկղապետին զմնացուած և զամբողջական հաշուոյն եթէ գուցէ այն. և եթէ երևեսցի ինչ մասն ի շահ անձին նորա, հատուցի նմա հաւասարակշռական մասն:*

*ԻԶ. Ռոճիկ շահեկան վարձահաւաքին հաստատապէս որոշեալ է ի գումար վեց հարիւր դոսկանական լիրայից յամն:*

*Արարեալ ի Լիվոռնոյ յերկրորդ աւուր Դեկտեմբերի* 1845.

*(Ստորագրեալք)*

ԳՐԻԳՈՐ ԱՂԷՔՍԱՆԴՐԵԱՆ ԱԶԳԱՊԵՏ
ՅՈՎՍԷՓ ԵԷՆԻ-ՏԻՒՆԻԱ Ա. ԽՈՐՀՐԴԱԿԱՆ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱՖԹԱՆՃԵԱՆ Բ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ
ՀԱՅՐ ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ՍԱՐԸՊԵՏՐՈՍԵԱՆ ԳՈՐԾԱԿԱԼ,
ՀԱՅՐ ԹԱԴԷՈՍ ՉԱՆԱՔԵԱՆ ՀԻՒԱՆԴԱՊԵՏ
ԳԷՈՐԳ ՋԱՔԱՐԵԱՆ ԱՐԿՂԱՊԵՏ
ՊՕՆԱՄԻՉԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ

*Դուցէ հաճոյական ընծայեսցի յակն արկանողաց պատմութեանս տեսանել աստանօր զօրինակ Ատենագրութեան ժողովոյ Երեսփոխանացն Հայոց յորում սահմանեցաւ կանոնագրութիւնն ի վերոյ եդեալ. « Յաւուր յ'2 ամսեանն Դեկ_*
*» տեմբերի* 1845, *գումարեալ ի ժողով համայն Երևելի Տեարք*
*» Երեսփոխանք Արգոյ Եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ, որոց ա_*
*» նուանքն*

» Երևելի Տէր Գրիգոր Աղեքսանդրեան Ազգապետ
» Երևելի Տէր Յովսէփ Նէնի—ոփւնիա Ա. Խորհրդական
» Երևելի Տէր Յովհաննէս Գաֆթանճեան Բ Խորհրդական
» Գերյարգելի Տէր Աստուածատուր Սարըպետրոսեան
» Գերյարգելի Տէր Թադէոս Զանաքեան Հիւանդապետ
» Երևելի Տէր Գէորգ Զաքարեան Արկղապետ
» Տեսեալ զկրկին խորհրդական վճիռ Իւրեանց, որ յաւուր
» 17 Ապրիլի նորոգ անցելոյ, մին ի վերայ Տումարի նորոյ
հաշուակալութեան մատակարարութեան, երկրորդն ի վերայ
» պարտաւորութեանցն եղելոց ի վերայ վարձահաւաքին ե_
» կամտից Եկեղեցւոյն.

» Ի խորհրդածութիւն առեալ զի ընդունելն մեծապէս
» օգտակար է որ ինչ միանգամ՝ կարգեալ եղև ի նախայի_
» շատակեալ խորհրդական վճիռս, կերպաւորել ի մի միայն
» և ի կատարելագոյն Կանոնագրութիւն՝ հանդիսացուցանելով
» զայն միանջենաւորապէս պարտաւորական, որպէս զի խա_
» փանեսցի վերստին դարձն առ նախկին դիրս և եղանակս, ո_
» րոց խառնակ և շփոթ գոլովն, կարելի է զի ի դիպուածս ինչ
» պատճառ լիցին անպատեհութեանց, և պէտք են որ և իցէ
» խնամատար վարչութեան նախատեսել զայնս.

» Վճռեցին ի Խորհրդեան անդ զի յանձն արասցեն Երևելի
» Տեառն Աղեքսանդրեան Գրիգորի Ազգապետին վասն մատո_
» ցանելոյ յարգական աղերսանօք առ Նորին Թագ. և Իմպ.
» Բարձրութիւնն, որպէս զի Իւրով շնորհալի Հրամանագրաւն,
» թէ և իցեն նա հրաման, սահմանադրութիւն, օրէնք, կիր_
» առութիւն, և սովորութիւն ինչ հակառակք, արժանի համա_
» րեսցի վաւերացուցանել և հրամայել զլիովին պահպանու_
» թիւն այսր Կանոնագրութեան:

» Եւ հարցեալ մի առ մի զկարծիս Իւրաքանչիւրոցն, վաւե_
» րացեալ եղև որ ինչ ի վեր անդր. գտանելով ձայնս նպաս_
» տականս վեց, հակառակս՝ ամենևին, հայցելով առ Երևելի
» Տէր Ազգապետ Գրիգոր Աղեքսանդրեան առ ի փութա_

» ցուցանել զվաւերացուցիչ իշխանապետական հաստատու-
» թիւնն»:

## ՊԱՏՃԷՆ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

**Օրէնք չնայ իտալական Մխիթարեան տուեալ է Փլորենտիա մայրաքաղաքի, յաւուր 19 փետրուարի 1869. որ պահի է Դիւանատան Ընկերութեան Մերոյ է Լեւոնեայ քաղաքի։**

## ՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱՐԱՆ

***Բաժին Պաշտօնատարութեան Շնորհաց, Արդարութեան և Կրօնից։ — Վճիռ ինննևտասներորդ աւուր փետրուարի 1869.***

*Տեսեալ զծանօթագրութիւն Պաշտօնատարութեանն Շնորհաց, Արդարութեան և Կրօնից, զտուեալն ի* 14 *Փետրուարի* 1869, *Բաժին* 3. *Նշանաթիւ* 1865. *որով խնդրի տեղեկութիւն ի Պետական Խորհրդարանէն զԱղերսագրոյ իրիք, զոր ուղղեալ էին Գործակալք Եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ սակս վայելելոյ զշնորհս հրատարակմամբ իւիք, և սակս զերծուցանելոյ ի պարտաւորութենէ կեղեքիչ օրինաց զութեսնին միջնորդաւոր Պատարագս, որոց եօթն առեալ են զհաստատութիւն ի յիշատակելի Եկեղեցւոջ, և մնացեալ ութերորդն ի յԱթոռանիստ Եկեղեցւոջն Լիվոռնոյի: Տեսեալ զնախայիշատակեալ Աղերսագիրն ընդ համօրէն գրութիւնս վաւերականս յարակցեալս ի միասին: Տեսեալ զՏեղեկագիրս Ընդհանուր Կոնտոսութեան Փլորենտեայ, մին ի թուին* 22 *Հոկտեմբերի* 1867, *և միւսն ի* 16 *Նոյեմբերի* 1868:

*Լուեալ զյայտարարական գրութիւն Ցուցաբերչին: Խորհրդածեալ զի Եկեղեցին Հայոց ի Լիվոռնոյ յետ հրատարակութեան Հրովարտակի Լէոպոլտոսի Առաջնոյ որ յաւուր* 21 *Հոկտեմբերի* 1785 *բարձեալ համայն զօրութեամբ նորին Հրովար-*

*տակի ի հպատակութենէ որ առ Ժողովն Տարածման Հաւատոյ ի Հռոմ: Որով նկատելի է այն որպէս զեկեղեցի ժողովրդապետական թեմին այնորիկ, վասն զի ոչ միայն է ենթակայ իրաւասութեան Վիճակաւորին, այլ և յարքունուստ է կարգումն Ժողովրդապետին, որ և վարձատրեալ է ըստ մասին յԱրքունի Գանձատանէ, սակս այնորիկ ոչինչ իւիք կարէ համարեալ լինել Ընկերական Գոյութիւն օտարի, բայց միայն Ընկերական Գոյութիւն ընկն թագաւորութեան, ուստի որպէս զմիւս Գոյութիւնս թագաւորութեանն՝ ենթակայ է օրինացն ամենայն, որք կանն և հրատարակեալք են ի Տէրութենէ:*

*Որով հետևաբար վասն եօթն մշտնջենաւոր պատարագաց ի նմին եկեղեցւոջ հաստատելոց գործադրելի են կանք և որոշմունք օրինացն որ յ*17 *Օգոստոսի* 1867:

*Որոյ վասն համաձայնելով Չորրորդ Թուահամարի Առաջին Յօդուածոյ այն Օրինաց, երկոքին մշտնջենաւոր Պատարագքն Գրիգորեան Ալեքսանեայ և Սարգսի Արք.եպիսկոպոսին յորջորջեալքն, որք որպէս ի սահմանադրական- երկաքանչիւր գրութեանց բացայայտ երևին, սահմանեալք են՝ մին վասն ժողովրդապետի և միւսն վասն օգնականի նորին ի ժողովրդապետութեանն, զերծ գտանին ի կեղեքմանէ, քանզի է վասն բարերարութեան, մին ի պէտս ժողովրդապետի որ կարգեալ է զարդիւ առ ի հոգաբարձութիւն հոգւոց, իսկ միւսն ի պէտս հանապազորդական պարտաւորութեան Օգնականի Ժողովրդապետին ի գործս հոգաբարձութեանն:*

*Ուստի ես մնացեալ հինգն՝ որ ոչ այլ ինչ են եթէ ոչ մասնաւորականութիւնք և պարզ թոշակաւոր պաշտօնք առանձնական վարձուք մատակարարեալ և վայելեալ յումեմն՝ զպաշտօնն այնպիսի, կացուցանելով իւր զճշմարիտ Գոյութիւնս Ընկերական յինքն յինքենէ գոյացեալս, ենթայակացեալ են կեղեքման զօրութեամբ որոշմանն որ ի Թուահամար* 4 *և* 6, *Առաջին Յօդուածոյն յիշատակեալ օրինացն:*

*Սակայն զնոյն պարտ է ես համարել վասն Մատրանայե_*

տութեանն, որ է հիմնեալ ի Պետրոսեան Բարթողիմեայ յԱթոռանիստ եկեղեցւոջն ի Լիվոռնոյ:

Այնու զի բացայայտ խնամս օրհնացն այն չընդունի և ի բաց առնէ եթէ երբեք վարկանել կամեսցի թէ սահմանադրութիւնքն պատարագեաց եղեալք ի ձեռն Հայոց առ ի կիրառութիւն և ի յատուկ ծառայութիւն կրօնակցացն իւրեանց. և բացասէ եթէ յիշատակեալ վարձք նոցին յառաջ գայցեն ի փոխանցմանէ այլոց իրաւանց. և ընդունելի միայն այն որ որոշեալ և կարգեալ է յօրհնաց անտի:

Այսու խորհրդածութեամբ ազդ լինի զի մատրանապետութիւնքն սահմանեալք յեկեղեցւոջն Հայոց ի Լիվոռնոյ, ի բաց առեալ անտի զերկուսին յիշատակեալս Գրիգորեան Ալեքսանայ և Արքեպիսկոպոսին Սարգսի, և այն որ հիմնեալ է յաթոռանիստ եկեղեցւոջն ի նմին քաղաքի, ենթակայացեալ են օրհնացն որ յ17 Օգոստոսի 1867:

**Նախագահն Բաժնի**

(Ստորագրեալ)

**ՄԱՄԵԼԻ**

**Քարտուղար Բաժնի**

(Ստորագրեալ)

**ՄԱԾԾՕԼԱՆԻ**



## ՊԱՏՃԷՆ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Օրինակ Պարգեւագրի Լեւոնի Մեծի Կիւլիկեցւոց Արքայի շնորհեալ [illegible] Միրոնի [illegible] ի 14 ամսոյ Տրէ [illegible] Հայոց 1179։ [illegible] Լիվոռնոյ [illegible] Վիեննայ [illegible]։

*Կամօքն Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ*
*Լեւոն արքայ Հայոց ի Կիլիկիա*

*Լեւոն Իշխանապետ Հայաստանի և Տիրապետ Աղուանից և Վրաց, թագաւորական կարողութեամբ մերով յայտ առնեմք ամենայն Ազգաց և զանազան լեզուաց որք հպատակքն են իշխանապետական հրամանաց Մերոց, զի վասն քաջածանօթ է Մեզ քաջութիւն աննկուն Մարտկին Մերոյ Կիրակոսի որդւոյ Միրմանայ յԱղուանից ազգէն, նմանապէս ծանօթագոյն եղև Մեզ հաւատարմութիւն նորին իշխանութեանս Մերում։ Հայնցեալ ի պէսպէս յաղթանակս զոր ի սպասաւորութեանն տարաւ նա ընդդէմ թշնամեացն Մերոց, և սակս քաջութեանն և հաւատարմութեան նորին Կիրակոսի, ժողովեցաք զԱտեան Աւագորերոյ, ուրանօր առաջիկայ գտան վերակացուք Քաղաքաց, Իշխանք և Զօրապետք, և Գլխաւորք ի Զինուորականաց դասուէ, որոց յանդիման արարեալ հրատարակեցաք զնա Մերովս հաւանութեամբ Սպարապետ ի վերայ համօրէն Զինուորութեանց Մերոց, շնորհելով նմին զնշան Աստուածոյ Խաչին Յիսուսի Քրիստոսի, ձևացուցեալ կերպարանօք Քերովբէից ըստ սովորութեանս որպէս տուեալ լինի ի Մէնջ այնպիսի նշան առ քաջակորով Մարտիկս Հայկազնեայս,*

*եղար Մեք զխաչն զայն ի վերայ ձախակողմեան լանջացն Նորին:*

*Շնորհեմք հաւանութեամբ Մերով զի Նշանն այն մնասցէ ևս յետնոց Նորա, երբ ըստ Նմին օրինակի լինիցին Մեզ հաւատարիմ մարտիկք, դիմամարտելով ընդդէմ թշնամեաց Մերոց և լինելով պաշտպան և պահապան Սուրբ Հաւատոյն Քրիստոսի:*

*Շնորհեմք կատարելութեամբ Մերով զԱւագութիւն Գաւառնոյ յԱրտաշատ գաւառի, առ ի վերակացու լինել և տիրել անդ, և զօրութեամբ այսր արքունական հրամանիս Մերոյ՝ թոյլ տամք Նոցա ուր հպատակքն են Մերոյ Իշխանապետութեան, որպէս զի հնազանդ լիցին Կիրակոսի, և մի՛ որ ի նոցանէ յանդգնեսցի հակառակ հանդիսանալ Նմին: Առաջիկայ սովին հրամանագրով Մերով որոշեալ սահմանեմք զի գնասցէ Կիրակոս ի քաղաքն Հաննոյ? և վերակացու լիցի անդ թէ՛ ի վերայ ժողովրդեան, և թէ ի վերայ զօրացն առհասարակ:*

*Գրեալ եղև Հրամանագիրս ի քաղաքն Վաղարշապատ յամի Փրկչին Մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌԾՀԹ. և ի ԺԴ. ամսեանն Տրէի: — Կամօք Իշխանապետին մերոյ գրեցի զառաջիկայ հրամանագիրն և դրոշմեցի զկնիք արքունի:*

*(Ստորագրեալ)*
**ՂԱԶԱՐՈՍ**
**Աւագ Ատենադպիր Արքունեաց**

*Յիսուսի Քրիստոսի ծառայ Տէր Յակոբոս կաթողիկոս Էջմիածնի գրեցի զայս յատուկ ձեռամբ, և հաստատեմ զի առաջիկայ օրինակն վաւերական է, սակս որոյ դրոշմեցի ըզկնիք իմ (Տեղի կնքոյ):*

*Ես Շահֆրազ որդի Խօճա Նազարայ Քաղաքապետ Ջուղայու վկայեմ զի առաջիկայ վկայագրութիւն և ձեռագիրն է Կաթողիկոսին, նոյնպէս կնիքն է նորա, ճշմարտապէս վկայեմ: (Ի թիկանց կուռէ երևի այլ վկայութիւն նման վերնոյն այսպէս.)*

*Շնորհօքն Աստուծոյ կոչեցեալ Յովհաննէս Նախկակայս Ե_րևանու և փոխանորդ Կաթողիկոսին Էջմիածնի՝ ձեռամբ իմով օրինակեցի զգրուածս զայս, և վկայեմ զի եղև այն յամի Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի* 1629, *յաւուր* 7 *Մարտի, յէջմիածին: (Տեղի կնքոյ)*

*Անուանք ոմանք հայրենականք յիշատակեալք ի Պար_գևագրի Լեւոնի Արքային թէ և երկբայականք թուին մեզ, սակայն չունելով զայլ օրինակս առ ի բաղդատութիւն, հա_ւատարմաբար զայնս յառաջ բերեալ եմք, յոր և նման որպէս է յօրինակին խալական, որ հանեալ է ձեռամբ մերով ի մա_գաղաթեայ մատենէն, որ առ Միխանեան ընտանիս, որպէս եղև յիշատակ ի կարգի պատմութեանս:*

## ՊԱՏՃԷՆ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

**Օրինակ Պարգևագրի Լեոպոլտեան Կայսեր Աւստրիոյ, շնորհեալ համբաւաւորին Գերդաստանին Շեհրիմանեանց ի Վիէննա ի 23 ամսեան Յունիսի 1699. Գտեալ մեր զօրինակն յայս արդեն Թարգմանեալ ի հայ բարբառ ի Լէհաստան քաղաքի առ դասական Անճելոյ Քոնթարինի յաւուր բերեալ ատենօք շնոյնն որպէս և է.**

*Լէոպոլտոս Աստուածային Նախախնամական Գթութեամբն ընտրեալ* **Իմբերաթօր** *միշտ Օգոստոս Հռոմայեցւոց, Թագաւոր Ճերմանիոյ, Հունգարիոյ, Պոհեմիոյ, Տալմացիոյ, Կրօացիոյ, Սքլավոնիոյ, Ռամայի, Սերվիոյ, Կալիցիոյ, Լօտոմերիոյ, Գու_մարիոյ, և Պուլղարիոյ, և այլն: Արշիդուքս Աւստրիոյ, Դուքս Պուրկունտիոյ, Պրապանցիոյ, Գարինթիոյ, Սթիրիոյ, Գարնիօ_լիոյ. Մարքիոն Մորավիոյ, Դուքս Լուչեմպուրկի, և Վերին և Ներքին Սիլեզիոյ, Վիրթեմպերկի և Թեքայի. Իշխան Զվեվիոյ. Կոմս Հապսպուրկի, Դիրօլի, Ֆերեթի, Քիպուրկի, և Կօրիցիոյ. Լանցկրավիոս Ալզացիոյ. Մարքիոն Սրբազանին Հռոմէականի*

*Կայսերութեան ի վերայ Անատոլ Պուլկովից, և երկոցունց Նուագացից. Տէր Մարքից, Սքլավոնիայի, Բօրթի, Նայօնի, և Սալինացւոց, և այլն:*

*Հաւատարմաց մերոց Մեզ Սիրելեաց Նազարին և Ծաֆրիմանին եղբարց Մուրատեան, և Ստեփանին Գասպարեան Հօրեղբօրորդւոյ. նաև Մարգարին, Զաքարին և Մկրտչին Հօրեղբարց ձերոց, ամենեցուն որք են ի Ծաֆրինեան Ազգէն, Կոմսաց Տուխալասղու, քաղաքացւոց Ջուղայու, Ասպահանայ մայրաքաղաքին Թագաւորութեանն Պարսից, և ողջոյն և անպակաս անուան կայսերականի և արքայականի շնորհի Մերոյ ի վերայ ձեր:*

*Թէպէտ աշխարհական Թագաւորաց և Իշխանաց գերագունի մեծապատուութեան վեհութիւնն՝ զօրութեամբ, և կարողութեամբ բարձրաբերձ Գահին իւրեանց, բաց յայլոց պայծառութեանց, ամենաճոխ են և ամենապայծառ տոհմիւք, այլ և տոհմացեղութեամբ զարդարեալ իցէ, և վերափայլեալ սովոր իցէ, սակայն այսպիսի պայծառ զարմս ըստ կամաց և հաճութեան Ամենակարողին Աստուծոյ փոխելով յայսմ աշխարհէ, կամ այլով ևս երբեմն յեղանակաւ, այսինքն պատահելով չարաբաղդութեան, պակասին, և նուազին: Վասն այսորիկ նոյն տիրողաց վեհութիւնն, որքան առաւել մարդասիրութեամբ բաշխէ զշնորհս և զպարգևս իւր այսպիսի պայծառատոհմից և հաւատարիմ և արժանաւոր անձանց, և զնոսա վասն զարմին և զօրութեանց, այլ և վասն փառաց և արդեանց իւրեանց վերացուցանէ ի բարձրագոյն պատիւս և մեծութեան աստիճանս, և ի պատուաւորութիւնս. նոյնքան առաւել փառք, և պայծառութիւն բարձրաբերձ Գահուն իւրեանց առաւելանայ: Եւ այսու ոչ միայն ստորագրելոց, այլ և այլոց օտարաց հաւատարիմ սիրտքն տեսանելով զառատապարգևութիւն Իշխանացս այսոցիկ խթանին, և տոկալին և շարժին առ ի կատարել հաւատարմական զամենայն հնազանդութիւնս, և ներգործել զքաջափառ արարմունս:*

Որոյ աղագաւ և Մեք, ովք նախախնամութեամբ և տրամադրութեամբ Ծայրագունի, և Ամենակարողի Միակերպին Աստուծոյ՝ Կայսերական և Արքայական մեծութեամբ եմք ճոխացեալք՝ ջանալով զհաստատութիւն հնազանդելոց Մերոց, այլ և զօտար Ազգաց սիրտս առ Գահն վեհութեան Մերոյ ողոքել, և այսու ի մէջ թագաւորութեան և տէրութեան Մերոյ աճեցուցանել զՊայծառատոհմս, և զնոցին պայծառութիւնն, զօրուսն և զողջութիւնն յառաջացուցանել, և առատապաշտութեամբ Մերով հաստատեալ՝ ըստ տիեզերս ամենայն սփռել, և տարածանել զվեհանձնութիւն Անուան Մերոյ, յորժամ մարդասիրապէս ծանեաք թէ Դուք վերոյ անուանեալ Կոմսք Տուխարալու և Զուղայու՝ ոչ միայն ցեղեալ էք ի հնագոյն Ծանրիմանեան Տոհմէն, այլ և Նախնիքն, և Պապունքն Ձեր, թէ և Դուք ամենամեծ փոյթութեամբ արարեալ էք զպայծառագոյն զանազանս գործս, և զգերագոյն զօրութիւնս, մանաւանդ ի տարածանել զԿաթողիկէ հաւատն ի մէջի յայտնագոյն վտանգից կենաց, սպառելով զյոլով ինչս, և զքարիս, և զարիւն ևս հեղլով, ամենևին արժանի համարեցաք, զի Դուք ոչ միայն զվերոյիշեալ Նախնեաց Ձերոց պայծառագործութեանց հանդերձ անմահական և փառաւոր յիշատակաւ Անուան Ձերոյ առջիք ի ՄէՆջ զմիշտ մնացական վկայութիւն, այլ և ի համարժանիս պատուոց և մեծութեանց աստիճանս, իբր Դուք ինքնին յանձնեցեալք Ձեր յատուկ զօրութեանց և արդեանց, ի ձեռն Մեր բարձրաջիք, որով ապագայից Ձերոց և այլոց ևս հաստատուն հնազանդելոց Մերոց մեծագոյն օրինակ, և ի ՄէՆջ խթան տացի փառն արժանապէս առանալոյ, և ընդգրկելոյ զպսակի ջանս արժանութեան: Վասն որոյ Մերով իսկ կամաւ, և ի Մերմէ ստոյգ գիտութենէ, և կատարեալախոհ ոգւով, և մատչելով ողջամիտ խորհրդոյ, և ի լրութենէ Կայսերականի և Արքայականի Կարողութեանս Մերոյ, զՁեզ Նազարդ, և զԾանրիմանդ, եղբարս Մուրատեան, և զՍտեփանդ Գասպարեան Ձեր հօրեղբօր որդի. այլ և զՄարգարն, զՁա_

քարն, և Միքայէլն Հօրեղբայր Ձեր. դարձեալ զորդիս, զժառանգս, զազգս, և զեղրս ի Ձէնջ օրհնաւոր հարազատ դուստր և որդիս, զծնեալս և որք ի Ձէնջ մինչև յաւիտեան ծնանելոց են, վերոյասացեալ թագաւորութեան Մերոյ Հունկարիոյ, և նմին իսկ առկայեալ մասանցն զճշմարիտ, և զաներկբայ Կոմս, որք ճշմարտէն Կրաֆն կոչին, բացայայտեմք, և զՁեզ զամենեսեան, և զիւրաքանչիւրսդ իբրև ի նախնեաց զարմէ Կոմսից ծնեալ՝ Կոմս անուանեմք. և պատուադրութեամբ և պատուով, նաև մեծութեամբ Կոմսից ընդ անուանակոչութեամբս այսու ամենապայծառից, երևելեաց, և մեծաշքից, ճշմարտէն Տօխկեպուրէն նշանաւորեմք. և զՁեզ ընդհանուրս, և զիւրաքանչիւրս, և զՁեր ժառանգս, և զաղագայութիւնս ի թիւ և ի ժողով այլոց ճշմարիտ և աներկբայ Կոմսից ասացեալ Թագաւորութեանս Մերոյ Հունկարիոյ, և նմին իսկ առկայեալ մասանցն, եդաք և առգրեցաք, և շնորհաց, և ազատութեանց, Գերազանցութեանց, և Մեծութեանց որք պատշաճին Կոմսից, ընդունակս և վիճակակիցս և մասնակիցս արարաք:

Այլ և վճռեցաք և այսու Մերով Պատուիրաւ հաստատեցաք, զի Դուք Նազար և Ծաճրիկեան Մուրատեան, Սանփան Գասպարեան և Մարգար, Զաքար և Միքայէլ կարող լինիք և պարտ լիցի Ձեզ կրել, և ունել ընդ մշտնջենաւոր ապագայ ժամանակս զԱնուն, և զՄեծութիւն ճշմարիտ և աներկբայ Կոմսից, նաև թէ ի գիրս, և թէ յանուանակոչութիւնս, ի յերս, և ի գործածութիւնս հոգևորս և ժամանակաւորս, յեկեղեցականս և յաշխարհականս ի Մէնջ և ի Մերոց Յաջորդաց, այլ և բնաւից և յիւրաքանչիւր այլոց, որոյ և լիցեն կացութեան, աստիճանի, պատուոյ մեծութեան և գերակայութեան, իբրև ճշմարիտ Կոմսք համարիլ, ունել, ասել, անուանել և պատուաւորիլ կարողասջիք: Որպէս և Մեք զՁեզ իբրև զայսպիսի համարիմք, ունիմք, անուանեմք, բացայայտեմք և կոչեմք, կամելով և նմին իսկ Կայսերական և Արքայական

իշխանութեամբ Մերով յայտնապէս վճռելով, զի ընդ ամենայն անդին և երկիրս ի մէջ վերոյիշեալ Թագաւորութեանս Մերոյ Հունկարիոյ և նմին իսկ առկախեալ մնասցեն թէ ի դատաստանս, և թէ արտաքոյ դատաստանաց կարող լինիցին, և զօրեւջիք վարել, և վայելել, և ստանալ զամենայն, և զմիլոտմիոջէ բրիվիլէճս, իմուլիա, ազատութիւնս, իրաւունս, սովորութիւնս, պատիւս, մեծութիւնս, գերազանցութիւնս, ապահարկութիւնս, շնորհս և զխնամածութիւնս, զորս այլք այսպիսի Կոմսք սովոր են վարել, վայելել, և ստանալ, որով և լիցէ կերպիւ, իրաւամբք, կամ ձևն սովորութեամբ, և ոչինչ համարեսցին ամենայն հակառակութիւնք և արգելմունք:

Իսկ ուր և գտանիցի մշտնջենաւոր յիշատակս այս, որով զՁեզ բարձրացուցաք առ այս մեծութիւն, և նոյն ինքն իսկ լիագոյն բարեբարութեամբ պերճացեալ տեսանիցի ի մարդկանէ, յայտ լիցի զի վերոյ իշխանութեամբ Մերով գտանջին նշանակս կնքոց Ձերոց, որովք մինչև ցայժմ վարեցայք, ոչ միայն ընկալաք և հաստատեցաք, այլ և շնորհեմք և առատաբաշխեմք զի կարասջիք տանիլ և կրել զնոսա ըստ այսմ հետևեալ կերպիս. այսինքն զզինուորական ասպարն չորեկուսի կանգնեցուցեալ ի վերուստ ի վայր, և յաջմէ յահեակ ընդ մէջ բաժանեալ, որոյ վերին աջ կապոյտ մասն ունի զչորս ակնեղէն աստեղս, եղեալս ի չորեսին կողմունս նորա. և ներքին ձախ նոյնպէս կապոյտ մասն ունի ի վերուստ կուռէ զսկոտ մի ըղնկան ծիրանի գունով ներկեալ, և ի մէջն զերկու ձեռս, որք կարմրագոյն թեզանիս զգեցեալք զիրեարս ընդգրկեն: Իսկ ներքին աջ, և վերին ձախ սպիտակ մասունքն ունին զմի մի երկագլուխ թագիւ պսակեալ արծիւս բնական երանգով նկարեալս, որք ի կանգուն կալով, զթևս և զոտս իւրեանց տարածեալս ունին: Եւ նորին իսկ Ասպարի վերին ծայրն ունի ըզթագաւորական թագ մի մեծագին ակամբք պճնեալ, և վայրի ծայրն զերկու կանաչ ճիւղս, որք ի վերկոյս ծգտեալք շրջապատեն զնոյն Ասպարն: Զոր օրինակ այս ամենայն իւրով յա_

տուկ յատուկ նշանակութեանցն ի սկիզբն այսորիկ Կոնդակիս Մերոյ ներկայչին հանճարեղ ձեռամբն և արուեստիւն, յա_տուկ և բնական երանգովն խորով պայծառապէս նկարեալ, և առաջի աչաց տեսողաց յայտնապէս երևեալ տեսանի:

Զասն որոյ կարող լինիջիք Դուք, Նազար և Շահրիման Մու_րատեան, Ստեփան Գասպարեան, և Մարգար, Զաքար և Միքայէլ տանիլ և կրել մինչև յաւիտեան, վարել և վայելել ըզ_վերոյ գրեալ Աստարն, կամ զկնիքն ընդ ամենայն տեղիս ի պատերազմունս, ի կռիւս, ի մարտս, ի նիզակախաղս, ի թող_նէախաղս, յերկամարտս և ի մենամարտս, և յայլ ամենայն և յիւրաքանչիւր, և յորսախաղս և իցէ կրթութիւնս զինուորա_կանս և քաղաքականս, այլ և ի մեծս, ի վարագոյրս, ի վար_տայս, ի դրանդազարդս, ի մատանիս, յաւանս, ի վահանս, ի տունս և ի գերեզմանս, և համարձակապէս յոր և իցէ կիս և ի գործս:

Դարձեալ կարող և արժանի լիջիք ստանալ և ընդունելոյ զամենայն շնորհս և զազատութիւնս, զապահովութիւնս, զիրաւունս, զփէվտս, զըրիվիլէճս, և զազատ լինել յընծայից և ի ծանրութեանց իւրաքանչիւրոց հարկաց կրականաց, անձնաւորականաց և խառնից, նաև վայելել զիւրաքանչիւր զիրաւունս. զորս այլք Կոմսածնեալք ընդունակք և մասնա_կիցք փէվտաց, վերոյիշեալ Թագաւորութեանն Մերոյ Հունկա_րիոյ և նմին կից առկախեալ մասանց ճշմարիտ Կոմք, և Տե_ղացիք վարեն, վայելեն, ունին որպէս և իցէ սովորութեամբ, և կամ ըստ իրաւանց. ոչ որ երբեք արգելցէ և ոչինչ համա_րեսցին ամենայն սովորութիւնք, սահմանադրութիւնք և բրի_վիլէճք, այսինքն Նամակ թէ՛ ներկայք և թէ ապառնիք Թա_գաւորութեանց, Դատաց և Տէրութեանց Մերոց, որք կեր_պիւ իւիք ընդդէմ այսմիկ բարեհաճոյ ակնածութեան, և շնոր_հելութեան Մերում ընդդիմութիւն առնել կարասցեն, զոր ա_մենայն Մերով Կայսերական և Արքայական իշխանութեամբս ի ձեռն Գրոյս այսորիկ խափանեմք, և խափանեալ զոլ կամիմք:

Եւս առաւել ընդունիմք, բացայայտեմք, անուանեմք, նշանաւորեմք, հաստատեմք, ընտրեմք, թուեմք, և առգրեմք, և զամփոփական Կոմից անուանագրութիւնն Ամենապայծառից, Երևելեաց, և Մեծաշքից, Գերմանիերէն Տօլկեսուզն սպագեմք և նոխացուցանեմք: Եւ վասն վկայութեան, յիշատակի, և յաւիտենական հաստատութեան այսորիկ լրի՝ զայս Մեր Նամոս առորագրութեամբ ձեռին Մերոյ, և Մեր ծածուկ կախեալ կնքովն ամրացեալ և հաստատեալ հրապարակել հրամայեցաք:

Տուաւ ձեռամբ Մեր Հաւատարիմ, և Մեզ Մտերիմ Սիրելոյ Գերապայծառ Հօրն ի Քրիստոս Տեառն Լէոպոլդի Հռովմէական Սրբազան Եկեղեցւոյն անուամբ, Սրբոյն Հերոնիմոսի Իլլիրիկացւոց, Երէց Կարտինալ Գօլօնիչին, որ է Արքեպիսկոպոս Ստրիկոնիոյ Մետրապօլիտ Եկեղեցւոյն, և Տեղւոյն, և Կոմսութեան Նորին անուան վիճակին, և մշտնջենաւոր Կոմս Նախարար Հունկարիոյ, ծնեալ Լեհաց, Ծայրագոյն և Խորհրդական Քանցլեար, այլ և սրտագէտ Խորհրդակից մեր:

Յամի Տեառն ՌՈՂԹ (1699) յամսեանն Յունիսի ԻԳ, – ի քաղաքիս Մերում Վիեննայի Աւստրիոյ: Իսկ յամի Թագաւորութեանց Մերոց՝ Հռովմէականին ԽԱ. Հունկարիոյ և այլ Թագաւորութեանց՝ ԽԴ, և Պոհեմիոյ ԽԳ:

Յորում ժամանակի զեկեղեցիս Աստուծոյ երջանկութեամբ հովուէին Գերյարգելիք և Պատուելիք Հայրքն ի Քրիստոս վերոյ Տէր Լէոպոլտն Հռովմէական Սրբազան Եկեղեցւոյն անուամբ Սրբոյն Հերոնիմոսի Իլլիրիկացւոց Երէց Կարտինալ Գօլօնիչն Արքեպիսկոպոսն Ստրիկոնիոյ Մետրապօլիտ Եկեղեցւոյն, և Ֆրանց Բալիօ Շէխն Գօլօցիոյ, և Պաչիոյ Եկեղեցեացն Արքեպիսկոպոս. Ստեփան Դէլէքէշն ընտրեալ եպիսկոպոս Աքլիոյ, և միւս Ստեփանն Սելեփթենիք Ծակրապիոյ. Լատիսլաւն Մաթիաշուչքի Նիդրիոյ. Պայծառ Քրիսթիանն Ակլուշղն Դուքս Սաքսոնիոյ Եավրիոյ: Ֆրանց Ակլուշղինն Պեննթոլիք Վարատինի, և վերոյ Ֆրանց Բալիօ Շէխն Վեպակացու Վեսպրիմիոյ: Մի_

քայէլն Տվօրնիգօվիք Վաչիոյ։ Ստեփանն Տօլնի ընտրեալ Քոսնասիոյ։ Մաթէոսն Ռատօնայի ընտրեալ Քվինգվենքլեզիոյ։ Ֆրանչիսկոսն Եամնի Սիրմիոյ։ Կոստեփրիտոն Քարայոսն ընտրեալ Սամանտրիոյ։ Անդրէասն Մաթուշէք ընտրեալ Սքօփիոյ։ Բավլօ Պալասայ ընտրեալ Րօզօնիոյ։ Ֆերտինանոն Բումել Դինինոյ։ Ֆրամթ Նիքօլայն Բլումկէօ Պօսնոյ։ Յովհաննէսն Պապիք ընտրեալ Սքարտօնիոյ, և Մարթինն Պրայքօվիք Սեկնիոյ, և Մօտրուսիոյ, եկեղեցեացն եպիսկոպոսունք։

Դարձեալ յորժամ զԿոմսութիւնս, և զպատիւ Հունկարիոյ Թագաւորութեանս վայելէին Աւեննապայծառք, եւեւնք, և Մեծաշուքք Բավլօ եաթերաս Կալանթեան, որ է Սրբազան Համէական Կայսրութեանն Իշխան, և Զինուոր Ալքիվեղերին, և Բալաթին վերոյ Թագաւորութեանս Մերոյ Հունկարիոյ Մշտնջենաւոր Կոմսն երկրին Շէբուզիոյ, Ստեփան Զագն, և Դատաւորն Մերոյ Թագաւորական Դիւանին։ Մշտնջենաւոր Կոմսն Ադամ Պաթեան ի Նեմէթնույվար վերոյգրեալ Թագաւորութեանց Մերոց Տալմացիոյ, Գրօացիոյ, և Սքլավօնիոյ Պանն։ Կոմսն ճօրճի Էրտոտի ի Մօնօօրերէք Թավերնիքրսաց։ Կոմսն Ֆրանչիսկոս Քերի Հերն ի Բօյիքեր Ակազօնաց։ Կոմսն Քրիսթօֆոր Անտոն Էրտոտի ի յաւացեալ Մօնօքերէք Խորակարերաց — Կոմսն Մարկոն Ժօլօր ի Ժօլօր Սէնդմինայ Դռնապանաց — Կոմսն Ֆրանչիսկոս Պաթեան Տակառապետաց — Կոմսն Նիքօլայ Բալֆի ի վերոյ Էրտոտի Սեննեկապետաց, Կոմսն Միքայէլ Նաթերթազի ի Կալանթայ Դիւանին Արքունեաց Մերոց ի մէջ Հունկարիոյ Ուսուցիչք և Ղարպետք։ Եւ աաացեալ Կոմսն Նիքօլայ Բալֆի Էրտօտեան Կոմս Բողոնիոյ։ Եւ այլք յոյժ յոլովք վերոյ Թագաւորութեանս Մերոյ Հունկարիոյ Կոմսք և Մեծամեծք։ (Ստորագրեալ)

ԼԷՕՓՈԼՏՈՍ ԿԱՅՍՐ

(Ստորագրեալ) ԼԷՕՓՈԼՏՈՍ ԿԱՐՏԻՆԱԼ ԳՕԼԼՕՆԻՋ

Արքեպիսկոպոս Սդրիկոնիոյ, և այլն.

(Ստորագրեալ) ՖՐԱՆՉԻՍԿՈՍ ՍՕՄԱԼԵԱՆ

*Օրինակք այլ վաւերականաց որք պակասին ի կարգի Պատճենից ի Յաւելուածի աստ, յառաջ բերեալք են ի կարգի պատմութեանն, որպիսիք են Ութեքին հիմնական պայմանք եղեալք ի Հռովմայ վասն շինութեան Եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ. Վճիռ դատաստանական Արքեպիսկոպոսին Պիզայու. Սահմանադրութիւն վասն յարաբերութեան* **Մխիթարեան** *Հայոց ընդ լատին Աւագերիցուն ի Լիվոռնոյ: Կոնդակ Բենեդիկտոսի ԺԴ Քահանայապետի, և այլն:*



# ՅԱՒԵԼՈՒԱԾ ԵՐԿՐՈՐԴ



## ՕՐԻՆԱԿՔ ԹՂԹՈՑ

Թուղթ Ա. Օրինակ Յանձնարարականի Հոգևոր Տեառն Ա. Պետր. Թ.
" Բ. " Հրովարտակի Առաջնորդութեան
" Գ. " Կոնդակի Թեմական Եպիսկոպոսին
" Դ. " Շնորհագրոյ Քաղաքապետին Լիվոռնոյի
" Ե. " Գրոյ Հոգևոր Տեառն Ստեփ. Պետր. Ժ.
" Զ. " Գրութեան Պետրոս Ասպետի Աղամեան



# ՅԱՒԵԼՈՒԱԾ ԵՐԿՐՈՐԴ

## ԹՈՒՂԹ ԱՌԱՋԻՆ

**Օրինակ Յանձնարարականի Ամենապատիւ Անտոնի Պետրոսի Իններորդի Կաթողիկոսի Կիլիկիոյ շնորհելոյ մեզ յերթալն մեր յԱռաքելութեան և յԱռաջնորդութեան Հայոց ի Լէհաստանոյ քաղաք. յեղեալ ի Հայ ի լատինական բնագրէն։**

*Մեք Անտոն Պետրոս Թ,*

*Պատրիարք Հայոց Կիլիկիոյ, Հաստատեալ յԱռաքելական Գահէն:*

*Ամենեցուն որոց յակն արկանեն յայս առաջիկայ թուղթ Մեր ծանուցանեմք և վկայեմք զի Յարգոյապատիւ Տէր Մեսրոպ Ուղուրլեան Քահանայ Հայկական կաթողիկեայ ծիսիւ ի կղերաց Պատրիարգութեանս աստի Կիլիկիոյ որ երթայ ի Լիվոռնոյ, չէ ամենևին անկեալ ընդ Եկեղեցական դատակնքաւ, և է ազատ յորևիցէ Կանոնական արգելմանց՝ որչափ ծանօթ լիցէ Մեզ. Նա մանաւանդ ճանաչեմք զնա զարդարեալ ընտիր առաքինութեամբ, ուղղափառ վարդապետութեամբ, և բարւոք գնացիւք. Սակս այնորիկ փութով մեծաւ յանձն առնեմք զնա Ալազագոյն Եկեղեցականաց, առ որս հարկաւորեսցի նա խնդրն ռևրկայ լինել, որպէս զի բարեհաճեսցին ընդունել զնա ամենայն մարդասիրութեամբ և բարեգութ խնամօք եթէ երբեք պիտոյասցին նմա:*

*Մինչդեռ Մեք հայցեմք ի Գերագոյն և յԱմենաբարւոյն Աստուծոյ զի հատուսցէ վարձս խրախանչիւրոց ըստ արդեանցն և*

արժանեացն խրհանց: Ի վկայութիւն վերագոյն ասացելոցս և այլն:

Տուեալ ի Կոստանդնուպոլիս ի Պատրիարքարանէ Մերմէ:
Յաւուր 9երորդ Յունուարի
Յամի Տեառն 1879.

(Ստորագրեալ)
ԱՆՏՈՆ ՊԵՏՐՈՍ Թ. ՀԱՍՈՒՆ
Պատրիարք որպէս ի վեր
(Տեղի Կնքոյ)

(Ստորագրեալ)
ԲԱՌՆԱԲԱՍ ԱՔՇԵՀԻՐԼԵԱՆ
Ատենադպիր Պատրիարքարանին

Ներկայ Մասն Յաւելուածոյս, յորում վեցեքին թղթոց օրինակք պարունակեալ կան վերաբերեալքն Առաջնորդութեանն մերում որ երբեմն ի Լվովոնոյ Քաղաքի, ոչ այլ ինչ վախճանաւ յառաջ բերեալք են, եթէ ոչ վասն վերծանութեան այնոցիկ ոյք հետաքննինք իցեն առ ի ճանաչել զայնս, իբր հատակոտորս ի վաւերականացն, և ոչ սակս այլ երկրորդական ինչ վախճանաց:



## ԹՈՒՂԹ ԵՐԿՐՈՐԴ

**Օրինակ Հրովարտակի Ումբերտոյ Առաջնոյ Իտալացւոց Արքային շնորհելոյ մեզ վասն Առաջնորդութեան ի վերայ Եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ. որ պահեալ կայ յարձանագրական Դիւանի Եպիսկոպոսարանի որ է Լիվոռնոյ քաղաքի։**

*Ումբերթօ Ա.*
*Շնորհիւն Աստուծոյ և կամօք Ազգին*
*Արքայ Իտալիոյ*

*Ըստ առաջարկութեան Պաշտօնեայ Կնքապահին Մերոյ Քարտուղարի Պետութեան որ վասն գործոց* **Շնորհաց, Արդարութեան և Կրօնից.**

*Վճռեալ եմք և վճռեմք*

*Զօրութեամբ Արքունի Պաշտպանական իրաւանց Մերոց, անուանեալ կարգեմք զՏէր Մեսրոպ քահանայ Ուղուրլեան ի վերայ պաշտօնի մնացեալ ժողովրդապետութեան Հայոց, որ յորջորջեալն է յանուն Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին ի Լիվոռնոյ:*

*Վաւերական օրինակ Առաջիկայ Հրովարտակիս շնորհեալ լիցի սմին, որպէս ի պէտս և ի շահ սորա առ ի կիրարկութիւն իրաւանց նորին:*

*Վերոյիշեալ Պաշտօնեայ Կնքապահ մեր կարգեալ է ի գործադրութիւն այսր Հրովարտակի Մերոյ:*

*Տուեալ ի Հռովմ 18 Մայիսի* 1881.

*(Ստորագրեալ)* ՈՒՄԲԵՐԹՈՍ

*(Ստորագրեալ)* ՎԻԼԼԱ

***Վասն վաւերականութեան օրինակին***
***Առաջին Վարչական Բարձրագոյն Բաժնի***

*(Ստորագրեալ)* ՄԱՐՔԵԹԹԻ

**(Տ. Կ.)**

Առաջնորդք Եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ կանխագոյնք քան զժամանակս մեր ամենեքին առհասարակ սկսեալ յամէն 1785 ընկալեալ զկոչումն իւրեանց և զհաստատութիւնն յԱւագ Դըքսէն Դոսկանայու. իսկ մեք իբր առաջին անգամ ընկալաք զայն ի Նոր Իշխանապետէն Դոսկանայու, այս է յԱրքայէն ընդհանուր Իտալիոյ:

Առաջիկայ Արքունի Հրովարտակն ուղղեալ եղև մեզ ի Խնամակալէ Արքայի որ է ի Լիվոռնոյ, քաղաքի այսու հետևեալ գրութեամբ.

Առ Յարգոյամեծար Տէր Մեսրոպ Ուղուրլեան
Ժողովրդապետ Եկեղեցւոյն Հայոց ի Լիվոռնոյ.

Առ ի վայելումն իւրեանց յանձն առնեմ ի ձեռս Տէրութեան Ձերոյ զներփակեալ վաւերական օրինակն Արքունի Հրովարտակին զտուեալն յ8 Ներկայիս, ի ձեռն որոյ անուանեալ եղէք ի ժողովրդապետութիւն Հայոց Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին կոչեցելոյ ի Լիվոռնոյ:

Ի Լիվոռնոյ յ13. Մայիսի 1881.

Խնամակալն Արքայի
(Ստորագրեալ)
ՃԵՆԴԻՆԻ



## ԹՈՒՂԹ ԵՐՐՈՐԴ

**Օրհնեալ կոնդակն շնորհելոյ ի Մեծափառ Բեմինիոս Բաչինէ Եպիսկոպոսէն Լէհաստանի վասն Աստուածաբանեան Տէր Մեսրոպ Հայազգի ժողովրդեան որ է Լէհաստանի քաղաքի անդ։**

*Մեք Բեմինիոս Բաչինի շնորհիւ Աստուծոյ և Առաքելական Սուրբ Աթոռոյն Եպիսկոպոս Լվովոյ:*

*Ցարգոյամեծար Մեսրոպայ Քահանայի Ուլուբլեան ողջոյն և Տեառնական օրհնութիւն:*

*Փափաքելով Մեր խնամ տանել հոգևորական հոգաբարձու_թեան այնմ մասն հօտին մերոյ որ բաղկացեալն է ի Հայազ_գեաց Քաղաքիս այսորիկ, որ կերպարանեալ կազմէ զժողո_վուրդ ժողովրդապետական Եկեղեցւոյն Հայոց որ յորջորջեալն է Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին ի սմին Քաղաքի աստ, մնացեալ պարապ մահուամբ Ցարգոյամեծար Տեառն Հօր Աստուածա_տրոյ Սարըլպետյանեան յաւուր 25 Ապրիլի 1878:*

*Առ որ Դուք անուանեալ եղէք ի նոր Առաջնորդէ Արքունի հրովարտակաւն յաւուր 8 Մայիսի 1881: Եւ զի յայտնի լեալ է Մեզ յարմարութիւն ձեր, առողջամիտ վարդապետութիւն և բաւականութիւնն առ ի վարումն վերոյիշեալ պաշտօնին: Ցե_նեալ ի վերայ բանիցս այսոցիկ իշխանութեամբ Մերով թէ՛ սովորականաւն և թէ անսովորականաւն, և այլով որով և ի_ցէ լաւագոյն եղանակաւ, հաստատեմք զձեզ ի Ժողովրդապետ վերոյիշեալ Եկեղեցւոյն Հայոց ի Քաղաքի աստ, տալով և շնորհելով ձեզ զազատականն կիրառութիւն ժողովրդապետա_կան պաշտամանց ձերոց յամենայնի, որք յարաբերեալ գտա_նին առ պաշտօնն որ ի վեր անդր: Նաև ամենայն հարկաւոր, և պատեհական կարողութեամբ, միանգամայն ամենայն պա_տուով, առաւելութեամբ, պարտաւորութեամբ և ծանրու_թեամբ ոյք առ նոյն պաշտօն յարակցեալքն են:*

*Ի վկայութիւն որոյ հրամայեցաք զի աստաչիկս կոնդակս Մեր հաստատութեամբ ձեռաց Մերոց և ստորագրութեամբ Ատենադպրի Մերոյ զօրութիւն զգեցցի, Եպիսկոպոսական կնքով Մերով զմասեալ:*

*Ի Լիվոռնոյ յԱպարանէս Մերմէ յեպիսկոպոսական կղերանոցէն:*

*Ի սերկեամս աւուր եօթնևտասան Յունիսի Հազար ութ հարիւր ութսուն և մի (1881), ի Թագաւորութեան Մեծափառութեան Նորին Ումբերթոսի Առաջնոյ Արքայի:*

(*Ստորագրեալ*)

+ ***Բէնիգնոս Եպիսկոպոս Լիվոռնոյի.***

(*Տեղի կնքոյ*) (*Ստորագրեալ*)

**ՓԱՈՏԱՐԱՆ ՕԼԻՆԹՈՍ ՊՈՔԱՋԶԻ**

***Ատենադպիր Եպիսկոպոսական***

—

**Առաջիկայ Եպիսկոպոսական կոնդակն մատուցեալ առաջի ընդհանուր խնամակալ Արքային որ յԱտեան Բողոքոյ է Լուքքա քաղաքի, շնորհեցաւ պաշտօնական հրաման Կառավարութեան, որպէս ասի ռամկօրէն *exequatur*, կատարեալ. որ և գրեալ կայ յարտաքս Եպիսկոպոսական կոնդակին այսպէս.**

*Ընդհանուր Խնամակալ Արքային որ յԱտեան Բողոքոյ ի Լուքքա.*

*Տեսեալ զվերոյգրեալ Կոնդակն Եպիսկոպոսական Վիճակին Լիվոռնոյի:*

*Զօրութեամբ Արքունի յանձնարարութեան, ի բաց առեալ զօրէնս, զաւորութիւնս, և զառանձնաշնորհութիւնս Պետութեանն, նաև զիրաւունս երրորդի, շնորհէ զհաճութիւնն Արքունական:*

*Ի 26 Յունիսի 1881*

(*Ստորագրեալ*)

**(Տ. Կ.)**

## ԹՈՒՂԹ ՉՈՐՐՈՐԴ

Օրինակ Շնորհակալեաց Լօվէրա անուան Ազնիւ Քաղաքապետին Լիվոռնոյի ուղղելոյ Ձեզ ի կողմանէ Նորին Մեծափառութեան Ումբերտոսի Առաջնոյ Արքային Իտալիոյ. (*վասն զի յայց նամակն Արքային ի Լիվոռնոյ քաղաք ընծայեալ եղև նմին ուղերձ մի ի մէնջ ի հայրենի բարբառ հանդերձ իտալական թարգմանութեամբն*):

***Քաղաքապետարան***
***Լիվոռնոյի***

*Նորին Մեծափառութիւնն Արքայն՝ առ որ մատուցեալ եղև Ուղերձն ի կողմանէ Երևելի Տէրութեան Ձերոյ ընծայեալն Նմա ի նշան յարգանաց, գովեաց ըստ արժանւոյն զինքնաշարժ վկայութիւնն տուեալ Նմին ի գովեալ Երևելի Տէրութենէ Ձերմէ, և հաճոյ եղև առաջի նորա ազնուական մտածութիւն Ձեր։*

*Այսու առթիւ ընկալեալ զպաշտօն ի կողմանէ Նորին Վսեմութեան պաշտօնէի Արքունի Պալատանն, հաճոյական լինի ինձ համարիմ թարգման լինել Արքայական շնորհակալութեանց։*

*Եւ յայտ առնեմ զիմս ականաւոր յարգութիւն*

*Տուեալ ի Լիվոռնոյ ի 26 Մարտի 1883*
*(Ստորագրեալ)*
ՔԱՂԱՔԱՊԵՏՆ ԼՕՎԵՐԱ

***Երևելի Տէր***
**ՄԵՍՐՈՊ ՈՒՂՈՒՐԼԵԱՆ**
***Ժողովրդապետ Հայկական Եկեղեցւոյն ի Լիվոռնոյ.***

## ԹՈՒՂԹ ՀԻՆԳԵՐՈՐԴ

Օրինակ Թղթոյ Ամենապատւոյ և Գերերջանիկ Հօրն Տեառն Ստեփաննոսի Պետրոսի Ժ Կաթողիկոսի Կիլիկիոյ, ուղղեալ մեզ առ ի անցանել ի ժողովրդապետութենէ Լիվոռնոյ փոխել առ ժողովրդապետութիւն Մեծի Կղզւոյ ի հայրենիս մեր ի Կոստանդնուպօլիս:

*Որպէս արդէն կենդանի ձայնիւ ծանուցեալ էաք Ձեզ, այսու Պաշտօնական Գրութեամբ Մերով յայտ առնեմք Ձեզ եթէ կարգեալ եմք զՁեզ ի Ժողովրդապետ և Մեծաւոր Եկեղեցւոյն Մերում որ ի Մեծ Կղզի: Վասն որոյ փութասջիք դարձ առնել այսր ի մտանել ի Պաշտօնդ զոր յանձնեալ եմք Ձեզ: Գեր. Տէր Աւետիս Վ. Տէմիրճեան կարգեալն ի Մէնջ ի ժողովրդապետ Ազգային Եկեղեցւոյս ի Լիվոռնոյ, մեկնեսցի աստի յետ աւուրց ինչ, և ի հասանելն այդր յանձնեսջիք նմին զամենայն գործս և մատեանս և գրութիւնս Եկեղեցւոյդ և ժողովրդապետութեանդ, և հաճեսջիք հաղորդել նմին նաև զամենայն կարևոր ծանօթութիւնս և տեղեկութիւնս որ յօգուտ Եկեղեցւոյդ և Ազգային կրացդ:*

*Եւ հաւատարիմ սիրոյ եմք*
*Բերա Կ. Պօլսոյ յ30 Ապրիլի 1887*
***Գերապատիւ Տեառնդ աղօթարար***

*(Ստորագրեալ)*
**ՍՏԵՓ. ՊԵՏՐՈՍ Ժ.**
***Կթղ. Պտրք. Կիլիկիոյ***

***Առ Գերապատիւ Տէր***
**ՄԵՍՐՈՊ Վ. ՈՒՂՈՒՐԼԵԱՆ**
***Ժողովրդապետ ի Լիվոռնոյ***

## ԹՈՒՂԹ ՎԵՑԵՐՈՐԴ

*Օրինակ Թղթոյ Աւագեր Պետրոս Աբրահամեան Աշխատաւորին Հա-յոց ի Լիվոռնոյ ուղղելոյ առ Մեզ ի ժամանակի հրաժարման Մերոյ ի Ժողովրդապետութենէ Ազգային Եկեղեցւոյն Մերոյ որ ի Լիվոռնոյ քաղաքի: Բնագիրն տպարի:*

**ԵՐԵՍՓՈԽԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ԱԶԳԻ ԵԿԵՂԵՑԻ ԼԻՎՈՌՆՈՅԻ**

*Յարգոյական Տէր Ժողովրդապետ,*

*Պատուեալ յանձնարարութեամբն զոր Խորհուրդ Վարչութեան Հայկական Եկեղեցւոյս այսորիկ ի ժողովի երեկեան աւուր հաւանեցաւ հաստատել ինձ զայն ուրախութեամբ կատարեմ, որպէս զի ունիցիմ զառիթ առ ի ցոյց տալոյ Տէրութեան Ձերում զզգածմունս յարգանաց իմոց եւս և զերեսփոխանացն առհասարակ:*

*Ուստի յանուն ամենեցուն որ ի Խորհուրդ Վարչութեան Հայկական եկեղեցւոյն ի Լիվոռնոյ յայտնի առնեմ զխորին դժկամակութիւնն համօրէն Անդամոց Խորհրդոյն ի տեղեկանալն թէ Նորին Վեհութիւնն Ամենապատիւ Պատրիարքն Հայոց Կաթողիկեայց կամեցաւ կարգել զՁեզ այլուր առ ի հոգաբարձութիւն հոգւոց:*

*Այլ սակայն այսպիսի ընդհանուր դժկամակութիւն մեր սակաւիկ ինչ մեղմացեալ եղեւ ի խորհելն թէ Վեհագոյն Պատրիարքըն մեր ի նկատման առեալ է յայտնիկ զհանգամանս զայնոսիկ որք զարդարեն զՏէրութիւն Ձեր: Այնպէս զի ոչ կարեմք յետս կալ ի մատուցանելոյ Ձեզ զանսպառելի շնորհակալութիւնս մեր վասն արժանացեալ պատուոյ հասելոյ մեզ կոչմամբ Ձերով առ Պաշտօն որ առաւել եւս կարեւորագոյն է քան զայն*

Պաշտօն զոր այնքան խնամով և անձնուրացութեամբ վարեցիք յեկեղեցւոջ մերում ի Լիվոռնոյ: Որ և յայտնութեամբ անզաղափական խնամոց ձերոց յառաջացեալ եղև ի վայելչութեան և ի չքնաղագոյն աստուածապաշտութեան այնքան, մինչ զի Տէրութիւն Ձեր կացեալ մնացէ ճշմարտապէս բարեացապարտ:

Համեսջիք ընդունել եղանակաւս այսուիկ զապացոյց ճշմարիտ յարգանաց Խորհրդոյս այսորիկ Հայազգեաց, և զնշանակութիւն իմոց բարձրագոյն մեծարանաց.

Ի Լիվոռնոյ ի 20 Մայիսի 1887:

Նուիրեալ ծառայ Ձեր
Վարչապետ Եկեղեցւոյն Հայոց
ի Լիվոռնոյ
(Ստորագրեալ)
ՊԵՏՐՈՍ Ա. ԱԴԱՄԵԱՆ

Առ Բարգոյածեար Հայր
ՏԷՐ ՄԵՍՐՈՊ ՈՒՂՈՒՐԼԵԱՆ
Ժողովրդապետ Հայ
ի Լիվոռնոյ

Քարտուղար Դիւանապետ
(Ստորագրեալ)
ՊԵՏՐ. ԳՕՂ. ԲՐԱԴԵՋԻ

(Տ. Կ.)

**RAPPRESENTANZA**
**DELLA NAZIONE ARMENA**
**CHIESA DI LIVORNO**

Molto Reverendo Sig. Curato,

Onorato dall'incarico che il Consiglio di Amministrazione di questa Chiesa Armena nell'adunanza di ieri si compiacque di affidarmi, lo compio lieto che mi sia data occasione di esternare alla Signoria Vostra i sentimenti della mia stima e di quella della intiera Rappresentanza. A nome dunque di tutto il Consiglio di Amministrazione della Chiesa Armena di Livorno Le significo il profondo rincrescimento col quale da tutti i componenti del Consiglio è stata appresa la determinazione colla quale S. E. Rma il Patriarca degli Armeni Cattolici volle destinarla ad altra cura di anime. — Tale nostro

generale rincrescimento però ci è un poco mitigato dal pensiero che sono state dal nostro Eminentissimo Patriarca tenuti in questo conto quei pregi che ornano la Signoria Vostra. Talchè non possiamo a meno di porgerLe le nostre vive felicitazioni per il meritato onore che Le vien fatto nel richiamarla ad ufficio di gran lunga più importante, di quello che con tanto zelo e abnegazione ha disimpegnato nella nostra Chiesa di Livorno, che per le cure da Lei infinitamente spiegate ha guadagnato così in decoro e devozione che la Signoria Vostra ne rimarrà veramente benemerita.

Gradisca per tal modo l'attestato della verace stima di questo Consiglio di Armeni e l'espressione del mio più alto rispetto.

*Suo Devotissimo Servitore*
*Governatore della Chiesa Armena*
*di Livorno*
(firmato)
P. A. ADAMI

*Il Segretario Archivista*
(firmato)
P. P. PRATESI

*Molto Reverendo Padre*
DON MESROB OUGOURLYAN
*Parroco Armeno*
*Livorno*

(L. S.)



# ԳԼԽԱԿԱՐԳՈՒԹԻՒՆՔ

## ԳԼՈՒԽ Դ.



## ԳԼՈՒԽ Ե.



## ԳԼՈՒԽ Զ.



## ԳԼՈՒԽ Է.

## ԳԼՈՒԽ Ը.



## ԳԼՈՒԽ Թ.



## ԳԼՈՒԽ Ժ.



## ԳԼՈՒԽ ԺԱ.

## ԳԼՈՒԽ ԺԲ.



## ԳԼՈՒԽ ԺԳ.



## ԳԼՈՒԽ ԺԴ.



## ԳԼՈՒԽ ԺԵ.

## ԳԼՈՒԽ ԺԶ·



## ԳԼՈՒԽ ԺԷ·



## ԳԼՈՒԽ ԺԸ·

## ԳԼՈՒԽ ԺԹ.



## ԳԼՈՒԽ Ի.





